# ՍԿՈՎՏԻԱՑԻ

## ՍԹՈՒԱՐԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ

ԵՒ ԱՌԱՆՁԻՆՆ

# ՄԱՐԻԱՄ ՍԹՈՒԱՐԹ

## ԹԱԳՈՒՀՒՈՅՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ

Հ. ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ Վ. ԱՒԱԳԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ






ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՏՊԱՐԱՆ

1861. ՌՅԺ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## Ա

Ընդհանուր Պատմութեան մատեաններուն մէջ, որչափ ալ ասոնք ընդարձակ գրուած ըլլան, համաշխարհի Անցքերուն ամէն նշանաւոր վայրկեանները մի ըստ միոջէ ու ըստ ամենայն պարագայից աւանդելը չէ թէ միայն դժուարին՝ հապա նա եւ իբր անպատշաճական ըլլալը չիկրնար ուրացուիլ: Ի վերայ այսր ամենայնի աս նշանաւոր վայրկեաններուն շատերն այնպիսի դէպքեր կը բովանդակեն՝ որ անոնց մանրամասն ու ճիշդ ստորագրութիւնը թէ գիտնոց հմտութեան ու թէ հասարակ ժողովրդեան տեղեկութեան համար իր օգուտներն ու կարեւորութիւնն ունի:

Ըստ այսմ նկատման՝ Մեծին Բրիտանիայի տէրութիւնն՝ Ազգաց ընդհանուր շղթային մէկ անդամը, ուստի եւ իր պատմութիւնն ալ Ընդհանուր պատմութեան մէկ մասն ըլլալով՝ իր սկզբնաւորութիւնը, զարգացումն եւ հիմակուան բարձրութեան հասնելուն հանգամանքը նոյն ընդհանուր պատմութեան ուրիշ մասերուն հետ մէկտեղ աւանդուելէն զատ՝ բազմաթիւ մատեաններ նոյն տէրութեան պատմութիւնն առանձինն կը ստորագրեն: Սակայն նոյնին մասնաւոր պատմութիւնն ալ, ինչպէս ուրիշ շատ տէրութիւններունը, առանձին հատուածներ ու արտաքոյ կարգի նշանաւոր վայրկեաններ ունի, որոնց համար առանձին մատեաններ յօրինելը՝ աւելորդ աշխատութիւն մը չիկրնար սեպուիլ: — Սկովտիա՝ ատեն մը Անգղիայէն զատ ու անկախ թագաւորութիւն ըլլալով՝ իր առանձին պատմութիւնն ունի, որն որ թէպէտ իր սկիզբներն ու մէ-

ջերն ալ նշանաւոր անցքեր ունեցեր է, բայց իր անկախութեան վերջերուն մօտ՝ ընդհանուր աշխարհի թէատրոնին վրայ ատեն ատեն հանդիսացած տխուր տեսարաններուն ամենէն երեւելիներէն մէկը մեր առջին կը դնէ։ Աս տեսարանին մէջ այնպիսի դէպքեր կը գտնուին, որ ամբողջ դարերու մէջ դժուարաւ կրնան հանդիպիլ, ուստի եւ իրենց պատմութիւնն առանձին մտադրութեան արժանի ըլլալուն՝ առանձին մատենով աւանդելը կարեւոր համարեցանք։

Աս առանձնական պատմութեան քանի մը տարակուսելի պարագայից վրայ կարեւոր քննութիւնները զգուշութեամբ ընելէն ետքը՝ Անգղիայի եւ ուրիշ ազգաց հաւատարիմ պատմիչներուն հետեւելով, մեր առաջիկայ մատեանն ըստ կարի համառօտիւք՝ բայց առանց գլխաւոր ու երեւելի մաս մը դուրս թող տալու գրեցինք եւ ի լոյս կը հանենք։



# ՑԱՆԿ

# ՄԱՐԻԱՄ ՍԹՈՒԱՐԹ

## ԵՒ

## ՍԹՈՒԱՐԹԵԱՆՔ

---

### ԳԼՈՒԽ Ա.

Սթուարթեան պետութեան սկիզբը։ Ռոպերթ Գ. թագաւոր կ'ըլլայ։ Ռոթսէ դքսին մահը, Յակոբ արքայորդին Անգղիացւոց ձեռքը գերի կ'իյնայ։ Ռոպերթ Գ. կը մեռնի։ Ալպանի եւ Մէօրտէք դքսերուն կառավարութիւնը։ Յակոբ Ա. Անգղիացւոց գերութենէն կ'ազատի եւ Սկովտիայի աթոռը կը նստի։ Յակոբ Ա.ին կառավարութիւնը եւ իրեն դէմ եղած դաւաճանութիւնն ու մահը։



Դաւիթ Բ. Սկովտիայի թագաւորն անորդի մեռնելով մեծն Ռոպերթ Պրիւսէին արական գիծը լմնցաւ։ Բայց Սկովտիացւոց սէրն ու յարումն այնչափ մեծ էր աս իշխանին նախորդաց վրայ որ անոր մօր կողմանէ մէկ թոռը թագաւորական աթոռը նստեցուցին։ Աս Ուալթէր Լորտ Հայ Սթուարթ որ ըսել է վերին վերատեսուչ՝ Ռոպէրթ Պրիւսէին Մարճորի անունով դստեր հետ ամուսնացած էր։ Աս իշխանը որ Սկովտիայի քաջ նախարարներէն (Clan) մէկն էր եւ իր իզակաւը Պէննոքբ Պէօռնի պատերազմի մէջ մեծամեծ հարուածներ տուած էր, շատ երիտասարդ մեռաւ, ու որդի մը ձգեց, զորն որ Դաւիթ Բ.ին մեռնելէն ետեւ ազգը Սկովտիայի աթոռը նստեցուց։ Ասիկայ Սթուարթեանց պետութիւնը կանգնեց, որուն վերջի թագաւորը 1688ին Անգղիայի մեծ յեղափոխութեան ատեն կրկին թագը կորսնցուց։

Աս իշխանը քաղցրաբարոյ ու մարդասէր թագաւոր մըն էր եւ միանգամայն հօրը նման երիտասարդութեան ատեն քաջ պատերազմող էր, բայց աթոռը նստած ատեն գրեթէ 55 տարուան էր, ասկից զատ աչքացաւութիւն ունենալով իր մնացած օրերը

առանձնութեան մէջ անցուց, մինչեւ որ 1390ին ապրիլի 13ին մեռաւ։ Ինքն եւ Յակոբ Զ. իր ցեղին մէջ ամենէն երջանիկ թագաւորներն էին։

Ասոր որդին Ճոն կամ Յովհաննէս աթոռը նստաւ. բայց ան իշխանները որոնք Ճոն անունը ունէին մինչեւ աս ատեն այնպէս դժբախտ էին, որ անունը փոխելու հարկ համարեցաւ, եւ իր հաւուն եւ հօրն անունը առնելով Ռոպերթ Գ. անուանեցաւ. բայց ասով ալ աւելի երջանիկ չեղաւ։

Ռոպերթ Գ. երկու որդի ունէր. անդրանիկը Ռոթսէյ դուքսը գեղեցիկ երիտասարդ մըն էր բայց թեթեւամիտ ու զբօսանաց ետեւէն ինկող։ Ալպանի դուքսն ասոր հօրեղբայրը թագաւորին տկարութիւնն իրեն պատեհ առնելով, տէրութեան գործքերը ինքն սկսաւ հոգալ, եւ իր եղբօրը թագաւորին՝ խորհուրդ տուաւ որ Ռոթսէյ դուքսը կարգաւորեալ կենաց կապելու համար ամուսնացընէ։ Աս խորհուրդը կատարուեցաւ եւ Ռոթսէյ դուքսը Տուկլասին դստեր հետ ամուսնացաւ. բայց իր առջի կեանքը դարձեալ շարունակեց։ Տուկլաս իր փեսային նկատմամբ Ալպանիին առջեւ տրտունջ ըրաւ։ Ալպանի թագաւորական գահը ժառանգելու յոյս ունենալով, թէ որ Ռոպերթ անորդի մեռնելու ըլլայ, միտքը դրաւ որ արքայորդիներէն մէկը եղանակաւ մը մէջտեղէն վերցընէ, մտածելով որ վերջէն ժամանակ կ՚ունենայ երկրորդն ալ մէջտեղէն վերցընելու։ Ասոր համար ծեր թագաւորին առջեւ ելաւ ու արքայորդւոյն յանցանքները առջեւը մեծցընելէն ետեւ, վրան դաւաճանութեան մը մասնակից ըլլալուն ամբաստանութիւն ալ ըրաւ, ասանկով թագաւորէն հրաման առաւ որ արքայորդին բռնուի, եւ աս հրամանը Ռէմոնի անունով անպիտան մարդու մը յանձնուեցաւ։ Ռոթսէյ դուքսը ասկից ծանօթութիւն մը չունենալով Ֆայֆ կոմսութեան մէջ անհոգ ճամբորդութիւն կ՚ընէր։ Ռէմոնի եւ Ուիլիէմ Հինտսէյ յանկարծ վրան հասնելով զինքը ձիէն վար նետեցին ու ձեռքը կապելով ուրիշ ձիու վրայ նստեցուցին եւ Ալպանի դքսին Ֆալքլէնտ բերդը տարին։ Ճամբուն վրայ փո-

թարկի եւ սաստիկ անձրեւի մը բռնուելով, անգութ պահապանները թող չտուին արքայորդւոյն որ օթեվան մը մտնէ ու անձրեւէն պահպանի, այլ միայն գեղացւոյ վերարկու մը կռնակը տուին։ Բերդը համնելով խաւարչտին բանտ մը դրին որն որ միայն վանդակապատ ծակէ մը լոյս ունէր ու փակի մը վրայ էր։ Շաբաթ մը անցնելէն ետեւ կերակուր բերելն ալ դադրեցուցին։ Իսկզբան կարծեց արքայորդին որ մոռցեր են ու ամբողջ օրը համբերութեամբ անցուց, երկրորդ օրը սկսաւ պոռալ եւ ամբողջ օրը զղոջան աղաղակաւ անցուց, երրորդ օրը վերջապէս բոլորովին զօրութենէ լքնալով ոչ պոռալ եւ ոչ ալ հեծել կրնար։ Երբ որ գիշեր եղաւ ականջին ձայն մ'եկաւ, իբրեւ թէ մէկը բանտին ծակին կը մօտենայ, եւ ունեցած բոլոր զօրութիւնը ժողվելով սողալով մինչեւ ծակը գնաց։ Եւ իրօք խաբուած չէր. կնիկ մը իր առջի օրուան աղաղակը եւ երկրորդ օրուան հեծելը լսելով, ուզեց իմանալ որ բանտին մէջ ով կայ, եւ գիշերուան մութն իրեն օգնական առնելով յանդգնեցաւ մօտեցաւ ծակին ու հարցուց թէ ներսինն ով է եւ ինչ կ'ուզէ։ Ռոթսէյ պատասխանեց որ ինքը թագաւորին որդին է, ու անօթիութենէ կը մեռնի։ Կնիկը անմիջապէս տուն գնաց ու շուտ մը դառնալով գարեղէն հաց մը ծակը նետեց խոստանալով որ ամէն գիշեր նոյնպէս կը բերէ։ Այսչափս միայն խեղճ կնիկը կրնար ընել, ինչու որ ինքն ալ շատ աղքատ էր։ Գարեղէն հացը անօթիութենէն չմեռնելու համար բաւական էր, եւ կնիկը խօսքը բռնելով Ռոթսէյ գէթ կեանքը կրցաւ պահել։ Քանի մը օրէն ետեւ Ռոթսէյ դրան քով ոտնաձայն լսեց որն որ իր բանտին դրան կը մօտենար, իմացաւ որ եկած են իմանալու համար թէ արդեօք մեռա՞ծ է։ Ուստի զիրենք խաբելու համար քանի մը հառաչանք հանեց, որուն վրայ ոտնաձայնը հեռացաւ։ Երկրորդ օրը դարձեալ ոտնաձայն լսուեցաւ, Ռոթսէյ աւելի նուաղ հառաչեց, որուն վրայ ոտնաձայնը դարձեալ հեռացաւ։ Ա՜ս կերպով ամբողջ շաբաթ մ'անցաւ։ Ութերորդ գիշերը գարեղէն հացը պակ-

ռեցաւ։ Բանտի ծառաներն տեսան որ իշխանը աւանց ուրիշին օգնականութեան չէր կրնար այնչափ երկար ապրիլ, եւ ասոր համար բակին մէջ պահապան մը դնելով կնիկը բռնեցին։ Երկու օր իշխանը անօթիութեան դառն տաժանօք տանջուեցաւ։ Երրորդ գիշերն իշխանը դարձեալ ծակին մօտերը ձայն մը կը լսէ։ Բանտարկուած կնիկը իր բարեկամ կնոջ, որն որ իրմէ աւելի եւս աղքատ էր բանն իմացուցած էր։ Բայց աս կնիկը եւ ոչ գարեղէն հացի կտոր մը կրցաւ տալ իշխանին. եւ որովհետեւ նոր ծնած տղայ մ'ունէր կաթին կէսը իշխանին մատուց։ Աս կերպով Ռոթսէյ ինն օր ալ ապրեցաւ։ Տասներորդ գիշերը կնիկը չերեւցաւ ինչու որ առջինին պէս յայտնուած ու բանտարկուած էր։ Պարապ տեղ Ռոթսէյ հինգ օր սպասեց։ Վեցերորդ գիշերն երբոր ա՛լ հեծելու ձայն չէր լսուեր բանտը բացին։ Ռոթսէյ մեռած էր (1402), բայց իր թեւին մէկ մասը կրծած կերած էր։

Թագաւորն երբոր ասոր լուրն առաւ տեսաւ որ իր տասնումէկ տարուան տղան Յակովբ՝ անդրանկան պէս վտանգի մէջ է, կրթութեան պատրուակաւ Գաղղիա խրկել ուզեց, ըսելով որ Գաղիայի մէջ աւելի աղէկ կրթութիւն կրնայ առնուլ քան թէ Սկովտիայի մէջ։ Բայց այն նաւն որուն մէջ որ արքայորդին էր՝ Անգղիացւոց ձեռքն ինկաւ եւ մատաղ իշխանը Լոնտոն տարուեցաւ։ Ռոպէրթ անմիջապէս Անգղիայի թագաւորին Հենրիկոս Դ.ին գրեց ու որդին յետս պահանջեց. բայց Հենրիկոս Սկովտիայի վրայ երեւակայած ժառանգութիւնը մտքէն հանած չըլլալով Սկովտիայի ժառանգը ձեռք բերելուն շատ ուրախացաւ, եւ Ռոպէրթ թագաւորին պատասխանել տուաւ, որ անոր որդին իր պալատին մէջ այնչափ կրթութիւն կրնայ առնուլ որչափ որ Գաղիայի մէջ։ Եւ աս խորհրդածութեամբ զարքայորդին բանտ դնել տուաւ, բայց իր խոստումը կատարելու համար զանց չառաւ արքայորդւոյն ընտիր կրթութիւն տալու։

Ծեր թագաւորն որն որ ասկից ետեւ Անգղիացւոց կամքէն կախուած էր, վեց ամսէն ետքը տրտմութենէն ու սրտի ցաւէն մեռաւ Սկով-

տիայի կառավարութիւնն Ալպանի դքսին ձեռքն յանձնելով։

Ինչպէս որ դիւրաւ կրնայ մտածուիլ՝ Ալպանի իր եղբօրորդին ազատելու համար միայն տա երեսս ջանք մ՚ըրաւ։ Յակովբ ասանկով Անգղիայի մէջ մնաց ու իր կրթութիւնը գերութեան եւ աքսորանաց դպրոցին մէջ կատարեց մինչեւ որ 1419ին Ալպանի դուքսը մեռաւ։ Իր որդին Մէօրտէք կառավարութեան գլուխն անցաւ։ Որչափ որ Ալպանի խորամանկ, գործունեայ եւ կասկածոտ էր, որ պակսութիւններն երբեմն խնամակալի մը ձեռքը աղէկ յատկութիւններ են, ատոր հակառակ Մէօրտէք կանացի, պարզամիտ եւ անհոգ էր. իսկ իր որդիքը հպարտ ու ամբարտաւան էին, ոչ մարդիկներէ եւ ոչ ալ Աստուծմէ երկիւղ ու ակնածութիւն ունէին։ Պատահեցաւ օր մը որ Մէօրտէքին անդրանիկ որդին որն որ Ուալդէր Սթուարթ կը կոչուէր, հօրը հետ որսորդութիւն ըրած ատեն, հօրմէն բազէն ուզեց, զորն որ հայրն իր բազկին վրայ կը տանէր։ Աս բազէն շատ ընտիր ու աղէկ կրթուած էր եւ հայրը մեծ բանի մը տեղ կը դնէր, եւ շատ անգամ ալ որդւոյն ձեռքը տալու զլացած էր։ Բայց Ուալթէր նոյն օրը կ՚երեւայ թէ խիստ բարկացած ըլլայ՝ հօրը ձեռքէն բազէն յափշտակածին պէս թռչնոյն գլուխը կը դարձընէ ու կը սատկեցընէ։ Հայրն որդւոյն ըրածին վրայ սովորական անտարբերութեամբ կը նայի, բայց վերջէն գլուխը շարժելով կ՚ըսէ. Ասա՛նկ, ասա՛նկ, որովհետեւ ինձմէ ոչ կ՚ակնածես եւ ոչ ալ ինծի կը հնազանդիս, ան ատեն մէկը բերել տամ որուն մենք ամէնքս հնազանդելու ստիպուինք։ Եւ իրօք ալ ան օրէն սկսելով բանտարկեալ իշխանին համար Անգղիացւոց հետ բանակցելու սկսաւ ու փրկանք վճարելով Յակովբ Սկովտիա դարձաւ, ու տասնութը տարի բանտարկելութենէն ետեւ քսանինը տարուան հասակի մէջ իր հարց աթոռը ժառանգեց։

Յակովբ Ա. այնպիսի յատկութիւններով զարդարեալ մարդ մըն էր, որոնցմով ուրիշներուն սիրտն իրեն կը քաշէր. վայելուչ երես, զօրաւոր մարմին,

կրթուած միտք ու հաստատուն սիրտ մ'ունէր։ Իր առջի հոգն եղաւ քննել որ իր գերութեան ատեն յանձանձիչը ինչպէս Սկովտիա կառավարած էր։ Եւ որովհետեւ քննութիւնն ի նպաստ Մէօրտէքին չէր, անոր համար Յակովբ զինքն ու իր երկու որդիքը մասնաւոր դատաստանի մը մատնեց, որն որ զիրենք մահապարտ դատեց։ Երեքն ալ բարձրաւանդակի մը վրայ գլխատուեցան որն որ Տաւն դղեակին դիմացն էր, եւ իրենք իրենց համար ժողովրդեան սորկով շինել տուած էին։ — Թագաւորն իր խստութեան ուրիշ օրինակ մ'ալ տուաւ։ Ռոս կոմսութեան բարձրագաւառաց գլխաւորներէն մէկը Մաք Տոլալտ անուամբ, անգութ կերպով այրի մը կողոպտած էր. աս կնիկը շարունակ արդարութիւն կ'ուզեմ կը պոռար։ Ծիծաղելով հարցուց իրեն Մաք Տոնալտ թէ ուսկից պիտի ուզես արդարութիւն. թագաւորէն պատասխանեց այրին, թէպէտ եւ մինչեւ Էտինպուրկ ոտքով ալ քալելու ստիպուիմ։ Ասի շատ երկար ճանապարհորդութիւն է, մայրիկ, պատասխանեց Մաք Տոնալտ, եւ ասոր համար հարկ է որ ոտքերուդ պայտ զարնել տամ որպէս զի միտքդ դրածը դիւրութեամբ գլուխ հանես։ Եւ իրօք դարբին կանչել տուաւ եւ հրամայեց որ այրւոյն հողաթափները գամերով ոտքին վրայ հաստատեն ան կերպով ինչպէս որ ձիուն ոտքին վրայ երկաթը կը գամեն։ Աս ընելով կնիկն արձակեց որ միտքը դրած ճանապարհորդութիւնը կատարէ։ Բայց այրին իր խօսքը բռնեց. հազիւ թէ ոտքին վէրքերը բժշկուեցան, ըսածին համեմատ քալելով մինչեւ Էտինպուրկ գնաց. թագաւորին ոտքն ինկաւ եւ գլխուն եկածը մէկիկ մէկիկ պատմեց։ Յակովբ շատ բարկացաւ ու հրամայեց որ Մաք Տոնալտ եւ անոր տասուերկու կամակիցները բռնեն ու անոնց ոտքը պայտ զարնեն եւ երեք օր հրապարակ դնելէն ետեւ չորրորդ օրը գլխատեն։

Աս կերպով Յակովբ Ա. խաղաղութիւնն հաստատեց իր երկրին մէջ, զորն որ շատ անկարգ վիճակի մէջ գտած էր։ Օգտակար օրէնքներ դրաւ ի

նպաստ վաճառականութեան, նոյնպէս խիստ արդարութեան նկատմամբ օրէնքներ հաստատեց, եւ անոնց պահպանութեան վրայ կը հսկէր որպէս զի թէ ամբաստանեալները եւ թէ ամբաստանողները արդարութիւն գտնեն։

Իրեն գլխաւոր գործքը լրած էր մանաւանդ բարձր ազնուականաց իշխանութիւնը նուազցընել։ Սկովտիայի մէջ այնչափ թագաւոր կար՝ որչափ որ հարուստ ազնուականք կային, որոնք իրենց կոմսութեանց մէջ ըստ քմաց արդարութիւն կը բանեցընէին։ Ցակոբ հրատարակեց որ ասկէց ետեւ միայն մէկ թագաւոր եւ մէկ արդարութիւն կայ եւ ամէնքն անոր գլուխ ծռելու պարտաւոր են։ Երեւելի ազնուականներէն ոմանք ասոր չուզեցին հնազանդիլ։ Ցակոբ գլուխ վերցընողներն ամբաստանութեան ատեանը մատնեց ու անոնց ինչքը յարքունիս առաւ։ Աս դժգոհներուն մէջն էր նաեւ Ռոպերթ Կրահամ, որն որ յանդուգն ու ամբարտաւան մէկն էր. երկայն ատեն բանտ կենալէն ետեւ թագաւորին վրայ խիստ նեղացած էր, եւ անկից վրէժ առնելու մտօք Էթօլ կոմսն եւ անոր որդին Ռոպերթ Ստուարթ իր կողմնակցութեան հրապուրեց Սկովտիայի ժառանգութիւնն անոր խոստանալով։ Երբոր տեսաւ որ պալատականաց մէջէն իրեն շատ կողմնակից եւ իր ապըստամբութեան մասնակից ունի, բարձրագաւառները քաշուեցաւ, եւ իր հպատակութեան երդումը ետ դարձընելով թագաւորը մենամարտութեան կը հրաւիրէր։ Թագաւորը Կրահամի գլխուն վրայ գին դնելով ապստամբին վրան ալ հոգ չտարաւ զինքը խենթ համարելով։

Քրիստոսի Ծննդեան օրերը կը մօտենային եւ Ցակոբ ան օրերը Բէրթ քաղքին մէջ փառաւոր հանդէսներով անցընելու միտքը դրաւ։ Ասոր համար երգչաց, գուսանաց եւ խեղկատակաց բազմութիւն մը Աղեքսանդր ասպետին առաջնորդութեամբ, որն որ զուարճացուցիչ արուեստի մէջ շատ ճարտար էր, զորն որ Ցակոբ Սիրոյ թագաւոր կոչած էր, ճամբայ ելաւ դէպ ի Բէրթ երթալու։ Երբոր Էռն

գետը հասաւ եւ Նաւակին մէջ պիտի մտնէր, դիմացի կողմանէ պառաւ կնիկ մը պոռաց իրեն ըսելով "Ցէր արքայ, թէ որ ուղղ գետին մէկալ կողմն անցընես մէյ մ'ալ ողջ չես դառնար,,: Ասոր վրայ Ցակովբ քիչ մը կեցաւ եւ սիրոյ Թագաւորին դառնալով կը լսե՞ս, ըսաւ, Աղեքսանդր, որ մեզի աս պառաւը ինչ կը մարգարէանայ. — Այո՛, տէր, պատասխանեց ասպետը. ձեր տեղը ես ըլլայի անմիջապէս ետ կը դառնայի, ինչու որ գուշակութիւն մը կայ թէ 1437ին Սկովտիայի մէջ Թագաւոր մը պիտի սպաննուի: — Է՛հ, ըսաւ Թագաւորը, աս գուշակութիւնը ինծի այնչափ կ'իյնայ որչափ որ քեզի. երկուքնիս ալ Թագաւոր չե՞նք մի. եւ որովհետեւ ես քեզի համար ետ դառնալու կամք չունիմ, քեզմէ ալ կը խնդրեմ որ դուն ալ՝ ինծի համար ետ չդառնաս: Եւ աս ըսելով Նաւակը մտաւ, Նաւավարին հրամայելով որ դիմացն անցընէ: Նոյն իրիկուն Բէրթ կը հասնի ու Սեւ կոչուած կրօնաւորաց վանքը կը հիւրընկալի: Իսկ իր թիկնապահները վանքին մէջ տեղ չգտնելով քաղքին մէջ կը ցրուին: Ծննդեան օրերն առանց դժբախտութեան անցան, եւ որովհետեւ Թագաւորը Բէրթ քաղաքը շատ հաւնած էր, որոշեց որ քիչ մ'երկայն հոն կենայ: Ժամանակն ուրախութեամբ, ձիավարելով ու խաղերով կ'անցընէր: Թագաւորն ամենէն աւելի գնդախաղի մէջ յաջողակութիւն ցուցուց, եւ աւազով շտկուած մեծ բակ մը աս խաղին համար շատ յարմար էր, միայն բակին մէկ ծայրը բաց ծակ մը կար որուն տակը՝ այր էր, եւ Թագաւորին մեծ տհաճութեամբը գունդը շատ անգամ մէջը կ'իյնար, ուսկից որ շատ դժուարութեամբ դուրս կը հանէին: Ասոր վրայ Թագաւորը հրամայեց որ ան ծակը պատով մը գոցել տան: Ասկից ետեւ երկրորդ օրը այսինքն 1437ին Փետրուարի 20ին իր գնդախաղը կատարելէն ետեւ իրիկունն իր պալատականաց հետ երգելով ու սատրանջ խաղալով անցուց: Կամաց կամաց վանքին մէջ բնակող պալատական արք հեռացան: Էթոլ կոմսն եւ իր որդին Ռոպերթ Սթուարթ, որուն կրահամ Սկովտիայի

աթոռը խոստացած էր, ամենէն ետքը հեռացան։ Թագաւորն առանձին թագուհւոյն եւ անոր պալատական կանանց հետ մնացած էր եւ վառարանին քով նստած անոնց հետ կը խօսակցէր. մէկէն ծառաներէն մէկը ներս կու գայ ու թագաւորին կը զրուցէ որ իւն գետին պառաւն եկած է ու հետը խօսիլ կ'ուզէ։ Յակովբ պատասխանել կու տայ որ այսօր ուշ է, թող վաղը առտու գայ։ Ծառան նոյն պատասխանը պառաւին տանելու ատեն, մէյ մ'ալ անդիէն սրահին մէջ յանկարծ մեծ աղաղակ մը եւ սրերու շառաչիւն մը կը բրդի, նոյն ժամանակն ալ պատուհաններուն դիմացը ջահերու լոյս կ'երեւայ. Թագաւորն ոտք կ'ելլէ ու կը տեսնէ որ զինեալ մարդիկ ջահերով կեցեր են։ Մէկէն միտքը կու գայ որ Բէրթ քաղաքը բարձրագաւառաց սահմանակից է, ու յանկարծ կը զրուցէ "Կորսուած եմ, Կրահամ է եկողը„։ Դունէն դուրս փախչիլ անկարելի էր, ինչու որ ապըստամբք բռնած էին, Թագաւորն ուզեց պատուհանէն վար ցատքել, բայց ան ալ դրսէն վանդակապատ էր։ Թագաւորին միտքն ինկաւ որ սենեկին մէջ քալելու ատեն գետնին տախտակները պարապ կը հնչէին. եւ երբ որ կանայք դռները ամրացնելու վրայ էին եւ ատարինէ Տուկլաս նիգին (ձէ-րկէ-) խոշոր օղակներուն մէջէն հանուած երկաթէ գլանին տեղ իր թեւը խոթեց, յաջողեցուց Յակովբ կրակի ունելիքով գետնին տախտակին մէկը վերցնել ու այրին մէջ մտնել, զորն որ անմիջապէս ճանչցաւ որ ան այրն էր ուր գնդախաղի ատեն գնդակները կ'իյնային, եւ զորն որ դրսէն քիչ մ'առաջ պատով գոցել տուած էր։ Թէ որ այրին բերանը բաց ըլլար, ան ատեն կրնար ազատիլ թագաւորը։

Հազիւ թէ թագուհին տախտակը տեղը դրած յարմարցուցած էր, անդիէն դաւաճանները դուռը զարնելու սկսան. եւ ինչպէս վերը ըսինք նիգը վերցուած ու միայն Տուկլաս Կատարինէին թեւը դրան բացուելուն արգելք էր, աս ազնուական մատաղ աղջկան տկար թեւը շուտով կոտրեցաւ, եւ դաւաճանները դաշոյններով ու սրերով զինեալ ներս

յարձակեցան դիմացն արգելք եղողները կամ դէմ դնողները վիրաւորելով: Մարդասպաններէն մէկն արդէն սուրը վերցուցած էր Թագուհին զարնելու համար. բայց անդիէն Կրահամին որդւոց մէկը արգիլեց ըսելով որ մեր գործքը Թագուհւոյն հետ չէ, այլ Թագաւորին հետ է: Պարապ տեղ խցին ամէն անկիւնները Թագաւորը փնտռելէն ետեւ կ'ուզէին հեռանալ ու աբբայարանին մէկալ կողմերն իրենց քննութիւնը յառաջ տանիլ. բայց անդիէն դաւաճաններէն Հալ անունով մէկուն ոտքը՝ աղէկ չդրուած տախտակին վրայ կը սահի, կը ծռի ու տախտակը վերցընելով այրին մուտքը կը տեսնէ: Անմիջապէս ջահը դէպ ի ներս կը խոթէ ու կը տեսնէ որ Թագաւորը ներսը պատին կռթընած կեցեր է, եւ "որսը գտայ„ ըսելով իր եղբօրը հետ այրը կը մտնէ, եւ երկուքն ալ դաշոյնը ձեռքը Թագաւորին վրայ կը յարձակին: Յակովբ Թէպէտ առանց զինուց բայց ուժով ըլլալով երկուքն ալ գետին զարկաւ, եւ իրենց ձեռքէն զէնքը հանելու ատեն ձեռքերը խիստ վիրաւորեցան: Արդէն անոնցմէ մէկուն ձեռքէն զէնքը առած եւ երկրորդն ալ զինաթափ ընելու վրայ էր, երբոր անդիէն Րոպերթ Կրահամ, որն որ Հալին աղաղակին վրայ օգնութեան հասած էր, ձեռքը սուր այրը նետուեցաւ: Յակովբ իր մահուչափ Թշնամին դիմացը տեսնելով ու ընդդիմանալը փուճ համարելով շնորհք խնդրեց եւ կամ գէթ խոստովանելու ժամանակ:

Դուն շնորհք մէկուն չտուիր պոռաց Կրահամ, ասոր համար քեզի ալ պիտի չտրուի: Իմ սրէս զատ ուրիշ խոստովանահայր չունիս: Աս ըսելով սուրը Թագաւորին կուրծքը խոթեց: Թագաւորը Թէպէտեւ մահացու վէրք առած էր՝ ի վերայ այսր ամենայնի ծընկան վրայ եկաւ, բայց անողորմ դահիճները տասնուվեց դաշունի հարուածներով զինքն սպաննեցին:

Մարդասպաններն անմիջապէս լեռները ապաւինեցան, բայց Թագուհին այնպիսի խստութեամբ զանոնք հալածել տուաւ, որ անոնց մեծ մասը բռնուեցաւ եւ դառն տանջանաց մէջ իրենց հոգին փը-

չեցին։ Կրահամին մարմինը կտոր կտոր ոսկրներէն ունելիքներով բըրցուցին, եւ աս տանջանքն այնչափ տեւեն միայն ընդհատեցին մինչեւ որ որդին իր աչաց առջեւ գլխատեցին. ասկէց ետքը դարձեալ սկսան կտոր կտոր մսերը բըրցընել մինչեւ որ ոսկրները մսաթափ եղան եւ ինքն ալ հոգին աւանդեց։ — Թոպերթ Աթաւարթ որուն որ Կրահամ Սկովլիայի աթոռը խոստացած էր՝ Կրահամին տանջանքներով սպաննուեցաւ ամբողջ օր մը դառն ոգեվարք կրելով։ Իսկ Էլթոլ կոմսը՝ իր ծերութեան խնայելով գլխատեցին։

## ԳԼՈՒԽ Բ.

Յակոբ Բ.ին կառավարութիւնը։ Ցուկլասեանց հետ ըրած պատերազմներն եւ Թագաւորին մահը։

Յակոբ Բ. Յակոբ Ա.ին որդին քաղաքական պատերազմաց մէջ չափահաս եղաւ։ Ասի ալ հօրը պէս գեղեցիկ մարդ մըն էր, բայց ձախ այտին վրայ կարմիր գիծ մ'ունենալուն համար Յակոբ Հրադէմ կոչուեցաւ։ Իր չափահասութեան սկիզբները Արքիպալտ Ցուկլաս տէրութեան վերատեսուչ անուանուած էր, բայց տեսնելով որ ասանկ բարձր պաշտօն մը ամբարտաւան եւ յանդուգն մարդու մը ձեռքը ինչպէս որ Արքիպալտ էր, վնասակար կրնար ըլլալ, անոր համար նոյն պաշտօնը իրմէ վերցուց։ Աս բանս Ցուկլաս իրեն նախատինք մ'առաւ, զորն որ չկրցաւ մոռնալ։ Ուստի իր դղեակը քաշուելով ազգականաց ու բարեկամաց հրաւէր խրկեց որ իրեն հետ Թագաւորին դէմ ապստամբին։ Շատերն իր կողմն անցան. բայց ոմանք անոր սպառնալեաց միտ չդնելով Թագաւորին հաւատարիմ մնացին, որոնց մէջն էր Մաք Լելլան։ Ցուկլաս բարկանալով անոնց ընդդիմութեան վրայ, Թագաւորին դէմ իր ապստամբութեան գործքը անով սկսաւ որ անոր հաւատարիմ ազնուականաց կալուածոց ու դղեակներուն վրայ կը յարձակէր եւ մէկէն վրան հասնելով դիւրութեամբ կ'առնէր։ Աս կերպով Մաք Լելլան ալ գերի բռնեց եւ իր ա-

մուր Թրիէվ բերդը տարաւ։ Աս լուրին վրայ Փաթրիք Կրէյ Թագաւորին սկովտիացի Թիկնապահաց զօրագլուխին ու Մաք Լելլանին քեռին, Թագաւորին ոտքն ինկաւ եւ աղաչեց որ իր Թագաւորական բովանդակ ազդեցութիւնն ի գործ դնէ եւ զՄաք Լելլան ազատէ, որ չըլլայ թէ Քոլվիլ եւ Հերիէս ազնուականաց բախտին հանդիպի, զորոնք Տուկլաս բըռնած ու գլխատած էր։ Թագաւորը Մաք Լելլան ազատելու ամէն ճիգն ըրաւ, Տուկլասին նամակ գրեց որուն մէջ կէս մը աղաչելու կերպով կը խնդրէր Տուկլասէն որ զՄաք Լելլան Փաթրիք Կրէյին ձեռքն յանձնէ։ Կրէյ առանց ժամանակ կորսնցընելու ճամբայ ելաւ Թրիէվ դղեակը երթալու եւ հոն հասաւ նէ Տուկլաս սեղանէն ելլելու վրայ էր։ Տուկլաս թէպէտ առ երեսս աղէկ ընդունելութիւն ըրաւ դեսպանին, բայց այսու ամենայնիւ անոր առաքման պատճառը չուզեց մտիկ ընել մինչեւ որ հիւրը կէսօրուան կերակուրը չուտէ, ըսելով որ "Կշտացած հիւրընկալին եւ անօթի հիւրին հետ գործքերը աղէկ գլուխ չեն հանուիր„։ Աս բարեկամական ընդունելութիւնն՝ երկիւղի կամ վտանգի մը նշան չցուցընելու համար Կրէյ յանձն առաւ։ Երբոր սեղանը լմընցաւ Կրէյ Թագաւորական թուղթը յանձնեց Տուկլասին. Տուկլաս մեծ յարգանօք թուղթն ընդունեցաւ, ու Կրէյին շնորհակալ եղաւ որ իր տիրոջմէ այնպիսի ժամանակ թուղթ ընդունելու արժանի եղած է երբոր ինք զինքը Թագաւորական շնորհքէն բոլորովին ինկած կը կարծէր։ Եւ Կրէյին ձեռքէն բռնելով ըսաւ. Ձեր ու Թագաւորին բաղձանքը կատարուի ու Մաք Լելլան ձեզի յանձնուի։ Աս ըսելով զԿրէյ բակը տարաւ եւ անկերպարան ծածկուած շանգուածի մը քով մօտենալով, լաթը վեր վերցուց եւ ցըցուց իրեն քիչ մ'առաջ գլխատուած մարմին մը։ Կրէյ, ըսաւ Տուկլաս, դժբախտութեամբ քիչ մ'ուշ հասար. հոս է ձեր քրոջ որդին, թէպէտ եւ գլուխն իրմէ պակաս է, բայց մարմինը ձեր տրամադրութեան տակ կը ձգեմ։

Տուկլաս, պոռաց Կրէյ երեսին գոյնը նետելով

ու մազերը անկուած, որովհետեւ գլուխն առէք մարմինն ալ ձեզի մնայ։ Եւ ձի հեծած ատենը, լի սպառնալեօք աս խօսքերն ալ աւելցուց. Տուկլաս, կ'երդնում որ եթէ Աստուած ինծի կեանք շնորհէ, աս գործքը ձեզի ծանր պիտի նստի։ Աս ըսելով ձիուն կուշտէ մտրակը զարկաւ ու աներեւոյթ եղաւ։ — Ետեւէն հասէք, բռնեցէք, պոռաց Տուկլաս. ասանկ մէկ քեռին քեռորդիէն բաժնելը մեղք է։ Տուկլասին ծառաները հնազանդեցան ու վաթսուն (անգղիական) մղոնի չափ զկրէյ հալածեցին, բայց անիկակ յառաջուընէ իրեն աղէկ ձի մը հոգացած էր ամէն կարելի վտանգներուն համար։

Ասկից ետեւ Տուկլաս ամէն ակնածութիւնը մէկ դի ձգեց, եւ Քրօֆըրտ եւ Ռոսս կոմսից հետ, որոնք արդէն գրեթէ թագաւորական իշխանութիւն մ'ունէին, դաշնադրութիւն ըրաւ, որուն զօրութեամբ ամէն դէպքի մէջ ինչ եւ իցէ թշնամւոյ յարձակման դէմ թէպէտ եւ Յակովբ Բ. ըլլայ, իրար պիտի պաշտպանէին։

Թագաւորն աս դաշնադրութեան լուրն երբոր առաւ, տեսաւ որ եթէ աս երեք կամակից կոմսերն օր մ'իրենց զօրքը ժողվեն, ան ատեն անոնցը թագաւորական զօրքէն աւելի շատուոր կ'ըլլան։ Անոր համար որոշեց որ Տուկլասին սիրտը վաստըկելով զինքը նոյն միաբանութենէն բաժնէ, եւ աս վախճանին համար անոր զրուցել տուաւ թէ իրեն հետ բարեկամական տեսութիւն մ'ընել կ'ուզէ Սթիրլինկ թագաւորական բերդը։ Տուկլաս, որն որ դեռ նոր իմացած էր թէ տէրութեան ատենադպիրն իր անձնական թշնամին թագաւորին երեսէն ինկած է, կարծեց որ թագաւորին ասանկ զիջումն անոր հետ կապակցութիւն մ'ունի, եւ յանձն առաւ ան պայմանաւ որ Յակովբ իր անձնական ձեռօք եւ տէրութեան մեծ կնքով կնքուած անցագիր մը իրեն խըրկէ։ Տուկլաս իր պատգամաւորին ձեռօք ընդունեցաւ ուզած երաշխաւորութիւնը եւ աս կերպով 1452ին փետրուարի վերջերը հինգհարիւր հոգւով Սթիրլինկ եկաւ։ Բայց որովհետեւ թագաւորին հետ տեսու-

թիւնը բերդին մէջ միայն ընդ միայն պիտի ըլլար, անոր համար միայն ճեմս Հեմիլթընը, որն որ Հեմիլթընեանց մեծ տան գլուխն եւ իր անձնական բարեկամն էր՝ հետն առաւ, ու նեղ եւ զառ ի վեր ճամբէն բերդը ելաւ։ Դուռը հասնելով Տուկլաս ամէնէն յառաջ ներս մտաւ եւ Հեմիլթըն կ'ուզէր ետեւէն երթալ, բայց Լիվինկսթըն, որն որ դրան պահպանութիւն կ'ընէր եւ Հեմիլթընին ազգականն էր՝ երկաթապատ ձեռօք երեսը ապտակ մը զարկաւ։ Աս կերպով ազգական մ'ընդունելուն վրայ զարմացաւ Հեմիլթըն եւ քանի մը ոտք ետ երթալով բարկութեամբ սուրը քաշեց. բայց Լիվինկսթըն աս պարագան դուռը գոցելու գործածեց եւ Հեմիլթըն դրան մէկալ կողմը մնալու ստիպուեցաւ։ Աս շշուկին վրայ Տուկլաս ետեւ դարձաւ ու տեսաւ որ դուռը գոցուեր է. բայց Թագաւորին անցագրին վրայ վստահանալով ճամբան յառաջ տարաւ եւ Թագաւորին առջեւ ելաւ։

Յակոբ զկոմսն անկեղծութեամբ ընդունեցաւ, անանկ որ կոմսին ունեցած քիչ մը կասկածն ալ բոլորովին փարատեցաւ։ Խօսակցութիւնն երկայն տեւելով Թագաւորն զկոմսն ընթրեաց հրաւիրեց ու ժամը եօթին սեղանի նստելով բոլոր ընթրեաց ժամանակը Թագաւորն եւ Տուկլաս մտերմաբար իրենց անձնական շահերուն վրայ կը խօսէին, եւ կը ջանար Թագաւորն որ զինքը միաբանութենէն բաժնէ. բայց Տուկլաս ուրիշ բան պատասխան չէր տար բայց եթէ աս որ անկարելի է ու այնպէս մնալու է։ Ընթրիքէն ետեւ Թագաւորն զՏուկլաս պատուհանի մը քով տանելով իր խնդիրն եւ Տուկլաս իր մերժումը կրկնեց։ Վերջապէս Թագաւորը ձայնը ու մտերմական կերպը Թագաւորական հրամանին փոխելով ըսաւ որ աս միաբանութիւնը թէ իրեն իբրեւ Թագաւորի պարտաւոր հաւատարմութեան եւ թէ Թագաւորութեան խաղաղութեան դէմ է, ուստի եւ հրամայեց որ զանի քակէ։ Տուկլաս ամբարտաւանութեամբ կրկնեց որ ինքն իր խօսքը տուած է եւ Տուկլասեանք իրենց խօսքը բնաւ չեն

աւրեր։ Թագաւորը նորէն հրամայական կերպով ստիպեց զինքը, կոմսն ալ աւելի խիստ կերպով իր անհաւանութիւնը յայտնեց, ու տէրութեան գործքերուն քէշ վարչութեանը զԹագաւորը պատճառ կը սեպէր։ Ասոր վրայ Թագաւորն, որն որ Ցակոմբ Հրաշք կոչուած էր, բայց իր դիւրաբորբոք բարկութեան համար Հրաբուխ ալ կրնար կոչուիլ, դաշոյնը քաշելով մինչեւ երախակալը Ցուկլասին սիրտը խոթեց, ըսելով, թէ որ միաբանութիւնը դուն չես ուզեր քակել, կայ մէկ բան մ'որ քու տեղդ զանիկայ կը քակէ։ Ցուկլաս իսկզբան աւելի հարուածին բռնութենէն քան թէ վէրքէն կռնըկի վրայ ինկաւ, անմիջապէս ծնկան վրայ եկաւ ու "մատնութիւն,, ըսելով սուրը քաշեց, բայց նոյն րոպէին մէջ Արէյ որն որ, ինչպէս վերը ըսած էինք, Ցուկլասէն վրէժ առնելու համար երդում ըրած էր, վրան հասնելով պատերազմի տապարով գլուխը ճեղքեց մինչեւ ուսը։ Ցուկլասին մարմինն անմիջապէս իր զգեստովը նոյն սենեկին պատուհանէն դիմացը եղող պարտէզին փոսին մէջ նետուեցաւ. եւ ոմանք կ'ըսեն որ նոյն փոսն յառաջուընէ փորուած ու պատրաստուած ըլլայ. բայց ուրիշները կը հաստատեն որ ասոր սպանումը պարզ Թագաւորին յանկարծական բարկութեան հետեւանքն էր, եւ յառաջուընէ մտածուած սպանութիւն չկար։ Կարծիքներն անորոշ են. բայց մեր կարծեացը համաձայն Լիվլինկսթընին իր ազգականին յարմար տեսն տուած երկաթապատ արտակը, որուն համար Հեմիլթըն չէ թէ միայն վրէժ չէ առած այլ շնորհակալ ալ եղած է, աւելի առջի կարծեաց նպաստաւոր է։

Տուկլաս Սթիրլին քաղքին մէջ չորս եղբայր թող տուած էր, որոնք իրենց անդրանիկ եղբօրը սպանումը լսածին պէս, երկրորդ եղբայրը իրենց տան գլուխ հրատարակեցին։ Իրենց քով միայն 500 հոգի ունենալնուն համար, իրենց կոմսութիւնը քաշուեցան ու դաշնակցած հրաւէր տալով զօրք ժողվեցին եւ 1500 հոգւով ետ դարձան, եւ իրենց Թագաւորական անցագիրը նախատելու համար ձիուն պոչը կապեցին ու վրան ալ ստորին սպասաւոր մը նստեցու-

ցին։ Ջրուն առջեւը 500 փողահարք ամենայն զօրութեամբ փող կը զարնէին ու երբեմն երբեմն դադրելով Տուկլասին զինակիրը զՑակովբ երդմնազանց ու վատ կը կարդար։ Աս՝ հանդէսէն ետեւ Սթիրլինկ քաղաքը կողոպտեցին ու կրակ ալ տալ փորձեցին բայց բերդին զօրքը բնակչաց օգնութեան հասնելով, Տուկլասեանք լեռները քաշուելու ստիպուեցան սպառնալով որ քիչ մ'ետքը նորէն պիտի դառնան։

Այնչափ զօրաւոր Պարոններ՝ Տուկլասեանց Քրոֆըրտ եւ Ռոս կոմսից հետ միացած էին, որ Ցակովբ մտածելու սկսած էր Սկովտիայի աթոռը՝ որն որ աս դաւաճանութեանց ծածուկ նպատակն էր, առ ժամանակ մը թողուլ ու Գաղղիա ապաւինիլ։ Բայց իր ազգական Քէննէտի՝ Սուրբ Անդրէասի արքեպիսկոպոսը (որն որ նոյն ժամանակին իմաստուն մարդիկներէն մէկն էր) թագաւորին խորհուրդը փոխեց նետերով լեցուն կապարճին առասպելը առջեւը դնելով։ Ասոր վրայ թագաւորը որոշեց որ պարոնները մէկիկ մէկիկ իր կողմը վաստըկելով միաբանութիւնը քակէ։ Բայց այնչափ քաղաքականութենէ չհասկընալով աս ծանր պաշտօնը Արքեպիսկոպոսին յանձնեց, որն որ չէ թէ միայն Կորտոնեանց մեծ գերդաստանով թագաւորական կողմնակցութիւնը զօրացուց այլ նաեւ Անկաս կոմսը, որն որ Տուկլասեանց փոքր ճիւղին գլուխն էր եւ իր մազերուն համար կարմրահեր կոչուած էր (իսկ Տուկլասեանց մեծ ճիւղին գլխաւորը Սեւ Տուկլաս կը կոչուէր), թագաւորին կողմը շահեցաւ։ Ասոնցմէ ետեւ Քրոֆըրտ կոմսն ալ հպատակեցաւ։ Բայց Ցակովբ որչափ որ Քրոֆըրտին հպատակելուն ուրախացաւ, այնչափ ալ մէկալ կողմէն հոգի մէջ մտաւ, ինչու որ երդում ըրած էր, որ անոր Ֆինհէյվն բերդին (որն որ կոմսին սովորական բնակութիւնն էր) ամենէն բարձր քարը ամենէն ստորին ընէ, այսինքն բերդն հիմնայատակ ընէ։ Բայց Արքեպիսկոպոսն զթագաւորն աս տարակուսէն ալ ազատեց իրեն խորհուրդ մը տալով, զորն որ Ցակովբ սիրով ընդունեցաւ։ Թագաւորը կոմսին ծանոյց որ անոր ամրոցին այցելութիւն կ'ուզէ ընել, եւ

անոր անկեղծութեան վրայ վստահանալով, եւ զինքը երկիւղի մէջ չձգելու համար միայն տասուերկու զինեալ մարդիկ հետն առաւ։ Քրոֆըրտ Թագաւորին այցելութեան պատճառը չգիտնալով, ինքզինքը բախտին ձգեց, բայց զԹագաւորը պատշաճ յարգանօք ընդունեցաւ ու մեծ հիւրասիրութիւն ցուցուց։ Իսկ Թագաւորը իր հպատակին քով բան մը չկերած ամրոցին ամենէն բարձր ծայրն ելաւ ու պատին վրայէն խախտած քարի կտոր մը առնելով խրամին մէջ նետեց. ասանկով ամրոցին ամենէն բարձր քարը ամենէն ստորին եղաւ։ Քրոֆըրտ զարմացած մնաց Թագաւորին ըրածին վրայ բանին էութիւնը չգիտնալով։

Ասկէ ետք Տուկլաս շատ կողմնակից կորսնցուց, բայց սակայն միշտ պատերազմի կը պատրաստուէր, ինչու որ քանի մը զօրաւոր դաշնակից ունէր. որոնց մէջն էր Հեմիլթըն որ իր ազգականէն Սթիրլինկ բերդին դրան առջեւ երկաթապատ ապտակն առած էր։ Տուկլաս 40.000ի չափ բանակ մը ժողվելով յառաջ կ'երթար որպէս զի իր Էպերըքորն ամրոցին, զորն որ Օրքնի եւ Անկաս կոմսերը պաշարած էին, օգնութեան հասնի։ Թագաւորն իր կողմանէ գրեթէ նոյնչափ զօրքով դիմացը կ'երթար, եւ տեսնելով որ Տուկլասին զօրքը Քառոն գետին եզերքը բանակած է, ինքն ալ գետին մէկալ կողմը բանակեցաւ, անանկ որ միայն գետն երկու զօրաւոր բանակները կը բաժնէր, եւ երկու կողմն ալ պատերազմը անհրաժեշտ կը համարէին եւ վերջապէս պիտի որոշուէր, որ արդեօք Սթուարթեանք չէ նէ Տուկլասեանք անկեց ետքը Սկովտիոյ Թագը պիտի ժառանգեն, որն որ այնչափ անգամ մէկ տոհմէն մէկալ տոհմ անցնելու վտանգի մէջ ինկած էր։ Թագաւորին բարի խորհրդականը ասանկ դժուարին պարագայի մէջ զինքը չմոռցաւ։ Հազիւ թէ երկու բանակները դիմացէ դիմաց եկած էին, ինքը առանց ժամանակ կորսնցնելու Տուկլասին կողմնակցութեան երեւելիներուն եւ մանաւանդ Հեմիլթընին՝ որն որ անոնց մէջ ամենէն զօրաւորն էր, գաղտնի պատգամաւորներ խրկեց, անոնց բացարձակ անյիշաչարութիւն խոստանալով թէ որ

ապստամբաց կողմը ձգեն եւ Թագաւորին կողմն անցնին։ Կողմնակիցները Թէպէտ եւ աս հրաւէրն ընդունելու բաղձանք ունէին, բայց Տուկլասին խօսք տուած ըլլալով որ ամենեւին մէկ պարագայի մէջ զէնքը Թող չեն տար, զՏուկլաս կը ստիպէին որ ժամ մը յառաջ պատերազմը սկսի։

Երկրորդ օրն երբոր Տուկլաս իր դաշնակցաց խորհրդին համաձայն պատերազմը պիտի բանար, Թագաւորն անոր բանակը պատգամաւոր խրկեց, եւ հրամայեց որ բանակը ցրուէ, ապա Թէ ոչ Թէ ինքն եւ Թէ անոր կողմնակիցներն իբրեւ մատնիչ կը հրատարակուին։ Կոմնը մտիկ չըրաւ, եւ զօրքը յարդարելէն ետեւ սկսաւ յառաջ քալել։ Բայց որովհետեւ նոյն իսկ ինքը տարտամ մէկն էր եւ չուին ատեն իր կողմնակցաց մէջ քանի մը յապաղումներ տեսաւ, հրամայեց որ կենան ու զօրքը նորէն բանակը դարձուց։ Ասոր վրայ Հեմիլթըն Տուկլասին վրանը մտնելով ստիպեց զինքն որ որոշ պատասխան մը տայ Թէ արդեօք պատերազմ ընելու միտք ունի՞, ինչու ո՛ր կ'ըսէր, ամէն մէկ ժամու կորուստը մեզի վնասակար կրնայ ըլլալ։ Բայց Տուկլաս փոխանակ Հեմիլթընին շնորհակալ ըլլալու, պատասխանեց անոր որ եթէ ինքը վախ ունի, ազատ է ետ քաշուելու։ Ասանկ պատասխան մը խիստ նախատական էր։ Հեմիլթըն ասկէց ետեւ իր զօրաց հրամայեց որ փող զարնեն եւ բանակը ձգելով Թագաւորին բանակն անցաւ։ Աս օրինակին հետեւեալ գիշերն այնչափ պարոններ հետեւեցան որ երկրորդ օրը Տուկլաս միայն ինքզինքն իր սպասներով առանձին բանակին մէջ գտաւ։ Անմիջապէս իր եղբարցը հետ Աննէնտէյլ քաշուեցաւ, բայց հոն տեղը Դաւիթ Սքոթ զինքը զարկաւ ու բանակը ցիր ու ցան ըրաւ. եղբարցմէ մէկը պատերազմի մէջ ինկաւ ուրիշ մ'ալ գերի բռնուեցաւ ու վերջէն գլխատուեցաւ, երրորդն Անգղիա փախաւ ուր տեղ Տուկլաս ալ գնաց նորէն Սկովտիայի իշխանութիւնը ձեռք ձգելու փորձ ընելէն ետեւ։ Այսպէս Յակովբ մինչեւ 1450 բաւական հանդարտութեամբ տիրեց։

Աս ժամանակները Անգղիացիք անդադար քա-

ղըքական պատերազմներով իրենք զիրենք կը տկարացընէին։ Յակոբ ասոնց կռիւներէն իրեն օգուտ հանելու համար Ռոքսպորոյ ամուր բերդը, որն որ Տէօրհնէմի պատերազմէն ետեւ Անգղիացւոց ձեռքն անցած էր, նորէն ձեռք բերել ուզեց, եւ ասոր համար Սկովտիացւոց մեծերը իրեն օգնական ըլլալու հրաւիրեց։ Ամէն պարոնները՝ որոնց որ Յակոբ հրաւէր խրկած էր իրար կը մրցէին Թագաւորին զօրք հասցընելու մէջ. նոյն իսկ կղզեցի Տոնալտ աս արշաւանաց մասնակից ըլլալու յանձն առաւ եւ իր կէս վայրենի սպաները բանակին յառաջապահ ըրաւ որպէս զի առջի հարուածն իրենք ընդունին։ Յակոբ ասանկ փառաւոր բանակով մը Ճամբայ ելաւ եւ Թուիտ եւ Թեվլիոթ գետախառնուրդին տեղն հասաւ ուր որ Ռոքսպորոյ բերդը շինուած էր։ Բերդը շատ զօրաւոր ըլլալուն համար կարգաւորեալ պաշարմամբ միայն կրնար առնուիլ, ասոր համար գետեզրին հիւսիսային բարձրաւանդակի մը վրայ մեծ թնդանօթներու մարտկոց մը դնել տուաւ ու անոնց հրամանատարութիւնն ինք անձամբ կ'ընէր։ Օր մը երբոր Թագաւորն իր թնդանօթներուն ազդեցութիւնն իմանալու համար իրենց քով շատ մօտեցած էր, անոնցմէ մէկը պայթելով կտորին մէկը զՅակոբ Բ. սպաննեց, իսկ ուրիշ կտոր մը Անկաս կոմսը խիստ վիրաւորեց։

Յակոբ Բ. մեռած ատեն դեռ 29 տարուան էր եւ իր քսանուչորս տարուան երկայն կառավարութեան ատեն միայն Արքիպալտ Տուկլասին սպանումը իբրեւ ատգիւտ վրան կը դրուի։ — Ռոքսպորոյի դքսին պարտէզը մինչեւ հիմայ Յակոբ Բ.ին մեռած տեղը ծառ մը կայ ի նշանակ այս դէպքին։

Թագաւորին յանկարծ մահուամբ եւ Անկաս կոմսին վիրաւորուելով, որն որ բանակին հրամանատարն էր, վհատած պարոնները պաշարումը վերցընելու կը պատրաստուէին, երբ որ անդիէն Մարգարետա Թագուհին իր ութամեայ որդւոյն ձեռքէն բռնած իրենց մէջ երեւցաւ, եւ անոնց դիտաւորութիւնն իմանալով, ըսաւ, "Ամրչցէք պատուական տեարք իմ այնպիսի գործք մը ձգելու, որն որ ձեզի ամենէն պա-

տուականն արժած է։ Եւ գիտցէք որ, եթէ դուք ելլէք երթաք, ես եւ իմ որդիս եւ մեզի հաւատարիմ մնացած սպաներով որչափ սակաւաթիւ ալ ըլլան պաշարումը պիտի շարունակեմ,,։ Ասոր վրայ ազնուականները ամչցան որ կնիկ ու տղայ մը քաջասրտութեամբ իրենց յաղթեց, եւ աղաղակ մը բարձրացնելով առքայորդին իբրեւ Յակոբ Գ. Սկովտիայի թագաւոր հրատարակեցին։ Երեքամսեայ պաշարումէն ետեւ Ռոքսպորոյ ամրոցը պաշարի պակասութենէ նեղ մտած եւ տեղէ մը օգնութիւն չգտնելով անձնատուր եղաւ։ Սկովտիացիք վախնալով որ չըլլայ թէ նոյն բերդը օր մը դարձեալ թշնամեաց ձեռքն իյնայ ու իրենց դէմ գործածուի, հիմնայատակ ըրին։

## ԳԼՈՒԽ Գ.

Յակոբ Գ.ին կառավարութիւնը։ Ալպանի դքսին եւ Մար կոմսին գործքերը։ Լաւդէր եկեղեցւոյն դաւաճանութիւնը։ Հեփպուռն եւ Հոմս կոմսից ապստամբութիւնը։ Թագաւորը կը սպաննուի։

Յակոբ Գ.ին անչափահասութիւնը աւելի երջանիկ էր քան թէ իր հօրը եւ հաւուն։ Ս. Անդրէասի արքեպիսկոպոսին եւ իր եղբօր Գիլպերթ Քէննէտիին հետզհետէ յաջորդող խնամակալութեան ատեն թագաւորութեան գործքերը աղէկ կ'երթային։ Բայց հազիւ թէ թագաւորը կառավարութեան ղեկը ձեռք առաւ եւ առանձին վարելու սկսաւ, իր բարուց անկարգութիւնները երեւան ելան. բնութիւնը շատ երկչոտ էր, որն որ նոյն դարուն մէջ մեծ պակասութիւն կը համարուէր, եւ որ ժամանակը պատերազմի էր ամենայն ինչ որոշողը. ագահութիւնը, որ նոյն ժամանակին նոյնպէս մեծ պակասութիւն մըն էր՝ վրան տիրած էր. ինչու որ չէ թէ միայն շատ անգամ հարկ էր բարեկամները՝ այլ նոյն իսկ թշնամիները ստակով վաստըկիլ։ Բայց գեղեցիկ արուեստները կրիւք չափ կը սիրէր, որն որ վեհապետի մը համար բարի յատկութիւն մըն էր, թէ որ անով իր պատիւը եւ պարտքերը չմոռնար, եւ գիտնար արուեստաւորաց սատի-

ճանր ազնուականաց եւ հասարակ ժողովրդեան մէջտեղը դասել, ինչպէս որ պատշաճ էր։ Իր նախորդաց բոլորովին հակառակ՝ որոնք իրենց մտերիմներն ազնուականներէն կամ եկեղեցականներէն կ'ընտրէին, ինք արուեստից տեղեակ ըլլող հասարակ եւ ստորին մարդիկներ քովը ժողված էր։

Յակովբ Գ. երկու եղբայր ունէր որոնց սրտին ու բարուց ազնուականութիւնք թագաւորական սերունդէ ըլլալը կը ցուցընէին, ուր ասոր հակառակ թագաւորին վրայ հազիւ կը նշմարուէր։ Մէկուն անունն էր Ալպանի դուքս եւ երկրորդը Մար կոմս կը կոչուէր։ Ալպանի դքսին համար կ'ըսէ Քրոնիկոն մը, որ բարձրահասակ, աղէկ կազմուած եւ վայելուչ դէմքով էր, այսինքն խոշոր աչքեր, լայն այտեր, կարմիր քիթ եւ երկայն ականջ ունէր, բայց իրեն անհաճոյ ըլլող մէկու մը հետ խօսած ատեն գիտէր միանգամայն յարմար ատեն ահարկու եւ տխուր երես ցուցընել։ Մար կոմսն ասոր հակառակ մեղմագոյն բարք ունէր եւ իր քաղցրութեամբն ամենուն սիրտն իրեն կը քաշէր։ Երկուքն ալ ձիավարելու, որսորդութեան եւ հրացան նետելու մէջ կրթեալ էին, որոնց մէջ թագաւորը բոլորովին անկիրթ էր ի մեծ զարմացումն իր ազնուականաց՝ որոնք որ այսպիսի կրթութիւններն անհրաժեշտ հարկաւոր կը համարէին բարձր աստիճանի ազնուականաց համար. բայց թագաւորն երկիւղէն կամ բնական ընդդիմութեան համար ասոնց մէջ կրթուելու զանց առած էր։ Վերջէն պիտի տեսնենք որ Յակովբին մահուան պատճառ եղած է ձիավարելու մէջ իր անկրթութիւնը։

Յայտնի բան է որ աս երկու իշխանները թագաւորին մտերիմները կ'ատէին, որոնք ամենայն իշխանութիւնն իրենց ձեռքը բերելու համար զիրենք թագաւորին քովէն հեռացընել տուած էին, եւ ամէն առթի մէջ զիրենք թագաւորին առջեւ կ'ամբաստանէին։ Վերջապէս մտերիմները տեսան որ Յակովբ անոնց ամէն ըսածին ականջ կը կախէ, իրեն պատմեցին թէ Մար կոմսը վհուկներուն հարցուցած ըլլայ իմանալու համար որ թագաւորն երբ եւ ինչ

մահուամբ պիտի մեռնի, եւ վհուկները պատասխանած ըլլան որ տարին չլմընցած իր մերձաւոր ազգականին ձեռքէն պիտի սպանուի։ Դիւրահաւան եւ տկար Թագաւորն աս գուշակութենէն զարհուրած իր կողմանէ աստղաբաշխ մը կանչել տուաւ, որն որ նոյն ատենները շատ համբաւ ունէր։ Աս աստղաբաշխը՝ Քոչրէյն Թագաւորին մտերիմէն (որն որ երկու իշխանաց մահուչափ Թշնամին էր) կաշառուած ըլլալով, Թագաւորին ուրիշ բան մը պատասխան չտուաւ. բայց եթէ ըսաւ որ աստեղաց ընթացքին մէջ կը տեսնէ թէ Սկովտիայի մէջ առիւծ մը առիւծի կորիւնէ մը պիտի գիշատուի։ Աս պատասխանը վհուկներուն գուշակութեան հետ միաբան ըլլալով Թագաւորին կասկածն աւելի եւս շատցուց, ու հրամայեց որ երկու իշխանները բռնուին ու բանտարկուին։ Ալպանի դուքսըն Էտինպուրկի բերդը դրուեցաւ, իսկ Մար կոմսին վիճակը շուտով որոշուեցաւ, ինչու որ վհուկներուն գուշակութեան համաձայն ամենէն յանցաւորն ինքն էր։ Դժբախտ երիտասարդ իշխանին ձեռքին ու ոտքին երակները կտրելով բաղնիքի մէջ մեռցուցին։

Բարեբախտութեամբ Թագաւորն Ալպանի դըքսին սպանումը կ'ուշացընէր, թէպէտ եւ որոշած էր զինքն ալ մեռցընելու. բայց հաստատուն բանտի մէջ ձգելով ապահով կ'ըլլայ կը կարծէր։ Աս յապաղումը առիթ տուաւ երիտասարդ իշխանին բարեկամաց իրեն օգնութեան հասնելու։ Օր մը Կասքոնիայի գինւով բեռնաւորուած նաւ մը Լէյթ նաւահանգիստը մտաւ, աս նաւուն մէջ Ալպանի դքսին համար երկու տակառ գինի կար։ Բանտին պահապանաց հարիւրապետը ստուգելէն ետեւ որ երկու տակառաց մէջ միայն գինի կայ, երկուքն ալ իշխանին խուցը տանիլ տուաւ։ Բայց իշխանն աս յանկարծահաս պարգեւին տակ իմացաւ որ ուրիշ բան մ'ալ պիտի ըլլայ։ Աղէկ քննելէն ետեւ տակառի մը մէջ երկայն չուան, դաշոյն եւ մեղրամոմէ գնդակ մը գտաւ, որուն մէջ նամակ մը կար մէջը գրուած թէ Թագաւորը զինքն ի մահ դատապարտած է եւ երկրորդ օրը դատավճիռը պիտի կատարուի, թէ որ մերձաւոր գիշերը բերդէն չփախ-

չի։ Դաշոյնն ու չուանը փախուստը դիւրացընելու համար էին։ Աս անակընկալ լուրն իշխանը իր հաւատարիմ եւ բանտակից սենեկապանին հաղորդեց, եւ երկուքն ալ խորհուրդ ըրին որ ժամանակ չկորսընցընեն։ Ալպանին զհարիւրապետը՝ որն որ գինւոյն համը նայած էր եւ շատ պատուական գտած էր, իրիկուան կերակրոյ հրաւիրեց, եւ հարիւրապետն ա՛ն թէութեամբ յանձն առաւ որ նոյն սենեկին մէջ ուրիշ երեք զինուոր ալ ներկայ գտնուին։ Որոշեալ ժամը հարիւրապետն իր զինուորներով իշխանին սենեակը մտաւ ու.ր որ երկու սեղան պատրաստուած էին մէկը իշխանին, հարիւրապետին եւ սենեկապանին, եւ մէկալը երեք զինուորաց համար, եւ ամէն մէկուն վրայ առատ կերակուր եւ մէյ մէկ տակառ դրուած էին։ Ասոնցմէ զատ երկու սեղաններն ալ կերակուրները ոռոգանելու առատ գինի ունէին։ Ընթրիքէն ետեւ առաջարկեց իշխանը որ հարիւրապետին հետ սատրինջ խաղան խաղին ատեն տակառին յաճախ այցելութիւն ընելով. եւ իշխանը հարիւրապետին շատ գինի խմցընելու համար նոյն ժամանակուան առածը յառաջ կը բերէր որ Գինին խորովածէն աւելի յարգի է, ինչու որ միշտ կրնայ խմուիլ իսկ խորովածը կշտանալէն ետեւ ա՛լ վար չ'երթար։ Հարիւրապետը աս առածին պատիւ ընելով միշտ բաժակը կ'երկընցընէր։ — Երրորդ խաղի ատեն իշխանը հարիւրապետին քարերը շարժելու կերպէն տեսաւ որ գործելու ժամանակն եկած է, ու սենեկապանին նշան ընելով հարիւրապետին սիրտը դաշոյնը մխեց. Նոյն ժամանակը սենեկապանը զինուորին մէկը անձեռոցով խղդելու ատեն իշխանն երկու զինուորները դաշունով զարկաւ մեռցուց։ Ասի լմըննալէն ետեւ իշխանը հարիւրապետին ծոցէն բանալիներն առաւ, անկողնին տակէն չուանը քաշեց եւ վախնալով որ դիակները նորէն կենդանութիւն չառնուն երեքն ալ սենեկին մեծ վառարանին մէջ խոթեց եւ սենեկին մէջ որչափ որ փայտեղէն բան կար իրենց վրայ դիզեց։ Ասկէ ետքը բերդին վրայ ելլելով այնպիսի տեղ մ'ընտրեց վար իջնալու, ուր պահապանները զիրենք

չէին կրնար տեսնել։ Գիշերը շատ մութ ըլլալուն չկրցան տեսնել որ չուանին ծայրը գետին հասած է. եւ սպասաւորը վար իջնալու առջի փորձն ընել յանձն առաւ, բայց չուանին ծայրը հասնելով պարապ տեղ իր ոտից դադար կը փնտռէր, վերջապէս յանդգնեցաւ ու ինք զինքը վար ձգեց. բայց քսանուհինգ ոտք բարձրէն ինկաւ ու սրունքին մէկը կոտրեց։ Անմիջապէս գլխուն եկածը իշխանին իմացուց։ Իշխանն աւանց դժուարութիւններէ զանգիտելու նորէն սենեակը դարձաւ ու սաւանները հետը առնելով չուանին ծայրը կապեց եւ վար իջնալու սկսաւ։ Աս կերպով երկնցուած չուանը բաւական երկայն էր եւ իշխանն ողջ առողջ պարսպին ստորոտը հասաւ։ Շուտ մը սենեկապանը շալակը զարնելով ապահով տեղ մը տարաւ ու նաւուն որոշուած նշանը տուաւ։ Քիչ մ'ետքը երկուքն ալ նաւակը մտան եւ ութ օրէն ետեւ Գաղղիա ցամաք ելան։

Մար կոմսին մահն ու Ալպանի դքսին փախուստը Թագաւորին մտերմաց անամօթութիւնը աւելի եւս մեծցուցին։ Ռոպերթ Քոչրէյն՝ որն որ արուեստիւ որմնադիր էր ու մտերիմներուն գլխաւորը, Թագաւորին ագահութիւնը առիթ առնելով, Մար կոմսութիւնն ինչպէս նաեւ անոր ամէն կալուածներն ու մուտքերը ստըկով գնեց։

Մտերմին աս աներեսութիւնն ու Թագաւորին տկարութիւնը բոլոր Սկովտիայի մէջ մեծ տհաճութիւն պատճառեց, բայց Քոչրէյն փոխանակ ոգիները հանդարտեցընելու աւելի եւս գրգռեց՝ արծաթէ դրամին մէջ եօթնին երկու պղինձ ու կապար խառնելով եւ Թագաւորական հրաման հանել տալով որ անոնց յարգը զուտ արծաթէ դրամոց յարգին հաւասար ըլլայ։ Ասոր վրայ շատերն աս հրամանին դէմ ելան որով մեծ խռովութիւններ ծագեցան։ Քոչրէյնին բարեկամները ասի տեսնելով խորհուրդ տուին իրեն որ դրամները վերցընէ. բայց անիկայ պատասխանեց ‘‘Ան օրը երբոր կախուած կ'ըլլամ կը վերցուին, ո՛չ ուշ եւ ո՛չ կանուխ,,։

Աս ժամանակներս Եդուարդ Դ. Անգղիայի

Թագաւորը Պերուկը քաղաքը Սկովտիացւոց ձեռքէն առնելու կը պատրաստուէր։ Եւ իր նախորդաց օրինակին համաձայն, որոնք երբոր Սկովտիացւոց հետ պատերազմ բանալ կ'ուզէին, յառաջագոյն Սկովտիայի մէջ քաղաքական պատերազմ կը գրգռէին։ Ասոր համար Ալպանիի դուքսը Գաղղիայէն բերել տուաւ ու խոստացաւ որ զինքը Սկովտիայի աթոռը կը նստեցընէ թէ որ Անգղիացւոց հետ միանայ։ Երիտասարդ իշխանն ասանկ փառաւոր նուէրէն շլացած յանձն առաւ եւ Անգղիացւոց բանակին մէջ հրամանատարութիւնը վրան առաւ իր հայրենեաց դէմ։

Յակովբ աս լուրին վրայ իր ազնուականաց դիմելու ստիպուեցաւ, զորոնք այնչափ ատեն երեսէ ձգած էր։ Շուտով ամենուն ալ հրաւէր խրկեց, եւ ի պատիւ Սկովտիացւոց ամէնն ալ իր ձայնին հետեւեցան եւ Էտինպուրկի մօտ Պորոյմուր ժողվեցան։ Բայց երբոր տէրութեան մեծերը մէկտեղ եկան եւ գրեթէ յիսուն հազարի մօտ բանակ մը կազմեցին, նախ իրենց թագաւորին անպիտան կառավարութիւնը փոփոխելու հարկ համարեցան քան թէ հեռաւոր Անգղիացւոց դէմ արշաւել. ասոր համար Լաւտէր քաղքին եկեղեցւոյն մէջ գաղտնի ժողովքի մը ժողվուեցան։ Աս ժողովքին ներկայ էին գրեթէ Սկովտիացւոց ազնուականաց մեծագոյն մասը, ու ամէնն ալ թագաւորին մտերմաց վրայ կատղած՝ միաբերան պատուհանելիք ու անէծք կը կարդային։ Աս անօգուտ աղաղակէն ձանձրացած, Լորտ Կրէյ հրաման ուզեց ժողովականներէն որ անոնց առասպել մը պատմէ. երբոր հաւանութիւն առաւ, աւելի եւս ինքզինքը լսեցընելու համար ամպիոնի վրայ ելաւ։ — Կային ատենօք, ըսաւ կոմսը, շտեմարանի մը մէջ շատ մը մկեր, որոնք հոն շատ երջանիկ կեանք կ'անցընէին. բայց երբոր կալուածատէրն իր դրացւոյն քով կատու մը տեսաւ որ աղէկ ծառայութիւն կ'ընէր իրեն, ինքն ալ իր շտեմարանը հատ մը բերել տուաւ։ Ան օրէն հետէ առջի հիւրոց մէջ՝ որոնց հետ կատուն խիստ անողորմ կը վարուէր, մեծ տխրութիւն ինկաւ. եւ իրենց տառապանքն այնչափ մեծցաւ, որ որոշեցին

բան մը ճարելու։ Անոնց մէջ ծերագոյն ու իմաստնագոյն ճերմակ մուկ մը երկայն մտածելէն ետեւ խորհուրդ տուաւ որ կատուին վզէն բոժոժ մը կապեն, որպէս զի ամէն անգամ կատուին գալն իմանալով իրենք փախչելու ժամանակ ունենան։ Աս առաջարկութիւնը միաբերան հաւանութեամբ ընդունուեցաւ, բոժոժն ու դերձանը գնուեցաւ, եւ աս հարկաւոր առարկաները հոգացուելէն ետեւ նորէն խորհրդի նստեցան տեսնելու թէ կատուին վզէն բոժոժը կախելն ո՛վ յանձն պիտ'որ առնու. ասոր վրայ մկերէն եւ ոչ մէկը պատասխան տուաւ. ինչու որ բովանդակ ժողովքին մէջ եւ ոչ մուկ մը կար որ բոժոժը կախելու սիրտ ընէ։

Միլըրտ, պոռաց անդիէն Արքիպալտ կոմսն, որն որ Անկաս եւ Տուկլասեանց փոքր ճիւղին գլուխն էր, եւ բազմութիւնը պատռելով քարոզչին դիմացն ելաւ, ըսելով որ ձեր նմանութիւնը ճիշդ չէ, ինչու որ մկերը մուկ են, իսկ մենք մարդիկ, ես կ'ուզեմ բոժոժը կախել։

Աս պատասխանը բազմականները միաբերան հաւանութեամբ ընդունեցան, ինչու որ ամէնն ալ գիտէին որ Անկաս կոմսը թէ քաջ եւ թէ այրական մարդ մըն էր, եւ մէկ մը սկսածէն ետ չէր կենար։ Ամէնն ալ զէնքը չորս կողմն առած կը գովէին անոր քաջասրտութիւնը, եւ Գրէյ կոմսն ամպիոնէն ինջնալով Անկասին ձեռքը երկնցուց ու զէնքը Տուկլաս Բոժոժակապ անուամբ բարեւեց, աս անունը կոմսը մինչեւ իր մահը պահեց։ Նոյն վայրկեանը եկեղեցւոյն դուռը զօրաւոր մը զարնուեցաւ։ Հոն եղող ազնուականներն արդէն ամբողջ ժողված ըլլալով զարմացմամբ իրարու կը նայէին, եւ կը հարցընէին որ ասանկ իշխանական եղանակաւ դուռը զարնողն ո՛վ է։ Ռոպէրթ Տուկլաս դրան պահապանը հարցուց որ ո՛վ է, եւ հրամայական ձայն մը դրսէն եկաւ թէ Մար կոմս։

Ու իրօք Քոչրէյն էր որ երեքհարիւր պահապաններով եկած էր իմանալու համար թէ ազնուականներն հոն ինչ կ'ընեն։ Ազնուականք իսկզբան ան-

որոշ մնացին, բայց Անկաս կոմսն հրամայեց որ դուռը բանան, եւ Քոչրէյն սեւ թաւիշէ զգեստ հագած, ու վզէն ոսկիէ շղթայ եւ մէջքը փղոսկրէ փող մը կախած ամբարտաւանութեամբ ներս մտաւ, առջեւէն ախոռապետն իր սաղաւարտը տանելով: Տեա՛րք իմ, հարցուց Քոչրէյն զարմանք ցուցընելով եկեղեցւոյն մէջ այնպիսի ժամանակ ասանկ ժողովք մը գտնելուն վրայ. կրնա՞մ մի իմանալ առանց հետաքրքրութեան ձեր ժողվելուն պատճառը: — Այո՛, պատասխանեց Տուկլաս, իր նոր առած անունն արդիւնաւորիլ ուզելով, քու վրադ կը խօսէինք: — Ի՞նչ կը խօսէիք վրաս Տեա՛րք իմ, հարցուց Քոչրէյն: — Իրարու կը հարցընէինք որ քեզի պէս վատ եւ անպիտան մարդու ինչպիսի մահ տալու է, եւ մեր ամենուն կարծիքն է որ աւազակի պէս կախուիս:

Ա՛ս լսելով Արքիպալտ Տուկլաս անոր քովը մօտեցաւ եւ վզէն ոսկի շղթան փրցուց ըսելով որ չուան մը քու վզիդ աւելի վայելուչ է. իսկ Ռոպերթ Տուկլաս փղոսկրէ փողը վար առաւ ըսելով որ բաւական ժամանակ դժբախտութեան որսորդ եղար: Ասանկով զինքը գերի բռնեցին առանց հետը բերած երեք հարիւր հոգւոյ ընդդիմութեան միտ դնելու: Ասի ընելէն ետեւ ազնուականաց մէկ մասը թագաւորին վրանը մտան իսկ մէկալ մասը թագաւորին մէկալ մտերիմները գերի բռնեցին, միայն մէկը փախաւ Ռամսէ Պալմէն անունով, որն որ ազնուական տնէ ու դեռ տասնուերկու տարեկան էր, եւ թագաւորին գօտւոյն փաթթուելով ազնուականք չյանդգնեցան իրենց ձեռքը վրան երկընցընել, առանց թագաւորին բռնաբարութիւն ընելու, եւ կեանքն անոր շնորհեցին, իմացընելով թագաւորին որ մէկալներն ի մահ դատապարտուած են: Թագաւորն իր տկարութիւնը տեսնելով զիջանելու ստիպուեցաւ, առանց անոնց դատապարտութիւնը հաստատելու:

Հազիւ թէ մտերիմներուն ի մահ դատապարտուելուն լուրը տարածուեցաւ, բանակին մէջ մեծ ուրախութիւն ծագեցաւ, զինուորներն իրենց վզնոցներու չուանները հանեցին ու զիրենք կախելու մա-

տուցին։ Քոչրէյն որ շատ քաջասիրտ էր՝ այս գործողութեան ատեն իր անամօթութիւնն ու լրբութիւնը պահեց եւ միայն այս շնորհքը խնդրեց որ իր վրանին կարմիր մետաքսէ չուանովը կախուի․ բայց դահիճներն այս շնորհքը իրեն զլացան ու Լաւտէր գետին կամրջին վրայ զամէնն ալ ձիու մազէ չուանով կախեցին, որ հասարակ չուանէն աւելի նախատական կը համարուէր։

Այն իրիկունն ազնուականք փոխանակ Եդուարդին դէմ ելլելու, Էտինպուրկ դարձան ու թող տուին որ Անգղիացիք Պերուիք առնուն։ Եւ թագաւորը Սմիթլէն բերդը խիստ բայց պատուաւոր արգելանաց տակ դնելէն եւ իրենց ներքին գործքերը կարգաւորելէն ետեւ՝ Անգղիացւոց վրայ գացին ու իրենց Հատտինկթընին քով հանդիպեցան։

Երկու բանակ արդէն ճակատ առ ճակատ յարդարեալ կեցած էին, երբոր անդիէն երկու պատգամաւոր եկաւ միացեալ ազնուականաց բանակը։ Այս պատգամաւորներն էին Ալպանի եւ Կլոսեսթըր դքսերը որոնցմէ վերջինը ետքէն Ռիքարտ Գ․ անուամբ Անգղիայի թագաւոր եղաւ։ Ասոնք եկած էին չէ թէ միայն Սկովտիայի եւ Անգղիայի խաղաղութեան պայմանաց վրայ խօսելու, այլ նաեւ Սկովտիայի թագաւորին եւ անոր ազնուականաց մէջ միջնորդ ըլլալու։ Ալպանի իր գալստեան պատճառը զրուցելէն ետեւ Կլոսեսթըր իր կողմանէ ալ խօսելու սկսած ատեն, Բոժոժակաւոր Տուկլաս ընդհատեց զինքն ըսելով, Հրամանքդ Անգղիացի ես, Անգղիայի գործքերուն պատաղէ, եւ Ալպանի դքսին դառնալով, մեծ յարգանօք հարցուց իրեն որ ինչ կը բաղձայ։ — Ամենէն առաջ, պատասխանեց Ալպանի, կը բաղձամ որ թագաւորն իմ եղբայրս ազատուի։ — Տէր իմ, պատասխանեց Արքիպալտ, ձեր ուզածն անմիջապէս կը կատարուի, եւ գլխաւորաբար անոր համար վասն զի ուղղը դուք էք, իսկ ձեզի հետ եկող անձը չենք ճանչնար։ Թէ որ Սկովտիայի եւ Անգղիայի գործքերու վրայ խօսելու գանք, ան ատեն ուրիշ բան է, ձեզի խօսիլ կու տանք, ենթադրելով որ մեզի առաջարկածները մեր պատուոյն դէմ չեն ըլլար։

Աս կերպով երկու կողման ալ գործքերը կարգի մէջ մտան, ինչու որ Ալպանի եւ Կլոսեսթըր կամնեց ուզածը միայն պատուաւոր եւ երկու ազգաց համար շահաւոր բաներ էին։ Կլոսեսթըր Անգղիա դարձաւ, ուր թագաւոր եղաւ՝ Եդուարդ Գ.ը թունաւորելէն եւ անոր երկու որդիքը խղդելէն ետեւ. իսկ Յակոբ քանտէն ազատեցաւ եւ իր եղբօրը Ալպանի դքսին հետ այնպէս հաշտեցաւ որ երկու եղբարք մի եւ նոյն սենեակը կը քնանային եւ մի եւ նոյն սեղանը կերակուր կ'ուտէին։ Ամէն բաները կարգի մէջ էին, վասն զի քանի որ Յակոբ իր գեղեցիկ արուեստից վրայ ունեցած ճաշակին համեմատ եկեղեցիներ կը շինէր, Ալպանի՝ թագաւորութեան գործքերը կը հոգար։

Դժբախտութեամբ աս խաղաղութեան վիճակը միայն կարճ ատեն տեւեց, որովհետեւ Յակոբին կասկածն իր եղբօր վրայ այնպիսի սաստկութեամբ նորէն զարթեաւ, որ երկրորդ անգամ փախչելու ստիպուեցաւ, ու Ռիչարտոս Գ.ին ունեցած բարեկամութեան ապաւինելով Անգղիա գնաց։ Հոս տեղս քիչ մ'ետքը երկու տէրութեանց դժտութիւնները սկսելով, Ալպանի փոքր գնդի մը գլուխ անցաւ, աս գնդին մէջն էր նաեւ ծեր Տուկլաս, որն որ քանի տարի առաջ Յակոբ Բ.ին ատենը Անգղիա փախած էր իր Արքիպալտ եղբօրը վրէժը խնդրելու պատճառաւ։ Ալպանի Աննէնտէյլին քով սահմանէն անցնելով Սկովտիացիներէն յաղթուեցաւ, եւ աղէկ ձի հեծած ըլլալով Անգղիայի սահմանը նորէն հասաւ, իսկ Տուկլասին ձին սպաննուած ըլլալով Քիրք Փէթրիք անունով մէկու մը գերի ինկաւ, որն որ յառաջագոյն Տուկլասին հպատակն էր եւ անոր հրամանատարութեան տակ զինուորած։ Քիրք Փէթրիք իր տիրոջը վիճակը տեսնելով ու գթալով որ ինչ բախտ պիտի հանդիպի արցունքը չկրցաւ բռնել, ուզեց զինքն իր կենաց վտանգով ազատել, բայց Տուկլաս տխրութեամբ Ձէ, չէ, պատասխանեց, աշխատութեան չ'արժեր։ Եւ որովհետեւ թագաւորը զիս ողջ կամ մեռած բռնողին վարձք խոստացած է, անոր համար լաւագոյն է որ դուն իմ հին բարեկամս աս ստակը

վաստըկիս քան եթէ ուրիշ մը, ուստի մատնէ զիս որ ամէն բան մէյ մը լմըննայ։

Բիրք Փէթրիք Տուկլասին խորհրդեան չանսաց, այլ զինքն ապահով տեղ մը պահելէն ետեւ Էտինպուրկ գնաց եւ այնչափ ըրաւ որ Տուկլասին համար թագաւորէն թողութիւն առաւ։ Տուկլաս իր բարեկամին շնորհակալ եղաւ, եւ իր ծերութիւնն յառաջ բերելով Լինտորս վանքը քաշուեցաւ, ուր զինքը քիչ մ'ետքը նորէն պիտի գտնենք։ Հոս տեղս Տուկլաս քանի մը տարիէն ետեւ մեռաւ, եւ իրմով Տուկլասեանց երիցագոյն ճիւղն սպառեցաւ։

Թագաւորն իր եղբօրը խնամակալութենէ ազատելով՝ որն որ կասկածին գլխաւոր պատճառն էր, դարձեալ իր բնածին սխալմանց մէջ ինկաւ, այսինքն երկչոտութեան ու ագահութեան մէջ։ Դաւաճանութենէ վախնալով՝ արգիլեց որ զինեալ մարդ քովը չմօտենայ, եւ երկու հարիւր հոգիէ բաղկացած թիկնապահաց գունդ մը կազմեց Ռամսէյ Պալմէնին հրամանատարութեամբ, որն որ առջի մտերիմներէն ինք միայն մնացած էր եւ Լաւտերի դաւաճանութեան ատեն աղնուականք իրեն կեանքը շնորհած էին։ Ասով Թագաւորն իր կեանքն ապահովցընելով, ամէն կերպ յափրշտակութեամբ գանձ գանձի վրայ դիզել սկսաւ, զորոնք ամէնը մեծ սնտուկի մը մէջ կը պահէր, եւ զորն որ ժողովուրդը սեւ արկղ կ'անուանէր։ Բոլոր թագաւորութեան մէջ տհաճութեան ոգիներն այնչափ գրգռեցան որ գաղտնի նոր դաւաճանութիւն մը տարածուիլ սկսաւ եւ միայն յարմար ատենի կը սպասէին որպէս զի դուրս հանեն։

Առիթը չպակսեցաւ։ Թագաւորը Սթիրլին բերդին մէջ փառաւոր մատուռ մը շինել տուած էր եւ նոյն մատրան համար երգչաց եւ նուագահարաց երկու գունդ ժողված էր. բայց զասոնք պահպանելու համար թագաւորը չուզեց իր սեւ արկղը բանալ, այլ Քոլտինկեմ աբբայութեան մուտքերուն ձեռք զարկաւ։ Բայց աս աբբայութիւնը Հոմս եւ Հեփպէօռն կոմսից կալուածոց մէջն էր եւ երկու կոմսերն իսկզբան ուրիշներուն աչք գոցելով եւ յետոյ սովորութեամբ

 

ան վանքին Աբբան ընտրելու իրաւունք ստացած էին։ Ասոր համար երբոր թագաւորն ան աբբայութեան ձեռք երկնցուց՝ վերոյիշեալ երկու կոմսերը դաւաճանութիւնը զինեալ ձեռօք շարժելու սկսան, եւ տժգոհ ազնուականաց հետ թղթակցելու առիթ առին, մանաւանդ անոնց հետ, որոնք Լաւտերի կամրջին դաւակցութեան մասնակից եղած էին. ասոնց մէջն էր նաեւ բոժոժակապ Անկաս կոմսը։ Դաւակցութիւնն այնպէս գաղտնի կազմուեցաւ ու աճեցաւ որ բոլոր դաւակիցներն արդէն զինաւորեալ էին, երբ որ թագաւորն անոր առջի լուրն առաւ։

Թագաւորն աս աշխարհքիս վրայ միայն երկու բան կը սիրէր, այսինքն իր որդին ու սեւ արկղը, եւ ասոր համար առջի հոգն եղաւ զանոնք ամենէն առաջ ապահովցընել։ Իր որդին Սթիրլին բերդի մէջ դրաւ, որն որ առանց մատնութեան չէր կրնար առնուիլ, իսկ իր գանձը Էտինպուրկի ներքնատան մը մէջ թաղեց։ Երբոր աս երկու առարկաներն ապահովցուց, անմիջապէս հիւսիսային կողմերը քաշուեցաւ եւ անտեղացի ազնուականաց հրաւէր խրկեց։ Եւ որովհետեւ հիւսիսային եւ հարաւային կոմսից մէջ նախանձախնդրութիւն մանաւանդ թէ ատելութիւն կը տիրէր, անոր համար հիւսիսային կոմսերէն շատերը իր հրաւէրն ընդունեցան ու քովը ժողվուելով երեսուն հազարի չափ բանակ մը կազմեցին։

Թագաւորն ասանկ զօրաւոր բանակ մը քովը տեսնելով քիչ մը հոգի առաւ եւ Լինտսէյ կոմսին խրատով սկսաւ թշնամւոյն դէմ շարժիլ։ Ճամբուն վրայ ծեր Տուկլասին հանդիպեցաւ, որն որ Լինտորս վանքին մէջ կրօնաւոր եղած էր. եւ խոստացաւ իրեն իր առջի պատիւն ու տիտղոսն ետ տալու թէ որ իր բանակին գլուխն անցնի եւ իր անուամբ ապստամբաց բանակին մէջ գտնուող իր հպատակներն ետ կենալու յորդորէ։ Բայց ծեր կոմսին մտածութիւնները հիմակ աւելի խաղաղական էին, եւ աշխարհական իրերէ երկնաւորներու անցած էին, ուստի գլուխը շարժելով, Ա՛խ Ա՛րքայ, պատասխանեց, ձեր սեւ արկղն եւ զիս՝ շատ երկայն ատեն փականքի տակ պահեցիք, անանկ

որ ոչ մէկը եւ ոչ մէկուն ասկից ետեւ ձեռքի օգուտ մը կրնան ընել։

Չուին երկրորդ օրը Թագաւորն հրաման տուաւ որ պատերազմը սկսին։ Ուստի երբոր ճակատը յարդարեցին Լինտսէյ կոմսը փառաւոր ձիու մը սանձէն բռնած Թագաւորին մօտեցաւ եւ ծնկան վրայ եկած, Տէր Արքայ, ըսաւ, աս անասունը իբրեւ պարգեւ քու հաւատարիմ ծառայէդ ընդունէ, որովհետեւ եթէ վրան աղէկ նստելու ըլլաք, թէ թշնամին հալածելու եւ թէ անկից փախչելու ատեն ոչ Սկովտիայի եւ ոչ Անգղիայի երիվար մ'անոր արագութեան կրնայ հասնիլ։ Թագաւորը թէպէտ եւ իր ցաւն յայտնեց որ դէշ հեծնող է, բայց պարգեւն ընդունեցաւ, եւ իր ձիէն վար իջնալով գեղեցիկ երիվարին վրայ հեծաւ, եւ անմիջապէս ալ փորձեց մէկ բլուրի մը վրայ վազցընելով ուսկից որ թշնամեաց դիրքը կրնար դիտուիլ։ Բայց հազիւ թէ հոն հասաւ, զարմացաւ մնաց տեսնելով որ թշնամին իր թագաւորական դրօշակն յառաջ կու գար. սարսափած ասդին անդին նայելու սկսաւ, կարծեց որ երազ է. բայց մէկէն սարսափելի խորհուրդ մ'ինկաւ միտքը որ չըլլայ թէ իր սեպհական որդին իրեն դէմ ելած ըլլայ։

Նոյն իրօք այնպէս էր. Հոմս, Անկաս, եւ Պոթուէլ կոմսերը Ստիրլին հասնելով բերդին հրամանատարէն պահանջեցին որ արքայազուն իշխանը իրենց ձեռքն յանձնէ։ Աս հրամանատարն արդէն ի ծածուկ անոնց կողմն ըլլալով առանց ընդդիմութեան հաւանեցաւ, եւ ասանկով կորիւնը ծեր առիւծի դէմ կ'ելլէր, որդին՝ հօր դէմ։

Աս որ տեսաւ խեղճ հայրը քիչ մ'ունեցած քաջասրտութիւնն ալ կորսընցուց. յիշեց Մար կոմսին վհկաց գուշակութիւնն որ իր մերձաւոր ազգականէն պիտի սպաննուի, եւ իր աստղաբաշխին հմայութիւնը որ ծեր առիւծը կորիւն առիւծէն պիտի գիշատուի։ Թագաւորին քովինները երբ որ տեսան որ երթալով անոր երեսին գոյնը կը նետէ ու ինքզինքը կը կորսընցընէ, իմացան որ իրենց գործքին շատ արգելք պիտի ըլլայ, ուստի աղաչեցին զինքը որ հեռանայ, եւ Թա-

գաւորը վերջապահաց քով քաշուեցաւ։ Նոյն վայրկեանը պատերազմն սկսաւ։

Հռոմ եւ Հեփեստիոն աջի յարձակումն ըրին Թագաւորականաց առաջապահից վրայ, որոնք բոլորովին լեռնականներէն կազմուած էին ու յարձակողները նետերով ընդունեցան։ Յարձակողներուն նետերէն, որն որ կարկտէն աւելի թանձր իրենց վրայ կ'իյնային՝ ետ քաշուելու ստիպուեցան, բայց նոյն ժամանակը Լիոնտէյլի ու Անէնտէյլի նախարարներուն զօրքը, որոնք Սկովտիայի մէջ ամենէն երկայն նիզակներ կը գործածէին, մեծ աղաղակ բրցնելով նետաձիգները ետ մղեցին։ Թագաւորն երբոր աս աղաղակը լսեց եւ ծագած խռովութիւնը տեսաւ, խելքը կորսնցուց, եւ առանց ըրածը գիտնալու գրեթէ ակամայ ձիուն կուշտը մտրակ զարնելով թշնամւոյն կռնակը դարձուց, այնիւ երիվարն եղջերուի մը պէս ցատկեց եւ կայծակի պէս Սթերլինի ուղղութեամբ արշաւեց, Թագաւորն որչափ որ ջանաց երիվարին արագութիւնը նուազցընել չկրցաւ, մինչեւ որ աւան մը հասաւ ուր Պիթնմիլ կոչուած ջրաղացքը կար։ Նոյն վայրկեանը պառաւ մը ձեռքը կուժ առած գետակէն ջուր առնելու կ'երթար, բայց երբոր տեսաւ որ զինեալ մարդ մը անհնարին արագութեամբ դէպ իրեն կ'արշաւէ, կուժը գետին ձգեց ու ջրաղացքը փախաւ։ Աս կուժէն ձին խրտչելով կողմնակի սալասփելի վազք մ'ըրաւ, որուն անակընկալ ցնցումէն Թագաւորը չկրնալով ինք զինք թամբի վրայ հաստատուն բռնել, վար ինկաւ. իսկ ձին նոյն արագութեամբ իր ընթացքը շարունակեց աւանին մէջէն։

Անմիջապէս աւանին մարդիկներն անկելոյն օգնութեան եկան որն որ անկման սաստկութենէն փնասուած մարած էր, ու ջրաղացը տարին, սաղաւարտն ու զրահը հանեցին եւ անկողին դրին։ Տասը րոպէէն ետեւ Յակովբ աչքը բացաւ ու քահանայ մ'ուզեց։ Քովը կեցողներն անոր ով ըլլալը իմանալ ուզելով, ջրաղացպանին կնիկը հարցուց վիրաւորելոյն։ Ո՛հ, պատասխանեց, Յակովբ, աս առտու դեռ ձեր Թագաւորն էի, բայց հիմայ չեմ գիտեր թէ ինչ եմ։ Կնիկն աս

որ լսեց տնէն դուրս վազեց ու պոռալով սկսաւ կանչել. Թագաւորին համար քահանայ մը, Թագաւորին համար քահանայ մը, Թագաւորին համար քահանայ մը . . . :

Ընցաւոր մը ասի լսելով, ես քահանայ եմ ըսաւ, զիս Թագաւորին առջեւ տարէք: Կնիկին ուրախութեամբ զինքը սենեակ կը տանի ու Թագաւորին անկողնոյն առջեւ բերելով ինք ետ կը քաշուի: Անծանօթը Թագաւորին մօտենալով հարցուց որ խիստ վիրաւորեալ ես. Ո՛հ, ըսաւ Թագաւորը վէրքս մահացու չեմ կարծեր, եւ քիչ մը դարման տանելով կը յուսամ որ կը բժշկուիմ. բայց հիմայ ուրիշ բանի հարկաւորութիւն չունիմ բայց եթէ քահանայի մը, որուն խոստովանելով մեղացս թողութիւն առնեմ:
— Ա՛ռ, ուրեմն, ըսաւ անծանօթը, ու դաշոյնը Թագաւորին սիրտը խոթեց, որն որ անմիջապէս հոգին աւանդեց միայն Յիսուս, Աստուած իմ . . . ըսելով: Ասոր վրայ Թագաւորասպանը Թագաւորին մարմինը շալակին առնելով տնէն ու աւանէն հեռացաւ առանց մէկէ մ'ընդդիմութիւն կրելու. եւ ասկից ետեւ մինչեւ հիմայ չիմացուեցաւ որ Թագաւորասպանն ով էր եւ Թագաւորին մարմինն ինչ եղաւ:

Թագաւորը հոգին աւանդած ատեն Թագաւորականք պատերազմը կորսնցուցին (1488ին Յունիսի 18ին):

Այսպէս մեռաւ Յակոբ Գ. անխոհեմ եւ երկչոտ իշխանը: Թէ որ իր եղբօրը սպանումն ալ բանի տեղ չդնենք, անգութ եւ միանգամայն ագահ Թագաւոր մըն էր: Իր գեղեցիկ արուեստից վրայ ունեցած ճաշակը, իբրեւ առանձնական մարդ շատ գովելի կ'ըլլար թէ որ իր Թագաւորական պարտքերը զանց չառնուր: Ի ծաղիկ հասակի գրեթէ 36 տարուան մեռաւ, ինչպէս որ իր գերդաստանին մեծագոյն մասը նոյն հասակին մէջ կեանքը կը կնքէին: — Իր որդին զինքը յաջորդեց իբրեւ Յակոբ Գ.:

# ԳԼՈՒԽ Դ.

Յակոբ Դ.ին կառավարութիւնը։ Լենոքսէյ՝ կոմսին դաւաճանութիւնը։ Անդրէաս Վուտին ծովային պատերազմները։ Փերքին Վարպէքին համար Անգղիոյ յարձակում կ՚ըլլայ։ Անգղիոյ հետ խաղաղութիւն։ Յակոբ Հենրիկոս Է.ին Մարգարիտա դստեր հետ կ՚ամուսնանայ։ Անգղիոյ եւ Սկովտիոյ մէջ եղած գրգռութիւնները։ Պարթընին նաւական պատերազմները։ Անգղիոյ վրայ յարձակում։ Ֆլոտտոնի պատերազմը։ Յակոբ Դ.ին մահը։

Յակոբ Դ. իր հօրը մեռած ատենն որչափ որ պզտիկ ալ էր իմացաւ որ հօրը դէմ ելլելով ըրած գործը անպիտան է, եւ հօրը մահուան գլխաւոր պատճառ ինք զինքը կը համարէր, թէպէտեւ իր տղայութիւնն եւ ազնուականաց հրապուրանքը, որոնք ճիշդ խօսելու համար զինքն յափշտակած էին եւ իրեն յակամայ կամս գործել տուած էին, ըստ բաւականի կ՚արդարացընէին։ Բայց ինք եղած գործքին վրայ զղջալով ինք զինքն եկեղեցական ապաշխարանաց տակ ձգեց։ Իր անձնական ապաշխարանաց համար երկաթէ գօտի մը պարզ մարմնոյն վրայ կը կրէր եւ ամէն տարի երկու ունկի վրան աւելցընելով կը ծանրացընէր, ուզելով ցուցընել որ հասակն առնելով եղած գործքը չ՚ուզեր մոռնալ։ Այս ներքին զղջման պատճառաւ չէ թէ միայն այն ազնուականաց, որոնք որ իր հօրը կողմն էին եւ իրեն դէմ պատերազմած էին կատարեալ թողութիւն շնորհեց, ու զիրենք հալածելը դադրեցուց, այլ նաեւ ըստ կարի ջանաց երկու կողմնակցութիւններն իրարու հետ հաշտեցընել։ Որովհետեւ յաղթութենէն ետեւ իր կողմնակիցները ծեր թագաւորին կողմնակցաց հետ խստութեամբ վարուելու սկսան ու զանոնք կործանելու ջանալով իրենք զիրենք անոնց կալուածներով հարստացընել ուզեցին։ Եւ ասոր համար զիրենք խորհրդանոցի առջեւ պատասխանատու ընելու կը ջանային։ Ուստի ամենէն առաջ 1489ին Մայիսի 10ին խորհրդանոցին առջեւ Լենոքսէյ կոմսն դատաստանի կանչեցին, որն որ թէպէտ քաջ զինուոր էր բայց անտաշ ու շատ տգէտ էր, ու վրան գլխաւոր յանցանք կը դնէին որ պատերազմէն յառաջ ծեր թագաւորին ընտիր ձի եւ սուր մը տուած է եւ միան-

գամայն արքայորդին եւ անոր կողմնակիցները բնաջինջ ընելու խորհուրդ տուած է։ Լինտսէյ դատաստանական բաներէ չէր հասկընար բայց որովհետեւ ամբաստանութեան պատասխան տալու շատ անգամ հրաւիրուեցաւ, մէկէն ցաթկեց եւ իր կոշտ ոճոյն համեմատ ըսաւ "Ժողվուած խորհրդանոցին ամէն ազնուականներն աւազակ ու մատնիչ են, եւ ես իմ սրովս ասի կրնամ ցուցընել։ Վերջին Թագաւորն անգութ կերպով մը սպաննուեցաւ կողմնակցութենէ մը, որն որ իր գործքը բարեքելու համար արքայազուն իշխանն իբրեւ պատրուակ առած էր,,։ Եւ խորհրդանոցին մէջ նստող Թագաւորին դառնալով, ըսաւ, "Թէ որ ձեր հայրը դեռ ապրէր, իմ կեանքս իրեն համար շատ անգամ զոհելու պատրաստ էի եւ հոս տեղս նստող ամէն անարգ աւազակներէ եւ ոչ մէկէ մը կը վախնայի, եւ կամ թէ որ դուք որդի մը ունենայիք եւ ձեզի դէմ ապստամբէր, ան ատեն ան ապստամբութեան կողմնակիցներուն դէմ ձեզի կ'օգնէի։ Հաւատացէք ինծի որ թէպէտ եւ ամէնն ալ զիս ձեր առջին կ'ամբաստանեն, պատրաստ եմ ցըցունելու որ անոնցմէ աւելի հրամանոցը հաւատարիմ եմ,,։ Ատենադպիրը Լինտսէյին աս խօսակցութիւնն ուզեց քիչ մը մեղմացընել ըսելով որ Լինտսէյ հին խմորոյ մարդիկներէն է ու դատաստանական բաներէ չիհասկընար, եւ Թագաւորին առջեւ պատշաճ յարգանօք խօսելու վիճակի մէջ չէ։ Բայց ըսաւ որ կ'ուզէ Թագաւորին ինք զինք հպատակել։ Եւ Լինտսէյին դառնալով ըսաւ, ամենէն աղէկ ըրած կ'ըլլաք թէ որ Թագաւորին առջեւ խոնարհիք. որով Թագաւորն ալ ձեզի թողութիւն կու տայ։

Լինտսէյ եղբայր մ'ունէր Փեթրիք Լինտսէյ անուամբ որն որ յաջողակ օրէնսգէտ էր ինչպէս որ ինքն ալ քաջ զինուորական. բայց իրարու հետ այնչափ միաբան չէին երկայն ժամանակէ ի վեր։ Բայց երբոր Փեթրիք ատենադպրին խօսքը լսեց իր մեծ եղբօրը ոտքը կոխեց որպէս զի իմացընէ անոր որ ատենադպրին տուած խորհուրդը չընդունի, որովհետեւ զանի ընդունելով ինք զինք յանցաւոր համարած կ'ըլ-

լոյ: Լինտսէյ աս ակնարկութեան պատճառը չիմացաւ, այլ կատաղի նայուածք մը նետելով եղբօրը վրայ, որն որ դժբախտութեամբ անոր ցաւոտ ոտքին վրայ կոխած ու շատ ցաւցուցած էր. “Ալ ասի չափն անցաւ, ըսաւ, թէ որ թագաւորին առջեւ չըլլայինք ապտակ մը քեզի կ'ինջեցընէի որ ականջներդ կը խօսէին,,: Բայց Փեթրիք աս սպառնալից խօսքը մտիկ չընելով ոտք ելաւ ու հրաման ուզեց իր եղբայրը պաշտպանելու: Եւ այնպէս խօսեցաւ որ չէ թէ միայն Լինտսէյ կոմսին այլ նաեւ ուրիշ կոմսից վրայ եղած ամբաստանութիւնները խորհրդանոցը մերժեց: Լինտսէյ եղբօրը պաշտպանութիւնը մտիկ ըրաւ, առանց բան մը հասկընալու, բայց խորհրդանոցին ընթացքէն իմացաւ որ որոշումն իր կողմն է, ու եղբօրը դառնալով հետեւեալ խօսքերով շնորհակալութիւնն յայտնեց. “Ճշմարիտ ըսելով եղբայր, աղէկ կրնաս եղեր խօսիլ. չէի գիտեր որ այնչափ լեզու ունենաս, աս գործքիդ համար երկնից արքայութիւն քեզի կը բաղձամ,,:

Նորընտիր թագաւորը չէ թէ միայն քաջ, յաջողակ ու զօրաւոր էր այլ նաեւ իր հօրը բոլորովին հակառակ առատաձեռն: Աս առատաձեռնութեամբ տէրութեան շատ օգուտ ըրաւ, ինչու որ երբոր Էտինպուրկի շտեմարաններուն մէջ հօրը թաղած սեւ արկղն ուրիշ բազմաթիւ ոսկեղէն եւ արծաթեղէն անօթներով, գտաւ բոլորն ալ իր ազնուականաց բաշխեց, որոնք թէ իրեն համար եւ թէ իրեն դէմ ծառայելով աղքատցած էին:

Յակոբ Ա.էն ետքը Սկովտիայի ամենէն անուանի թագաւորներէն մէկն Յակոբ Դ. կրնայ համարուիլ. արդարութեան շատ նախանձախնդիր էր եւ իր հպատակներն առանց իրենց աստիճանին նայելու հաւասարապէս կը պաշտպանէր, որով ժողովրդեան սէրն ու մեծարանքն իրեն քաշեց: Իր կառավարութեան ատեն Սկովտիայի վաճառականութիւնը շատ ծաղկեցաւ: Իրեն գլխաւոր միտումը, զորն որ հօրմէն ժառանգած էր, նաւական զօրաց վրայ էր: Իր գլխաւոր սիրելիներէն մէկն էր Անդրէաս Վուտ, որն որ ինք զինք ծովական ծառայութեան տուած էր ու

շատ համբաւ հանեց։ Եւ մէկ գլխաւոր պատճառն, որուն համար Յակովբ զինքը շատ կը սիրէր ան էր որ Անդրէաս Վուտ միշտ ամէն դէպքի մէջ թագաւորական տան հաւատարիմ մնացած էր, եւ վերջի պատերազմի մէջ թագաւորական բանակին շատ վիրաւորեալներն իր նաւերն առաւ ու մեծ հոգով առանց շահասիրութեան հոգաց։

Երբոր երկու տարի ետքը հինգ նաւէ բաղկացած անգղիական նաւախումբ մը Ֆորթ ծովածոցը մտաւ եւ քանի մը սկովտիացի նաւեր կողոպտեց, Անդրէաս իր երկու նաւերով (երկու նաւէն աւելի ունեցած չէր) անոնց ետեւէն ինկաւ ու հինգ նաւերն ալ գերի բռնեց, եւ օր մը երբոր Յակովբ Լիթ քաղաքին մէջն էր բռնուած հինգ նաւապետները թագաւորին ընծայ ըրաւ։ Յակովբ անմիջապէս զանոնք Հենրիկոս Է.ին խրկեց, անոնց ձեռքը զրուցել տալով որ Սկովտիացիք ինչպէս որ ցամաքի վրայ նոյնպէս ծովու վրայ ալ պատերազմիլ գիտեն։ Հենրիկոս աս այպանող պատգամաւորութեան վրայ կատղելով Փորթսմութէն, ուր որ նոյն ատենը կը գտնուէր իր ամենէն քաջ նաւապետը Ստեփան Պուլ՝ բերել տուաւ որ Անդրէաս Վուտին վրայ յարձակի։ Պուլ հնազանդեցաւ եւ իր հակառակորդին Ֆորթ ծովածոցին մէջ պատահեցաւ, եւ պատերազմն անմիջապէս այնպիսի սաստկութեամբ մղեցին երկու կողմանէ ալ որ իրենց նաւերուն վրայ հսկողութիւն չտանելով նաւերնին ալիքներէ մղուած մինչեւ Թէյ ծովածոց մտան։ Տասներկու ժամ պատերազմելէն ետեւ երեք Անգղիացի նաւ գերի ինկան, եւ Վուտ իր սովորութեան համեմատ գերիները թագաւորին ընծայ ըրաւ։ Յակովբ նորէն Հենրիկոսին ծովապետն եւ երկու ընկերներն Անգղիա խրկեց, անոնց պատգամելով որ իրենց թագաւորին ըսեն թէ առջի պատգամաւորութեան պատասխան չառնելով կը բաղձայ իմանալ որ արդեօք իրենց պատգամաւորութիւնը կատարած են։ Ան օրէն ետեւ Հենրիկոս ալ դադրեցաւ աննուաճելի Վուտէն վրէժ առնելու։ Յակովբ նոյն ատենները նոր նաւեր շինել տալով Սկովտիայի նաւական զօրութիւնն սկսաւ մեծնալ։

Այս ժամանակներս զարմանալի գիւտ մը պատահեցաւ որն որ մինչեւ հիմայ մեզի առեղծուած մ'եղած է։ Աղնուական ու գեղեցիկ տեսքով երիտասարդ մը քսան մինչեւ քսանուերկու տարեկան 1496ին հազար հինգհարիւր հոգւով Յակովբին արքունիքն եկաւ, ըսելով որ Անգղիայի Եդուարդ Թագաւորին երկրորդ որդին է ու իր եղբայրը սպանողներուն ձեռքէն ազատած է։ Իր փախստեան մանրամասն դէպքերը, ու Պուրկունտիայի դքսուհիէն ընդունուելուն պատմութիւնը, զորն որ նոյն իսկ դքսուհին իր նամակաց մէջ կը հաստատէր, Սկովտիայի Թագաւորը համոզեցուցին որ պարիկայ Անգղիայի օրինաւոր ժառանգն է. եւ խոստացաւ իրեն որ զինքն Անգղիայի աթոռը նստեցընելու օգնական կ'ըլլայ։ Զինքն իր աստիճանին համեմատ ընդունեցաւ եւ Հունթլի կոմսին աղջիկը հետ կարգեց, որն որ թագաւորական ազգականութիւն ունէր եւ Սկովտիայի մէջ ամենէն գեղեցիկ աղջիկն էր։

Ժամանակ անցնելէն ետեւ սուտանուն Եորքի դուքսն Յակովբին տուած խոստումն յիշեցուց որ Անգղիայի աթոռը գրաւելու իրեն նպաստամատոյց ըլլայ, հաստատելով որ Անգղիա մտածին պէս իր հօրը կողմնակիցները անմիջապէս ոտք կ'ելլեն։ Յակովբ իր տուած խոստմանը համեմատ Նորթէօմպըրլէնտ կոմսութիւնն արշաւեց, բայց շատ տխրեցաւ երբոր տեսաւ որ դուքս տուած հրովարտակներն օգուտ մը չըրին։ Ասի խրատ եղաւ Յակովբին որ յառաջ չերթայ եւ Թագաւորութեան հետամուտը յորդորեց որ քաշուի ու Սկովտիայի մէջ հանգիստ կեանք անցընէ։ Բայց ինքն իր խնդրոյն վրայ վստահանալով թագաւորին առաջարկութիւնը մերժեց ու Քոռնուէլս գնաց, ուր նորէն փորձ փորձելով չկրցաւ յաջողցընել եւ բռնուելով Լոնտոն գլխատուեցաւ։ Աս սուտանուն Եդուարդ թագաւորին որդւոյն դատաստանը հրատարակուելէն իմացուեցաւ որ ինքը Ֆլանտրացի մախտախնդիր մըն էր՝ Փերքին Վարպէք անունով, եւ աս խաղը խաղալու Պուրկունտիայի դքսուհիէն խրատուած է։ Բայց ասանկ յայտարարութիւն մը չկրցաւ հաստա-

րակութիւնը համոզցընել, եւ շատերը կը հաւատային որ աս դժբախտ երիտասարդը ճշմարիտ Եորքի դուքսն էր։ — Հենրիկոս Է. ստանալուն Եորքի դքսին կնոջը Կորտոն կատարինէին, որուն գեղեցկութեանը համար Սկովտիայի ճերմակ վարդ անուն դրած էին, Թոշակ կապեց եւ Անգղիայի Թագուհւոյն մասնաւոր պաշտպանութեան տակ ձգեց։

Աս ժամանակներս Հենրիկոս Է. արիւնաթաթախ աթոռը նստած ըլլալով եւ քաղաքային պատերազմներով խռովեալ ժողովրդեան մը վրայ տիրելով, խաղաղութեան հարկը կը տեսնէր, ասոր համար Յակոբէն եօթը տարուան զինադադար խնդրեց եւ ընդունեցաւ։ Առջի բանակցութիւնն ուրիշ ծանրակշիռ բանակցութեան մը պատճառ եղաւ։ Սկովտիայի Թագաւորը չափահաս էր եւ Հենրիկոս Է. Մարգարիտա անուամբ դուստր մ՚ունենալով, Յակոբին խնամցընել տուաւ որ չէ թէ միայն պարզ ժամանակաւոր զինադադար մը, այլ տեւական խաղաղութիւն մը, չէ թէ միայն սահմանակցական դաշն մը այլ գերդաստանական կապ մ՚ընելու կը բաղձայ։ Աս առաջարկութիւնը Յակոբին շահաւոր երեւցաւ, ու հաւանեցաւ։ Ամուսնութեան դաշինքները շինուեցան եւ Մէօսէքս կոմսը հարսը Սկովտիա բերաւ։

Աս ամուսնութենէն է որ հարիւր տարի ետքը Յակոբ Զ. Սկովտիայի Թագաւոր, Յակոբ Ա. անուամբ Անգղիայի Թագաւոր եղաւ, Սթուարթեանց Թագը Անգղիայի Թագին հետ միացընելով։

Ամենայն ինչ խաղաղութեամբ յառաջ կ՚երթար քանի որ Հենրիկոս Է. կ՚ապրէր, եւ Յակոբ աս ժամանակն ի գործ ածեց ներքին պատերազմաց հետքերը, որոնք այնչափ երկայն տարիներով Սկովտիա աւերած էին, ջնջելու. բայց երբոր Հենրիկոս Է. մեռաւ եւ Հենրիկոս Ը. գահը նստաւ պարագաները փոփոխուեցան, ինչու որ Հենրիկոս Ը.ին առջի գործքն եղաւ իր հօրը կտակաւ ձգած Մարգարիտայի բաժինը՝ Յակոբ Դ.ին զլանալ, որով երկու տէրութեանց մէջ փոքր գժտութիւն մը ծագեցաւ։

Լուդովիկոս ԺԲ. Գաղղիայի Թագաւորը Սկով-

ղիայի եւ Անգղիայի անմիաբանութեան մէջ իր քաղաքական շահը տեսնելով, երկու տէրութեանց մէջ ծագած գժտութիւնն իմացածին պէս Սկովտիայի խորհըրդանոցին եւ Թագաւորին մտերմաց մէջ առատ ոսկի բաշխելու սկսաւ, որպէսզի Թագաւորին հասկըցընեն, թէ ի դիպուածի որ Անգղիա Գաղղիայի վրայ յարձակում ընէ, ինքը (Լուդովիկոս) պատրաստ է Սկովտիայի նիզակակցութիւնն Յակովբէն որոշուած գնով գնելու։ Յակովբ ինքզինքը բանի մը չպարտաւորեց, բայց երկու Թագաւորաց գործելու կերպը բաղդատելով յայտնի կ'երեւար որ Հենրիկոսին կողմը պիտի չըլլայ։

Ասոնք ըլլալու առեն երկու դրացեաց մէջ անմիաբանութեան նոր պատճառ մ'ալ ծագեցաւ։ Յակովբ ինչպէս որ վերն ըսինք ծովակալութեան վրայ սէր ունենալով իր ծովական զօրութիւնը տասնուվեց նաւէ բաղկացեալ նաւատորմիղ մը շինելով մեծցուց, անոնց մէջ էր Միքայէլ անուամբ մեծ նաւը, որն որ ինչպէս կը պատմեն մինչեւ նոյն ժամանակը շինուած նաւերուն մէջ ամենէն գեղեցիկ պատերազմական նաւն էր։ Դէպքը բերաւ որ 1476ին Սկովտիացի ազնուականի նաւ մը Փորթուկալցիներէն կողոպտուեցաւ եւ կրկին անգամ հատուցում պահանջուելով չկատարուեցաւ։ Աս ազնուականն որուն նաւն որ կողոպտուած էր երեք որդի ունէր, որոնք քաջասիրտ ու յանդուգն մարդիկ էին, Թագաւորէն ասպատակութեան Թուղթ մ'ուզեցին որուն զօրութեամբ Փորթուկալցի նաւերուն վրայ այնչափ առեն կարենան ասպատակութիւն ընել մինչեւ որ իրենց կորստեան տեղը լեցընեն։ Թագաւորն անոնց հրաման տալով՝ երկու նաւ պատրաստեցին եւ իրենց Պարթըն մեծ եղբօրը առաջնորդութեամբ, որն որ նոյն ժամանակուան անյաղթ ծովահէններէն մէկն էր, Լա մանշ անցքի մէջ երթեւեկութիւն ընելու սկսան։ Բայց նոյն առենները Փորթուկալցի նաւերն ան կողմանց քիչ այցելութիւն կ'ընէին, եւ Անդրէաս Պարթըն իր ծախքը չէր կրնար հանել թէ որ երբեմն երբեմն Անգղիացի հպատակաց նաւերը չկողոպտէր, որոնք նոյն ժամանակը Փորթու-

կայլոց նիզակակից էին։ Ասոր Ցախովը հոյլրապար մէջ կը գտնէր, բայց Հենրիկոս Ը. այնպէս չէր մտածեր, եւ տեսնելով որ տրտունջ ընելը պարապ է, որոշեց որ իր հպատակաց մնասուցը վրէժն հանէ։ Աս պատճառաւ երկու զօրաւոր պատերազմական նաւ պատրաստեց եւ մէջը ընտիր նաւաստիներով զինելէն ետեւ հրամանատարութիւնը Սէօսսէքս կոմսին Թոմմաս եւ Էդուարդ երկու որդւոցը յանձնեց, ապըսպրելով որ Պարթըն ողջ կամ մեռած իրեն բերեն։ Երկու երիտասարդներն իրենց քաջութիւնը ցուցընելու առիթ ունենալով, մէկ վաճառականի նաւապետ մ'իրենց առաջնորդ առին որուն նաւը Պարթըն քիչ մ'առաջ կողոպտած էր։ Աս առաջնորդը զիրենք աւազակեալներու տեղերը տարաւ ուր որ Պարթըն իր նաւերուն որսի ելած կ'երթեւեկէր։ Անգղիացիք զինքը խաբելու համար իրենց կայմերուն վրայ ուռւոյ ճիւղեր կապեցին, ինչպէս որ վաճառականի նաւերը կ'ընէին ըստ ժամանակին սովորութեան։ Աս տեսակ դրօշը Պարթընին շատ հաճոյական էր, թէպէտեւ շատ անգամ ցուցուցած էր որ թշնամական դրօշն ալ զինքը չէր զարհուրեցըներ։ Ուստի Անգղիացւոց նաւերը տեսածին պէս իր ճամբան անոնց ուղղեց եւ լսելու չափ մօտենալով պոռաց որ յանձնուին։ Բայց Անգղիայի նաւերն իրենց խաղաղական դրօշն անմիջապէս վար առնելով Անգղիայի մեծ թագաւորական դրօշը յովազառիւծներով ու ճերմակ շուշաններով ծփացուցին, եւ երկու նաւերուն ամէն թնդանօթներէն կրակ տալով անամօթ հրաւիրանաց մահու պատգամաւորներ խրկեցին։

Պարթըն տեսաւ որ ուրիշ տեսակ որսի մը հանդիպած է քան զոր կը կարծէր, եւ փոխանակ եղջերու մը հալածելու առիւծ մը դիմացն ելած է. բայց ինքն աղէկ որսորդ ըլլալով այնպիսի սխալմունքը բանի մը տեղ չդրաւ. անմիջապէս ղեկին կողմը եղող դղեակը ցաթկելով իր հրամանները տուաւ եւ իր սովորութեան համեմատ չէ թէ միայն խօսքով իր մարդիկը կը յորդորէր այլ մանաւանդ գործքով վտանգաւոր տեղերը իր ներկայութեամբը կը քաջալերէր։

ինքը Միլանեան ըսուած փայլուն զրահն հագած ըլ-լալով ու վիզը ոսկի փող մը ունենալով ամենուն աչքին կը զարնէր։ Պատերազմը զարհուրելի էր. Թէ Անգղիացիք եւ թէ Սկովտիացիք գիտէին որ կենաց վտանգաւոր կը պատերազմին, ո՛չ մէկը եւ ո՛չ մէկալը թողութեան յոյս ունենալով. երկու կողմն ալ հաւա-սար քաջութեամբ կը շարժէին ու կը պատերազմէին, թէպէտ եւ Պարթընէն հնարուած մեքենայ մը որն որ կայմերէն թշնամեաց նաւերուն մէջ խոշոր կոճղ մը կը մղէր, Անգղիացւոց նաւերուն շատ վնաս բերաւ. ու մեքենան մէկ հոգի կրնար շարժել, եւ ի մաս-նաւորի ան նաւուն որուն մէջ որ Թովմաս Հովարտ կը հրամայէր այնչափ վնաս ու շփոթութիւն պատճա-ռեց, որ Թովմաս իր քաջ Համթլէր անունով աղեղ-նաւորի մը յանձնեց որ չէ թէ միայն մեքենան շար-ժող մարդն այլ նոյն իսկ կայմին վրայ ելլել ուզող-ները նետով զարնէ։

Համթլէր իր պաշտօնը կատարեց, առջի նետը նետելուն պէս մեքենան շարժող մարդը կուրծքին մէջ տեղը նետահար թեւերը բացած կոնքին վրայ ինկաւ։ Երկու հոգի ան կերպով զարնուեցան եւ ան-կէց ետեւ մէկը չէր յանդգներ ան վտանգաւոր տեղը վեր ելլել. ան ատեն Անդրէաս Պարթըն ինքիրեն վեր ելաւ որ մեքենան շարժէ։

Համթլէր, ըսաւ Թովմաս աղեղնաւորին, կամ հիմայ պէտք ես նշան առնուլ կամ երբեք. գլխարկը ոսկիով լեցուն կամ կախաղանի չուան, երկուքին մէջ ընտրութիւն ըրէ։ Տէր իմ, պատասխանեց աղեղնաւո-րը, մարդս միայն իր ձեռքէն եկածը կրնայ ընել, ես դժբախտաբար միայն երկու նետ ունիմ։ Հապա թէ աս խօսքերը զրուցեց նետը կայծակի պէս շառա-չելով թռաւ ու Անդրէասի զրահին վրայ ապակիի պէս խորտակեցաւ. բայց Անդրէաս ամենեւին միտ չդրաւ կարծես թէ պիծակ մը զինքը խայթելու փորձ ըրած ըլլայ եւ մահաբեր մեքենային վրայ ելլելով ու նորէն վարժ ձեռօք շարժելով առջի նետուածքին հինգ կամ վեց հոգի Թովմասի նաւուն վրայ ջախջախեց։

Ա՛նպիտան, ըսաւ Թովմաս, կը տեսնես քու

չաջողակութեանդ արդիւնքը։ Իմ չաջողակութեննէս չէ, պատասխանեց Հասթլէր. հրամանքդ տեսար նետիս խորտակուիլը անոր զրահին վրայ, թէ որ անոր հագածը հասարակ զրահ կամ բաճկոն ըլլար, կուրծքին մէկ կողմէն մէկալ կողմն անցած կ'ըլլար։ Բայց ես չեմ յուսահատիր քանի որ ձեռքս նետ մ'ունիմ։ Հասթլէր գիտնալով որ ըրածը վերջին փորձն է, ամէն զգուշութիւններն ըրաւ որ խաղը վաստըկի, ապահովեցաւ որ նետը ճիշդ լարին մէջ տեղն է, եւ կանգուն ոտքի վրայ ելլելով արձանի պէս առանց շարժման կեցաւ, կամաց եւ հաւասարակերպ շարժմամբ լարը մինչեւ գլխուն ետեւի կողմը քաշելով յարմար առթի կը սպասէր։ Երբոր Պարթըն թեւը վերցուց, նետն այնպիսի արագութեամբ թռաւ որ տեսնելն անկարելի էր եւ ծովահինին թեւին կողմանէ ներս մտնելով աներեւոյթ եղաւ։

Տղա՛ք, պոռաց Պարթըն, պատերազմելը շարունակեցէք ես քիչ մը վիրաւորուած եմ բայց դեռ մեռած չեմ, վար կ'երթամ որ դաւաթ մը օղի խմեմ, ու դարձեալ կը դառնամ թէ որ ուշանամ մինչեւ ի մահ պատերազմեցէք մի յանձնուիք։ Ի խա՜չն սրբոյն Անդրէասայ։ Պատերազմն երկու կողմանէ հաւասար կատաղութեամբ յառաջ կ'երթար եւ ժամանակէ ժամանակ երբոր նաւուն ներքին կողմանէ Պարթընին ոսկիէ փողին ձայնը կը լսուէր, որն որ նշան էր թէ նաւապետը դեռ ողջ է, նաւաստիներն աղաղակ մը հանելով նորէն կը քաջալերուէին. վերջապէս փողին ձայնը տկար ու երբեմն երբեմն լսուելու սկսաւ, մինչեւ որ բոլորովին դադրեցաւ, եւ Սկովտիացիք իմացան որ իրենց առաջնորդը մեռած է։ Եւ իրօք երբոր Անգղիացիք տասը ժամ պատերազմելէն ետեւ կարթերով Սկովտիացի նաւերն իրենց քաշեցին գտան որ Պարթըն իր սենեկին մէջ մեռած էր ոսկի փողը բերանն որպէսզի վերջին շունչը պարապ չելլէ։

Յակովբ որ քաջութեան գործքերը կը սիրէր, Անդրէասին մահուան վրայ այնչափ նեղացաւ որ Հենրիկոսէն հատուցում խնդրեց, բայց Հենրիկոս պատասխանեց ըսելով որ Անդրէաս Պարթըն ուրիշ բան

չէր բայց եթէ ծովահէն մը եւ թէ կը զարմանայ որ ինչպէս ինքն անոր կողմը կը բռնէ իբրեւ թէ իր նաւատորմիղին մէկ ծովակալն ըլլայ։ Աս պատասխանին Ցակովբ ակռաները կրճտեց, ինչու որ Պարթընին ծովահէն ըլլալը յայտնի բան էր, բայց ուրիշ ստաթիւ մը կը սպասէր որ իր ախն հանէ, եւ ասանկ առիթները պակաս չէին։

Յակովբ աս ժամանակները Ռոպերթ Քէր իր մտերիմը Սկովտիայի կոմսութեանց վերատեսուչ ըրաւ. ասիկայ իր պաշտօնը խստութեամբ կատարելուն կէս մը վայրենի մարդկան ատելի եղաւ եւ երեք հոգի, որոնք Անգղիայի սահմանակից կոմսութեանց մէջ կը բնակէին, զինքն սպաննեցին եւ Անգղիա փախան։ Աս դաւակցութիւնն զինադադարի ատեն ըլլալով, Յակովբ Հէնրիկոսէն պահանջեց որ երեք սպանիչներն անմիջապէս յանձնուին։ Հէնրիկոս Անգղիայի կոմսութեանց հրամանատարին հրաման խրկեց որ սպաննիչները բռնուին ու Էտինպուրկ տարուին։ Բայց Լիպէօռն անուամբ մէկը միայն բռնուեցաւ, Սթարհէտ Անգղիայի ներքին կողմերն ապաւինեցաւ։ Իսկ երրորդը Հերոն խորթ կոչուած զինուորներէ հալածուելով եկեղեցի մը փախաւ ուր որ դագաղի վրայ մեռեալ մը դրուած էր. եւ որովհետեւ մեռելոյն քով մարդ չկար, մեռեալն աւանդատուն տարաւ ու պահարանի մը մէջ քահանայական զգեստուց տակ պահեց, ու ինքզինքը մեռելոյն պատանով ծածկելով դագաղին վրայ երկընցաւ։ Քիչ մ'ետքը զինուորներն եկեղեցին մտան ուր ո՛չ մեռեալը եւ ո՛չ կենդանին գտան։ Երբոր թաղման օրն եկաւ, մեռելոյն ազգականները ժողվուեցան եւ քահանան պատարագ ըրաւ, զորն որ Հերոն առանց կենդանութեան նշան մը տալու մտիկ ըրաւ, պատարագէն ետեւ դիակիրները դագաղը վերցուցին եւ քահանայք երգելով գլուխն անցած եւ մեռելոյն ազգականներէն ու բարեկամներէն ընկերացած գեղին մէկ ծայրէն մէկալ ծայրն անցան։ Վերջապէս գերեզմանը հասան եւ երբոր պատանը պիտի վերցընէին ու դագաղին կափարիչը պիտի գամէին, Հերոն մէկէն ոտք ելաւ, գերեզմանէն անդին ցատկեց, քովը եղող-

ները մէջէն ու գերեզմաններէն պատէն անդին կողմը ցատկելով եւ քովի գետակէն լողալով դաշտ մը հասաւ ուր որ ըստ պատահման ձի մը կ'արածուէր, ան ձիուն վրայ հեծնելով լերանց մէջ աներեւոյթ եղաւ։

Ասանկ միջոցի մէջն էին երկու տէրութեանց գործքերը երբոր Գաղղիայէն պատգամաւորներ եկան ու ծանուցին Յակովբին որ Հենրիկոս Ը. պատրաստութիւններ կը տեսնէ Գաղղիա արշաւելու։ Այս րոպէէն սկսեալ Սկովտիայի արքունիքը բանակցութեանց գլխաւոր տեսարանն եղաւ. Գաղղիայի դեսպանը Սկովտիայէն օգնութիւն, իսկ Անգղիայինը սոսկ հակառակ չէզոքութիւն կը խնդրէր։ Անգղիացիք Սկովտիայի թագաւորին աղքատութիւնն յառաջ կը բերէին ու անոր ագահութեան սիրտն կը գրգռէին, իսկ Լուդովիկոս դաշնագրի ժամանակ Յակովբին դրամով մեծ գումար մը շնորհած էր, եւ ի մասնաւորի Գաղղիայի թագուհին Աննա Պրետանիացին զինքն իր ասպետն ըրած էր եւ իր կրած մատանիներէն մէկը իրեն յիշատակ խրկած էր։ Արդարութեամբ Յակովբ իր Գաղղիայի հետ ունեցած հին բարեկամական կապը նորոգեց, եւ դաշնադրութեան յաւելուած մը դրուեցաւ, որուն զօրութեամբ երկու տիրապետներն իրենք զիրենք կը պարտաւորէին իրարու օգնելու եւ պաշտպանելու ինչ եւ իցէ թշնամւոյ դէմ։ Հենրիկոս յայտնի տեսաւ որ վերջի յօդուածն իրեն դէմ է, բայց չկրցաւ բողոք ընել, ինչու որ վերջի խաղաղութեան ատեն Անգղիայի եւ Սկովտիայի թագաւորներն իրենց իրաւունք վերապահած էին, բարեկամ տէրութեանց օգնութեան զօրք խրկելու այն պայմանաւ որ նոյն զօրքը միայն պաշտպանողական գործողութեանց մէջ գործածուին։

Անգղիայի դեսպանները գէթ առաջ ջանացին որ Յակովբ Հենրիկոսին բացակայութեան ատեն երկու տէրութեանց մէջ խաղաղութիւն պահելու խօսք տայ։ Երկու կողմն ալ քաղաքական բարակութեամբ իրար կը գերազանցէին, Սկովտիայի դահլիճը Անգղիացւոց ուզածին հաւանեցաւ այն թէութեամբ որ Անգղիացիք Գաղղիացւոց սահմանէն անդին պիտի չանցնին։ Երկու կողմն ալ պատերազմի կը պատրաստուէին քանի որ

ու խօսակցութիւնները կ'ըլլային։ Հենրիկոս խնդիրը լմնցնելու համար Յունիսի մէջ երկու տէրութեանց սահմանագլխոց վրայ դեսպանական ժողովք մ'ընել ուզեց։ Բայց պատրաստուելու ժամանակ վաստըկելու համար ան ժողովքն ուշացուց մինչեւ Հոկտեմբեր։ Յակովբ աս խաբէութիւնն իմացաւ, եւ երբոր Հենրիկոս Գաղղիա ոտք կոխեց, ինքն իր հպատակները Պէրրոմուր ժողվեց եւ երեքհազար հոգւով նաւատորմիղ մը Լուդովիկոսին օգնութեան խրկեց։ Նոյն ժամանակը Հենրիկոսին պատգամաւոր մ'ալ խրկեց որպէսզի Անգղիացիք Գաղղիական սահմանները պարպելու ստիպէ, եւ բացասական պատասխան մ'առնելու ըլլայ, պատերազմ հրատարակէ։ Պատգամաւորը զՀենրիկոս Թերուանի բանակին մէջ գտաւ, եւ անկից կռիւք եւ լի նախատանօք պատասխան մ'առաւ։ Բայց Յակովբ պատասխան չընդունած արդէն պատերազմն սկսած էր։

Պատերազմին առջի արշաւանքն Հոմէր Սկովտիայի թագաւորին սենեկապետն ըրաւ, որն որ նոյն օրն երբոր պատգամաւորը Հենրիկոսին պատասխանով բանակէն ելաւ, սահմանէն անդին անցաւ եւ անդէն բնակիչները կողոպտեց. բայց ետ դառնալու ատեն Ուլեէմ Պլումէր վրան հասնելով չէ թէ միայն ձեռքէն կողոպուտն առաւ, այլ նաեւ Սկովտիացիներէն հինգհարիւր հոգի ջարդեց։ Յակովբ ասոր հատուցում ընելու համար հարիւր հազար բանակով մը Պէրրոմուրէն ելաւ։ Իր բանակին բազմութիւնը կը ցուցընէ որ որչափ Սկովտիացի հեղինակները քիչ հաւատարմութեան արժանի են երբոր կը գրուցեն որ ազգն աս պատերազմին հաւանութիւն տուած չէ, եւ զանազան պատմութիւններ կը ստեղծեն որպէսզի միայն թագաւորը պատասխանատու ընեն աս գժբախտ պատերազմին։ Թէ որ իրենց հաւատալ ուզենք, Յակովբ թէ մարդկային եւ թէ երկնաւոր թելադրութեանց դէմ պատերազմ բացած է։ Իր խստապարանոցութիւնն ոչ թագուհւոյն աղաչանքներուն եւ արցունքներուն, ոչ իր խոհեմ պաշտօնէից ու ազնուականաց յորդորներուն եւ ոչ Սկովտիայի պաշտպան սուրբին թելադրութիւն-

ներն որն որ ծեր մարդու կերպարանօք Լինքըլթկաւի եկեղեցւոյն մէջ պատերազմին ելքն յառաջագոյն պատմած ըլլայ, եւ ոչ ալ երկնաւոր ձայնին ազդեցութիւնն որն որ կէս գիշեր Էտինպուրկի խաչէն լսուած կ'ըսուէր, կրցան յաղթել: Ասանկ բազմաթիւ բանակով մը որն որ Սկովտիայի մէջ դեռ առջի անգամ ժողվուած է, Թուիտ եւ Թիլ գետախառնունքներէն անցաւ, ու դէպ ի հիւսիսային կողմն անցնելով Նորհէմ զօրաւոր բերդը պաշարեց. բերդին հրամանատարն անխոհեմ կերպով ռազմամթերքը վատնելով երկայն ատեն դիմանալու անկարող եղաւ, եւ երեք անգամ յարձակումը մղելէն ետեւ վեցերորդ օրն յանձնուեցաւ: Նուազ զօրաւոր բերդերն Ուարք, Էթալ եւ Թորտ, Նորհեմին օրինակին հետեւեցան:

Երբոր Ցակովբ Թուիտ գետն անցաւ, Սուրրէյ կոմսն Փոնթէֆրաքթ դղեակն էր, անմիջապէս հիւսիսային կոմսութեանց ազնուականները Նեւքէսլ կանչեց, անկից Ալնուիք աճապարեց ուսկից Ռուժ Քրոա պատգամաւորն ուրիշ երկու պատգամաւորներով Սկովտիայի թագաւորին ղրկեց: Առջինին ձեռօք, որն որ իր կողմանէ ղրկուած էր, մերձաւոր ուրբաթ օրը պատերազմի ժամ որոշեց, իսկ երկրորդ պատգամաւորն, զորն որ իր որդին Թովմաս Հովարտ Ցակովբին ղրկեց, զԹագաւորը մենամարտութեան կը հրաւիրէր, ինչու որ Ցակովբ զինքն իբրեւ Պարթըն մեռցընող շատ անգամ հրատարակած էր, աս մենամարտութեամբ ինքզինքը կ'ուզէր արդարացընել: Հօրը պատգամաւորութիւնը Ցակովբ յարգանօք ընդունեցաւ, եւ ուրբաթ օրուան պատերազմը յանձն առաւ. բայց որդւոյն պատգամաւորութեան եւ ոչ պատասխան տալու արժանի համարեցաւ:

Ցակովբ՝ Ֆորտ դղեակն հիմնայատակ ընելէն ետեւ Ֆլօտըրնի բլուրի վրայ բանակեցաւ: Նոյն օրը կոմսը Պոլթընի մէջ զօրահանդէս ըրաւ, եւ բոլոր զօրքը գրեթէ քսանուվեց հազար էր, որոնց մեծ մասը հիւսիսային կոմսութեանց սահմանաբնակ ազնուականաց հպատակներն էին եւ Սկովտիացւոց պատերազմելու կերպին վարժած: Կոմսը Թագաւորին բըզ֊

նած հաստատութիւն դիրքը զարհուրանօք տեսաւ, քանզի որ միայն մէկ անցք մ'ունէր ան ալ թնդանօթներով աղէկ ամրացուած. ասոր համար Ռուժ Քրոսն Նորէն թագաւորին խրկեց աղաչելու որ Միլֆիլտի լայն եւ ընդարձակ դաշտն իջնայ, ուր որ երկու բանակին համար պարագաներն հաւասար ըլլան: Թագաւորը լակոնական պատասխան տուաւ, որ իր խոստման համաձայն մինչեւ ուրբաթ իրիկուն Անգղիացւոց կը սպասէ: Աս պատասխանը Սուրրէյ կոմսը շփոթութեան մէջ ձգեց. թէ որ պատերազմէն փախուստ տայ, տուած խօսքը բռնած չ'ըլլար, իսկ եթէ որ Սկովտիացւոց բռնած դիրք վրայ յարձակի բանակը վտանգի մէջ կը ձգէ: Աս շփոթ վիճակէն իր որդւոյն յանդուգն խորհուրդը զինքն ազատեց, որն որ առաջարկեց որ դէպ ի Սկովտիա երթալու ուղղութիւն բռնեն, անկէց ետեւ դառնան եւ թշնամւոյն կռնակն սպառնան: Երկրորդ օրը Սուրրէյ բանակը երկու բաժին ըրած առջենին գլուխը Թովմաս Հովարտ եւ երկրորդին ինքն անցաւ, եւ աս կերպով Թիլ գետէն անցնելով եւ Սկովտիացւոց թնդանօթներէն իրենք զիրենք հեռու բռնելով գետին աջ եզերաց երկայնութեամբ մինչեւ իրիկուն քալեցին. երրորդ օրը Թուիսալ գետին կամրջէն անցնելով գետեզերը ձախ ուղղութեամբ դէպ ի Սկովտիացւոց բանակը յառաջ գացին: Հիմայ տեսաւ Յակոբ աս զօրաց շարժման վախճանը, որուն պատճառն իսկզբան չէր կրցած իմանալ: Հրաման տուաւ որ վրաններն ու տաղաւարներն այրեն եւ աւելի հիւսիսային բարձրաւանդակ մը բռնելու աճապարեց. եւ որովհետեւ հովը ծուխը դէպ ի ձոր կը մղէր՝ երկու բանակներն իրարու շարժմունքը չկրցան տեսնել, բայց երբոր ծուխը փարատեցաւ՝ տեսաւ Հովարտ որ Սկովտիացւոց բանակը քառորդ մղոն հեռու կէս մը քառակուսի եւ կէս մը սեպաձեւ հինգ մեծ բաժիններ եղած կեցած է: Իր զօրքն անմիջապէս պատերազմի դրից մէջ կեցուց եւ հայրն ալ վրայ հասնելով ձախ թեւն ու վերջապահ գունդն յարդարեց, եւ երկուքն ալ հաւասար բարձրութեամբ վար իջնալու սկսան: Նոյնպէս Սկովտիացիք ալ ըստ գերմանական

ոճոյն կատարեալ կարգաւ եւ լռութեամբ ձորն իջնելու սկսան։

Սկովտիայի բանակը զանազան բաժիններ ըլլալուն համար պատերազմը զանազան՝ իրարմէ անկախ կռիւներէ բաղկացած էր, անոր համար ընթերցողին շատ դիւրիմանալի կ'ըլլայ թէ որ աս կռիւները առանձինն պատմուին։ Անգղիացւոց ճակատին աջ թեւը Թովմաս Հովարտ կոմսին առաջնորդութեամբ, Սկովտիացի նիզակաւորաց անհնարին յարձակման չկրցաւ դիմանալ. Անգղիացւոց ճակատը պատռուեցաւ եւ իրենց առաջնորդը ձիէն վար ինկաւ. եւ քանի որ գետինը փըռուած մահու կամ գերութեան կը սպասէր պատերազմին բախտը նորէն փոխուեցաւ խորթ Հերոնին անակընկալ օգնութեամբը՝ որն որ փախստականներէ եւ դժգոհներէ կազմուած գնդով մը պատերազմին դաշտը հասաւ։ Իր ձայն տալովը՝ փախչողները ժողվուեցան եւ նորէն խիստ կռիւ մը բացուեցաւ մինչեւ որ Տաքր վերջապահ ձիաւորներով նիզակաւորաց վրայ հասաւ եւ զիրենք ի փախուստ դարձուց։ Ասկից ետեւ Հովարտ իր ճակատին մեծ մասովը Հունթլի, Էրրոլ եւ Քրոֆըրտ կոմսից հրամանատարութեան տակ եղող Սկովտիացւոց վրայ յարձակեցաւ։ Պատերազմը հոս ալ յամառ էր. վերջապէս Էրրոլ եւ Քրոֆըրտ կոմսերն ինկան, եւ իրենց առաջնորդաց մահուամբ վհատած զօրքը կամաց կամաց սկսաւ տատամսիլ, շփոթութեան մէջ իյնալ եւ վերջապէս ամենայն ուղղութեամբ փախչելու սկսան։ Անգղիացւոց յետին ճակատը Սուրրէյ կոմսին առաջնորդութեամբ թագաւորէն հրամայած բաժնին հետ ճակատեցաւ։ Թագաւորն ոտքի վրայ կը պատերազմէր իր քանի մը հազար ընտիրներով որոնք գլխէ մինչեւ ոտք զրահաւորեալ Անգղիացւոց աղեղնաւորաց խոցոտիչ նետերէն քիչ կը վնասուէին։ Իրենց թագաւորին ներկայութեամբ քաջալերեալ՝ յարատեւութեամբ յառաջ կ'երթային ու այնպիսի վստահութեամբ կը պատերազմէին, որ թէպէտ յաղթութիւնը չվաստըկեցան բայց անոր արժանաւորեցան։ Թէպէտ եւ Սուրրէյ ամենայն ճիգն ըրաւ՝ բայց անոնց յառաջագի-

ութեան արգելք չկրցաւ դնել, որոնք մինչեւ անգլիական դրօշն յառաջեցին, եւ Յակովբ իր մէկալ բաժիններուն վիճակը գիտնալով՝ աս մասնական յաղթութեան յուսով խնգինքը կը մխիթարէր։ Աս միջոցները Սթանլի որն որ Անգղիացւոց ձախ թեւին կը հրամայէր Արճէյլ եւ Լիննոքս կոմսից վրայ յարձակում ըրած էր. ասոնք լեռնէն վար իջնալու ատեն Անգղիացւոց աղեղնաւորաց տարափէն շփոթութեան մէջ ինկան, եւ ան բոպէն երբոր ձեռք ձեռքի եկան, անգղիացւոց ձիաւորաց երեք վաշտերն անոնց հողին վրայ ըրած յանկարծական յարձակմամբ յաղթութիւնն որոշեցին։ Սկովտիացիք սկսան փախչիլ, Սթանլի զիրենք լեռնէն վեր հալածեց եւ աջ կողմը դառնալով Յակովբ թագաւորին հրամայած գնդին կռնակն առաւ։ Քանի մը բոպէէն ետեւ քաջ իշխանն ինկաւ անծանօթ ձեռքէ մը զարնուած եւ գրեթէ Սուրրէյ կոմսէն նիզակի մը չափ հեռաւորութեամբ։ Կէս օրէն ետքը չորսին հինգին մէջերը պատերազմն սկսած ու գրեթէ մէկ ժամու մէջ արդէն վիճակն որոշուած էր։ Անգղիացիք ձիաւորաց պակասութենէն չկրցան Սկովտիացիները շատ հալածել եւ անոնց մեծ մասը կրցաւ ազատիլ։ Ծովակալեանին պաշտօնական ծանուցագրին համեմատ Սկովտիացւոց բանակն ութսուն հազարի կը հասնէր, որուն կէսը կրնանք մէկդի դնել. ինչու որ բանակին մեծ մասը չէ թէ պատերազմելու այլ կողոպտելու եկած էր։ Սկովտիացիներէն տասը հազարէ չափ ճակատատեղւոյն վրայ մնացին, ասոնց մէջն է Սկովտիայի թագաւորն, անոր բնական որդին, Ս. Անդրէասի արքեպիսկոպոսը, երկու ուրիշ եպիսկոպոսներ, երկու Աբբայք, տասուերկու կոմսք, տասուիրեք Պարոններ, հինգ Պարոնաց անդրանիկներն եւ յիսուն երեւելի ազնուականք։ Վեց հազար ձի եւ տասնուվեց թնդանօթ գերի ինկան։ Լորտ Տաքր դիակներուն մէջէն թագաւորին մարմինը գտաւ, ու մինչեւ Պերուիք յուղարկաւորեց. անկից Լոնտոն տարուեցաւ ու վայելուչ մեծարանօք թաղուեցաւ։

Աս կերպով վախճան ունեցաւ Յակովբ Դ. (9 Սեպտ. 1513)։ Իր մահը բոլոր Սկովտիա տխրութեան

եւ յուսահատութեան մէջ ձգեց, ինչու որ Ռոպէրթ Պրուսէէն ետեւ իրեն պէս եւ ոչ մէկ իշխան մը ժողովրդեան սէրն իրեն քաշելու ձիրքն ունեցած էր։

Յակոբ Դ. մէկուկէս տարեան տղայ մը ձգեց, որն որ իբրեւ Յակոբ Ե. Սկովտիայի թագաւոր եղաւ։

## ԳԼՈՒԽ Ե.

Անկաս կոմն երիտասարդ թագաւորին՝ Յակոբ Ե.ին խնամակալ կ'ըլլայ. Յակոբ Ե. ինքնիշխան կը տիրէ։ Անգղիայի եւ Սկովտիայի մէջ եղած կռիւը՝ Փրանկիսկոս Գաղղիայի թագաւորին միջնորդութեամբ կը վերջանայ։ Յակոբ Ե. Մարիամ Կիզեանին հետ կ'ամուսնանայ։ Սկովտիայի եւ Անգղիայի մէջ Նոր պատերազմը, Սկովտիացիք կը յաղթուին։ Յակոբ Ե. կը մեռնի, Մարիամ Սթուարթին ծնունդը։

Ֆլոտտընին պատերազմէն ետքը ուր թագաւորն եւ ազնուականներն իրենց կեանքը կորսնցուցին, Սկովտիայի մէջ երկար ժամանակ արհաւիրք եւ շփոթութիւն կը տիրէր։ Սկովտիացւոց բարեբախտութեամբը Սուրրէյ կոմն իր զօրքը ցրուելու հարկադրեցաւ ռազմամթերի ու պաշարի պակսութեան պատճառաւ, թէպէտ եւ Հենրիկոս հիւսիսային կոմսութեանց կուսակալները կը ստիպէր պատերազմը շարունակելու, բայց անոնք կարճատեւ բայց աւերիչ արշաւանքներ ընելով գոհ եղան։ Կամաց կամաց Սկովտիացիք իրենց արհաւիրքէն սթափեցան, վրէժխնդրութեան աղաղակը բոլոր ազգին մէջ հնչեց, շատ ազնուականք իրենց սպաները ժողվելով ամէն Անգղիացւոց ըրած արշաւանաց կրկին հատուցում կ'ընէին հրով ու սրով։

Թագուհին թագաւորին կտակին համեմատ իր մէկուկէս տարեան որդւոյն Յակոբ Ե.ին խնամակալութիւնը վրան առաւ. բայց երբոր մեծերը տեսան որ անոր՝ Հենրիկոսին հետ ունեցած ազգականութիւնն Անգղիացւոց թշնամութենէն զիրենք պահելու բաւական չէ, Գաղղիական կողմնակցութիւն մը՝ կառավարութիւնը Ալպանի դքսին· ձեռքն յանձնեց։ Աս Ալպանի դուքսն ան Աղեքսանդրին որդին էր որն որ իր եղբօրմէ Յակոբ Գ.էն Գաղղիա փախչելու ստիպուած էր։ Բայց աւելի զօրաւոր անգղիական կողմնակցու-

թեան քանսարկութեանց Ալպանի դուքսը քաշուելու ստիպուեցաւ եւ Յակոբ Ե.ին խնամակալութիւնը Անկաս կոմսին ձեռքը տրուեցաւ, զորն որ Հենրիկոս Ը. ոսկով իր կողմը վաստրկած էր։ Յակոբ Ե. տասնուեօթը տարեկան ըլլալէն ետեւ իր ազատութիւնը զըսպող՝ Անկասին անարգ խնամակալութեան լուծն ուզեց խզել, եւ իր պաշտպաններէն ծածուկ բարեկամաց ձեռօք գունդ մը ժողվեց եւ թշնամիները երկրէն վռնտեց (1528 Յուլ.)։ Անկաս կոմսը Հենրիկոս Ը.ին թոշակովը Անգղիա շատ տարի աքսորանաց մէջ մնաց։

Երիտասարդ թագաւորը Հենրիկոսին հետ ունեցած ազգականութեան¹ միտ չդնելով, հօրը քաղաքականութեան ճամբան սկսաւ բռնել, եւ Կարոլոս Ե. կայսեր եւ Փրանկիսկոս Ա. Գաղղիայի թագաւորին հետ բարեկամութեան կապերը նորոգեց, որպէսզի իր հզօր դրացւոյն փառասիրութեան դիմացը զօրաւոր նեցուկ մ՚ունենայ։ 1532ին երկու տէրութեանց կամացը դէմ կռիւ մը բացուեցաւ սահմանակցաց մէջ, որն որ Փրանկիսկոսին միջնորդութեամբը շուտով մը վերջացաւ։ Յակոբ Ե. թէպէտ այս խաղաղութիւնն առ երեւոյթ կը համարէր, ի վերայ այսր ամենայնի իրեններուն յորդորանօք Հենրիկոսին Մարիամ դուստրն իրեն կնութեան խնդրեց, որն որ գժբախտ կատարինէ Սպանիացւոյն աղջիկն էր։ Բայց Հենրիկոս որն որ քանի մը ամիս յառաջ այս կատարինէ կնոջմէ բաժնուած էր, յանձն չառաւ վախնալով որ գուցէ Սկովտիայի թագաւորն իր Աննա Պօլէյն երկրորդ կնոջմէն ծնած որդւոց իրաւունքը կը յափշտակէ։ Յակոբ ասոր վրայ նեղանալով որոշեց որ ուրիշ թագաւորական տան մը փեսայանայ զորն որ գլուխ ալ հանեց Փրանկիսկոսի դստերն հետ ամուսնանալով. բայց ասիկա հիւանդագին ըլլալով երեք ամսէն ետեւ մեռաւ։ Յակոբ 1538ին Յունուարի 10ին Մարիամ Լոթարինգիայի իշխանուհւոյն հետ երկրորդ անգամ ամուսնացաւ որն որ Կիզ դքսին դուստրներէն մէկն էր եւ Լոնկվիլ դքսին մեռնելով այրի

1 Յակոբ Ե. թագաւորը, Հենրիկոս Ը.ին քրոջը տղան էր։

մնացած էր։ Այս ամուսնութեան կապն այնչափ փառաւոր համարեցաւ Յակոբը, որչափ մէկալ կողմանէ առաջինի Մարիամը Հենրիկոս Ը.ին հետ ամուսնանալն եւ Անգղիայի չքեղ աթոռոյն աթոռակից ըլլալը մերժած էր։

Սկովտիայի եւ Գաղղիայի հետ եղած աս սերտ կապը Հենրիկոսին աչքին փուշ էր, անոր համար ամէն միջոց ի գործ կ'ուզէր դնել որ աս կապը խզէ, եւ միտքը դրած էր որ եթէ խաղաղական ճամբով ու զՅակոբը իր կրօնական սկզբանց մոլորեցընելով թանը չիմընցընեն, բռնութեան ձեռք զարնէ։ Ասոր համար գաղտնի յանձնարարութեամբ Սատլէր անուն մէկը Յակոբին խրկեց որ հետը խօսի ու իր կարծեաց համոզցընէ։ Սատլէր թագաւորին առջեւ Պիթըն կարդինալին իր Հռոմ կեցող գործակալին գրած նամակը կարդաց, որն որ Անգղիայի մէջ բռնուած էր, եւ որուն գլխաւոր նիւթն էր թագաւորական իշխանութիւնը քահանայապետական իշխանութեան տակ ձգել՝ ծիծաղեցաւ թագաւորն ու պատասխանեց որ արդէն շատոնց կարդինալը նոյն նամակին օրինակը իրեն տուած եւ թուղթն ալ իրեն հաւանութեամբը գրած էր։ Իմ անձս պատասխանեց Սատլէր ձեր անկարգութեան եւ աղքատութեան վրայ ամօթէն գետին կ'անցնի, դուք ձեր թագաւորութեան վրայ աւելի վարձակալ էք քան թէ տիրող։ Թէ որ ընչից կարօտութիւն ունիք, ինչու եկեղեցական ինչքը չէք գրաւեր։ Եկեղեցականաց թոյլ եւ անպիտան վարմունքը բաւական պատճառ է զձեզ արդարացընելու Անգղիայի թագաւորին բռնած վարմանց հետեւելու։ Թագաւորը պատասխանեց որ իրեններն իրեն բաւական են, եւ օտար ստացուածոց ձեռք զարնելու հարկաւորութիւն չունի, եւ թէ որ ընչից կարօտութիւն կ'ունենամ, ըսաւ, ան ատեն եկեղեցին սիրով ինծի օգնութեան կը հասնի։ Եթէ եկեղեցականաց մէջ կան ոմանք, որոնք իրենց աստիճանին պատիւ չեն ըրած եւ չեն ըներ, ի վերայ այսր ամենայնի անոնց մեծ մասն արժանի է գովութեան. եւ արդարութեան սկզբանց չեմ կրնար դէմ դնել եւ արդարները պատժել իրենց մէջ յանցաւորներ գտնուելուն համար։

Հենրիկոսին դեսպանն այնուհետեւ խօսքը քաղաքականութեան վրայ դարձուց եւ կ'ուզէր համոզցընել զՅակոբոս որ եթէ մօրեղբօրը հետ դաշնադրութիւն մ'ընէր, Գաղղիայի թագաւորին հետ ըրած դաշնադրութիւնէն հազար անգամ աւելի շահաւոր կ'ըլլար, վասն զի, կ'ըսէր, հիւանդագին Եդուարդ արքայորդւոյն մեռնելէն ետեւ օրինաւոր ժառանգն ինքը կ'ըլլայ: Վերջապէս շատ ետեւէ ինկաւ ու յորդորեց զՅակոբոս որ իր մօրեղբօր քով Եորք քաղաքն երթայ եւ աս նիւթիս վրայ հետը մասնաւոր խօսի: Թագաւորը շնորհակալ եղաւ Սատլէրին որ իր օգուտը կը բաղձայ, բայց Եորք երթալու հրաւէրն եւ մօրեղբօր հետ տեսնուիլը քաղաքավարութեամբ մը մերժեց:

Հենրիկոս թագաւորը նորէն զՅակոբոս հրաւիրեց որ Եորք քաղքին մէջ տեսնուին, բայց անիկայ յանձն չառաւ զանազան պատճառներ յառաջ բերելով: Աս ժամանակներս (1541ին Մարտին մէջ) Պիթըն կարդինալը դէպ ի Հռոմ երթալու ատեն Գաղղիայէն անցաւ: Հենրիկոս ասի իմանալով կարծիքի գնաց որ կարդինալին Գաղղիայէն անցնելուն բուն վախճանը Փրանկիսկոս Ա.ը Սկովտիայի շահելու համար ըլլայ, բայց ուրիշ կողմանէ ալ մտածելով որ կարդինալին հեռանալովը Յակոբոս ինքիրեն եւ առանց Մենտորի մնացեր է, ուրախացաւ կարծելով թէ դիւրաւ անոր հաստատութեանը կրնայ յաղթել: Աս խորհրդով Եորքշիր գնաց եւ քեռորդւոյն գալստեան կը սպասէր: Բայց Յակոբոս՝ իր մօրեղբօր պունիական դրժող հաւատարմութիւնն աղէկ գիտնալով տեղէն չշարժեցաւ: Կը վախնար որ մէյ մ'անոր ձեռքն իյնալու ըլլայ պիտի չկարենայ ազատիլ մինչեւ որ կամ Գաղղիայի դաշնակցութենէն հրաժարի եւ կամ քահանայապետական գլխաւորութիւնը իրեն պէս մերժէ: Հենրիկոս Եորքշիրին մէջ ութ օր պարապ տեղ սպասելէն ետեւ (1541, 26 Սեպտ.) Լոնտոն դարձաւ:

Անգղիական դահլիճը տեսնելով որ խաղաղական ճամբաներով իր վախճանին չկրցաւ հասնիլ, միտքը դրաւ բռնական միջոցներու ձեռք զարնել, բայց դժուարութիւններն սկսելէն յառաջ գաղղիական դաշ-

լինին միայն իմանալ ուզեց եւ տեղեկացաւ որ Փրանկիսկոս Ա. Գաղղիայի թագաւորը Սկովտիացւոց քիչ օգնութիւն կրնայ ընել, որովհետեւ Կարոլոս Ե.ին հետ աւրուած էր: 1542ին Օգոստոսի մէջ երկու կողմանէ սահմանագլուխներու վրայ թշնամութիւններն սկսան, ու Սկովտիացիք միշտ յաղթող գտնուեցան, երեքհազարով ձիաւորաց գունդ մը Ռոպերթ Պօուսին եւ Անկասին առաջնորդութեան տակ զարկին եւ պաշտօնակալաց մեծ մասը գերի բռնեցին: Հենրիկոս աս պարտութեան վրայ կատղելով Նորֆոլք կոմսին հրամայեց որ Եորք քաղքին մէջ բանակ մը ժողվէ ու Սկովտիա յարձակի: Յակովբ որ պատերազմի պատրաստութիւն չէր տեսած, Նորֆոլք կոմսը բանակցութիւններով ուշացուց մինչեւ որ Հենրիկոս դքսին որոշ հրաման խրկեց որ անյապաղ Սկովտիա յարձակի: Դուքսն հնազանդեցաւ եւ (Հոկտ. 21) սահմանէն անցնելով երկու քաղաք եւ քսան գեղ մոխիր դարձուց: Աս դիւցազնական յաղթութենէն ետեւ նորէն Անգղիա դարձաւ կամ պաշարի կարօտութեան եւ կամ անպիտան օդերուն պատճառաւ:

Յակովբ երեսուն հազար զօրքով Անգղիացւոց դիմացն ելլելու պատրաստուեցաւ, բայց երբոր անոնց ետ դառնալն իմացաւ զիրենք հալածել ուզեց. բայց իր պաշտօնակալները զինքը կ'աղաչէին որ աս բանէն ետ կենայ, ըսելով որ եթէ հօրդ գլուխն եկած դըժբախտութիւնը Ֆլոտէնի դաշտի վրայ քու գլուխդ ալ գալու ըլլայ, Սկովտիա քու մօրեղբօրդ կամացը զոհ կ'ըլլայ: Ակամայ զիջաւ թագաւորն իր ազնուականաց աղաչանացն եւ զօրաց մէկ մասը ցրուեց. բայց Լորտ Մաքսուելին հրամայեց որ 10,000 զօրքով Անգղիայի արեւմտեան սահմաններն յարձակի եւ այնչափ օր հոն կենայ որչափ որ Նորֆոլք դուքսը Սկովտիայի մէջ կեցած էր: Մաքսուէլ սահմանն անցնելով երկրորդ օրը դիմացն Անգղիացւոց բանակ մը գտաւ, որն որ պատրաստուած կեցած էր (25 Նոյ.): Ինչպէս ըլլալը չիգիտցուիր, կամ Սկովտիացիք իրենց սիրելի զօրավար Լորտ Մաքսուելին հրամանատարութիւնը ձեռքէն առնուած եւ Սինքլէր կոմսին յանձնուած

ըլլալուն համար պատերազմիլ չուզեցին, կամ Սկովտիացիք կարծելով որ իրենց դիմացն եղող զօրքը Նորֆոլք դքսին ամբողջ բանակն է, առանց պատերազմի սկսելու ցրուեցան փախան, եւ շփոթութեան մէջ Թագաւորական 24 թնդանօթները եւ ռազմամթերքն Անգղիացւոց ձեռքն ինկան. 800 հոգի, երկու կոմս, Հինգ Պարոն եւ 200 ասպետ ալ գերի բռնուեցան եւ Անգղիա տարուեցան:

Այս խիստ եւ անակնկալ դիպուածը Յակոբոսին սիրտը բոլորովին կոտրեց: Կէս մը հիւանդ Էտինպուրկ գնաց, ետքը Ֆալքլէնտ դաստակերտը քաշուեցաւ: Հազիւ թէ հոն հասաւ, վրան ջերմ մ'եկաւ, ու զինքն այնպէս տկարացուց, որ այս դէպքը պատահելէն քանի օր ետքը Դեկտեմբերի 14ին մեռաւ: Իր մահուընէն ութ օր յառաջ ան ուրախութիւնն ունեցաւ որ իր ամուսինն իրեն դուստր մը ծնաւ, ան դժբախտ Մարիամ Ստուարթն որուն պատմութիւնը հիմայ պիտի պատմենք:

## ԳԼՈՒԽ Զ.

Մարիամ Ստուարթին մանկութեան ատենը Սկովտիոյ մէջ եղած շփոթութիւնները: — Մարիամ Ստուարթ Գաղղիա կը տարուի:

Մարիամ Ստուարթին ծնունդը հրապարակական տօներով եւ ուրախութիւններով չտօնուեցաւ, իր մօրն արգանդէն աշխարհք եկաւ, եւ գերեզմանի մը առջեւ աչքերը բացաւ, որն որ իր հայրը Յակոբոս Ե. ծածկած էր: Սկովտիայի սուգն իր օրրոցը տրտմութեան շղարշ մը մանկութեան ճակատը կը պատէր, մի եւ նոյն ատեն թշնամի կողմնակցութիւն մը իր անձնական եւ շահախնդիր դիտաւորութիւններն յառաջ տանելու մտօք, երկպառակութեան եւ պատերազմի ջահը ձեռք առած տխուր ապագայ մը կը պատրաստէր անոր: Երկու հզօր եւ բազմաթիւ կողմնակցութիւնք թագաւորական աթոռուն քով շարուած կը կենային, որք հայրենիքն Անգղիացւոց ձեռքը մատնելու, եւ որք Գաղղիացւոց պաշտպանութեան տակ

ձգելու պատրաստական։ Մէկալ դիէն երկիրը խառ-
վութեան եւ շփոթութեան եւ արտաքիններէն յարձա-
կում կրելու վտանգի մէջն էր։

Պարապ տեղ Յակոբ Ե. ը կտակին մէջ իր
վերջին կամքը բացայայտ դրած էր, պարապ տեղ իր
դուստրն եւ ամուսինը աւագանւոյն յանձնած էր, ո-
րոնք իր մահուան ատեն անկողնոյն չորս կողմը շա-
րուած կեցած էին։ Հազիւ թէ դժբախտ թագաւորին
աչքերը գոցեց, իր ամէն խնդիրքներն, յանձնարա-
րութիւններն եւ փոխադարձ խոստումներն ի դերեւ
ելան։ Երբոր Պիթն կարդինալը թագաւորին մեռնե-
լէն ետեւ կտակը բացաւ, որուն մէջ երկրին կառա-
վարութիւնն իրեն եւ ուրիշ երեք մեծերուն կը յանձ-
նուէր, մտիկ ընող չեղաւ, ոմանք սուտ կամ շինծու
համարեցան այս կտակը, իսկ ոմանք ալ չուզեցին ըն-
դունիլ. որովհետեւ մէջը որոշուած երեք անձինքն
իրենց ուզած մարդիկը չէին։ Էտինպուրկ քաղքին
մեծերէն քանի մը հոգի ժողվուելով, Յակոբ Հե-
միլթըն Արրան կոմսը կառավարութեան գլուխ դրին,
եւ ի դիպուածի որ Նորածին թագուհին մեռնելու
ըլլայ գահը նստելու իրաւունք ալ տուին, թագաւո-
րական տան ամէնէն մերձաւոր ըլլալուն համար։ Պիթն
կարդինալը չկրնալով ասիկայ խափանել առ ժամա-
նակ մը զիջաւ (1543 Յունուար 16)։

Ենրիկոս Ը. Անգղիոյ թագաւորն Սկովտիոյ
մէջ իրաց մէկէն փոփոխուելուն լուրն առնելուն պէս
միտքը դրաւ որ երկու թագաւորութիւնները մէկ
թագաւորի տակ միացընէ, եւ իր Եդուարդ որդին
Նորածին Սկովտիոյ թագուհւոյն հետ ամուսնացընէ,
ասոր հետեւութիւնն ան կ'ըլլար որ ինքն անմիջապէս
իբրեւ բնական եւ մերձաւոր խնամակալ Սկովտիոյ
կառավարութիւնը ձեռք կ'առնուր։ Ասոր համար խոր-
հուրդ հարցուց Գէորգ Տուկլաս եւ Անկաս կոմսերուն,
որոնք շատ ատենէ ի վեր Անգղիա իր թոշակովը կ'ա-
պրէին, նոյնպէս Սոլուէ-Մուր դժբախտ պատերազմին
մէջ գերի ինկած Մաքսուէլ, Գլենքէնկ, Սոմէրվէլ,
Օլիֆէնթ եւ Կրէյ ատենակալաց միտքը փնտռեց։ Գե-
րի երկուքը շնորհապարտութեան պատճառաւ, իսկ

վերջիններն ապստամբութեան յառաջ գործերին յաղթութեան գործակից ըլլալու խոստում տուին, եւ պատանդ դնելով անմիջապէս Էտինպուրկ գացին, խոստանալով որ եթէ իրենց խորհուրդը չյաջողի նորէն ետ դառնան։

Անոնց Սկովտիա դարձին երկրին վիճակը բոլորովին փոխուեցաւ։ Ազնուականք երկու մաս բաժնուելով Գաղղիացւոց եւ Անգղիացւոց զօրաւոր կողմնակցութիւն կազմեցին։ Անգղիական կողմնակցութիւնն որուն գլուխն էր Անկաս կոմսը նոր եկածներով շատ զօրացաւ, թէպէտ եւ անոնցմէ շատերը միայն՝ իրենց Անգղիա թող տուած որդիքն եւ ազգականներն ազատելու համար Անգղիայի թագաւորին կողմը կը բռնէին։ Իսկ Գաղղիական կողմին գլուխն էին մայր թագուհին (Մարիամ Սթուարթին մայրը), կարդինալը, Հանթլի եւ Արճէյլ կոմսերը։ Անոնց կողմն էին նոյնպէս կղերականք եւ կրօնական նորոգութեանց հակառակորդները, դարձեալ անոնց կողմը կը միանէր նաեւ ժողովուրդը, սովորութեամբ եւ անձնական շահուն համար Անգղիացւոց ատելութիւնն ատելով։

1543ին Մարտի 13ին Սկովտիայի խորհրդանոցը ժողվելով Հենրիկոսին կողմնակիցքն անոր միացքը գրած խորհուրդը յառաջ բերին։ Բայց Անգղիացւոց թագաւորին անհամբերութիւնը Սկովտիա Անգղիայի հետ միացընելու խորհուրդը ի դերեւ հանեց։ Պահանջեց որ Սկովտիայի մանուկ թագուհին իր ձեռքն յանձնուի մինչեւ որ ամուսնութեան հարկաւոր եղած տարիքն հասնի, եւ միանգամայն կը պնդէր որ Սկովտիայի ամենէն զօրաւոր բերդերն իրեն տրուին։ Այս պահանջումը Սկովտիացւոց նախանձայուզութիւնն, ազատութեան եւ անկախութեան վրայ ունեցած նկարագրական սէրը գրգռեց։ Ազգն առ հասարակ համոզուեցաւ որ Հենրիկոս Ը. ամուսնութեան պատրուակաւ Էդուարդ Ա.ին պէս, որն որ նման պարագաներուն մէջ Սկովտիա նուաճել կ'ուզէր, Սկովտիա Անգղիայի հետ միացընելու միտք ունի․ Ան ազնուականներն որոնք իրենք զիջէինք անոր դիտաւորութեանց նպաս-

ատամսորդից ըլլալու պատրաստուած էին այս պայմանաւն պահանջմանց համար իրմէ պարգեւներ։ Յաւելեր անոնց Անգղիայի դեսպանին առանց ակնածութեան ըսին որ ազգը չիկրնար տանիլ որ իրենց թագուհին Հենրիկոսին խնամակալութեան տակ դրուի, եւ իրենց պալաներն անանկ բանի մը համար ոչ երբեք պէտք կ'առնուն, նոյն իսկ պառաւունք իրենց իլերով կը զինին եւ ճամբաներուն քարերն ալ ոտք կ'ելլեն ու բողոք կը կարդան։

Խորհրդանոցը Եդուարդին նորածին թագուհւոյն հետ ամուսնանալուն հաւանութիւն տուաւ, բայց թագուհւոյն ու անոր տղայութեան առեն թագաւորական կառավարութեան եւ Սկովտիայի ամէն զօրաւոր տեղերուն Հենրիկոսին ձեռքը յանձնելու առաջարկութիւնը բացարձակապէս մերժեց։ Վերջապէս Հենրիկոս երկայն ատեն դէմ դնելէն ետեւ երեկու տէրութեանց մէջ խաղաղութեան դաշինք դրուեցաւ (1543, 1 Յուլ.) եւ որոշուեցաւ որ Մարիամ Եդուարդին հետ ամուսնանայ եւ տասը տարեկան եղածին պէս Անգղիա խրկուի։

Ասանկ Սկովտիայի թագաւորաց ժառանգուհին զաւակը հետ ոչինչ մէկ փառաւորութեան համար անոր հարկահան ըլլալուն չէին տպաւորեր հայրաջուններ կ'ընէին իր ապագայ վիճակին վրայ առանց իրեն բան մը հարցընելու, ոչ իր սրտին եւ ոչ ալ իր ապագայ զգածմանց միտ դնելով։ Ասի թագաւորաց բախտն է. իրենց տէրութեան վրայ ունեցած վերին իշխանութեան համար, հարկ կը համարուի որ իրենց ընտանիքէն աւելի մանաւանդ թէ նոյն իսկ իրենց անձէն աւելի տէրութեան միտ դնեն։ Թէ որ Մարիամ Եդուարդին հետ ամուսնանար, անտարակոյս իր գլուխը կրկին թագով կը պսակուէր, ու Անգղիայի յաջորդ մը կը թողուր։ Բայց Մարիամ անանկ դէպքի մէջ իր տղայութիւնը Անգղիայի արքունեաց ապականեալ պալատականաց մէջ պիտի անցընէր, որոնք քիչ մը ատենէ համար իրենց խիղճը ծախու կը հանէին, եւ հոն միանգամայն մոլեռանդն ամուսնոյ մը ձեռք իյնալով որուն կրօնական նախանձայուզութիւնը հօր-

մէն շատ անձնք էր, անշուշտ իր Հայոց ազգայնական հաւատքը կը կորսնցնէր, Մինչաւանդ ան հասակին մէջ ուր իր սեպհական բանաւորութեամբը չէր կըրնար ինք զինքը կառավարել։ Կրօնական Նորոգութեանց խաբէական լուսով շլացած Հենրիկոսին դրած մարգկային կրօնը կ՚ընդունէր, զորն որ աղէկ մտածող Անգլիացի մը հաճիւ կրնայ հիմայ նոյնը պաշտպանել՝ — Բայց աս ասանկ չեղաւ. Առնուած զՄարիամ առանկ կրօնական մոլորութենէ ազատ պահեց։ Քանի մը տկարութեամբ ըրած պակսութիւններն իր երկայն ատեն քաշածներով ըստ բաւականին քաւեց։

Անգղիական կղզիակցութեան հակառակ՝ որն որ Հենրիկոսին կամքը համեմատ ամուսնութեան դաշինքը դնել տուած էր, մայր թագուհին եւ կարդինալն ուրիշ աւելի զօրաւոր կղզիակցութեան գլուխ եղած էին, որն որ ուղղափառ հաւատոյ եւ գաղղիական նիզակակցութեան պաշտպան էր, եւ աս ամուսնութեան դէմ էին։ Կարդինալին ազդեցութեամբ խնամակալը մայր թագուհւոյն հետ հաշտուելով խորհրդարանոցին մէջ ստորագրուած ամուսնական դաշինքը մերժեց։ Հենրիկոս խնամակալին խաբեբայ վարմանց վրայ սաստիկ նեղանալով նաւատորմիղ մը եւ բանակ մը Սկովտիա խրկեց, որոնք ընդդիմութիւն չգտնելով Սկովտիայի մայրաքաղաքն եւ անոր նաւահանգիստն այրեցին ու շրջակայ տեղերը կողոպտեցին։ Յետ եւ նոյն ատեն Ռալֆ Էվէրս եւ Պրիան Լաթուն կոմսից հրաման խրկեց որ սահմաններն յարձակին. անոնք իրենց պաշտօնը կարելի անգթութեամբ կատարեցին։ Իրենց ըրած աւերածոյն ծանուցագիրներն զարհուրելի են. առջի յարձակման ատեն 192 դաստակերտ այրեցին կամ փլուցին, 400 Սկովտիացի մեռցուցին եւ 800 հոգի գերի տարին. 10,000 արջառ, 12,000 ոչխար եւ 1000 ձի կապուտ բերին. ուրիշ ծանուցագրի մը համեմատ եօթը վանք, տասնուվեց դաստակերտ կամ դղեակ, հինգ աւան, 16 ջրաղացք եւ 3 հիւանդանոց փլուցին կամ այրեցին։ Անգղիայի զօրավարաց գիւղացընական գործքերն Հենրիկոսին կատաղութիւնը քիչ մը խնայուած կ՚երեւան, բայց իր

Սկովտիոյ մէջ ունեցած ազդեցութեանը շատ վնաս բերին։ Ինչու որ չէ թէ միայն բոլոր ազգն աս աւազակները երկրէն դուրս հանելու ոյժ ելան, այլ նաև ան կոմսերն ալ, որոնք ամուսնութեան կողմնակից և գործակից եղած էին Հարսին այցելութիւն ընելա-տանիկ կոչա կերպին վրայ շատ նեղացան։ Նոյն իսկ Տուկլասեանք, որոնք Հենրիկոսին ամենէն աւելի կողմնակից էին, երկրին խեղճութիւնն և աւերը տեսնելով ազգին կողմն անցան, և խնամակալին հետ միանալով զօրք ժողվեցին։ 1544ին Դեկտ. 14ին Սկովտիացիք Անգղիացւոց վրայ մեծ յաղթութիւն կանգնեցին. աս պատերազմիս մէջ Անգղիացւոց Էվէրս և Լաթուն զօրավարներն և մերձ 1000 հոգի ինկան, շատերն ալ գերի բռնուեցան։ Հենրիկոս աս պարտութեան վրայ շատ նեղացաւ և մանաւանդ Անկաս կոմսին շատ սպառնալիք տեղաց։ Անկաս կոմսը Հենրիկոսին քոյրն իրեն կին ունենալով անոր մերձաւոր խնամի էր։ Անկաս Հենրիկոսին սպառնալեաց նախատական պատասխաններ տուաւ. "Արդեօք մեր խնամին, ըսաւ, իմ վրաս անոր համար բարկացած է որ աղէկ Սկովտիացի եմ, և կամ թէ իմ նախահարցս վրէժխնդիր եղած եմ՝ Ռաւլֆ Էվէրս և Լաթուն տապաններով որոնք Մելրոսին մէջ իմ նախահարցս գերեզմաններն աւերած են։ Իմ նախահարքս ձեզմէ (Հենրիկոսէն) ընտիր մարդիկ էին և ես անոնց պատուոյն համար աւելի նուազ գթութեամբ չէի կրնար վարուիլ. աս գործքերուս համար ինծի այնչափ բարկացած է և կենացս դարանակալ կ'ուզէ ըլլալ։ Հենրիկոս թագաւորը կ'երեւայ որ Քէանթէպլի տապանները քիչ կը ճանչնայ (Քէանթէպլ Տուկլասեանց կալուածոց մէջ լեռներ են), հոն տեղս անոր անգղիական բովանդակ բանակին կրնամ դիմանալ„։

Պիթն կարդինալը և մայր թագուհին մտածելով որ զօրաւոր դրացի մը ամէն ճիգն ի գործ կը դնէ նորածին թագուհին բռնութեամբ կամ դաւաճանութեամբ ձեռք բերելու համար, խոհեմութիւն սեպեցին որ զթագուհին քաղքէն հեռացնեն և անմատոյց Մէնթէյթ լճին մէջ եղած կղզին տա-

նքին ուր անկէ դաստակերտ եւ վանք մը կար: Հոն անկէ Գիզին կարդինալին միջնորդութեամբ Նորածին Թագուհւոյն կրթութիւնն իր մօրը յանձնուեցաւ, որն որ իր ցեղին սեպհական եղած անվեհերութեան հետ Թագուհւոյ մը հարկաւոր առաքինութիւններն ունէր: Աւնկայ իր դստեր դաստիարակութիւնը գիտին ընելու համար Սկովտիայի երեւելի գերդաստաններէն նոյն անուամբ եւ հասակաւ չորս աղջիկ առաւ, որոնք Նորածին Թագուհւոյն հետ կենակից եւ սննդակից էին այս մանկութեան մէջ մինչեւ որ 1548ին Գաղղիա գնաց:

Հենրիկոս տեսնելով որ կարդինալին աչալըրջութեամբը Մարիամին Գաղղիա փախչիլը շատ դիւրինցաւ, վրան շատ բարկացաւ. եւ առոր առջեւն առնելու համար յարմար միջոց մը սեպեց Սկովտիայ մէջ նոր խռովութիւն մը հանել: Աս ժամանակներս Զուինկլէմ Քիլքէլտի, Ուայսհէրթ եւ ուրիշ անզգամք առաջարկած էին Թագաւորին որ կարդինալը կամ բանտեն կամ սպաննեն: Թագաւորն այս առաջարկութիւնը չմերժելով կարդինալին սպանութեան հաւանութիւն մանաւանդ թէ հրաման տուած կը սեպուէր: Երկու տարի ետքը եղեռնագործութիւնը գլուխ ելաւ: Կարդինալին խոհեմութիւնն ու գործունէութիւնն ամէն իր կենաց դէմ նիւթուած դաւաճանութիւնները պարապի կը հանէր: Բայց վերջերը Գէորգ Ուայհէրթ անուն նոր աւետարանին քարոզիչ մը իր մոլորութեանց եւ հանած խռովութեանց պատճառաւ կախել եւ այրել տալուն համար, իր հակառակորդաց եւ ի մասնաւորի Մոռնոցլին ազգականաց եւ անոնց կողմնակցաց ոգիները շատ գրգռեցան, որոնք արդէն անգղիական կաշառքով աւելի եւս վառուած 1546ին Մայ. 30ին Ս. Անտրէ դաստակերտը մտան, ուր որ կարդինալը կը կենար, ու զարկին մեռցուցին: Քաղաքացիք աղմուկն իմանալով, իրենց եպիսկոպոսին օգնութեան հասնիլ ուզեցին, բայց երբոր կարդինալին մարմինը պատուհանէն վար կախուած տեսան ետ դարձան: Իսկ մարդասպաններն իրենց կրօնակիցներէն օգնութիւն գտնելով, մանաւանդ Նոքս աղան-

դալկերեն, որու որ սա "ամենամեծահաճոյ գործքն էր" հաճութիւնը տալու համար իր աղանդակիցներուն 140 հոգի հետը առած եկած էր, նոյն դաստակերտին մէջ փակուեցան եւ Անգղիայի Թագաւորէն պաշտպանութիւն խնդրեցին, որն որ նոյնը չըլլացաւ։ Բայց Հենրիկոս սա նոր խառնակութեան վերջը չկրցաւ տեսնել. շուայտութենէ ու որովայնամոլութենէ այնպէս տկարացած էր որ հազիւ իր մարմնոյն ծանրութիւնը կրնար վերցընել, թէպէտեւ դեռ 56 տարեկան էր։ Այնպէս արտաքոյ կարգի գէր էր, որ ոտքի վրայ չէր կրնար կենալ ու տեղէ տեղ փոխուիլ, այլ անուաւոր բազմոցով սենեկէ սենեակ կ'երթար կու գար։ Նամակաց ստորագրութիւն դնելու չափ զօրութիւն չունէր, անոր համար երեք քարտուղար միշտ քովը կը կենային ու հարկաւոր թղթերը կը ստորագրէին։ Այս գիրութեան հետ ոտքին վրայ վտանգաւոր վէրք մ'ալ ունէր, որն որ շատ անգամ զինքը մահուան դուռը հասուցած էր։ Բարկացոտութիւնը, կասկածոտութիւնն եւ իր պալատականներէն քաշած վախը կեանքը կարճեցընելու ու մահը փութացընելու շատ օգնեցին։ 1547ին Յունուարի 28ին մեռաւ։

Հենրիկոսին մահուամբը Անգղիացւոց դահլըճին քաղաքականութիւնը չփոխուեցաւ, եւ Հերթֆըրտ կոմսն որն որ վերջէն Սոմմըրսեթի դուքս ալ անուանեցաւ, եւ Պաշտպան (Protector) յորջորջմամբ տէրութեան կառավար եւ Եդուարդ մանուկ թագաւորին խնամակալ եղաւ։ Հերթֆըրտ՝ կարդինալին մարդասպաններուն հետ երկու դաշինք դրաւ (1547 Մարտ. 9)։ Առջի դաշանց զօրութեամբ մարդասպանները յանձն առած էին հոգւով չափ ջանալ՝ որ իրենց թագուհին Եդուարդ Զ.ին հետ ամուսնացընեն, եւ թագուհւոյն անչափահասութեան ատեն՝ առանց Անգղիայի մանուկ թագաւորին կամ Պաշտպանին գրաւոր հրամանին նոյն դաստակերտը Սկովտիացւոյ մը ձեռք չտան։ Իսկ երկրորդ դաշանց մէջ (15 Մարտ.) սա անօրէն պարտքը իրենց վրայ առած էին որ Մարիամը յափշտակելու համար Սկովտիա մտնող Անգղիացի բանակին հետ միանան, եւ անոր Եդուարդին ձեռք յանձնեն եւ

հարսնախօսութիւն ըլլալէն ետեւ, բերդն անմիջապէս անգղիական գործակալաց յանձնեն։ Այսր փոխարէն Անգղիական կառավարութիւնն ալ ապստամբաց ու մարդասպանաց գլխաւորներուն ստակ խոստացաւ, եւ բերդի մէջ եղած հարիւր քսան հոգւոյ կիսամեայ ռոճիկը կանխիկ վճարեց։

Սկովտիայի կառավարը Արրան կոմսը՝ բարեբախտութեամբ ժամանակին աս դաշինքներն իմանալով, Պաշտպանին միտքը հասկցաւ եւ Մարտի 10ին հրովարտակ մը հանելով հրաման տուաւ որ զէնք կրելու կարողութիւն ունեցողները քառասուն օրուան մէջ, ամսուան մը պաշար առած՝ որոշեալ տեղ մը ժողվին։ “Սկովտիայի վրայ, կ'ըսէր, իր մշտնջենաւոր թշնամին յարձակում կը սպառնայ, անոր համար իր ամէն որդիքն հայրենեաց պաշտպանութեան համար զէնք առնելու կը հրաւիրուին,,։ Աւելի եւս հաստատուն նեցուկ մ'ունենալու համար, Հենրիկոս Բ. Գաղղիացւոց թագաւորին դիմեց որուն անուամբը երկու տէրութեանց մէջ եղած ամէն դաշինքները նորոգուեցան, եւ Գաղղիա անյապաղ օգնութիւն եւ ստակ խոստացաւ։

Սահմանագլխոց վրայ բնակող անգղիացի մեծերը աւարառութեան ոգւով լեցուած Սկովտիա յարձակեցան ու պատերազմն սկսաւ։ Արրան քանի մը գնդեր քովը ժողված Լանկհոփ ու Քէյմուփլիս ապստամբաց գլխաւոր զօրաւոր տեղերը ուզեց պաշարելով առնուլ, որպէս զի Անգղիացւոց ձեռք չիյնան, բայց անդիէն ուրախական ձայն մ'եկաւ որ Սթրոցցի Քափուայի մեծաւորը գաղղիական նաւատորմղով օգնական զօրք բերեր է, Արրան ելաւ անոնց առջեւը գնաց եւ անոնց հետ միանալով Ս. Անտրէ դաստակերտը պաշարեց։ Քիչ ժամանակուան մէջ գաղղիացի թնդանօթաձիգ զօրքն պատուար մը խորտակեց եւ մէջինները չյանդգնեցան ալ աւելի դէմ դնել եւ յարձակման մը հետեւութիւնները կրել, անոր համար դաշինք դնելով ետ քաշուեցան (30 Յուլ.)։ Կառավարը Ս. Անտրէ բերդը կործանել տուաւ, որ չըլլայ թէ այնպիսի զօրաւոր տեղ մը Անգղիացւոց ձեռքն իյնալով՝ երկրին արհաւիրք ըլլան։

Իսկ Պաշտպանն ապստամբաց հետ դրած դաշնադրութեան համաձայն 20,000 զօրքով Սկովտիա մտաւ, եւ իր նաւատորմիղը 24 պատերազմական եւ նոյնչափ ալ պաշարի նաւով Սկովտիայի ծովեզերքը կ'երթեւեկէր: Արրան իր հանած հրովարտակով, զորն որ վերը յիշեցինք, Մուսսելպորղի քով այնչափ մարդ ժողվեց, որ անոնցմէ ընտրանօք 30,000ի չափ բանակ մը կազմեց: Երբոր Պաշտպանն՝ որն որ անձամբ անգղիական բանակին կը հրամայէր, Մուսսելպարթ գետն եկաւ եւ Սկովտիացւոց բանակն Էսք գետակին անդին կողմը աղէկ պատերազմի դիրքի մէջ գտաւ, տեսաւ որ զանոնք ան դիրքէն կարող պիտի չըլլայ վանել, անոր համար որոշեց որ սպասէ յուսալով որ Սկովտիացիք իրենց սովորական անխոհեմութեան մէջ կ'իյնան, որն որ միշտ անոնց յաղթուելուն պատճառ կ'ըլլար: Եւ իրօք ալ այնպէս եղաւ: Արրան կոմը թըշնամւոյն յապաղումը տեսնելով կարծեց որ Անգղիացիք ի փախուստ դարձընելու համար բաւական է միայն տեղէն շարժիլ, եւ ատոր համար իր հաստատուն տեղէն ելլելով Էսք գետակէն անցաւ: Սկովտիացիք իրենց սովորութեան համեմատ մեծ քառակուսի գնդեր շինելով ճակատը յարդարեցին. լայն եւ զարմանալի ձեւով սրեր ունէին, եւ իրենց վիզը հաստ լաթ մը կրկին կամ երեքպատիկ փաթթած էին: "Պաղին համար չէր, կ'ըսէ հին պատմագիր մը, այլ սրերուն հարուածին դէմ": Ամէն մէկը տասնութը ոտք երկայն նիզակ ունէր, ուստի երբոր պատերազմի ատեն ճակատ կը յարդարէին ամէնն ալ նիզակը վեր կը տնկէին, բայց երբոր թշնամին յարձակումը կը սկսէր, առջի կարգը ծնկան վրայ գալով յարձակողներուն դէմ նիզակը կ'ուղղէր, երկրորդ կարգը քիչ մը կը ծռէր եւ նոյն կերպով նիզակին երկաթը թշնամւոյն կը ցուցընէր, իսկ երրորդ կարգը որն որ հասարակօրէն շատ բարձր մարդիկներէ կազմուած կ'ըլլար, իրենց ընկերաց գլխուն վրայէն նիզակները կ'երկընցընէին: Ասով ամբողջ քառակուսին հազարաւոր փշերով հսկայակերպ ոզնւոյ մը կը նմանէր, անանկ որ մարդ չէր գիտեր որ յարձակումը

մը կողմանէ սկսի։ Դրէյ առաջնորդը Անգղիացւոց հեծելազօրուն հրամանատարը պատերազմը բացաւ եւ աս մահաբեր անտառին վրայ յարձակեցաւ. Սկովտիացիք հաստատուն մնացին, իրենց նիզակներով ձիաւորաց կը սպառնային ու "յառաջ հրամայեցէք հերետիկոսներ,, կը պոռային։ Յարձակումը սաստիկ էր, բայց որովհետեւ Անգղիացւոց նիզակները գրեթէ չորս ոտք աւելի կարճ էին, վնաս մը չընելէն զատ, թէ մարդիկ եւ թէ ձիեր խիստ խոցոտուելով ու մեծ կորուստ կրելով ետ քաշուեցան։ Դրէյ երեք անգամ ալ մեծ կորուստով ետ քաշուելու ստիպուեցաւ։ Այն ատեն Դրէյ՝ Ուարիք կոմսին խորհրդով աղեղնաւորաց եւ հրացանաւորաց գունդ մը յառաջ քալեցուց, որոնք իրենց մահաբեր գնդակներն ու նետերը կ'արձակէին առանց Սկովտիացւոցմէ վնաս մը կրելու։ Սկովտիացիք իսկզբան անոնց յարձակման դիւցազնական քաջասրտութեամբ ընդդիմացան, բայց Անկաս կոմսը տեսնելով որ թշնամւոյն նետերն ու գնդակներն իր ընդարձակ քառակուսւոյն մեծ վնաս կ'ընէին, հրամայեց որ ճակատը նեղցընեն։ Սկովտիացւոց մէկալ բաժինները նիզակաւորաց աս շարժումը տեսնելով կարծեցին որ Անկաս կոմսը յաղթուած ետ կը քաշուի, շփոթութեան մէջ ինկան եւ փախչելու սկսան։ Սոմմէրսէթ Սկովտիացւոց բանակին շփոթութիւնը տեսնելով իր ամբողջ բանակովն յարձակեցաւ ու մեծ կոտորած ըրաւ, մինչեւ որ նիզակաւորները իրենց ընկերաց փախուստը տեսնելով նիզակները ձգեցին ու փախչելու սկսան։ Անգղիացւոց ըրած կոտորածն այնչափ սաստիկ էր որ գրեթէ հինգ քառակուսի մղոն ընդարձակ տեղւոյն վրայ ամէն քայլափոխին կամ դիակ եւ կամ վահան ու նիզակ ցանուած էին, զորոնք փախստականք դիւրաւ փախչելու համար գետին նետած էին։ Աս պատերազմին մէջ Սկովտիացիք գրեթէ 8000 մարդ կորսնցուցին։

Պաշտպանը հոս յաղթելէն ետեւ շիտակ Լիթ քաղաքն արշաւեց եւ չորս օր քաղաքն ու շրջակայ տեղերը աւար ընելէն ետեւ շուտով Անգղիա դարձաւ։ Պաշտպանն իր այսպիսի փառաւոր յաղթութե-

նէն ետեւ անակընկալ եղանակաւ ետ քաշուելովը թէ թշնամիքն ու թէ բարեկամները զարմացմամբ լեցուց։ Արշաւանքը գրեթէ տասնուվեց օր տեւեց։

Սկովտիացւոց յաղթուելովն իրենց Անգղիացւոց դէմ ունեցած ատելութիւնն աւելի եւս սաստկացաւ։ Մարեմայ Եդուարդայ հետ ամուսնանալուն վրայ եղած փոքր խօսք մ'ալ Սկովտիացւոց սիրտն անհնարին բարկութեամբ կը լեցընէր։ Գիւղականաց հիւղերէն սկսեալ մինչեւ Էտինպուրկի պալատները Անգղիայի անճոռնի վարմանց վրայ կը խօսէին, որն որ իր թագաւորն իրենց թագուհւոյն հետ ամուսնացընելու համար՝ քաղաքներ եւ գիւղեր մոխիր կը դարձընէր։ Բայց սակայն աղէկ մտածելով, հաւանական կ'երեւայ թէ աս ամուսնութիւնը Սկովտիայի համար շատ շահաւէտ կ'ըլլար. բայց ինչպէս կրնար աս հնացեալ ատելութիւնն որն որ Պիկտաց եւ Պրիտաց զաւակաց մէջ այնչափ դարէ ի վեր կը տիրէր, սիրոյ եւ մտերմութեան փոխուիլ։ Ինչպէս կրնար մտածուիլ որ Սկովտիա, որ երկայն ատենէ ի վեր իր անկախութիւնը պահելու համար այնչափ արիւն թափած էր, Անգղիայի լոկ գաւառ մը սեպուի։ Եւ ի մասնաւորի ով կրնար յոյս ունենալ որ Սկովտիա իր կրօնք (նոյն ժամանակը դեռ ուղղափառ էր) փոխէ, չարացընէ ոչընչացընէ անօրէն Հենրիկոսին հնարած վարդապետութեանցը հաղորդակից ըլլալով, զորոնք մոլեռանդն Եդուարդ մանուկ թագաւորը վերջի ծայրը հասուցած էր։ Ոչ, չէր կրնար ըլլալ որ իրենց սիրելի թագուհին՝ Անգղիայի թագաւորին զոհ ընեն։ Այսպիսի խորհրդածութիւնները Սկովտիացւոց սիրտը զարհուրանօք կը լեցընէին։ Նոյն իսկ Սկովտիայի մէջ եղած անգղիական կողմնակցութիւնք թագաւորին՝ Սկովտիացւոց թագուհին իրեն առնելու միտք՝, նոյն ժողովրդեան սիրտը վաստըկելու համար բռնած միջոցը վար կը զարնէր։ Ազգի մը հետ պատերազմ բանալ, անոր գեղերն ու քաղաքներն այրել կործանել, հարսի մը ստացուածներն եւ անոր բարեկամաց վնաս հասցընել անոր բարեկամութիւնն ու սէրը վաստըկելու համար, նոր եւ դեռ չփորձուած փորձ մըն էր, զայն որ Անգղիա փորձեց։

Սկովտիայի առենականք Սթիրլինկի մէջ ժողվուելով որոշեցին որ Գաղղիա իրենց հին եւ հաւատարիմ դաշնակիցը օգնութեան կանչեն, եւ միանգամայն ալ նոյն խորհրդին մէջ արքայորդւոյն հետ Մարիամի ամուսնացընելու խօսք բացուեցաւ, եւ թագուհւոյն ապահովութեան համար զինքը Գաղղիա տանիլ ու Հենրիկոս Բ.ին եւ իր մօրեղբօր աչաց տակ մեծցընել ու կրթել տալ (1348)։ Ասոր հակառակ Պաշտպանը լատիներէն եւ անգղիերէն յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ Սկովտիացւոց պատերազմին դժբախտութեան պատճառը Արրան կոմսին, անոր կուսակցաց ու խորհրդականաց վրայ կը դնէր, որոնք Անգղիացւոց լրած օգտակար դաշնադրութիւնները մերժեր էին։ "Սկովտիացիք, կ'ըսէր, ձեր մանկահասակ թագուհւոյն որպիսի ամուսին կ'ուզէք տալ։ Օտարական իշխա՞ն մը։ Ասով ձեր երկիրը ան օտար իշխանէն կախում պիտի ունենայ, անոր թագին վրայ նոր ակն պատուական մը կը յաւելլուք։ Ձեր երկրին մէկ իշխանի մը կ'ուզէք տալ։ Ասով ան հին տրտունջն որ մեր երկու տէրութիւնները հակառակութեան մէջ կը պահէ՝ կը շարունակուի։ Ութը դարէն աւելի է որ այսպիսի յաջող եւ օգտակար դէպք մը պատահած չէ որ կարող ըլլայ մեր մէջն եղած գժտութեանց վերջ մը տալ։ Ձեր մանկահասակ թագուհին մեր պատանի թագաւորին հետ ամուսնանալով իրենց ճակատը կրկին թագով կը պսակուի։ Սկովտիա պահէ իր օրէնքը, սովորութիւններն ու առաւելութիւնները։ Անգղիա ու Սկովտիա ասկից վերջը Բրիտանիա անուամբ ազգ մը կազմէ, որով թէ ձեզի եւ թէ մեզի երջանկութեան նոր դար մը կը սկսի,,։

Պաշտպանին աս հրովարտակին հետ ընտիր զօրք բանակ մ'ալ Կրէյ առենակալին առաջնորդութեամբ Սկովտիա ղրկեց, որն որ Ցալքէյթ քաղաքը մոխիր դարձուց եւ Հետտինկթըն քաղքին մէջ անգղիացի եւ իտալացի վարձկան զօրք դրաւ պահպանութեան համար։ Աս ժամանակներս Արրան նորէն վանքի մը մէջ տէրութեան կարգորեարը ժողվելով Սթիրլինկ քաղքին մէջ որոշածները նորէն յառաջ բերաւ, ո-

րոնք հրապարակաւ ընդունելէն ետեւ Գաղղիացւոց Նաւատորմիղն, որն որ Սկովտիացւոց օգնական զօրք բերած էր, տագաստանները բացաւ ու՝ դէպ ի Հա-րաւային կողմերը իր ընթացքն ուղղեց, կարծես թէ Գաղղիա պիտի դառնար, բայց բաց ծովը հասնելէն եւ ցամաքը կորսնցընելէն ետեւ, մէկէն դարձաւ եւ ընթացքը դէպ ի Հիւսիսային կողմը փոխեց: Նորէն Հիւսիսային Սկովտիայի ծովեզերքն հասաւ Տօնպար-թըն քաղաքին մօտեցաւ եւ Հինգամեայ Մարիամը՝ իր պալատականներովն եւ չորս Մարիամներով Գաղղիա նաւեց, ուր քիչ ատենուան մէջ Պրէսթ նաւահան-գիստն հասաւ (1548, 13 Օգոստ.):

Պրէսթ քաղաքէն որուն բնակիչքը զինքը շատ պատուով ընդունած էին, իր սկովտիացի պալատա-կաններովն եւ գաղղիացի ազնուականաց բազմութեամբ Ս. Ժէրմէն ան Լէ թագաւորական դաստակերտը գնաց, ուր որ Հէնրիկոս Բ. զինքը դիմաւորեց, եւ պատշաճ յարգանօք եւ սիրով ընդունելէն ետեւ, միտքը դրաւ որ զինքը կնոջ մը ամէն հարկաւոր կատարելութեանց մէջ կրթել տայ, որպէս զի թէ թագաւորական վի-ճակին, եւ թէ իրեն անուան պատիւ ըլլայ: Մարիամ քանի մ՛օր թագաւորին եւ թագուհւոյն հետ պա-լատի մէջ կենալէն ետեւ, կուսանաց վանք մը տա-րուեցաւ, ուր որ Գաղղիայի երեւելի գերդաստանաց աղջիկները կը կրթուէին: Հոն տեղս Մարիամ թէ հոգեւոր եւ թէ մարմնաւոր կրթութեանց սկզբունքն առաւ, ընտիր վարպետուհիներուն ձեռք կենալով՝ ա-րոնք իր սրտին եւ ոգւոյն կարողութիւններն աղէկ ճանչնալով, պատշաճ կրթութիւն տուին. անանկ որ աս կրթարանէն թէ առաքինութեամբ եւ թէ ի մտա-ւորի կուսական համեստութեամբ, եւ թէ իրեն հարկաւոր գիտութեամբ զարդարեալ ելաւ: Կը պատ-մուի որ անգամ մը տասը տարուան եղած ատեն, թա-գաւորին եւ Լոթարինգիայի կարդինալին եւ ուրիշ շատ մեծամեծաց առջեւ, ճառ մը խօսած ըլլայ, զորն որ ինքը շինած էր կրթութեան օգտին վրայ. նոյն ատեն մեծամեծք, որ այնչափ գիտութեանց ետեւէ ինկած չէին, զինքն իբրեւ զարմանալիք մը համարե-

ցան։ Այս ամէն կրթութեանց մէջ միշտ առողջ մնաց Մարիամ, եւ շուտով աճեցաւ կանոնաւոր եղանակաւ կեանք վարելով եւ հարկաւոր շարժում եւ զբօսանք ընելով։

## ԳԼՈՒԽ Է.

Սկովտիայի մէջ խռովութիւնները կը շարունակուին։ Սկովտիացիք ու Գաղղիացիք Անգղիացւոց հետ Լիթայ Էտինպուրկի մէջ խաղաղութիւն կ՚ընեն։ Մարիամ Գաղղիայի ժառանգին հետ կ՚ամուսնանայ։ Եղիսաբեթ Անգղիայի Թագուհի կ՚ըլլայ եւ Մարեմայ հետ կ՚աւրուի։

Մարեմայ Սկովտիայէն հեռանալուն պատերազմին աւիթները վերցուած համարուեցան, եւ Հենրիկոս Բ. Գաղղիայի Թագաւորը Մարեմայ Գաղղիա հասնելուն եւ իր Փրանկիսկոս որդւոյն հետ հարսնախօսութիւնը Պաշտպանին իմացընելով, յանուն իր որդւոյն՝ Սկովտիայի հանդերձեալ Թագաւորին եւ յանուն Մարեմայ՝ Սկովտիայի Թագուհւոյն հրատարակեց որ ինքն իբրեւ անոնց խնամակալ Սկովտիան պաշտպանել կ՚ուզէ, եւ անոր համար կը պահանջէր Պաշտպանէն որ անոնց անչափահասութեան առեն ամէն գժտութիւնները մէկդի ձգուին։ Բայց Պաշտպանն աս օրինաւոր պահանջումը մերժեց, թէպէտ եւ մերժելու ուրիշ պատճառ մը չունէր, բայց եթէ այնպիսի պատրուական մը, այսինքն Մարիամ Եդուարդին հետ ամուսնացընելով Սկովտիա Անգղիայի հետ միացընելու աւիթը ձեռքէն փախցընելու համար զինքը առչըրող վրէժխնդրութիւնը։ Ասոր համար պատերազմը շարունակելու համար Շրիւսպէօրի կոմսը 20,000 զօրքով նորէն Սկովտիա խրկեց։ Տ՚Էսսէ Գաղղիայի կողմանէ Սկովտիացւոց զօրապետը Անգղիացւոց բազմութիւնը տեսնելով Հէտտինկթընին պաշարումը վերցուց եւ Մուսսէլպօրօյի քով ամրացաւ։ Շրիւսպէօրի կոմսը զինքն աս զօրաւոր դիրից մէջէն չկրնալով հանել ու պատերազմ տալ, Հէտտինկթընին մէջ զօրք ու պաշար թող տալէն եւ Տէօնպար քաղաքն այրելէն եւ շրջակայ տեղերը ապականելէն ետեւ՝ ետ դար-

ձաւ։ Ասկից ետքը պատերազմին բախտն աւելի Սկովտիացւոց կողմը կը միտէր որոնք Հէտտինկթըն, Համ քէսլ, եւ Ֆէս քէսլ առին, եւ 1549ին Անգղիայի սահմանը անցնելով Նիւքէսլ պաշարեցին եւ 20 գեղ այրելով՝ Անգղիացւոց ըրած աւարառութեանց եւ հրըկիզութեանց դիմացը փոքր հատուցում մ'ըրին։

Ըս ժամանակներս Անգղիա ներքին երկպառակութեանց մէջ ըլլալով՝ Պաշտպանը իր ներքին թըշնամեաց մանաւանդ իր Սիմէօր եղբօր դաւաճանութեանց դէմ դնելու համար, Սկովտիայի մէջ պատերազմը շարունակելու պարապ չունեցաւ։ Ասոր համար խաղաղութիւն ընելու մտօք Պուլոնը քաղաքը ստըկով Գաղղիացւոց տալու առաջարկեց. բայց խորհրդականաց ժողովքն ասիկա Անգղիայի պատուոյն նախատինք համարելով, եւ միանգամայն գիտնալով որ պատերազմի ժամանակ Անգղիացիք չեն կրնար նոյն քաղաքը պաշտպանել, աւելի Գերմանիայի կայսեր պաշտպանութեան տակ ձգել ուզեց, բայց կայսրը նոյն ատենները Հենրիկոս Բ.ին դաշնակից ըլլալով յանձն չառաւ։ Գաղղիացիք զօրք ժողվելով ամենայն զօրութեամբ Պուլոնէ գաւառը յարձակեցան, Սելլաք, Անպըլթէօզ եւ Մօնթալանպէր եւ վերջապէս Պուլոնը քաղաքն ալ առին։ Այս ամէն դժբախտութեանց պատճառն Անգղիացիք Պաշտպանին ամբարտաւան վարմանցը տալով եւ իր թշնամիքն ասկից առիթ առնելով զինքը կործանելու եւ թագաւորին քովէն հեռացընելու ջանացին, եւ իրօք ալ ըրին, զանազան ամբաստանութիւններ վրան դնելով Թաուէր բերդը դրին (1549, 6 Հոկտ.)։ Պաշտպանին իյնալէն ետեւ Անգղիացիք տեսնելով որ պատերազմաց պատճառաւ գանձը պարպուեր է, եւ կարող պիտի չըլլան Գաղղիացւոց դէմ գլուխ ելլել, Անդոնիոյ Կուիտոթթի Ֆլորենտացի վաճառականին ձեռօք գաղղիական դահլըճին անուղղակի իմացուցին որ խաղաղութիւն ընելու ընդդիմութիւն չունին։ Բայց Գաղղիացիք իրենց ըրած յաղթութեանց վրայ վստահանալով դաշանց պայմաններն իրենք առաջարկեցին։ Պուլոնը քաղքին հատուցման տեղ Անգղիացիք առաջարկեցին որ Մա-

ըլլայ՝ Եդուարդին հետ ամուսնանալ, բայց Հենրիկոս պատասխան տուաւ որ Մարիամ իր որդւոյն հետ արդէն նշանած ըլլալով անոր հետ պիտի ամուսնանայ։ Վերջապէս Անգղիացիք գլուխ ծռելով մշտնջենաւոր խաղաղութիւն ըրին։ Այս խաղաղութեան մէջ Սկովտիացիք ալ մտան, եւ խօսք տուին Անգղիացիք որ անոնց հետ պատերազմի չելլեն մինչեւ որ նոր գըժտութեան ուրիշ առիթ չտրուի։ Նոյնպէս որոշեցաւ որ Անգղիա՝ Գաղղիայի եւ Սկովտիայի նկատմամբ, նոյնպէս Գաղղիա եւ Սկովտիա՝ Անգղիայի նկատմամբ ունեցած ամէն իրաւունքներն ու պահանջումները պահեն (24 Մարտ.)։

Անգղիացիք այնչափ ակամայ կամօք եւ իբրեւ ազգին դժբախտութիւն մը համարելով այս խաղաղութիւնն ըրին, որչափ որ իրենց կորսնցուցածը մեծ էր, մանաւանդ Եդուարդ իրենց թագաւորը Մարեմայ հետ ամուսնացընելով Սկովտիան իրենց երկրին հետ միացընելու յոյսը բոլորովին կորսնցուցին։

Այս ժամանակներս (1550) Թագուհւոյն մայրն իր դուստրը տեսնելու համար գաղղիական նաւատորմղաւ Գաղղիա եկաւ, եւ իր դուստրը բարի վարուց եւ գիտութեանց մէջ յառաջացած տեսնելով շատ մխիթարուեցաւ։ Իրեն հոն եղած ատեն, թագաւորական թիկնապահներէն մէկը զՄարիամ թունաւորելու փորձ փորձեց, բայց բռնուեցաւ եւ սպաննուեցաւ։ Անմեղ անձի մը վրայ այսպիսի եղեռնագործութիւն մը գործելու պատճառն ով ըլլալը չգիտցուիր. բայց թէ որ մոլեռանդութենէն յառաջ եկած չէ, իբրեւ ստոյգ կրնանք զրուցել որ Անգղիայի կաշառքին պտուղն է։ Երկրորդ տարին մայր Թագուհին ճամբայ ելլելով Անգղիայի կառավարութենէն հրաման խնդրեց որ ցամաքով Անգղիայէն անցնի։ Եդուարդ Զ. չէ թէ միայն անցնելու հրաման տուաւ, այլ նաեւ ամէն կողմ ուսկից որ մայր Թագուհին պիտի անցնէր հրաման խրկեց որ ամէն կարելի հանդիսութիւններով զինքն ընդունին։ Եւ ինքն ալ զինքը Լոնտոն հրաւիրելով հետը շատ յարգութեամբ վարուեցաւ։ Մայր Թագուհին քաղաքավարութեան դիմացը քաղաքա-

վարուԹիւն բանեցաւ, բայց իր մայրն հաստատապէս մնաց զինքն երբեք իրեն փեսայ չառնելու։

Նըրքոր ժամանակը մօտեցաւ երբ Մարեմայ վիճակին մեծ փոփոխուԹիւն պիտի ըլլար, Հենրիկոս Բ. Գաղղիայի Թագաւորը, Սկովտիայի ժողվուած խորհրդանոցին (1557 Դեկ.) Թուղթ մը գրեց, որուն մէջ կը խնդրէր որ ազգին գլխաւորներէն քանի մը հոգի Գաղղիա գան, որպէսզի իրենց Թագուհւոյն եւ իր որդւոյն ամուսնուԹեան դաշանց ստորագրեն եւ վկայ ըլլան։ Այս ծանր բանիս համար խորհրդանոցը ծերըն-դեանմը, պատուով եւ իմաստուԹեամբ ամենէն երեւե-լիներն ընտրեց, որոնք 1558ին Մարտի մէջ Փարիզ հասան, եւ Ապրիլի 19ին իրենց Թագուհւոյն ամուս-նուԹեան դաշանց իբրեւ վկայ ստորագրուԹիւն տուին։ Նոյն 24ին Նոթրտամ եկեղեցւոյն մէջ պսակին հանդիսուԹիւնը կատարուեցաւ։ Այս հանդէսին ներ-կայ էին Գաղղիայի Թագաւորը եւ Թագուհին, երկու տէրուԹեանց ազնուականաց բազմուԹիւն եւ ուրիշ օտար տէրուԹեանց դեսպանաց բազմուԹիւն մը։ Անկից վերջը Մարիամ Փրանկիսկոսը իր Թագաւորու-Թեան գահակից ընելով, զինքն իբրեւ Սկովտիայի Թագաւոր ողջունեց։ Իսկ Գաղղիայի Թագաւորն ասոր հակառակ ուզեց որ ասոր փոխարէն Մարիամ Գաղ-ղիայի Թագաւորին դուստր (Dauphine) կոչուի եւ Անգղիայի, Իրլանտայի եւ Սկովտիայի պատուոյ անուն-ները առնու։ Պալատին հանդէսը լմննալէն ետեւ շատ փառաւոր ու մեծամեծ խնջոյք եւ ուրիշ ուրախու-Թիւններ եղան։ Թագուհւոյն մայրն որն որ երկրին խռովալից պարագայից համար դստերը հարսանեաց չկրցաւ ներկայ ըլլալ, հրաման տուաւ որ բոլոր Սկով-տիայի մէջ իր դստերը հարսանեաց պատուոյն համար ուրախուԹիւններ ըլլան։

Թէպէտ եւ Մարիամ այս ամուսնուԹեան պատ-ճառաւ բնականապէս աւելի բարձր աստիճանի մը հա-սաւ, բայց ինքը Թէ Թագաւորին եւ Թէ Թագուհւոյն իր պարտաւոր յարգանքն ու պատիւը չպակսեցուց. իր բարեկամաց եւ ընկերակցաց նկատմամբ, իր բնա-կան պարզուԹիւնը միշտ պահեց, եւ ինքզինքն անանց

պատուոյն եւ առաքինանքին համաձայն կը յարմարցը-նէր։ Գիտէր որ իր ամուսինը թէ հասակաւ եւ թէ փորձառութեամբ իրմէ վար էր, ի վերայ այսր ամե-նայնի երբոր թագաւորութեան նկատմամբ որոշելոց բան մը կը պատահէր, իրեն հետ կը խորհրդակցէր։ Առանց իրեն հարցընելու ոչ կառավարութեան եւ ոչ ինչ եւ իցէ փոքր գործքի մէջ քայլափոխ մը կ՚ը-նէր։ Գաղղիայի թագաւորին ու թագուհիին անոնց հա-մակամութիւնն եւ իրարու հետ ունեցած սէրը տես-նելով, զիրենք շատ կը յարգէին եւ իրենց սրտին մէջ մեծամեծ յոյսեր կը ծնանէին։ Երկուքն ալ թէ Մարիամ եւ թէ Փրանկիսկոս որչափ որ կարելի էր Գաղղիայի կառավարութեան մէջ խառնուելէն կը զգուշանային, եւ մի միայն ան ատեն իրենց կարծիքը կու տային, երբոր մասնաւորապէս կը հարցուէին։ Որ-չափ որ Մարիամ հոս խոհեմութեամբ եւ զգուշու-թեամբ կը վարուէր, եւ Գաղղիայի մէջ իր բարի սկզբանց ու զարմանալի ձրից վրայ զարմացողներ կը գտնէր, նոյնչափ Անգղիական դաշինքն եւ ի մասնա-ւորի Սէսիլ ատենադպիրը կ՚աշխատէր որ անոր անունն անարգելի ընէ։

Թէպէտ եւ հոս տեղը չէ Լոնտոնի մէջ եղած ամէն երեւելի դէպքերը պատմել, բայց մենք մեր պատմութեանն աւելի լուսաւորութիւն տալու համար համառօտիւ կը յիշենք։ Եդուարդ մանուկ թագաւո-րին մեռնելէն ետեւ (1553 Յուլ. 6) կողմնակցութիւն մը Յովհաննա Կրէյ Անգղիայի աթոռը նստեցուց (6 Յուլ.); որն որ նոյն ամսոյն 20ին վար առնուեցաւ, եւ Հենրիկոս Ը.ին օրինաւոր դուստրը Մարիամ Սպա-նիացին անոր տեղն անցաւ, ասիկա ուղղափառ կրօնը Անգղիայի մէջ նորէն հաստատեց, եւ Փիլիպպոս Բ.ին, Սպանիայի թագաւորին հետ ամուսնանալով նոյն թա-գաւորին Գաղղիայի հետ ունեցած պատերազմի մէջ օգնութիւն ըրաւ, բայց 1558ին Յունուարի 8ին երբ որ Գաղղիացիք Քալէ բերդն առին սրտի ցաւէն մե-ռաւ (17 Նոյ.)։ Մարիամ Սպանիացւոյն մեռնելէն ետեւ Հենրիկոս Ը.ին երկրորդ դուստրն Եղիսաբեթ յաջոր-դեց (20 Նոյ.), որն որ իր օրինաւոր կնոջ Կատարինէ

Սպանիացւոյն կենդանութեան ատեն Աննա Պոլէյն կնոջմէ ծնած էր (1533, 7 Սեպտ.)։ Ասիկայ Մարեմայ թագաւորութեան ատեն ուղղափառ հաւատքն ընդունած էր, եւ երկնից անէծքները վրան կարդալով հաստատած էր որ ճշմարտապէս դարձած է, բայց աթոռը նստելէն քիչ մը ետքը բողոքական կրօնը ընդգրկեց, չէ թէ համոզմամբ իբրեւ ճշմարիտ ճանչնալով, որովհետեւ եւ ոչ մէկ կրօն կը ճանչնար, այլ քաղաքականութեան համար բողոքականութիւնը կը պաշտպանէր, ինչու որ համոզուած էր թէ նոյն կրօնը միայն պաշտպանելով իր աթոռին վրայ հաստատուն կրնայ կենալ։

Եղիսաբեթ՝ թագուհի ըլլալուն պէս, ինքզինքն Անգղիայի թագուհի անուանելէն զատ Գաղղիայի թագուհւոյ պատուոյ անունն ալ առաւ․ բայց ասիկայ ծիծաղական բան մըն էր, որովհետեւ ըստ գաղղիական յաջորդութեան օրինաց կին մը Գաղղիայի վրայ իշխող չէր կրնար ըլլալ, եւ ըստ հետեւորդի յաջորդութեան իրաւունք չէր կրնար ունենալ։ Հենրիկոս տեսնելով որ աս պատուոյ անունը պարզ երեւակայական պատիւ, եւ ատեն մ'ունեցած իրաւունքը չմոռցնելու յիշատակ մըն էր, ձայն չհանեց, բայց ասոր փոխարէն իր նուն երեքպատիկ պատուոյ անուններով իրաւամբ զարդարեց, այսինքն Սկովտիայի, Անգղիայի եւ Իրլանտայի թագուհւոյ յորջորջմամբ։ Աս բանս չէ թէ միայն Եղիսաբեթին ամբարտաւանութեանը դպաւ, այլ նաեւ իր կասկածն աւելցուց որ չըլլայ թէ Մարիամ յարմար առիթ գտնելով իրաւունքը զինուք պաշտպանէ, եւ աս կասկածն այնչափ հիմ ունէր, որչափ որ Եղիսաբեթ իր դեսպանին ձեռօք Պաւղոս քահանայապետին՝ աթոռը նստիլը ծանուցանելու ատեն, նոյն քահանայապետը պատասխան տուած էր որ ապօրինաւոր ամուսնութենէ ծնածի մը յաջորդութեան իրաւունքը ինք չիճանչնար եւ իր տեղը Մարիամ Ստուարթ Սկովտիայի թագուհին՝ Հենրիկոս Ը.ին օրինաւոր ժառանգն եւ յաջորդն է, անոր համար եթէ Եղիսաբեթ իրեն դատաստանին գլուխ ծռել կ'ուզէ, ինքն արդար դատաստանաւ բանը

կ՚որոշէ, երկուքին ալ նկատում ընելով որչափ որ արդարութիւնը կը ներէ։ Դարձեալ աղէկ գիտէր Եղիսաբեթ որ ամէն ուղղափառք մանաւանդ Գաղղիացիք համոզուած էին որ իր մօրը Աննա Պոլէյնին ամուսնութիւնն ապօրինաւոր էր, եւ ինքն իբրեւ բնական դուստր չէր կրնար իր հօրը աթոռը ժառանգել, եւ կը տեսնէր որ Հենրիկոս Բ.ին թելադրութեամբ Մարիամ Ստուարթին առած երեք տէրութեանց յորջորջանքը իրաւացի էր։ Հենրիկոս Բ. իր նուին իրաւանց վրայ այնպէս համոզուած էր որ մինչեւ դրամ ալ տպել տուաւ, որուն մէկ կողմը Մարեմայ եւ Փրանկիսկոսի երեսները կը տեսնուէին, իսկ մէկալ կողմը Գաղղիայի, Սկովտիայի եւ Անգղիայի զինանշանները։

Բայց Եղիսաբեթ իր կասկածն եւ երկիւղը դըրսանց չցըցունելու համար, Քաթոյ Քանպրեսիի մէջ Մարեմայ հետ խաղաղութեան դաշինք դրաւ, եւ Աւետարանին վրայ երդում ընելով խոստացաւ որ ապըստամբ Սկովտիացւոց ոչ օգնութիւն եւ ոչ պաշտպանութիւն ընէ։ Նոյնպէս որոշուեցաւ որ Եղիսաբեթ Գաղղիայի թագուհի կոչուելու յորջորջանքը պահէ, եւ Մարիամ Անգղիայի վրայ ունեցած իրաւունքը պահելով Գաղղիայի, Սկովտիայի, Անգղիայի եւ Իռլանտայի թագուհի կոչուի։ Եղիսաբեթ ասիկայ Սեսիլ ատենադպրին խորհրդով ընդունեցաւ, որն որ թէպէտ եւ քաջ քաղաքագէտ մըն էր, բայց խորամանգ, կեղծաւոր, նենգամիտ եւ անխիղճ, եւ այնպիսի թագուհւոյ մը՝ որն որ ոչ կրօն եւ ոչ քաղաքականութիւն ունէր յարմար պաշտօնեայ էր։

## ԳԼՈՒԽ Ը.

Սկովտիայի մէջ նորաղանդութիւնը կը յառաջանայ, բողոքականք ''Միաբանութիւն,, անուամբ ժողովք մը կը կազմեն եւ կ՚ապստամբին։ Եղիսաբեթ անոնց կ՚օգնէ։

Այս ժամանակներս Սկովտիայի մէջ նորաղանդութիւնը մեծամեծ քայլերով յառաջ կ՚երթար։ Եղիսաբեթ եւ իր պաշտօնեայն Մարիամ Ստուարթին վրէժխնդրութիւն ընելու համար Սկովտիայի նորադ-

չաց եւ ապստամբաց ծածուկ օգնել ուզեցին, որպէս զի բողոքականաց կողմը զօրանալով Մարեմայ կուսակիցները տկարանան: Մայր Թագուհին Գաղղիայէն յուսացած օգնութեան վրայ վստահանալով, բողոքականաց դէմ դնելու կը պատրաստուէր, բայց անոնք իրենց Նաքս վարդապետին թելադրութեամբն ոտք ելան: Ստոյգ է որ եթէ Եղիսաբեթ անոնց օգնութիւն չխրկէր իրենց վախճանին չէին կրնար հասնիլ, թէպէտ եւ ազնուականաց մէջէն շատերը իրենց կողմը անցած էին: Ա՛ս ազնուականները որոնք Բողոքականաց ըսածին համաձայն "Իմաստուն կրօնին" հետեւեցան, ան ազնուականներն էին որոնց հայրք օրինաւոր իշխանութեան հետ շարունակ գժտութեան մէջ էին, որոնք իրենց հպատակաց վրայ ճշմարիտ բռնաւոր էին, եւ որոնց առջեւ քաղաքային օրէնք, բարոյական կամ կրօնական պարտաւորութիւն ծանր կու գար, եւ վերջապէս ան չափահաս երիտասարդք էին որոնք ժամանակին մոլութեանց գերի եղած էին եւ առանց ամօթոյ ճշմարիտ նորոգութիւն քարոզող աղանդաւոր կրօնք կը մերժէին, որպէսզի թոյլ եւ մեղկ կրօն մ'ընդունելով արձակ համարձակ իրենց ուզածն անպատիժ կարող ըլլան ընել: Աս նորադարձից մէջ էր Սթուարթ՝ Յակովբ Ե.ին բնական որդին, որն որ վերջէն Մորրէ կոմս անուամբ կը յիշուի: Ասիկայ թէպէտ Մարիամին մեծանձնութեամբ պատիւներու հասած էր, բայց ի վերայ այսր ամենայնի ինք եղաւ անոր գլխաւոր թշնամին, հալածիչն, ամբաստանողն եւ գրեթէ զինքը մահուան դատապարտողը:

Ա՛ս Սթուարթը "Միաբանութիւն" անուամբ բողոքականաց ժողովքի մը գլխաւորներէն մէկն էր: Բողոքականք տեսնելով որ Մարեմայ Գաղղիայի Թագաւորին տղուն հետ ամուսնանալն ուղղափառաց շատ նպաստաւոր է, 1557ին Դեկտեմբերի մէջ խորհրդանոցը չբացուած իրենք զիրենք երդմամբ պարտաւորեցին իրենց վարդապետին վարդապետութեանց մինչեւ ի մահ հաւատարիմ մնալու եւ "Տեառն միաբանութիւն" անուամբ ժողովք մը կազմեցին, եւ երդում ըրին որ իրար պաշտպանեն եւ "Սատանայի միաբանու-

թիւնը,, (ուղղափառութիւնը սատանայի միաբանութիւն կը կոչէին) հալածեն եւ նոյն եկեղեցւոյն "Գարշելի հեթանոսական ու սատանայական,, գործքերէն հրաժարին։ Մարդ չէկրնար ըմբռնել որ ինչպէս նոյն ժամանակուան "ամենալուսաւորեալ եւ ազատքինի մարդիկ,, այնչափ յիմարութեան հասած ըլլան եւ ուղղափառ եկեղեցւոյ խորհուրդները, պատարագն եւ ուրիշ սուրբ արարողութիւնները՝ հեթանոսական ու սատանայական բան համարին, եւ գարշին ան ուղղափառ կրօնքէն որն որ աշխարհքը լուսաւորեց եւ գիտութեամբ լեցուց, հեթանոսաց տաճարները կործանեց, որուն մաքուր քաղաքականութիւնը մարդկային ազգը երջանիկ ընելու միակ միջոցն է, ան կրօնը որուն մէջ իրենց հարք դաւանելով մեռան, եւ որուն մէջ իրենք ալ ծնան, մեծցան եւ անոր համար միայն իրմէ հեռացան, վասնզի անոր վարդապետութեանց հետեւող չուզեցին ըլլալ։ Արմէյլ, Մորթն եւ Կլէնքեռն կոմսերն ալ միաբանութեան գլխաւորներէն էին։

Երբոր ուղղափառք ալ միաբանութեան ինչ ըլլալն իմացան, նոյնն իրենց դէմ պատերազմի առջի քայլ մը համարեցան, անոր համար հերետիկոսաց դէմ արգէլն եղած եւ քանի մը նոր օրէնքներ հրատարակեցին եւ Ուալթէր Միլն հերետիկոսը՝ որն որ շատ ժամանակէ ի վեր հերետիկոսական եւ ապստամբութեան շարժող քարոզութիւններ կ'ընէր մահուան դատապարտեցին։ Բողոքականք փոխանակ ասով զգաստանալու, կատաղիներու պէս իրենց ձայնը բարձրացուցին, եւ կրօնի ազատութիւն կը պահանջէին։ Մայր թագուհին երկու կողմնակցութիւնները խաղաղցընելու շատ աշխատեցաւ։ Ս. Անտրէի արքեպիսկոպոսը բողոքականաց ուզածին համաձայն դաւանական ժողով մը ժողվեց եւ հաւատոյ դաւանութիւն մը հրատարակելով նոր քարոզչաց ձեռօք ուղղափառաց աղաւաղած հաւատքը մեկնեց։ Բայց Միաբանութեան գլխաւորները ժողովոյն լմըննալուն չըսպասեցին եւ Փըրթ քաղաքը ինքնագլուխ իրենց կրօնին գլխաւոր տեղն ըրին։ Մայր թագուհին իրենց շատ անգամ օրինազանց գտնուելուն համար քարոզիչնե-

րէն երեք հոգի Սեթիւրենի քահանաները կանչեց որ պատասխան տան, բայց անոնք մտիկ չըրին, ան ատեն մայր թագուհին Սկովտիացւոց օրինաց համաձայն որոշեալ օրուընէ ետքը իրենց վրայ տէրութեան աքսոր դրաւ, եւ իրենց օգնողներն եւ պաշտպանողներն ապստամբ հրատարակեց: Նոքս որ Պէրթ քաղաքէն Սկովտիա դառնալու համար ելած էր, եւ քարոզչաց վրայ ըլլալու դատավճռէն քանի մը օր յառաջ Փըրթ հասաւ, բեմ ելլելով իր կատաղի խօսքերովը լսողներն այնպէս վառեց բորբոքեց, որ անմիջապէս քաղքին եկեղեցեաց կահ կարասիքը կոտրտեցին, Կարթուսեանց փառաւոր վանքը եւ ուրիշ վանքերը կործանեցին եւ ինչ որ ուղղափառ կրօնի պաշտամանց կը վերաբերէր քանդեցին ու այրեցին:

Մայր թագուհին՝ Արրան կոմսին՝ որն որ Շաթելլըրօյ դքսի պատուոյ անուն առած էր, եւ Հոնթլիի կոմսին հետ մէկտեղ Փըրթ քաղքին վրայ ելան, բայց դժբախտութեամբ քիչ զօրք եւ Արրան կոմսին վրայ քիչ վստահութիւն ունենալուն համար, որն որ երկու կողմը կը կաղար՝ բան մը չկրցան ընել: Արրան կոմսը պատերազմելու տեղ միշտ խաղաղութեան խօսակցութիւններ կ'ընէր, եւ ան ալ միշտ ի նպաստ Միաբանութեան կողմը եղողներուն, որոնք մէկ ձեռքը աւետարանն առած եւ մէկալ ձեռքը պատերազմի ջահը, իրենց առաքելութեան պաշտօնը կը կատարէին, եւ առած տեղերը հրով ու սրով կը սրբէին: Ասանկով ապստամբք շատ քաղաք առին եւ քրիստոնէութեան շատ երեւելի յիշատակարաններ կործանեցին: Երբոր Էտինպուրկ քաղաքն հասան՝ քաղաքացիք դըռները բացին, եւ երբոր մայր թագուհին Տէօնպար բերդը փախաւ, համբաւ հանեցին որ թագաւորականնաց բանը լմնցեր է: Բայց Հենրիկոս Գաղղիայի թագաւորը ընտիր զօրաց գունդ մը Սկովտիա խրկելով, Միաբանութեան զօրքը կամաց կամաց ցրուեցաւ, եւ թագուհւոյն կողմն եղող մեծերը թագաւորական դրօշին տակ ժողվելով, մայր թագուհին նորէն Էտինպուրկ դարձաւ:

Անգղիական դահլիճը կամ թէ բուն Սէսիլ

պաշտօնեայն Սկովտիայի ապստամբաց օգնութեան հասնելու ժամանակը եկած համարեցաւ։ Խորամանկ պաշտօնեայն կ'ըսէր որ եթէ Նորաղանդը թագաւորականաց վրայ յաղթանակ կանգնեն եւ Գաղղիացւոց ազդեցութիւնը կտրեն, Մարիամ Ստուարթն Անգղիայի վրայ ունեցած իրաւունքներէն բռնութեամբ հրաժարեցընել դիւրին կ'ըլլայ։ Նաքս աղանդապետը Սէսիլէն շարունակ օգնութիւն կը խնդրէր, եւ կ'ըսէր, եթէ Եղիսաբեթ բողոքականաց շուտով օգնութիւն չխրկեր, ան ատեն իրենք ամենայն փութով մայր թագուհւոյն հետ խաղաղութիւն ընելու կը ստիպուին։ Սէսիլ ասիկայ Եղիսաբեթին իմացուց, բայց շատ զարմացաւ երբոր տեսաւ որ թագուհին անտարբեր աչօք կը նայի։ Եղիսաբեթ Նաքս քարոզիչն ի ներքուստ կ'ատէր։ Նաքս իր բացբերանութեամբը թէ Ֆրանքֆուրթ եւ թէ Կէնֆ քաղաքաց մէջ անգղիական եկեղեցւոյն դէմ խօսած էր, եւ իր գրուածոց մէջ շատ տեղ զրուցած էր որ կանայք կառավարութեան գլուխ նստելու անյարմար են։ Միւս կողմանէ ալ Եղիսաբեթ իշխանի մը անարժան բան կը համարէր մէկ դրացի եւ բարեկամ իշխանի մը հպատակները ապստամբութեան գրգռել։ Նոյնպէս քիչ մը յառաջ Սկովտիայի թագուհւոյն հետ խաղաղութեամբ ապրելու, եւ անոր ապստամբաց եւ դաւաճանաց եւ ոչ մէկ եղանակաւ մը օգնութիւն ընելու համար ըրած երդումը կը յիշէր։ Բայց Սէսիլին իմաստակութիւնն Եղիսաբեթին խղճմտութեան շուտով յաղթեց։ “Անգղիայի թագուհին, կ'ըսէր, աւելի մեծ իրաւամբ վերին իշխանութիւն ունի Սկովտիայի վրայ, քան թէ Մարիամ նոյն թագաւորութեան թագին վրայ. ուստի նոյն երկրին հպատակաց եւ իշխանի մէջ ելած կռուոյն ոչ ոք խառնուելու իշխանութիւն ունի, բայց եթէ անիկա որն որ նոյն երկրին վրայ վերին իշխանութիւն ունի։ Անոր համար թէ պատիւն ու թէ խիղճը կը պարտաւորէ, կ'ըսէր, բռնաւոր իշխանի մը հպատակաց իրաւունքը պաշտպանել,,։ Ասոր վրայ ան ալ աւելցուց որ Եղիսաբեթ աս առթիւ իր գահն եւ իշխանութիւնը հաստատելու նայելու է, որ ամէն պատ-

ճառներէն գերազանց է։ Գաղղիայի թագաւորն եւ Սկովտիայի թագուհին, կ՚ըսէր, քու անհաշտ թշնամիքդ են, եւ զքեզ իբրեւ ապօրինաւոր ամուսնութենէ ծնած եւ Անգղիայի աթոռը յափշտակող կը համարին, եւ թէ որ Սկովտիայի մէջ իրենք զօրանան ան ատեն աթոռը վտանգի մէջ կ՚իյնայ։ Բայց ասոր հակառակ հիմայ Սկովտիացւոց օգնելով անոնց ազդեցութիւնը կը կտրես։ Մէսիլին բերած պատճառներովն Եղիսաբեթ ակամայ կամօք հաւանութիւն տուաւ որ Սկովտիացւոց օգնութիւն տրուի, եւ ասանկով աւետարանի վրայ երդմամբ հաստատուած դաշինքը ոտքի տակ առաւ։ Յակովբ Սատլէր եւ Յակովբ Քրոֆթ խաղաղութիւն հաստատելու պատրուակաւ, բայց բուն օգնութիւն եւ սատակ խոստանալով ապըստամբութեան գրգռելու եւ զՄարիամ թագաւորութենէն վար առնելու, Սկովտիայի թագը Հեմիլթըն գերդաստանին անցընելու ետեւէ ըլլալու համար Սկովտիայի կոմսութիւնները խրկուեցան։ Ստոյգ է որ Շաթելըրոյ կոմսն որն որ աս գերդաստանին գլուխն էր մինչեւ հիմայ Մարեմայ հաւատարիմ էր, բայց իր փոփոխամտութիւնն եւ անհաստատութիւնն ամէն մարդ կը ճանչնար եւ գիտէր որ արքունի թագը իր զարմին անցընելու շուտով պիտի հաւանի։ Անոր համար իր որդւոյն Գաղղիայէն դարձը կը փութացընէին։

Շաթելըրոյին որդին Արրան կոմսը Գաղղիայի մէջ Սկովտիացի թիկնապահ կոչուած գնդին գլխաւորն էր, եւ իր հօրը հաւատարմութեան երաշխաւոր կենալու համար Գաղղիա իբրեւ պատանդ կեցած էր։ Բայց վերջի ժամանակներն առիթ գտնելով փախաւ եւ Լոնտոնէն անցնելով Եղիսաբեթին հետ գաղտնի խորհրդակցեցաւ։

Իր գալէն յառաջ անգղիացի գործակալք արդէն ապստամբութեան բոցը արծարծած էին, եւ Միաբանութեան գլխաւորները համոզցուցած էին որ հայրենիքն աւելորդապաշտութենէն եւ օտարաց իշխանութենէն ազատեն, եւ չսպասեն մինչեւ որ մայր թագուհին Գաղղիայէն օգնութիւն առնելով զօրանայ։ Նոյն ժամանակները համբաւ մ՚ալ տարածեցին

որ Սկովտիա Գաղղիայի գաւառ մը պիտի սեպուի: Աս համբաւը հաստատակութեան վրայ շատ մեծ ազդեցութիւն ըրաւ: Շաթելլըրոյ դուքսը չէզոք մնալու խոստացաւ, բայց շատ ուղղափառ կոմսեր աս սուտ համբաւէն խաբուելով հայրենեաց պաշտպանութեան համար զէնք առին: Արրան կոմսն, որուն գալուստ ապստամբք ծածուկ կը պահէին մէկէն երեւան ելաւ եւ Անգղիացւոց կաշառքը Միաբանութեան գլխաւորաց մէջ բաժնելով կողմնակիցները շատցուց: Մայր Թագուհին առոնք տեսնելով ճշմարիտ խղճի մտաց ազատութեան հիման վրայ խաղաղութիւն ընել ուզեց, բայց հրատարակեց ալ որ իր դստեր իրաւունքը պաշտպանելու համար թէ կամք եւ թէ զօրութիւն ունի: Բողոքականք աս առաջարկութիւնը չընդունեցան եւ Շաթելլըրոյ յայտնապէս միաբանութեան կողմն անցնելով, ապստամբք կէս մը Անգղիացւոց եւ կէս մ՚ալ Նաքս աղանդապետին գրգռելովը Էտինպուրկ քաղքին վրայ յարձակեցան (18 Հոկտ.):

Խնագուորականք նոյն տեղը թող տալով Լիթ քաղաքը (Էտինպուրկի նաւահանգիստը) ապաւինեցան, զորն որ պատնէշներով ամրացուցած էին: Ապստամբք Էտինպուրկ քաղաքն առանց պատերազմի առնելէն ետեւ, երկու ժողովք դրին, մէկը քաղաքային՝ որուն գլուխը Շաթելլըրոյ դուքսն անցած էր, իսկ մէկալը եկեղեցական՝ որուն գահերէցն էր Նաքս աղանդապետը: Առջի ժողովքը մայր Թագուհին կառավարութենէ վար առնելու առաջարկութիւն ըրաւ, որուն երկրորդը հաւանութիւն տալէն ետեւ իբրեւ օրինաւոր եւ հարկաւոր ալ սեպեց: Աս կերպով 1559ին Հոկտ. 22ին մայր Թագուհւոյն վար առնուիլը եւ իր կողմնակցաց հայրենեաց թշնամի համարուիլը փողերու ձայներով հրատարակուեցաւ:

Տէրութեան ատենադպիր Մէթլէնտ, Մերիշըլ եւ Պոթաւէլ կոմսերը եւ եպիսկոպոսաց մեծ մասը դեռ մայր Թագուհւոյն կողմն էին: Իր զօրաց թիւը երկու մինչեւ երեքհազար կը հանէր որոնք ամէնն ալ ընտիր էին ու Գաղղիացւոց եւ Սկովտիացւոց պատերազմաց մէջ վարժած: Միաբանութեան զօրքը Լիթ

քաղքին վրայ տաչի անգամ յարձակում ընելով, մեծ վնասով ետ դարձան։ Նաքս Սէսիլէն 2000 անգլիացի զօրք օգնութեան խնդրեց, եւ որպէսզի աս զօրաց գալը երկու տէրութեանց մէջ եղած խաղաղութեան աւրուելուն պատճառ մը չըլլայ, Սէսիլին խորհուրդ տուաւ որ նոյն զօրքը իբրեւ ազատ եւ ինքնակամ Սկովտիա գայ, բայց Սէսիլ իր թագուհւոյն բնութիւնը գիտնալով որ երկու օր մի եւ նոյն մտաց վրայ հաստատուն չեմնար, չյանդգնեցաւ աս խարդախ ճամբան բռնել ու յայտնի թշնամութիւններ սկսիլ տալ, վախնալով որ եթէ թագուհին իմանայ, զինքն իբրեւ ինքնագլուխ գործող երեսէ կը ձգէ։

Սկովտիացիք նորէն Լիթ քաղքին վրայ (6 Նոյ.) յարձակելով այնպէս չարաչար յաղթուեցան որ երրորդ անգամ յարձակում ընելու սիրտ չըրին։ Թէպէտ եւ շատ մարդ չկորսնցուցին բայց այնպէս սարսափած վախցած էին որ թագաւորականաց՝ իրենց պատնէշները քաշուելէն ետեւ՝ բոլոր գիշերը կը փախչէին։ Գիշերուան մութը իրենց վախն աւելի եւս շատցընելով կը կարծէին որ Գաղղիացւոց զօրքը իրենց ետեւ ինկեր են։ Փախստականք երբոր Աթիրլինկ հասան Նաքս քարոզիչը յանդիմանեց զիրենք այնպէս վատութեամբ փախչելուն համար։

Երբոր Սկովտիացւոց յաղթուելուն լուրը Անգլիա հասաւ, Սէսիլն իսկզբան քիչ մը խռովեցաւ, բայց վերջէն խորագոյն միջոցներու սկսաւ ձեռք զարնել։ Երկու օր աշխատեցաւ որ իր խօսքն անգլիական դահլիճին մէջ անցընել տայ։ Սկովտիացւոց քաջալերութիւն խրկեց որ իրենց սկսածին վրայ յարատեւեն, խոստացաւ ստակ եւ պաշտօնակալ խրկել ու նաւատորմիղ մը պատրաստել որպէսզի Լիթ քաղաքը Գաղղիայի հետ հաղորդութենէն կտրէ։ Սէսիլ միաբանութեան գլխաւորներէն ուզեց որ իրենց կողմանէ արժանահաւատ անձ մը Եղիսաբեթին աղերսագիր մը տանի եւ հարկաւոր օգնութիւնը խնդրէ։ Միաբանութեան գլխաւորները Մէթլէնտ կոմսը խրկեցին, որն որ քաջ քաղաքագէտ եւ մայր թագուհւոյն ատենադպիր էր, բայց քիչ մ՚առաջ Միաբանութեան

կողմն անցնելով անոր ամէն գաղտնիքները մատնեց։ Ասիկայ Լոնտոն հասնելով աղերսագիրը Եղիսաբեթին յանձնեց, զորն որ Սէսիլ յառաջուընէ շինած եւ Եղիսաբեթին ցըցուցած էր։ Լոնտոն կեցող Գաղղիայի դեսպանը Թայմզ գետին վրայ եւ հիւսիսային գաւառաց մէջ պատերազմի պատրաստութիւն տեսնելով, պատճառը հարցուց, բայց Եղիսաբեթ զինքը վստահացուց որ Քաթօ Քանպրէսիի մէջ եղած խաղաղութեան համաձայն Սկովտիայի թագուհւոյն հետ խաղաղութեամբ ապրելու միտք ունի, եւ իր ճշմարտախօսութեան նշան, երկնից անէծքները կարդաց անոր վրայ որն որ ամենէն առաջ նոյն խաղաղութիւնն աւրէ։ — Ի վերայ այսր ամենայնի Անգղիացւոց նաւատորմիղը դէպ ի Սկովտիա ճամբայ ելաւ եւ Սկովտիայի կոմսութեանց մէջ անգղիացի բանակ մը երեւցաւ։

Բայց Սէսիլ իր միտքը դրած խորհուրդն յառաջ տանելու համար, ուրիշ բան մ՚ալ մտածեց։ Հենրիկոս Բ. Գաղղիայի թագաւորը մեռնելով (1559, 10 Յուլ.) Սէսիլ միտքը դրաւ որ Գաղղիայի թագաւորը թագաւորական իշխաններն եւ Նորաղանդները Փրանկիսկոս Բ.ին դէմ գրգռէ, եւ Գաղղիայի մէջ քաղաքական պատերազմ մը բանալ տայ ինչպէս որ Սկովտիայի մէջ ըրած էր։ Փրանկիսկոս Բ. գահը նըստածին պէս իր տկարութեան եւ հիւանդութեան պատճառաւ կառավարութեան հոգը իր Մարիամ Սթուարթին ամուսնոյն, մօր եղբարցը Կիզ դքսին եւ Լօթարինգիայի կարդինալին յանձնած էր. ասով թագաւորական իշխանները զչարեցան։ Սէսիլ թագաւորական իշխանաց եւ թագաւորին հետ ծագած գժտութիւնը տեսնելով, Անտոն Նաւարրայի (անուամբ) թագաւորին, իշխան Քոնտէի եւ Մոնմորանսի Քոնեթապլին ազգականաց հետ ծածուկ բանագնաց կ՚ըլլար։ Ասոնք ուրիշ գլխաւորաց հետ մէկտեղ Գաղղիայի Նորաղանդից հետ խօսք մէկ ըրին որ ոտք ելլեն։ Անգղիայի թագուհին անոնց օգնութիւն խոստանալով, ծածուկ զօրք ժողվելու սկսան եւ որոշեցին որ որոշեալ օր մը պալատը կոխեն, թագաւորն ու թագու-

հին (Մարիամ Ստուարթ) բռնեն, կարդինալն ու Կիզ դուքսը սպաննեն եւ թագաւորական իշխանները կառավարութեան գլուխ անցընեն։ Բայց աս դաւաճանութեան մէջ Եղիսաբեթին բուն դիտաւորութիւնը զՄարիամ բռնելն էր։ Դաւաճանութիւնը 1560ին Մարտին մէջ պորտկաց, բայց Կիզ դքսին արթնութեամբն եւ անոր ազդու միջոցներովը հետեւութիւն չունեցաւ, եւ գլխաւորներէն շատերը բռնուելով սպաննուեցան։

Եղիսաբեթ աս դաւաճանութեան անյաջող ելքը լսելով անմիջապէս իր առջի տատանմանութեան մէջ ինկաւ, եւ ինչ ընելիքը չէր գիտեր։ Պաշտօնեայք կ՚ապահովցընէին զինքը որ երբ որ ըլլայ Գաղղիայի մէջ քաղաքային պատերազմ պէտք է որ ելլէ, եւ շատ աշխատելէն ետեւ կրցան իրմէ հաւանութիւն առնուլ որ ապստամբ Սկովտիացւոց իրօք օգնութիւն ընէ, եւ այնչափ ատեն Անգղիայի զօրքը հոն պահէ մինչեւ որ բոլոր Գաղղիացիք անկից մերժուին։ Այսպէս Եղիսաբեթ գրեթէ ակամայ յայտնի թշնամութիւն սկսաւ ուսկից որ յառաջագոյն այնչափ կը զգուշանար։ Եղիսաբեթ իսկզբան հաւանութիւն միայն տուած էր որ ստըկով օգնութիւն ըլլայ, ետքը նաւատորմիղ մը խրկեց։ Մինչեւ աս ատեն իր ամբարտաւանութիւնը չէր թողուր ապստամբաց հետ յայտնի դաշնադրութիւն մը ընելու, անկից վերջը օտար եւ հանդարտ իշխանի մը ապստամբ հպատակաց հետ իրական դաշնադրութիւն ալ ըրաւ։ Մէկ կողմանէ Սկովտիայի թագուհւոյն հետ իր ըրած դաշանց յարգութիւն կը ցուցընէր, մէկալ կողմանէ ալ Մարեմեայ թշնամիները սիրով կ՚ընդունէր եւ կը խրատէր որ իրենց թագուհին վար ձգեն։ Փարիզ կեցող դեսպանին ձեռօք կեղծեօք ինքզինքը պատրաստ կը ցուցընէր խաղաղութիւնը պահելու, իսկ նոյն դեսպանը Գաղղիայի մէջ դաւաճանութիւններ կ՚արծարծէր եւ աս դաւաճանութեանց գլխաւորները կը պաշտպանէր։ Եղիսաբեթ իր վերջի հանած յայտարարութեան մէջ ինքզինքը Գաղղիայի թագաւորին եւ Սկովտիայի թագուհւոյն բարեկամ կը կանչէր, իսկ մէկալ կողմանէ

իր զօրքը Լիթ քաղաքը կը պաշարէին որն որ Սկով-տիայի թագուհւոյն ձեռքը մնացած մէկ հատիկ տեղն էր։ Անոր համար զարմանալու չէ որ քանի որ իր զօրքը Լիթ քաղաքը կը պաշարէր անոնց զանազան իրարու հակառակ հրամաններ կը խրկէր։ Երբեմն կը հրամայէր որ խաղաղութեամբ բանը լմընցընեն եւ չզարնուին, մէկալ կողմանէ խիստ հրամաններ կը խրը-կէր որ որչափ կարելի է պաշարումը սաստկացընեն։ Երբեմն իր պաշտօնեաները կծու խօսքերով կը յան-դիմանէր իրմէ այնպիսի բանի մը ստիպելով հաւա-նութիւն առնելուն վրայ, որն որ զինքը դժբախտու-թեամբ եւ ամօթով պիտի լեցընէ։

Անգղիացւոց Արէյ զօրապետը Սկովտիացւոց հետ միանալով Լիթ քաղաքը պաշարեց. բայց պա-շարողներն այնպէս անհմուտ էին որ ոչ մարտկոցները աղէկ դրից մէջ դրին եւ ոչ ալ կրցան զանոնք գոր-ծածել, եւ երբոր բանը յարձակման եկաւ, զօրաց մէկ մասը սխալ ճամբով մոլորեցաւ իսկ մէկալները պարսպէն վեր ելլելու համար պատրաստուած սան-դուղները կարճ գտնելով չարաչար յաղթուեցան եւ հազար հոգւոյ չափ կորսնցընելով ետ քաշուեցան (1560, 6 Մայիս)։

Աս դիպուածը խաղաղութիւն ընելու առիթ ե-ղաւ։ Եղիսաբեթ հրամայեց Սէսիլին որ Սկովտիա եր-թայ ու խաղաղութեամբ ապստամբութեան կրակը մարէ զորն որ երկպառակութեամբը վառած բորբո-քած էր։ Սէսիլ ակամայ հնազանդեցաւ եւ Ուոթ-թընին հետ (Յունիս 14ին) Գաղղիայի դեսպանաց հետ Պերրիք քաղքին մէջ դաշանց պատրաստութեանց ստորագրութիւն տրուեցաւ։ Նոյն ժամանակները Թա-գաւորականք՝ մայր Թագուհւոյն ծիւրական ախտէն մեռնելովը (10, 11 Յունիս) մեծ վնաս կրեցին։ Աս խոհեմ եւ պէսպէս ձրիւք զարգարեալ իշխանուհին, իր սեպհական հանգստութիւնն եւ առողջութիւնն իր դստերը համար զոհած էր։ Հիւանդութեան ատեն Էրսքին կոմս Էտինպուրկի բերդին հրամանատարին, որն որ չէզոք մնալու խօսք տուած էր զինքը մար-դասիրութեամբ Թագաւորական դաստակերտն առաւ։

Մահուան անկողնոյն մէջ (10 Յունիս) կանչել տուաւ երկու կողմնակցութեանց գլխաւորները, եւ տէրութեան խաղաղութիւնն եւ իր դստերն իրաւունքը իրենց յանձնելէն ետեւ, ամէն մէկը յականէ յանուանէ ողջունեց եւ ձեռքը երկընցընելով ամենէն թողութիւն խնդրեց, թէ որ իրենց տժգոհութեան առիթ տուած էր: Երկրորդ օրը (11 Յունիս) հոգին աւանդեց: Ուղղափառք եւ թագաւորականք վրան ողբ ըրին եւ նոյն իսկ իր մահուչափ թշնամիները վրան մեծ համարում ունէին. միայն Նաքս քարոզիչն իր թունալից խօսքերովը մայր թագուհւոյն անունը աւրելու ջանաց:

## ԳԼՈՒԽ Թ.

Սկովտիացիք Անգղիացւոց հետ խաղաղութիւն կ'ընեն: Մարեմայ եւ Եղիսաբեթին մէջ եղած գժտութեանց սկիզբն ու պատճառը: Փրանկիսկոս Բ. կը մեռնի:

Գաղղիացւոց դեսպանները Ռանտոյ եւ Մոնթլիւք, լիակատար իշխանութիւն առած էին որ Սկովտիայի ապստամբաց անյիշաչարութիւն շնորհեն, թէ որ իրենց պարտքը ճանչնալով օրինաւոր թագուհւոյն հնազանդին: Ասիկայ ապստամբք ընդունեցան, բայց իրենց կողմանէ ուրիշ առաջարկութիւն ըրին, որով Մարեմայ եւ Փրանկիսկոսի իշխանութիւնը միայն անուան վրայ կը մնար, իսկ կառավարութեան ղեկը Միաբանութեան գլխաւորներուն ձեռքը կ'իյնար: Իսկզբան դեսպաններն ասոր դէմ կռուեցան եւ Մարեմայ իրաւունքը պաշտպանեցին, բայց վերջէն իրենց ունեցած լիակատար իշխանութենէն աւելի զիջան ու հաւանութիւն տուին որ Գաղղիացւոց բանակին հեռանալէն ետեւ, տէրութեան երեք վիճակները ժողովուին եւ աս ժողովքը թագուհւոյն առջեւ քսանուչորս հոգի առաջարկէ որ անոնցմէ եօթը հոգի ինք, իսկ հինգ ժողովքն ընտրէ, եւ ասանկով կառավարութիւնը աս տասուերկու հոգւոյ ձեռք յանձնուի: Ասկից զատ Միաբանութեան գլխաւորները թագուհիէն կը պահանջէին որ Նորաղանդ եկեղեցական պաշ-

ամնը բոլոր Թագաւորութեան մէջ հաստատել տալ։ Ուրիշ երկրորդ դաշինք մ'ալ Անգղիայի եւ Գաղղիայի հետ դրուեցաւ, որով Գաղղիացիք կը պարտաւորէին Լիթ քաղաքը թողուլ եւ Եղիսաբեթին՝ Անգղիայի վրայ ունեցած իրաւունքն ընդունիլ։

Այս խաղաղութեան պայմանաց մէջ երկու գլխաւոր կէտեր կային, որոնք շատ զգուշութիւն կը պահանջէին իրենց մէջ շատ փափուկ նիւթեր բովանդակելուն համար, որոնց վրայ Գաղղիայի դեսպանները լիակատար իշխանութիւն չունէին։ Առջինն էր երկու թագուհեաց պատուոյ անունները, իսկ երկրորդը Սկովտիայի ապստամբաց տրուելի անյիշաչարութիւնը։ Առջինը շատ խիստ եզրներով բացատրուած էր, անանկ որ կարծես թէ Մարիամ ամենեւին իրաւունք չունենար, "Անգղիայի աթոռն օրինաւորապէս Եղիսաբեթին է, եւ անոր համար պէտք է որ Սկովտիայի թագուհին եւ Գաղղիայի թագաւորն ընդ միշտ անկից հրաժարին, եւ երկու թագաւորութեանց (Անգղիայի եւ Իռլանտայի) զինանշանները բոլորովին թողուն,,։ Աս դաշամբ Սկովտիայի թագուհին ապագայ ժամանակի համար ալ այնպիսի իրաւունքէ բոլորովին կը զրկուէր, զորն որ ծնընդեամբ ստացած էր։ Մարիամ ընդդիմութիւն չէր ունենար թէ որ պայմանը "Եղիսաբեթին կենդանութեան տեւէն,, դրուէր։ Իսկ երկրորդ գլխաւոր նիւթին, այսինքն անյիշաչարութեան նկատմամբ Մարիամ պատրաստ էր իր ապստամբ հպատակաց թողութիւն տալ, եւ անոնց առաջարկութիւնը ըստ իմիք ընդունիլ։

Եղիսաբեթ աս դաշանց այնչափ փութով կ'ուզէր ստորագրութիւն տալ որչափ որ կը համարէր որ Անգղիայի վրայ ունեցած իր իրաւունքը Գաղղիայէն եւ Սկովտիայի թագուհիէն ընդունելի կ'ըլլար։ Բայց Մարիամ եւ Փրանկիսկոս աս դաշինքը չընդունելու բաւական պատճառ ունէին, եւ բողոքեցին որ նախ իրենց դեսպանները իրենց տրուած լիակատար իշխանութենէն աւելի զեղչան, երկրորդ Միաբանութեան ատենակալք առանց օրինաւոր իշխանութեան (թագուհւոյն) հարցընելու ժողովք ժողված էին, եւ եր-

բողոք ուղղափառ կրօնը բոլոր երկրէն ինքնագլուխ վերցուցած էին, եւ եկեղեցական յափշտակեալ ընչից հատուցում մ՚ըրած չէին. աս երեք բաները դաշնանց պատրաստութեան մէջ որոշածներուն բոլորովին հակառակ էին։ Եւ երբոր Թրոքմորթըն կը ստիպէր զՄարիամ եւ զՓրանկիսկոս որ դաշանց հաստատութիւն տան, Մարիամ պատասխան տուաւ որ Սկովտիացիք դաշանց մէջ որոշածներէն դուրս եւ ոչ մէկ կէտը կատարած են, նա մանաւանդ թէ այնպէս ինքնագլուխ կը գործեն որ կարծես թէ անկախ հասարակապետութիւն մը ըլլան, եւ արտունջ ըրաւ Եղիսաբեթին վրայ որ դուրս անոնց պաշտպանութիւն կ՚ընէ, եւ անոնց պատգամաւորները հրապարակաւ կ՚ընդունի։

Մ՚արիամ իր իրաւունքը՝ Գաղղիայի կողմանէ ժողովք գացող դեսպաններէն աւելի յայտնի առնելով, որոնք նոյնը թեթեւ բան մը համարած էին, որոշած էր որ մինչեւ վերջի շունչն Եղիսաբեթին պահանջմանց արիութեամբ դէմ դնէ, եւ անոր կենդանութեան ատեն Անգղիայի իրաւունքէն չհրաժարի։ Աս յարաբերութեանց մէջ էին երկու թագուհիք, մինչեւ որ նոր դիպուած մը Մարեմայ յարաբերութիւնները փոխեց։

Փրանկիսկոս Բ. շատ ատենէ ի վեր հիւանդ ըլլալէն ետեւ ականջին մէջ վէրք մ՚ելլելով մեռաւ (5 Դեկտ. 1560)։ Փրանկիսկոս Բ.ին անորդի մեռնելովը այն խիստ կապը որն որ Գաղղիայի ու Սկովտիայի մէջ ամուսնութեան պատճառաւ կար՝ լուծուեցաւ, եւ ասով Սեսիլին գործողութեանց գլխաւոր նպատակը վերցուեցաւ, այսինքն Սկովտիա Գաղղիայէն բաժնել։ Բայց խաբեբայ պաշտօնեայն ուրիշ բան մ՚ալ միտքն ունէր, այսինքն ամէն եղանակաւ ջանալ որ Մարիամ Սկովտիա չդառնայ եւ թագաւորական իշխանութիւնը ձեռք չառնու։ Մարիամ որ անոր միտքը չէր թափանցած կարծեց որ առանց դժուարութեան իր թագաւորութեան կառավարութիւնը կրնայ առնուլ։ Բայց Սեսիլ գիտէր որ Մարիամ ութեւտասնամեայ ըլլալով՝ իշխանազնոյ մը հետ երկրորդ անգամ աշխարհք մտնելու որ ըլլայ իր ամուսինը Անգղիայի թագաւորու-

թեան վրայ ունեցած իրաւունքը կը նորոգէ։ Անոր համար Թրանսօլթ Անգղիայի գործակալին ձեռօքը միաբանութեան գլխաւորաց յիշեցուց որ քանի որ Մարիամ բացակայ է, Անգղիայի հետ խիստ միաբանութեան դաշինք մը դնեն, եւ ստիպեն իրենց թագուհին որ եթէ ամուսնանալ ուզէ, սկովտիացւոյ մը հետ ամուսնանայ։ Բայց սկովտիացի անհաւատարիմ մեծերը արդէն իրենք իրենցմէ Մարեմայ դէմ խորհուրդներ կը մտածէին։ Հալթեյլըրոյ, Արճէյլ, Մորթըն, Գլէնքէռն սկովտիացի կոմսերը իրենք զիրենք Եղիսաբեթին գործիքն ըրած էին։ Մէթլէնտ կոմսը խոստացաւ Սէսիլին որ Մարեմայ եւ անոր բարեկամաց խորհուրդները կը մատնէ, եւ Յակոբ Ստուարթ (Մարեմայ բնական եղբայրը) Եղիսաբեթին խորհրդ տուաւ որ զՄարիամ Սկովտիա դառնալու ատեն բռնէ։

Մարիամ երբոր այրի մնաց տասնութը տարուան էր, եւ տեսնելով որ էրկանը մեռնելէն ետեւ Փարիզի պալատին մէջ գործք մը չունի, բոլոր ձմեռը Լօթարինգիայի մէջ իր մօր կողմանէ ազգականաց քով անցուց, եւ հանգուցեալ ամուսնոյն վրայ լատիներէն ոտանաւորներ շինելով ինքզինքը կը մխիթարէր։ Բայց Եղիսաբեթին գործակալները զինքն առ առանձնութեան մէջ հանդարտ թող չէին տար, ու կը ստիպէին որ վերոյիշեալ դաշանց հաստատութիւն տայ։ Բայց ինքը միշտ պատասխան կու տար որ Փրանկիսկոսին մեռնելէն ետեւ իր մօրեղբարքն իրեն խորհրդտալէն դադրեր են, որպէսզի չզրուցուի որ Սկովտիայի գործողութեանց մէջ կը խառնուին, անոր համար ինքն առանց պաշտօնական խորհրդականաց, չիկրնար իր աթոռոյն եւ ժողովրդեան փափուկ խնդրոյն նկատմամբ ինքնագլուխ գործել, ուստի եւ Սկովտիա դառնալէն եւ վճռական խորհուրդը հարցընելէն ետեւ, ինչ որ անոնք աղէկ կը դատեն՝ պատասխան կու տամ։ Մարիամ իր յարաբերութեանց նկատմամբ, այնպիսի յառաջատեսութիւն, խոհեմութիւն եւ հաստատութիւն կը ցուցընէր, որ Անգղիայի խարդախ եւ երկլեզու պաշտօնեայները կը շփոթցընէր։

Մարեմայ Սկովտիա դառնալէն յառաջ հարկ

կը համարինք Եղիսաբեթին եւ իրեն մէջ ծագած երկպառակութեան եւ նախանձու սերմը մեկնելու, որն որ Սկովտիայի թագուհւոյն կեանքը դառնութեամբ լեցուց եւ անոր օրերը կարճեցուց։ Ինչպէս որ վերը պատմեցինք աս թշնամութեան առջի առիթն եղաւ Էտինպուրկի կամ Լիթ քաղքին դաշնադրութեան վեցերորդ յօդուածը։ Աշխարհքիս վրայ չգտնուեցաւ մինչեւ հիմայ պաշտօնեայ մը, որն որ իր թագաւորին բոլոր կառավարութեան եղանակն ու ձեւը այնպէս ըմբռնած ըլլայ եւ ըստ այնմ թագաւորին կամաց համաձայն այնչափ յաջողութեամբ ու բախտիւ գործած ըլլայ, ինչպէս աս համբաւաւոր Սէսիլ ատենադպիրը։ Էտինպուրկի դաշնադրութեան ատեն Մոնթլիւք գաղղիացւոյն ճարտարութեան յաղթելով այնչափ ըրաւ որ մինչեւ Գաղղիացւոց դեսպանները ստիպուեցան յանձն առնելու չէ թէ միայն Եղիսաբեթին Անգղիայի եւ Իրլանտայի թագուհի ըլլալու օրինաւորութիւնն՝ այլ նաեւ խոստացան (առանց յառաջուընէ զՄարիամ հարցընելու աս նիւթիս նկատմամբ) որ Մարիամ ասկից վերջը նոյն թագաւորութեանց զինանշանները եւ պատուոյ անուններն պիտի չգործածէ։

Աս յօդուածիս ստորագրութեամբը կամ ընդունելովը Մարեմայ շատ մեծ ու վնասակար հետեւանքներ կրնային յառաջ գալ։ Անգղիայի թագը՝ բնական կամ ծննդեան իրաւամբ Մարիամու կ'իյնար (Հենրիկոս Ը. օրինաւոր զաւակ թող չտալով) եւ աս իրաւամբ Մարիամ բոլոր Եւրոպայի առջեւ մեծ անուն եւ ազդեցութիւն ունէր։ Եւրոպայի ազգերը իր իրաւունքն Եղիսաբեթին իրաւունքէն վեր կը գասէին. Անգղիայի մէջ ուղղափառք՝ որոնք նոյն ատենը շատուոր եւ զօրաւոր էին աս հասարակաց կարծիքն ունէին, նոյն իսկ բողոքականք որոնք Եղիսաբեթին աթոռոյն նեցուկ էին չէին կրնար ուրանալ թէ Մարիամ ամենէն մերձաւոր եւ օրինաւոր ժառանգ է անգղիական աթոռոյն։

Մարիամ աս ամէն առաւելութիւնները ձեռքն ունենալով կրնար ժամանակին պարագաները իրեն օգնական առնելով, յուսացած ժամանակէն առաջ իր

 

իրաւունքն արժեցընել տալ: Բայց ասոր հակառակ եթէ Մարիամ աս կռուոյ տակ ճնկող յօդուածը ստորագրելով ընդունէր, ստուգիւ ան պատիւն՝ զորն որ դրացի իշխաններն իրեն կը շնորհէին, կը կորսըն-ցընէր, իր կողմնակցաց եռանդը կը պաղեցընէր եւ անկէց ետեւ Անգղիայի թագը ժառանգելու յոյսը պէտք էր կտրել:

Նա ամէն ծանր հետեւութիւնները նենգամիտ Եղիսաբեթ տեսնելով ամէն միջոց ձեռք կ'առնար որպէս զի Սկովտիայի թագուհին քաղցրութեամբ կամ երկիւղիւ անկից հրաժարեցընէ: Եթէ որ Մարիամ վերյիշեալ յօդուածը՝ զորն որ իր դեսպանները ան-խոհեմութեամբ ըրած լմընցուցած էին, ինքն ալ ան-միտադրութեամբ ընդունէր, ան ատեն ասոր հակառակ Եղիսաբեթ՝ Մարեմայ հակառակորդն այնպիսի առա-ւելութիւններ կը ստանար, զորոնք երբոր ուզէր կրնար գործածել: Թագաժառանգութեան խնդիրն անորոշ թողլով, կրնար Եղիսաբեթ զՄարիամ ձեռքն ունե-ցած առաւելութեամբ շարունակ երկիւղի եւ խոնարհ հպատակութեան մէջ պահել տալ, ինչպէս որ վեր-ջէն Յակովբ Զ.ին (Մարեմայ որդւոյն) ըրաւ, որնոր Եղիսաբեթին բոլոր կառավարութեան ատեն խոնարհ հպատակութեան եւ շարունակ երկիւղի մէջ էր որ չըլլայ թէ Եղիսաբեթին կամացը դէմ բան մ'ընելով թագաժառանգութեան իրաւունքը կորսընցընէ: Եւ դարձեալ Եղիսաբեթ կրնար խորհրդանոցին վճռովը թագը թագաւորական տան ուրիշ մերձաւոր գծին անցընել տալ եւ ասիկայ այնչափ դիւրութեամբ որ-չափ որ Անգղիայի թագաւորութեան սեպհական բան մ'եղած էր, որ յաջորդութեան հաստատուն կամ մնայուն օրէնք մը չունենալով շատ անգամ թագա-ժառանգութեան իրաւունքը մէկ գծէն մէկալ գիծը կ'անցնէր: Գուլիելմոս Նորմանտացւոյն ժամանակէն սկսեալ քիչ անգամ եղած է որ երեք թագաւոր որդւոց որդի ժառանգած ըլլան, որովհետեւ թագա-ւորազուն իշխաններէն անոնք որոնք որ զօրութիւն եւ բաւական ճարպկութիւն ունէին կառավարութեան հարուած մը տալու համար կողմնակից փնտռելով

ձայք կ՚ելլէին, եւ խորհրդանոցը իրենց օգնական առնելով անկից Թագաւոր կ՚ընտրուէին։

Եթէ որ սա Թագաւորաց մէջ երկպառակութեան արմատներն խորունկ եւ ծածուկ չըլլային, կարելի էր յօդուածին բացատրութեան եղանակին մէջ փոքր փոփոխութիւն մ՚ընելով խնդիրը խաղաղութեամբ լմըննար։ Խորամանկ Սէսիլ նոյն յօդուածին մէջ երկմիտ եւ անորոշ բացատրութիւններն առանց դժուարութեան յայտնի եւ որոշ կրնար ընել, եւ փոխանակ զՄարիամ ստիպելու որ Անգղիական պատուանունէն եւ զինանշանէն հրաժարի խնդրէր իրմէ որ խոստանայ թէ քանի որ Եղիսաբեթ եւ անոր օրինաւոր ժառանգներն ողջ են զանոնք չգործածէ։

Եղիսաբեթ իր կասկածն ու երկիւղն որչափ որ զգուշութեամբ կը պահէր եւ արուեստակեալ քողով կը ծածկէր, ի վերայ այսր ամենայնի յայտնի կը տեսնուէր որ իր երկիւղին գլխաւոր եւ ճշմարիտ պատճառը ուրիշ բան չէր բայց եթէ իր օրինաւոր չըլլալուն գիտակցութիւնը, եւ ասոր համար նոյն յօդուածին ըրման վրայ յամառութեամբ կը պնդէր, առանց թեթեւ եւ բնական մեկնութիւն մը տալու, զորն որ խաղաղութիւն եւ անվրդովութիւն սիրող միտք մը եւ քաղաքային անձնասիրութենէ ազատ սիրտ մը կը տեսնէր եւ ըստ այնմ կը վարուէր։

Թէպէտեւ սա երկպառակութեան գլխաւոր աղբիւրն ան քաղաքային անձնասիրութիւնն էր, ի վերայ այսր ամենայնի Եղիսաբեթին նախանձն եւ չարակնութիւնն ալ ճեղքն աւելի եւս մեծցուց։ Եղիսաբեթ կ՚ատէր զՄարիամ Թագուհի ըլլալուն համար, եւ աս ատելութիւնը կանացի նախանձայուզութեամբ աւելի եւս մեծցաւ։ Եղիսաբեթ իր զարգասիրութեան հետ, անձնագովութեան եւ անպատկառ անձնասիրութեան մոլութիւն ունէր, զորն որ կարգաւորեալ եւ քիչ մը խելք ունեցող կանայք կամ բնաւ չեն ունենար եւ կամ խոհեմութեան համար ծածկելու կը ջանան։ Իր գեղեցկութիւնն ու վայելչութիւնը ցուցընելու եւ ուրիշներէ շողոքորթութիւն լսելու պատրաստութիւնն առաւելոյ կարգի էր, եւ աս տկարութիւնները չէ թէ

միայն այն հասակին՝ որուն մէջ նոյն պակասութիւնները կրնան ներուիլ ի ցոյց կը հանէր, այլ նաեւ այն զառամեալ հասակին մէջ որուն ոչ զարդ եւ ոչ գեղեցկութիւն կը վայլէր, որով ամենուն ծիծաղելի կ'ըլլար։ Ասոր օրինակ մը բերելու համար Մէլուիլին յիշատակարանաց մէջ գտնուած կտոր մը շատ աղէկ կը ցուցընէ, թէ որչափ Եղիսաբեթ չէ թէ միայն Մարեմայ թագին այլ նաեւ անոր արտաքին բնական ձրից վրայ կը նախանձէր, եւ ինքն որչափ որ կառավարելու արուեստին եւ քաղաքականութեան մէջ Մարիամէն վեր էր, այնչափ ալ արտաքին եւ բնական ձրից մէջ զՄարիամ նսեմացընելու վայրապար ջանք կ'ընէր։ Եղիսաբեթ՝ Սկովտիայի թագուհւոյն ամէն առաւելութեանց վրայ Մելուիլէն տեղեկութիւն առնելէն ետեւ, հարցուց նոյն դեսպանին թէ մեր երկուքին մէջ որուն գլխուն մազերն աւելի գեղեցիկ են, Մելուիլ տաանկ հարցման վրայ շփոթութեան մէջ իյնալով պատասխանեց թէ Անգղիայի մէջ ձեզի նմանը չկայ, իսկ Սկովտիայի մէջ թագուհիէս գեղեցիկը չկայ։ Բայց Եղիսաբեթ ասով գոհ չըլլալով ուզեց իմանալ որ երկուքին մէջ ով բարձրահասակ է, ով աւելի վայելչութեամբ կը պարէ, ով ճարտարութեամբ դաշնամուր կը զարնէ, եւ ասոր նման ուրիշ ցած հարցումներ։ Քանի որ Մելուիլ Անգղիայի արքունեաց մէջ էր, Եղիսաբեթ ամէն օր զատ ձեւով զգեստ կը հագնէր, եւ նոյն դեսպանին կը հարցընէր թէ ո՞ր զգեստի ձեւը իրեն աւելի կը յարմարի, եւ շատ հաճութեամբ լսեց երբոր Մելուիլ պատասխանեց թէ Իտալացի հագուստն ամենէն աւելի յարմար կու գայ իրեն։

Մ՚եծամեծաց վրայ դատաստան ըրած ժամանակը, հասարակօրէն անոնց քաղաքական սխալմունքներն յառաջ կը բերենք, իսկ անոնց այն պակասութիւններն որոնց մէջ հասարակ մարդկան հետ հաւասարապէս կ'իյնան, այնչափ մտադրութիւն չենք ըներ։ Բայց եթէ Եղիսաբեթին՝ Սկովտիայի թագուհւոյն նկատմամբ թէ սա նիւթիս եւ թէ ուրիշ բաներուն մէջ անոր դիտաւորութիւնները քննելու ըլ-

լանք, ան առեն զինքն ամէն անգամ իբրեւ Թագուհի չենք կրնար մտածել, այլ իբրեւ նախանձու լեցուած հասարակ կնիկ մը որն որ իր կարծած նախանձորդը մահու չափ կ'ատէ։

Քանի որ Մարիամ շրջահայեաց խոհեմութեամբ ամէն անգամ փախուստ կու տար, Եղիսաբեթ միտքը դրածին վրայ յամառութեամբ կը պնդէր, եւ միշտ հետը բարակ քաղաքավարութեամբ կը վարուէր, եւ ամէն անգամ կեղծեալ բարեկամական ցոյցերով զինքը կը պատուէր։ Բայց շատ չանցաւ, համոզուեցաւ Մարիամ որ աս ամէն ցոյցերը բնաւ հաստատութիւն չունէին։

## ԳԼՈՒԽ Թ.

Մարիամ Սկովտիա դառնալու կը պատրաստուի։ Եղիսաբեթ՝ զՄարիամ ճամբորդութեան առեն բռնել կ'ուզէ։ Մարիամ իր հարց աթոռը կը նստի. իր կառավարութեան առջի տարուան մէջ պատահածները։

Սկովտիացիք՝ մայր Թագուհւոյն մեռնելէն ետեւ, Գաղղիա պատգամաւորութիւն մը խրկած էին որպէս զի աղաչեն զՄարիամ որ շուտով հայրենիքը դառնայ ու Սկովտիայի կառավարութեան ղեկը ձեռք առնու։ Մարիամ իր հպատակաց բարի աղաչանքը կատարելու համար Սկովտիա դառնալու կը պատրաստուէր. բայց Գաղղիայէն իր՝ հայրենիքը երթալու համար, հարկ էր որ Անգղիայի ծովեզերքէն անցնէր, եւ որպէս զի Անգղիայի նաւատորմղէն ապահով ըլլայ, եւ ի դիպուածի որ ալէկոծութիւն ելլէ Անգղիայի նաւահանգիստներու մէկու մը մէջ կարող ըլլայ մտնել, Տ'Օասէլ դեսպանին ձեռօք խնդրեց Եղիսաբեթէն որ իրեն եւ իրեններուն համար անցագիր մը տայ։ Քաղաքավարութիւնը կը պահանջէր որ իշխան մը ուրիշ իշխանի մ'ասանկ աղաչանք մը չզլանայ, բայց Եղիսաբեթ իր կիրքը չկրնալով բռնել նախատանօք աս իրաւացի խնդիրը մերժեց, որով զՄարիամ բռնելու կամ անոր ճանապարհորդութիւնը արգելելու դիտաւորութիւնը յայտնեց։ Ասոր վրայ Թրոքմորթըն՝ Սկով-

տիայի Թագուհւոյն այցելութեան գնաց որ իր Թագուհւոյն ըրածը արդարացընէ։ Մարիամ երբոր զինքը տեսաւ իր քովիններուն հրամայեց որ ելլեն երթան, որպէսզի, ըսաւ, երբոր Անգղիայի Թագուհւոյն պէս կիրքս չեմ կրնար բռնել, տկարութեանս շատ վկայ չունենամ, եւ դեսպանին դառնալով ըսաւ, Ձեր Թագուհին մանկութիւնս երեսս կը զարնէ, որ պակսութիւնը շուտով կ'ուղղուի, բայց անխոհեմական գործք մը գործելուս համար կրնար զիս յանդիմանել, թէ որ առանց ամուսնոյ եւ խորհրդականաց դաշանց մը ստորագրութիւն տայի որ թէ ինծի եւ թէ իմ յաջորդացս վնասակար կրնայ ըլլալ։ Տէրութեանս միծակաները հարցընելէն ետեւ կարելի պատասխանը կուտամ։ Շատ կը ցաւիմ որ տկար գտնուեցայ եւ ձեր Թագուհիէն այնպիսի շնորհք մը խնդրեցի որուն կարօտութիւն չունէի։ Եդուարդ Զ.ին կամացը հակառակ հոս եկած եմ, եւ նոյնպէս իր քրոջը կամացը հակառակ Սկովտիա պիտի դառնամ։ Իրմէ ուրիշ բան չեմ ուզեր բայց եթէ բարեկամութիւն, եթէ որ կ'ուզէ՝ զիս մարդասէր ազգական եւ օգտակար դրացի կրնայ ունենալ, որովհետեւ ես միտք չունիմ իր Թագաւորութեան հակառակորդաց եւ տժգոհաց հետ բանագնաց ըլլալ, եւ անոնց օգնել ինչպէս որ ձեր Թագուհին իմ անհնազանդ հպատակացս կ'ընէ։

Թէ որ Մարեմայ աս խօսակցութիւնը Եղիսաբեթին անկանջը հասցունէին, գուցէ ինք իրեն գալով կ'ամչնար եւ իր մինչեւ հիմայ բռնած խարդախ ճամբան թող տալով Մարեմայ հետ տեւական խաղաղութիւն մը կը հաստատէր, բայց անհաւատարիմ Թրոքմորթըն աս խօսակցութիւնն այնպէս կրճատ եւ անհաւատարիմ Եղիսաբեթին ականջը հասուց որ զՄարիամ բռնելու համար՝ Յակովբ Աթուարթին, Մէթլէնտ եւ Մորթըն կոմսից տուած խորհրդին հաւանութիւն տուաւ, եւ Թայմզ գետին վրայ նաւատորմիղ մը կազմել հրամայեց որ հէները հալածելու պատրուակաւ նեղուցին մէջ շրջագայի։ Մարիամ Եղիսաբեթին պատրաստութիւնները տեսնելով՝ պատճառն հարցուց, բայց Եղիսաբեթ Մարեմայ անձամբ

թուղթ մը գրելով ապահովցուց զինքը որ Սպանիայի թագաւորին խնդրելովը քանի մը փոքր նաւեր նեղուցը խրկած եմ հէնները հալածելու համար: Մարիամ աս պատասխանով չխաբուեցաւ, եւ Աստուծոյ նախախնամութեան վրայ վստահացած, աներկիւղ բայց սրտի խռովութեամբ ճամբայ ելլելու պատրաստութիւն կը տեսնէր:

Վերջապէս եկաւ հասաւ այն դժբախտ օրն որուն մէջ Մարիամ Գաղղիայի վերջին բարեւը պիտի տար, ու նոր՝ դժբախտութեան եւ վշտաց ճամբայ մը պիտի սկսէր: Իր ծաղիկ հասակին մէջ ամէն տեսակ ծանօթութիւններով լեցուած բարի եւ ազնուական սրտով, Օգոստոս ամսոյն սկիզբները իր մանկութեան եւ կրթութեան տեղը, սիրուն Գաղղիան պիտի թողուր: Դառն ու տրտմութեան արցունքներ թափելով Քալէ քաղաքը գնաց իր մօրեղբօրներովն ու Գաղղիացի եւ Սկովտիացի մեծամեծներով: Երկու պատերազմական նաւ իրեն հոն կը սպասէին եւ չորս նաւ իր կահ կարասիքը տանելու համար պատրաստ կեցած էին: Թագաւորական նաւը մտնելու առեն հազիւ արցունքը կրցաւ բռնել (1561, 15 Օգոստ.): Նաւը մտնելէն ետքն աչքը ցամաքին վրայ սեւեռած կը նայէր մինչեւ որ երկիրն աչքէն աներեւոյթ եղաւ: Քանի որ ծովուն ալիքները մէկմէկու վրայ կուտակելով ցամաքն իր աչքէն կը ծածկէին, սիրտը ցաւագին երկիւղներով կը լեցուէր, տխրութիւն եւ սրտաբեկութիւն երեսը պատեց, եւ իբր թէ իր յուսոյ վերջի թելը կտրուած մէկէն պոռաց "Մնա՛ս բարով Գա՛ղղիա, Մնա՛ս բարով", եւ ձեռքը երկինք վերցուցած իր զգածմունքներն Աստուծոյ զոհ կը մատուցանէր:

Գիշերը հանդարտ էր, բայց քունը անոր աչքը չկրցաւ գոցել, որովհետեւ իր սիրտը խռոված էր եւ բիւր խորհուրդներ եւ զգածմունքներ զինքը կը չարչարէին. երկրորդ օրը դեռ արեւու ճառագայթները հորիզոնը չշառագունած, նաւուն վրան ելաւ, պարապ տեղ աչքը ասդին անդին կը դարձնէր եւ կը փնտռէր այն սիրելի երկիրն՝ իր մանկութեան հայ-

ընկերն, ուր որ տղայութեան քաղցր տարիներն եւ անմեղ օրերն անցուցած էր, եւ ուր թագաւորական փառաւոր թագը գլուխը դրած էր: Կը յուսար որ ծովուն երեսը կուտակող ամպերուն մէջէն կարող կ'ըլլայ մէյ մ'ալ տեսնել այն սիրելի երկիրը, բայց ամպերը հեռահեռէ տարածուելով թանձրացած մշուշ մը կազմեցին եւ նաւերը խոր մթութեան մէջ ձգեցին: "Ա՜խ ա՛լ լքեցայ, սպառայ, Գա՛ղղիա, Գա՛ղղիա, ա՛լ զքեզ պիտի չտեսնեմ":

Ա՛ս մշուշը որ Մարեմայ արգելք եղած էր Գաղղիան տեսնելու, Եղիսաբեթէն խրկուած նաւերէն անտես մնալու շատ օգնեց, որոնք այն կողմերը դարանի մտած էին: Անգղիայի նաւատորմիղը Սկովտիայի թագուհւոյն մահաբեր նաւերուն հանդիպելով ետեւը բռնեցին, իսկ մէկալները յաջողութեամբ ազատեցան (19 Օգոստ.): Սեսիլ երբոր տեսաւ որ բռնուած նաւերու մէջ փոխանակ թագուհին գտնելու անոր ջորիներն ու ձիանքը գտաւ, կատաղութենէն ինչ ընելիքը չէր գիտեր: Բայց իր խայտառակութիւնը ծածկելու համար Թրոքմորթընին լուր խրկեց որ Փարիզի մէջ հրատարակել տայ որ Անգղիայի ծովապետը թագուհւոյն թագաւորական նաւաց հանդիպելով թնդանօթներ արձակելով սովորական ողջոյն տուեր է:

Երբոր Մարիամ կամաց կամաց իր երկիրներուն կը մօտենար յուսով եւ երկիւղիւ խառն նոր զգացում մը սիրտը պատեց. Իտինպուրկ մայրաքաղքին մէջ ինչ ընդունելութիւն պիտի գտնէ. արդեօք հաւատարիմ բարեկամներ պիտի գտնէ՞, կամ իր ծննդեան երկիրն առջեւը գոցուած պիտի տեսնէ: Իր թշնամեաց լարած որոգայթէն ազատելու համար որոշած ժամանակէն տասնուչորս օր յառաջ Սկովտիա հասաւ, այնպէս որ զինքը ընդունելու համար դեռ պատրաստութիւն մը չէին տեսած: Բայց անոր գալըստեան համբաւը մայրաքաղաքին մէջ տարածուելուն պէս, բոլոր քաղաքացիք դիմացը վազեցին, ազնուականք, եկեղեցականք, գործաւորք, տղաք եւ ծերք, բոլոր ժողովուրդը, "Մարիամ,,

անունով օդը կը թնդացընէին։ Ամենուն սրտին մէջ երկիւղն ու կասկածը փարատեցաւ, եւ միայն ուրախութիւն ու ցնծութիւն կը տիրէր։ Ո՛րչափ քաղցր է իշխանի մը՝ իր հպատակաց սիրոյ ցոյցերը տեսնել։ Չկար իշխան մը որ այնչափ սիրոյ ցոյցեր ընդունած ըլլայ, ինչպէս որ Սկովտիայի ժողովուրդն իր թագուհին առջի անգամ տեսնելուն առատութեամբ ցըցուց։ Երանի թէ նոյն ժողովուրդը ան առենուան զգածմունքը մինչեւ վերջը պահէր։

Երբոր Մարիամ իր հարց աթոռը նստաւ, տեսաւ որ քաղաքական եւ կրօնական երկպառակութեամբ վրդոված Գաղղիայէն օգնութիւն մը չէր կրնար յուսալ, անոր համար իր մօրեղբարցը խորհրդով որոշեց որ մինչեւ նոյն առեն իրեն թշնամի եղողները կարելի եղածին չափ սիրտ շահելու միջոցներով վաստըկի։ Բայց ով որ երկրին վիճակը գիտէր, եւ անոր գլխաւորաց նկարագիրը կը ճանչնար, անմիջապէս կրնար տեսնել որ Մարիամ ինքզինքն այնպիսի մարդկան ձեռքը յանձնեց, որոնք զինքը բռնել տալու խորհուրդ տուած էին։ Մարիամ զՅակովբ Սթուարթ իր բնական եղբայրն ու զՄեթլէնտ ատենադպիրն՝ որն որ Սէսիլէն ետքը բոլոր Բրիտանիայի մէջ ամենէն երեւելի քաղաքագէտը բայց նոյն ժամանակուան մարդկան մէջ ամենէն ապականեալն էր՝ իր քովը կանչելով իրենց սիրտը վաստըկիլ ջանաց, գիտնալով որ ժողովուրդն անոնց վրայ մեծ վստահութիւն ունի։ Նոյնպէս գաղտնի ժողովոյն տասուերկու անդամները (մէկ եպիսկոպոս եւ տասնումէկ աշխարհական) որոնցմէ շատերը իրենց հաւատարմութիւնն եւ ծառայութիւնը Եղիսաբեթին ծախած էին՝ քովը կանչեց. ասոնք տէրութեան խորհրդին մէջ Մարիամէն աւելի ազդեցութիւն ունէին։ Աս գործքին մէջ Մարիամ իր բարեմտութեամբը մեծապէս սխալեցաւ։

Մարեմայ առջի գործքերէն մէկն եղաւ իր տէրութեան մէջ արդարութիւն, դատաստանաց մէջ կարգ ու կանոն եւ արթուն ոստիկաններ դնել։ Հասարակաց խաղաղութեան եւ առանձնականաց ստացուածոց ապահովութիւնը հաստատուն բռնելու հա-

մէջ՝ ուրիշ քաղաքականացեալ տէրութեանց պէս, Սկովտիայի մէջ ալ օրէնքներ կային, բայց Սկովտիայի կառավարութեան եղանակը, թագաւորաց տկարութիւնը, ազնուականաց չափազանց իշխանութիւնը, կողմնակցութիւնները, եւ առ հասարակ ժողովրդեան անսանձ բարքը աս օրէնքները կը տկարացընէին ու դատաստանները անկարգ ու կողմնակալ կ՚ընէին։ Անգղիայի սահմանակից կոմսութեանց մէջ մանաւանդ՝ օրինաց պակսութիւն շատ զգալի եղած էր, եւ շատ անգամ ցաւալի հետեւանքներ յառաջ կու գային։ Նոյն կողմերուն բնակիչը աշխատութեան, արուեստի եւ խաղաղութեան թշնամի, յափշտակութեամբ եւ աւարառութեամբ կ՚ապրէին. եւ թէպէտ ցեղ ցեղ բաժնուած եւ իրարու հետ միշտ կռուոյ մէջ էին, ի վերայ այսր ամենայնի իրենց աւարառութեանց մէջ միաբան կը գործէին եւ իրար կը պաշտպանէին թէ ներքին եւ թէ արտաքին արդարութեան բազկէն։ Յակոբ Ե.-ին մեռնելէն ետեւ, տկար եւ շատ յաջորդող փոխարքայից ատեն ասոնց անկրթութիւնը չափէ դուրս ելաւ, անանկ որ չէ թէ միայն Անգղիայի կոմսութեանց վտանգաւոր, այլ նաեւ նոյն իսկ իրենց սեպհական ազգակցաց արհաւիրք եղած էին։ Աս անկարգութիւնները վերցընելու, եւ Անգղիայի հետ աւրուելու առիթ մը չտալու համար, Մարիամ իր բնական եղբօրը յանձնեց որ զօրաւոր բանակ մը կազմելով սահմանաց վրայ կարգ ու կանոն հաստատէ։

Եղիսաբեթ թագուհին իր քրոջը (երկու թագուհիք իրար քոյր կը կանչէին) Սկովտիա հասնիլն ու աթոռ ելլելն իմանալով մարդ խրկեց շնորհաւորութիւն ընելու, եւ իր թագաւորական պատուոյն ապահովցուց զինքն որ ճամբորդութեան ատեն զինքը բռնելու կամ արգելելու ամենեւին խորհուրդ ունեցած չէ, այլ ան խրկուած նաւերուն վախճանն ուրիշ բան չէր բայց եթէ նոյն կողմերը ապահովութիւն ընող հէնները հալածել. (թէպէտեւ գործքով այլազգ ցուցըցած էր, որովհետեւ ինչպէս վերն ըսինք Մարեմայ վերադարձեալ երեք նաւերը բռնած էր)։ Աս բարեմաղթութիւնները բերողն ան համբաւ-

ւոր Ֆրանսուային էր, որն որ Սկովտիայի վերջին խռովութեանց մէջ զանազան պաշտօններով մտած եղած էր: Բայց Մարիամ պատգամաւորն ամենայն մեծարանօք ընդունեցաւ, թէպէտ եւ անոր ինչ ըս-ելն աղէկ գիտէր: Մարիամ Եղիսաբեթին ըրած բարեմաղթութեան վրայ շատ ուրախանալով տուած պատասխանին մէջ սրտանց կը ցուցընէր թէ ինչպէս կը բաղձայ իրեն հետ բարեկամութեամբ եւ դրացւոյ մը պէս ապրիլ: Մարեմայ վրայ մեծ անյիշաչարութիւն կը տեսնուէր, որ եղած անպատուութիւնները շուտով կը մոռնար, եւ իր Եղիսաբեթին գրած նամակաց մէջ քաղցրութեան, մտերմութեան եւ բարեմտութեան յայտնի նկարագիրները կ'երեւային, ուր ասոր հակառակ Եղիսաբեթին անոր գրած թըղթերուն մէջ միշտ կասկածանաց եւ անվստահութեան կերպարանք մը կը տեսնուէր ու զՄարիամ իբրեւ իր նախանձորդն եւ իր Անգղիայի թագին հետամուտ կը համարէր: Ասոր համար շարունակ կը ստիպէր զՄարիամ որ Լիթ քաղաքին մէջ եղած դաշնադրութիւնը հաստատէ (Հոկտ. 1, 1561):

Եղիսաբեթին օրինաւորութիւնը ընդունելու նկատմամբ Մարիամ ընդդիմութիւն մը չունէր, բայց իր Անգղիայի թագաւորութեան վրայ ունեցած իրաւունքէն հրաժարելուն նկատմամբ կ'ըսէր որ նոյնն ընդունիլն ուրիշ բան չէ, բայց եթէ ծննդեամբ ստացած իրաւունքէն հրաժարիլ: Այս դաշնադրութեան հակառակելի մասը վերցընելու համար Սէսիլ առաջարկեց որ Մարիամ իր կողմանէ Եղիսաբեթին եւ անոր յաջորդաց օրինաւորութիւնն Անգղիայի նկատմամբ ընդունի, իսկ Եղիսաբեթ իր կողմանէ յանձն առնու որ եթէ առանց յաջորդի մեռնելու ըլլայ, յաջորդութեան իրաւունքը Մարեմայ անցնի: Մարիամ աս առաջարկութիւնը սիրով ընդունեցաւ, բայց Եղիսաբեթէն հաւանութիւն առնել անկարելի եղաւ: Սէսիլ ասոր վրայ ուրիշ բան մ'ալ առաջարկեց, այսինքն որ երկու թագուհիք հիւսիսային գաւառներէն մէկուն մէջ գան տեսնուին եւ իրենց մէջը խաղաղութեամբ խնդիրն որոշեն: Մարիամ ասոր ալ

Ինքզինք պատրաստ ցուցուց (8 Յուլ), եւ իր կողմանէ ժամանակն ու տեղն որոշեց, բայց Եղիսաբեթ որ յառաջ շատ կը բաղձար հետը տեսնուիլ՝ նոյն ատեն եւ ոչ խօսքը կ'ուզէր լսել։ Իր ազգականին երիտասարդութիւնը, գեղեցկութիւնն ու շնորհքը մտածելով, կը վախնար որ չըլլայ թէ Մարիամ իր երիտասարդական աշխոյժութեամբն, ու վայելչութեամբը հիւսիսային նահանգաց սրտերն իրեն քաշելով Անգղիայի մէջ իր կողմնակիցները շատցընէ, մանաւանդ որ արդէն նոյն նահանգաց շատերն անոր օրինաւորութիւնն իրենէն աւելի կը ճանչնային։

Մարիամ կը մտածէր որ իր երկրին գլխաւոր քաղաքները պտըտի բայց որովհետեւ ձիանքն ու ջորիները դեռ Անգղիա բռնուած կեցած էին, անոր համար տասը ձի եւ ջորի գնեց։ Սեպտեմբերի 11ին ձի հեծնելով ճամբայ ելաւ, եւ 13ին Սթիրլինկ հասաւ, ուր որ հրկէզ ըլլալու վտանգի մէջ ինկաւ։ Քնոյ ատեն անկողնոյն վարագուրները ճրագէ մը բոց առնելով բռնկեցան, բայց բարեբախտութեամբ վտանգին առջեւը դիւրաւ առնուեցաւ։ Սթիրլինկ քաղքէն Փըրթ գնաց ուր քիչ մ'ատեն հիւանդ պառկեցաւ, 29ին նորէն Էտինպուրկ դարձաւ։ Որ կողմէն որ թագուհին կ'անցնէր՝ ժողովուրդը զինքը միշտ սիրով կ'ընդունէր, ի վերայ այսր ամենայնի իր վիճակն աղէկ վիճակ մը չէր, եւ ժողովրդեան առաջուան ցուցուցած սէրն երթալով կը նուազէր։ Ինքն ուղղափառ եկեղեցւոյ մէջ մեծցած եւ կրթուած, եւ միտքը հաստատուն դրած ըլլալով որ ուղղափառ եկեղեցւոյն սովորութիւններն ու կանոնները ճիշդ պահէ, շատոնց նորաղանդութեան սկզբունքով լեցուած ժողովուրդը բնականապէս իրմէ հեռանալու սկսաւ։ Էտինպուրկ քաղաքը մտնելուն երկրորդ օրն իր աղօթարանին մէջ ուղղափառ քահանայի մը պատարագ մատուցանել տուաւ, բայց նոյն ժողովուրդն որ իր թագուհին այնչափ սիրոյ ցոյցերով ընդունած էր, չուզեց տալ իրեն ան խղճի մտաց ազատութիւնը, զորն որ ինք անկէ ընդունած էր, պալատը կոխեց պատարագչին վրայ յարձակեցաւ եւ միայն Յակոբը

Սթուարթին նոյն առենը վրայ հասնելովը հազիւ կրցաւ քահանան մահուընէ ազատել: — Ուրիշ անգամ մ'ալ երբոր Մարիամ հանդիսութեամբ թագաւորական պալատը կը մտնէր, յանկարծ վեցամեայ տղայ մը դիմացն ելաւ իբրեւ երկինքէ ինջած ձեւանալով, եւ Թագուհւոյն ձեռքը Աստուածաշունչ, սաղմոսարան եւ դաստակերտին բանալիքը յանձնելէն ետեւ սկսաւ խենթ ու խելար ոտանաւորներ զրուցել: Աս փառաւոր հանդիսութեան մէջ զանազան նկարներ դրուած էին, որոնք կռապաշտից (Ուղղափառաց) վրայ եղած Աստուծոյ վրէժխնդրութիւնը կը ներկայացընէին, բայց ասոնց մէջ աչքի զարնողներէն մէկն ան նկարն էր որ կը ներկայացընէր թէ ինչպէս Աստուած հրով պատժած է ուղղափառ քահանայ մը պատարագի մէջ սրբութիւն սրբոց վերցընելու առեն:

Թագուհին ասոնք տեսնելով կը վշտանար. իր մատրանապետաց եւ եկեղեցւոյ մուտքը յառաջուան վիճակին մէջ պահելու համար հրամաններ հանելու առեն, անդիէն տէրութեան խորհրդականաց ժողովքը բողոքականներէն աղերսագիր կ'ընդունէր որ թէ Մարեմայ քովէն եւ թէ ժողովրդեան մէջէն պատարագը վերցուի եւ յայտնի ուղղափառները տէրութեան պաշտօններէն վար առնուին: Տէրութեան ժողովոյն մէջ շատ հակառակութիւն ըլլալէն ետեւ որոշուեցաւ որ եպիսկոպոսաց, աբբայից եւ աթոռակալաց մուտքէն եօթը մաս առնուի որուն չորս մասը բողոքական քարոզչաց, իսկ երեքը տէրութեան գանձին տրուի:

Աս շփոթութեանց առեն Եղիսաբեթ Պետրոս Միւթէս գործակալը Էտինպուրկ ղրկեց որ դաշնագրութեան խնդիրը նորէն նորոգէ: Մարիամ այնպէս խոհեմութեամբ ասոր պատասխան տուաւ, որ թէ իր ազգականը գոհ ընելու եւ թէ իրենց մէջ եղած խաղաղութիւնը պահելու շատ յարմար էր: Բայց Եղիսաբեթ նորէն նամակ մը գրելով կը ստիպէր որ անյապաղ ստորագրէ, եւ կ'ըսէր որ "Ես ուրիշ բան չեմ պահանջեր բայց եթէ ինչ որ պատիւն, արդա-

բութիւնն եւ բանաւորութիւնը կը հրամայէ,,։ Մարիամ 1562ին Յունուարի մէջ պատասխան տուաւ, առանց նոյն դաշինքը դրուելու ատենուան պարագայից եւ անձանց ինչնալու. ,,Ի մէջ այլոց կ'ուզեմ, ըսաւ, այն կէտին վրայ հաստատուն մնալ, որն որ ինծի համար խոհեմութիւն է չորոշել, եւ ձեզի համար ըստ ինքեան վնասակար չէ։ Եւ թէ որչափ ալ դաշանց ստորագրութիւնը վնասակար կրնայ ըլլալ ինծի եւ իմ իրաւանցս որ ձեր ազգատոհմէն սերուած ըլլալով ծննդեամբ ստացած եմ, մի միայն մեր ազգատոհմին վրայ հայեցուած մը նետելով կը տեսնէք,,։

Նոյն իսկ հակառակորդաց վկայելով Մարիամ իր թագաւորութեան առջի տարիները մեծ խոհեմութեամբ կը վարուէր, որն որ իր երիտասարդութեան հետ դժուարին էր միաբանել։ Աս ստոյգ է որ բնութիւնը զինքը՝ ան ձիրքերով առատութեամբ զարդարած էր որով տեսնողներուն մեծարանքը կը շարժէր. քաղցրաբարոյութեամբ, պատրաստականութեամբ եւ խոնարհամտութեամբ ուրիշներուն ոգիներն իրեն կը քաշէր, բայց իր նախանձորդաց եւ թշնամեաց մէջ, որոնք փառամոլութեան ոգւով լեցուած էին ինքզինքը հաստատուն բռնելու համար մեծ զօրութիւն պէտք էր։ Երկիրը խաղաղ պահելու համար կրօնի ազատութեան մէջ իր բնական եղբօրը խորհրդով չափէն աւելի թոյլ գտնուեցաւ։ Բայց ներքին խաղաղութիւնը պահելու համար ըրած ամէն աշխատութիւնները պարապ էին, Նորաղանդութեան կողմ եղող ատենակալք՝ կառավարութեան եւ թագուհւոյն կողմը վատորկելու համար Մեթլէնտին հաշտարար միջոցներն օգուտ մը չըրին։ Ոմանք այնպէս պինդ գլուխ ու յամառ էին որ մէկու մ'ալ խօսքը մտիկ ընել չէին ուզեր. եւ ասոնք հերձուածապետներն էին, Նորոգութեան քարոզիչներն ու մեծաբանները որոնք ուղղափառ եկեղեցւոյ մէջ ամէն բան պակասաւոր կը գտնէին, եւ իրենք զիրենք լաւագոյն կրօնի մը, այսինքն աւետարանի մաքուր վարդապետութեան առաքեալ կը հրատարակէին, եւ նոյնին իբրեւ ապացոյց ազատութեան եւ նախանձու պատրուակաւ

իրենք զիրենք այնպիսի գործքերու կու տային, որ եթէ ուրիշ բառերով բացատրելու ըլլանք՝ անօրէնութիւն կ'անուանուին։ Աս քարոզիչներն ամէն անգամ որ քարոզելու կ'ելլէին, այնպիսի սաստկութեամբ եւ անամօթութեամբ Թագուհւոյն դէմ կը խօսէին, որ զարմանալու բան էր թէ ինչպէս քարոզէն ետեւ հազարաւոր բազուկներ չէին զինէր աս "անաստուած կնկան, սատանային օգնականին եւ ճշմարիտ քրիստոնէութեան թշնամւոյն դէմ,,։ Աս անուններով նոյն քարոզիչները զԹագուհին կը պատուէին։

Թագուհին անգամ մը կանչել տուաւ Նոքս քարոզիչը եւ զարմանալի քաղցրութեամբ անոր հետեւեալ խօսքերը ըրուցեց. "Ինչո՞ւ զիս այնչափ սաստկութեամբ կը հալածէք, ինչ չար ըրի ես ձեզի որ անոր փոխարէն իմ հպատակացս սիրտերը. իզմէ բաժնելու կը ջանաք։ Ա՛րդեօք ձեր կրօնը կը հրամայէ՞ անոնց հետ անողորմաբար վարուիլ, որոնք որ ըստ ձեր կարծեաց դժբախտ են եւ ձեր վարդապետութեան հաղորդ չեն ըլլար։ Արդ ես ձեզի կրօնակից չըլլալովս՝ ձեզմէ դժբախտ կը համարուիմ, բայց ատոր համար ալ ձեր թշնամի՞ն ալ պիտի ըլլամ։ Ձեզի դէմ իմ թագաւորական իշխանութիւնս գործածել ջանացի՞։ Գացէք ուրեմն, մարդկան համարման մէջ բան մը չէք կորսնցըներ՝ երբոր չափաւորապէս վարուիք ան բաներու մէջ զորն որ ձեզի պարտք կը համարիք,,։ Նոքս կէս բերնով քանի մը ջատագովութեան բառեր թոթովեց, եւ անորոշ խոստումներ ընելով ելաւ գնաց առանց ինքզինք ուղղելու։ Թագուհւոյն վրայ յանցանք կը դնէր որ 1560ին խորհրդանոցի մէջ որոշուած կրօնի կարգը, եւ եկեղեցական ընչից գրաւումը չէր ընդունած։



## ԳԼՈՒԽ ԺԱ.

*Հունթլի կոմսին դէմ եղած ապստամբութիւնը: Մարիամայ երկրորդ ամուսնութեան նկատմամբ Եղիսաբեթին քմահաճութիւնները: Մարիամ Տառնլէին հետ ամուսնանալ կ'որոշէ:*

Մարիամ՝ զՅակոբ Սթուարթ Մէր կոմս անուանեց: Ասիկայ իսկզբան թագուհւոյն դէմ էր, բայց անկից ետեւ քիչ մը ժամանակ թագուհւոյն կողմը բռնել սկսաւ, եւ Նոքս քարոզչին եւ անոր հետեւողաց ծածուկ դաւաճանութեանց դէմ սկսաւ գործել, որով երկայն ատեն անոնց հետ թշնամացաւ: Թագուհին՝ Մէր կոմսին յանկարծական փոփոխութիւնը տեսնելով, շնորհակալութեան համար ուզեց Մորրէյի կոմսութիւնն անոր պարգեւել: Բայց աս պարգեւը առանց Հունթլի կոմսին ընդդիմանալուն չէր կրնար ըլլալ որն որ հիւսիսային Սկովտիոյի մէջ ամենէն զօրաւոր կոմսն էր:

Աս կոմսն եղանակաւ մը Մորրէ կոչուած կալուածոց մեծ մասը գրաւած էր եւ ան սակաւաթիւ ատենակալներէն մէկն էր, որոնք Նորոգութեան աղանդը մերժելով ուղղափառ մնացած էին. Նոյնպէս Հեմիլթընեանց ցեղէն ետեւ թագաւորական տոհմին ամենէն մերձաւոր ազգականն էր: Կը պատմուի որ ինքը թագուհւոյն հետ ուղղափառ կրօնը պաշտպանելու համար դաշնադրութիւն մը դրած ըլլայ. եւ թագուհւոյն եկած ժամանակն անոր 20.000 մարդ խոստացած ըլլայ, թէ որ ուղղափառ կրօնը նորէն Սկովտիոյի մէջ հաստատէ, բայց թագուհին աս զօրաւոր օգնութիւնը մերժած ըլլայ ըսելով որ երկրին մէջ քաղաքային պատերազմ սերմանելու եկած չէ: Բայց ասի շատ տարակուսական է որ այնպիսի առաջարկութիւն մ'եղած ըլլայ, վասն զի թէ որ ըլլալու ըլլար շատ հաւանական էր որ Գիզեան տոհմը՝ որ թագուհւոյն խնամին էր, ասիկայ ընդունելու համար անոր յորդոր կ'ըլլար որ թագաւորական իշխանութիւնը հաստատելու այսպիսի զօրաւոր միջոց մը ձեռքէն չփախցընէ: Արդ ատանկ զօրաւոր կոմս մը՝ որն որ տէրութեան մէջ երկրորդն էր եւ ուղղափա-

ռութեան նեցուկ կրնար ըլլալ, վերցնելու կամ տկարացնելու համար Մէր կոմսն առիթ կը փընտռէր, որն որ յանկարծական դիպուածով մը շուտով հանդիպեցաւ։

Յովհաննէս Կորտըն Հունթլի կոմսին որդին՝ Օճիլվի Քերտէլին հետ առանձնական գործքի մը համար Էտինպուրկի փողոցի մը մէջ կռուելով զհակառակորդը վիրաւորեց, բայց իր ընկերներովը մէկտեղ բռնուեցաւ ու տէրութեան բանտը դրուեցաւ։ Երբոր Կորտըն տեսաւ որ քաղաքային խաղաղութեան փոքր վրդով մը իբր տէրութեան յանցանք կը համարուի, եւ երթալով խնդիրը կը մեծնայ, Մէր կոմսին վրէժխնդրութենէն վախցած, առիթ մը գտաւ եւ բանտէն փախաւ։ Ասով իր առջի յանցանքն աւելի եւս մեծ, ու թէ իր եւ թէ հօրը վրայ՝ թագուհւոյն եւ անոր բարեկամաց դէմ դաւաճանական դիտաւորութեան ցոյց մը համարեցաւ։ Աս բանս պատճառ եղաւ որ Մէր եւ Մեթլէնտ կոմսերը դիւրահաւան թագուհւոյն առջեւ զիրենք ամբաստանեցին որ անոնք իր կենաց դէմ դաւաճանութիւն կը մտածեն։ Թագուհին Հունթլի կոմսին զօրանալու ժամանակ չտալու համար անմիջապէս քիչ մը զօրք ժողվեց եւ հիւսիսային կողմերը քալելու սկսաւ։ Գիշերները երբեմն վրանի տակ, երբեմն հիւրասէր եւ հաւատարիմ գիւղականաց ծխոտած խրճիթներուն մէջ կ'անցընէր։ Բնութեամբ զուարթ եւ զիջանող ըլլալով, շատ անգամ զինուորաց մէջ կը մտնէր, եւ իրենց սիրտը առնելու համար արշաւանքին անհարթութեան վրայ իրենց հետ կը կատակէր, եւ զիրենք այնչափ կը քաջալերէր որ յաղթութեան վրայ մէկ տարակոյս չէր մնար։ Կոմսն որ աս բաներէն ամենեւին տեղեկութիւն չունէր, թագուհւոյն եւ անոր բանակին մէկէն գալուն վրայ շատ զարմացաւ, քովը գնաց եւ իր հպատակութիւնը ցըցուց, բայց խաբուած թագուհւոյն ականջները բիւր չարախօսութիւններով լեցուած ըլլալով զինքը պաղութեամբ ընդունեցաւ։

Թագուհւոյն փոքր բանակը Ինվըրնըս բերդը հասնելով, բերդապանէն բանալիներն ուզեց. Երբ-

որ անիկա չտուաւ գօրքը բերդը պաշարեց ու յանձնուելու ստիպեց։ Բերդապահը բանալիները չտալուն համար զինուորական դատաստանաւ սպաննուեցաւ։ Կոմսն երբոր լսեց որ Թագուհին նոյն բերդը կը պահանջէ, անմիջապէս մարդ խրկեց հրաման տալով որ բերդը Թագուհւոյն ձեռքը յանձնուի. բայց բերդն արդէն առնուած էր եւ բերդապանը սպաննուած։ Թագուհին իմանալով որ Հունթլի կոմսին քով Թնդանօթ կայ, հրաման խրկեց անմիջապէս որ որոշեալ տեղը նոյները արքունեաց տայ, զորն որ կոմսը շուտով մը կատարեց, եւ Թագուհւոյն հէյ պատգամաւորին զրուցել տուաւ որ իրեն համար չէ թէ միայն ամէն ստացուածներն այլ նաեւ կեանքն ալ զոհելու պատրաստ է։ Հունթլի կոմսին ամուսինը նոյն պատգամաւորին թեւէն բռնելով մատուռը տարաւ եւ խորանին մօտենալով "Բարեկամ, ըսաւ, յայտնի կը տեսնէք որ իմ ամուսնոյս վրայ կը նախանձին։ Եթէ որ ինք ուզէր անոնց պէս՝ որոնք հիմայ Թագուհւոյն չորս կողմն առած են, զԱստուած եւ անոր սուրբ կրօնը թողուլ, ան ատեն աս կրածները չէր կրեր։ Աստուած կամ աս սուրբ խորանին վրայ բնակողը, որուն կը հաւատամ, զինքը պիտի պահէ եւ մեր հաւատարիմ սրտին զգածումը պիտի յայտնէ։ Ինչպէս որ ես հոս ձեզի կը զրուցեմ, դուք ալ նոյնպէս Թագուհւոյն իմացուցէք որ իմ ամուսինս Թագուհւոյն միշտ հնազանդ էր եւ մինչեւ ի մահ հաւատարիմ պիտի մնայ"։ Հէյ պատգամաւորը իր պատգամաւորութեան առջի մասը տէրութեան Գաղտնի խորհրդեան առջեւ պատմեց, բայց Հունթլի կոմսուհւոյն խօսքերն առանձին Թագուհւոյն զրուցեց՝ ան մտօք որ անոր սիրտն աւելի եւս շարժի։ Բայց Թագուհին Հունթլի կոմսին վրայ այնչափ բան լսած էր որ եւ ոչ մէկ բանի մը անոր հաւատ ընծայեց։

Ապըրտին քաղքին քով շատ մը զօրք կեդրոնացընելով որոշուեցաւ որ Հունթլիին դաստակերտին վրայ յարձակում ընեն, եւ զկոմսը բռնեն։ Բայց դաստակերտն առանց կռուոյ Թագուհւոյն ձեռքը յանձնուեցաւ, եւ Հունթլի կոմսին ամուսինը մէկ

կողմանէ դաստակերտին դուները բանալով Թագուհւոյն զօրքը սիրով եւ հիւրընկալութեամբ ընդունելով, միւս կողմանէ իր ամուսինը փախաւ: Զօրքը բոլոր դաստակերտը տակնուվրայ ըրաւ, բայց ոչ կասկածաւոր անձ եւ ոչ պատերազմական պատրաստութիւն գտաւ: Հունթլի իր ապաստանած տեղէն ապահով չտեսնելով ամուսինը Թագուհւոյն խրկեց որպէսզի իր միտքն ու անմեղութիւնն առջեւը դնելով զինքն հաշտեցընէ: Բայց սակայն Մարիամ աս ազնուական կինը բանակին մէջ չընդունեցաւ եւ բերած պատճառները մտիկ չըրաւ: Երբոր տեսաւ Հունթլի որ աս ալ չեղաւ, միտքը դրաւ որ բարձրագաւառները. քաշուի, իր ու բոլոր ընտանեաց գժբախտութեամբ: Իր իրաւունքը պաշտպանելու համար զէնքի ձեռք զարկաւ, որն որ այսչափի հասնելէն ետեւ քիչ օգուտ կրնար ընել: Այսպէս հինգ հարիւր հոգի քովը ժողված Էպըրտին քաղքին քով հասաւ ու Թագաւորական բանակը պատելով Թագուհւոյն քովը ուզեց հասնիլ: Բայց Մէր կոմսը Մարեմայ զօրապետը բանակը աղէկ դրից մէջ շարած էր. Նախ հիւսիսային ցեղերն առջեւը դրած էր որոնք Թէպէտ եւ քաջ էին բայց զինուորական կըրթութենէ չէին հասկընար, ետքը կրթեալ զօրքերը տեղաւորած էր: Պատերազմին սկիզբը հիւսիսային ցեղերը Հունթլի կոմսին դէմ չկրցան դիմանալ ու հալածուեցան, բայց երբոր հալածողները ցիր ու ցան եղան, Մէր իր ընտիր զօրքովը պատերազմի դաշտը եկաւ, ու հալածողներուն ետեւէն իյնալով փախուց: Հունթլի կոմսը շատ գէր եւ ծանր զրահ հագած ըլլալով ձիէն վար ինկաւ ու փախչողներէն կոխկըռտուեցաւ, բայց ոմանց պատմածին նայելով սրտի ցաւէն մեռաւ: Յովհաննէս Կորտըն՝ որն որ աս բանիս սկզբնապատճառ կը համարուէր, բռնուեցաւ ու սպաննուեցաւ, իսկ իր եղբօրը կեանքը շնորհեցին անչափահաս ըլլալուն համար: Ասիկայ վերջէն Թագուհւոյն եւ Մորրէ կոմսին քաղաքային պատերազմաց ատեն, Թագուհւոյն հաւատարիմներէն մէկն էր: Ասանկով Հունթլի կոմսին ստացուածները Մորրէ կոմ-

մին ձեռքն ինկան. իսկ Մարիամ Հիւսիսային պարտիզանները իր ազդեցութեամբն եւ զինուց յաջողութեամբ ահու դողու մէջ ձգելէն ետեւ Էտինպուրկ դարձաւ։

Այս դէպքը պատահելէն քիչ մ'ետքը Մեթլէնտ պաշտօնեան Անգղիա խրկուեցաւ որպէսզի Եղիսաբեթը՝ Գաղղիայի Կարոլոս Թ.ին հետ խաղաղութիւն ընելու համոզցընէ. բայց խրկուելուն բուն պատճառներէն մէկն ան էր որ Անգղիայի խորհրդանոցին խօսածներն իմանայ որն որ ժողված էր իրենց թագուհին աղաչելու համար որ աշխարհք մնալով Անգղիայի յաջորդ մը ապահովցնէ (1563, Յունուար 26)։ Նոյնին վրայ Սկովտիա ալ կը խօսուէր, որովհետեւ թէ Անգղիացիք եւ թէ Սկովտիացիք կը բաղձային որ թագաւորութեան անմիջական յաջորդ մ'ունենան եւ կ'ուզէին մէկն իրենց յաջորդ սահմանել թէ որ թագուհիները զաւակ չունենան։ Անգղիացիք իրենց թագուհւոյն ուղղուած աղերսագրոյն մէջ աս ալ դրած էին որ իր յաջորդն ընտրելու ատեն միտ դնէ որ ընտրածն ուղղափառ չըլլայ, որպէսզի Անգղիայի կրօնը վտանգի մէջ չիյնայ։ Աս բանս ուղղակի Մարեմայ դէմ էր։

Մարիամ թէպէտ եւ իր հպատակներէն մասնաւոր խնդրուածք մը չընդունեցաւ, բայց անոնց կամքը գիտէր թէ կը բաղձային որ երկրորդ անգամ ամուսնանայ։ Իր գաղղիացի խնամիները նախ առաջարկեցին իրեն Անտոն Նաւարրայի թագաւորը, որն որ կալուինականութեան գլուխն էր, երկրորդ Կարոլոս Աւստրիայի արքիդուքսը՝ Փերդինանդ Ա. կայսեր որդին, որն որ Եղիսաբեթին հետ ամուսնանալ կ'ուզէր, բայց ասիկայ իր սովորական փախուստները բանեցընելէն ետեւ, ի վերջոյ խղճի մտաց պատրուակը յառաջ բերաւ, որով կ'ըսէր թէ չեմ կրնար ընդունիլ որ իմ պալատիս մէջ կռապաշտութեան պաշտօնը կատարուի. (Կայսրն իր որդւոյն համար զանազան պայմաններ դնելու ատեն աս ալ ուզած էր որ առանձին իր մատրան մէջ կարող ըլլայ ուղղափառ ծիսով պատարագ տեսնել)։ Աս զարմանալի պատասխանը արքիդուքսն անանկ զզուեցուց որ երբ-

որ լսեց թէ Փրանկիսկոս Բ. մեռաւ, աչքը Սկովտիայի թագուհւոյն վրայ դարձուց: Լոթարինգիայի Կարդինալը՝ որուն արքիդուքսը դիմած էր նոյնին շատ հաւան էր, որովհետեւ կը յուսար թէ աս ամուսնութեամբ Գաղղիայի, Գերմանական տէրութեան, Սկովտիայի եւ Սպանիայի հետ չորեքկին դաշնադրութիւն մը կը դրուի: Մարիամ թէպէտ եւ Եղիսաբեթին մտերմութեան վրայ ապահովութիւն չունէր, ի վերայ այսր ամենայնի իրեն խնայել ուզեց, եւ արքիդքսին միտքն անոր յայտնեց: Ասոր վրայ Եղիսաբեթին՝ Մարեմայ վրայ ունեցած նախանձայուզութիւնն աւելցաւ: Սէսիլ նենգամիտ պաշտօնեայն Եղիսաբեթին խռովութիւնը տեսնելով նոյնն աւելի բորբոքեց, եւ համոզցուց զինքն որ ինքը պէտք է որ աս փեսան Մարեմայ ձեռքէն յափշտակէ: Եղիսաբեթ ինքզինքն ամենափառաւոր թագուհիներէն մէկը կարծելով կը զարմանար թէ ինչպէս արքիդուքսն իրեն հետ ամուսնանալու կը խորշի: Բայց մէյ մը առջի անգամ ամուսնութեան խնդիրը իր կողմանէ մերժելէն ետեւ ով կը խոնարհէր եւ երկրորդ անգամ կը խնդրէր: Սէսիլ ասոր ճամբայ մը գտաւ եւ Վիւրթեմպերկի դքսին դիմեց որ կայսեր հետ խօսի եւ երկրորդ անգամ արքիդքսին հետ բանակցի, բայց Փերդինանդոս կայսրն իրեն բնական եղած պաղութեամբ մը պատասխան տուաւ որ Անգղիայի թագուհին զինքն իր անհաւատարիմ եւ անձնասէր քաղաքականութեամբն անգամ մը խաբած ըլլալով, չ՚ուզեր ինքզինքն երկրորդ անգամ խաբուելու վտանգի մէջ դնել (1562 Դեկ.):

Եղիսաբեթ տեսնելով որ ասիկա չյաջողեցաւ ուրիշ միջոց մը ձեռք առաւ, այսինքն խոստմամբ, եւ սպառնալեօք զՄարիամ աս խորհուրդէն հրաժարեցընել, եւ աս բանիս համար համբաւաւոր Թանտոլֆ Սկովտիա խրկեց որ Մարեմայ փեսային ընտրութեան վրայ խօսի: "Եղիսաբեթ, ըսաւ պատգամաւորը, ամուրութեան վիճակը ամուսնութենէն վեր կը դասէ, բայց իր կրտսեր քրոջը ամուսնանալուն խորհուրդին վրայ ընդդիմութիւն չունի. աս միայն խորհուրդ կու

տայ որ ընտրած փեսան երեք եղանակաւ մտածուի, եւ այդ յատկութիւններն ունենայ. նախ որ իրեն սիրելի մէկն ըլլայ, երկրորդ հպատակաց հաճոյ եւ երրորդ երկու տէրութեանց մէջ եղած բարեկամական կապը չէ թէ միայն պահէ, այլ աւելի եւս սերտիւ կապէ: Ուստի, Աւստրիայի արքիդուքսն այս երեք պայմաններն ունի: Լոթարինգիայի կարդինալէն առաջարկուած ըլլալով կասկածելու բաւական պատճառ չկա՞յ մի որ Անգղիայի թշնամի ըլլայ: Պէտք է մտածել որ Անգղիայի գահը ժառանգելու իրաւունքն ապագայ փեսայիս ընտրութենէն կախում ունի: Աս խորհուրդին մերժուելէն յառաջ եկած չարեաց պատասխանատուութիւնը ձեր վրայ է,,:

Մերեմն ինչ տեսակ փեսայ ինծի ընտրեմ որ Եղիսաբեթին հաճոյական ըլլայ, ըսաւ, մէկէն Մարիամ՝ որ պատգամաւորին երկխօս ճառին վրայ քիչ մը նեղացած կ'երեւար: Պատգամաւորը պատասխան տուաւ որ Եղիսաբեթին մտացը համաձայն փեսան՝ Անգղիացի ազնուական մը պէտք է ըլլայ, եւ ան ատեն միայն Անգղիայի աթոռոյն վրայ ունեցած իրաւանց արդար միջոցներով նպաստաւորութիւն կրնայ ըլլալ: Մարիամ աս բանս Մորրէ եւ Մեթլէնտ կոմսից յայտնեց, որոնք շատ զարմանալով իմացան որ Եղիսաբեթին մտածած փեսան Ռոպերթ Տատլին է որն որ Լէսթըր անուամբ աւելի յայտնի եղած է: Ասոր համբաւը կամաց կամաց տարածուեցաւ եւ պաշտօնական եղանակաւ Մարեմայ իմացուեցաւ, որն որ ազնուական հպարտութեամբ մը Ռանտոլփին զրուցեց, որ "Սկովտիայի թագուհին, Գաղղիայի թագաժառանգին այրին՝ պարզ անգղիացի ազնուականի մը ամուսին չէր կրնար ըլլալ,,: Ինչու չէ, պատասխանեց Ռանտոլփ, անով Անգղիայի աթոռը ժառանգելու յոյս կ'ունենաք: Չէ, ըսաւ թագուհին, որովհետեւ քոյրս դեռ որդի կրնայ ունենալ, եւ ինձմէ աւելի երկարակեաց ըլլալ, եւ աս ըսածն ամենեւին համաձայն չէ ան խոստմանն, զորն որ խոստացած էր ինծի հետ իբրեւ քոյր կամ իբրեւ դուստր վարուելու, եւ հիմայ զիս կը ստիպէ իր հպատակներէն մէկու մը հետ

ամուսնանալ։ Ընդդիմութիւն մը չկայ, զրուցեց Ռանտոլֆ, որովհետեւ բոլոր Բրիտանիայի մէջ անկից աւելի արժանաւոր մարդ մը չկայ որ կարող ըլլայ խաղաղութիւնն հաստատել, ձեր երկիրը հարստացընել եւ երկու տէրութեանց մէջ եղած յարաբերութիւնները պահել։ Ռանտոլֆ ասոնք զրուցելէն ետեւ, երկրորդ օրը Մարեմայ առաջարկեց որ Պերրիք քաղաքը երկու կողմանէ մարդ խրկուի եւ աս նիւթիս վրայ խօսուի։

1564ին Նոյ. 19ին երկու տէրութեանց պատգամաւորները Պերրիք քաղաքը ժողվեցան։ Եղիսաբեթին կողմանէ Պետֆորտ եւ Ռանտոլֆ եկած էին, իսկ Մարիամ իր երկու Մորրէ եւ Մեթլէնտ պաշտօնեաները խաւրած էր։ Անգղիայի պատգամաւորները մշտնջենաւոր խաղաղութեան եւ բարեկամութեան դաշինք մը դնելու առաջարկութիւն ընելով, Մարեմայ վրայ Անգղիայի աթոռը ժառանգելու յոյս ցըցուցին եթէ Լեսթըր կոմսին հետ ամուսնանայ, եւ խոստացան որ Եղիսաբեթ հարսանիքէն ետքը անմիջապէս խորհրդանոցին մէջ զՄարիամ իբրեւ իրեն քոյր կամ դուստր կը հրատարակէ։ Սկովտիայի պատգամաւորներն ասոր պատասխան տուին, ըսելով թէ թագուհւոյ մը պատիւ չէ, առանց օժտի, պարզ յուսոյ մը համար ամուսնանալու զիջանիլ, Անգղիացի հպատակի մը հետ, որ դեռ քիչ մը յառաջ կոմսի պատիւ առած է, ուր որ զինքն այնչափ երեւելի իշխաններ եւ արքայորդիք ամուսնութեան խնդրած էին. եւ նոյն իսկ Անգղիայի թագուհւոյն պատիւ մը չէ որ այնչափ մերձաւոր ազգականին, ասանկ հասարակ մարդ մ՚առաջարկէ։ Բայց ասոր հակառակ մեծ սիրտ ցոյց ըրած կ՚ըլլար Եղիսաբեթ Մարեմայ՝ թէ որ թողուր որ Մարիամ իր հաճոյից համաձայն այնպիսի ամուսին մ՚ընտրէ որ Անգղիայի հետ խաղաղութիւն պահելով նոյն երկրին խորհրդանոցին վճռով ժառանգութեան իրաւունքն ալ ստանայ։ Ժողովոյն պատգամաւորներն ասանկ իրենց մէջը խօսելով իրարմէ բաժնուեցան առանց բան մ՚որոշելու։

Մարիամ բաւական խորագիտութիւն ունէր

եւ Եղիսաբեթին նենգամտութիւնն աղէկ կ'իմանար, բայց իր քրոջն ըրած առաջարկութիւնը մերժելու երեսը չընելով, աղէկ մը մտածելէն ետեւ իր կողմանէ յանձն առաւ Ռոպերթ Տօտլիին հետ ամուսնանալ, ան թէութեամբ որ Եղիսաբեթ հրապարակաւ խորհրդանոցի մէջ զինքն իր յաջորդն անուանէ, եթէ որ առանց մարմնաւոր ժառանգ մը թող տալու մեռնելու ըլլայ։ Գիտէր Մարիամ որ աս թէութիւնը ընդունելութիւն պիտի չգտնէ։ Բայց ի վերայ այսր. ամենայնի իր խորհրդականաց հաւանութեամբն Եղիսաբեթին կամացը կէս մը զիջաւ եւ ամէն զինքն ուզողներէն, Սպանիայի ժառանգէն, Աւստրիայի արքիդքսէն, Քոնտէէն, Ֆերրարայի, Անժուի եւ Նըմուրի դքսերէն հրաժարեցաւ։ Բայց Տօտլիին հետ ամուսնանալու ալ մեծ ընդդիմութիւն կը զգար, մանաւանդ որ իր խնամիները Կիզ կարդինալը ու մայր թագուհին խորհուրդ կու տային իրեն որ Եղիսաբեթին առաջարկած փեսան չընդունի, համոզելով որ ոչ երբեք աղէկ մէկը կրնայ ըլլալ։ Իսկ Մօրրէ կոմսը զինքն ուրիշ եւս կը գրգռէր որ Եղիսաբեթին խորհրդին ամենեւին ականջ չդնէ, որովհետեւ ինքը կը բաղձար որ Մարիամ առանց ամուսնանալու մնայ, որպէս զի Սկովտիայի թագաւորութիւնն իրեն անցնի։

Աս ժամանակներն անգղիական խորհրդանոցին մէջ յաջորդութեան խնդիր ըլլալով՝ ամէնը ասոր մէջ միաբանեցան որ ամենէն մերձաւոր ժառանգը կամ Հենրիկոս Ը.ին մեծ քրոջը Մարգարետային կամ անոր կրտսեր քրոջը Մարեմայ զաւկըներէն պիտի առնուի։ Սկովտիայի թագուհին առանց ընդդիմութեան Մարգարետային օրինաւոր ներկայացուցիչն էր, բայց ոմանք կ'ուզէին զինքը մերժել ի շնորհս Լինոքս կոմսուհւոյն որն որ Մարգարետային Անկաս կոմսին հետ ըրած երկրորդ ամուսնութենէն ծնած էր։ Աս կոմսուհին Լինոքս կոմսին հետ ամուսնանալով շատ որդի ունեցած էր որոնց ամենէն մեծը Տարնլին էր։

Աս երիտասարդ կոմսը 1546ին ծնած ըլլալով

ան ատենները 19 տարեան էր այսինքն Մարիամէն տարի մը պզտիկ: Լինոքս կոմսուհին առոր մայրը՝ արդէն շատ ժամանակէ ի վեր քանի որ Մարիամ Գաղղիայէն չէր ելած, հետը կը թղթակցէր, եւ իր որդին հետն ամուսնացընելու բաղձանք մը ցըցուցած էր: Եւ վերջի ժամանակները երբոր Մարիամայ ամուսնութեան խնդիրը ծագեցաւ, Լինոքս կոմսուհին շատ ետեւէ ինկած էր որ զՄարիամ համոզցընէ թէ իրեն համաձայն փեսան իր որդին միայն կրնայ ըլլալ, որովհետեւ կ'ըսէր, նախ որ հօր կողմանէ Սկովտիայի՝ իսկ մօր կողմանէ Անգղիայի թագաւորներէ սերած է, եւ երկրորդ Եղիսաբեթին կամաց համաձայն ալ կրնայ ըլլալ, ինչու որ Տարնլի Անգղիա ծնած էր եւ իր հայրը Լինոքս կոմսը նոյն թագաւորութեան մէջ շատ կալուածներ ունէր: Մարիամ Լինոքս կոմսուհւոյն խորհրդին քիչ մը ականջ կախեց, բայց ինքզինք դեռ նոյն ժամանակ չորոշեց: Լինոքս կոմսը նոյն ատենները Սկովտիա գացած ըլլալով որ իր հանեղած կալուածները կորգի դնէ, Մարիամէն շատ մեծ ընդունելութիւն գտաւ: Այս բանս Սէսիլին եւ Եղիսաբեթին աչքին աղէկ չերեւցաւ, որոնք կասկածի գացին որ չըլլայ թէ որդւոյն համար թագուհւոյն սիրտը վաստըկի: Լինոքս կոմսուհին Եղիսաբեթէն շնորհք խնդրեց իր որդւոյն համար որ հայրը տեսնելու համար Սկովտիա երթայ ու հրաման առաւ: Եղիսաբեթ եւ Սէսիլ թէպէտ եւ առոր տակ ուրիշ դիտաւորութիւններ կը տածէին, ի վերայ այսր ամենայնի հրաման տուին, գիտնալով որ Տարնլին թէպէտեւ գեղեցիկ երիտասարդ մըն էր, բայց քիչ խելք եւ խոհեմութիւն եւ յառաջատեսութիւն ունենալով Մարեմայ պէս կնկան մը դժուարաւ կրնար հաճոյ ըլլալ. եւ միանգամայն իրենց միտքը դրած էին որ եթէ Մարիամ Տարնլիին առնելու սկսի ամենայն զօրութեամբ դէմ դնեն նորանոր արգելքներ հանելով: Բայց շատ խաբուեցան, որովհետեւ Մարեմայ դրսանց երեւցուցած զգուշան եւ կարծուած թեւթեւամտութեան տակ չէին տեսած անոր սիրամոլութիւնը, արիական քաջութիւնն եւ հաստատուն

կամքը։ Տարնլի Եղիսաբեթէն յանձնարարութեան թուղթ առնելով շուտով Սկովտիա անձապարեց եւ Էտինպուրկ հասնելով Մարիամէն սիրով ընդունեցաւ։ Քանի մը հեղ Թագուհւոյն այցելութիւն ունեցէն ետեւ, անգամ մը ամուսնական առաջարկութիւն ըրաւ։ Մարիամ իսկզբան քանի մը տեղ չզլաւ եւ Տարնլիին մատուցած մատնին յանձն չառաւ։ Բայց կամաց կամաց իր քրոջն Եղիսաբեթին խարդախ մտաց վրայ հաստատուելով որ անձնական եւ քաղաքական շահուն համար անոր երկրորդ անգամ աշխարհք չմտնելուն կը բաղձար՝ Տարնլիին վրայ ուրիշ աչքով մը նայիլ սկսաւ, եւ ան համոզման մէջ հաստատուեցաւ որ անիկա միայն իրեն ամենէն յարմար փեսայ կրնայ ըլլալ։ Ասոր համար Մեթլէնտ իր ատենադպիրը Եղիսաբեթին խրկեց որ իր միտքն անոր յայտնէ, եւ Տարնլիին համար հաւանութիւն առնէ։ Բայց Եղիսաբեթ իր խաբուած ըլլալը տեսնելով՝ Մարեմայ հրամայական թուղթ մը գրեց, որ "Եթէ Անգղիայի աթոռոյն վրայ ունեցած իրաւունքը պահել կ'ուզէ, կամ Լեսթըր կոմսին հետ ամուսնանայ կամ հրապարակաւ խոստում տայ այրի մնալու (1565 Մարտ 5)"։ Մարիամ աս թուղթը կարդալով դառն արցունք թափեց՝ ըսելով, "Ահա քուրէ [illegible] այնչափ խորամանկութեանց եւ ծածուկ դաւաճանութեանց ճշմարիտ դիտաւորութիւնն երեւան ելաւ, որ կ'ուզէ որ ոչ Անգղիայի աթոռը ժառանգեմ եւ ոչ ալ որդի ունենամ իրաւունքս ժառանգեցընելու"։ — Բայց Մարիամ ասոր գլուխ չէր կրնար ծռել, եւ Եղիսաբեթին հրամանին հնազանդիլն իր թագաւորական պատուոյն դէմ կը համարէր։ Ասկից վերջը Տարնլիին հետ աւելի մտերմութեամբ վարուելու սկսաւ. եւ երբոր Մարեմայ բարեկամները իր խորհրդոյն ընդդիմացան, միտքը դրածը բացարձակապէս իմացուց որ Տարնլիին հետ ամուսնանայ եւ զինքը թագակից ընել կ'ուզէ։ Նոյնպէս Գաղղիայի թագաւորին եւ մայր թագուհւոյն եւ Ս. Քահանայապետին իմացուց, դակից նաեւ տնօրինում խնդրեց, որովհետեւ Տարնլիին հետ ազգականութեան աստիճանի մէջ էր։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Աս ամուսնութեան դէմ Եղիսաբեթին եւ Մորրէ կոմսին ներհակութեան դաւաճանութիւնը: Մարիամ իր թշնամեաց կը յաղթէ:*

Ասոր լուրն Անգղիա հասածին պէս խորհրդանոցին մէջ սկսաւ խորհուրդներ ըլլալ: Եղիսաբեթին խորհրդականներն իրեն հասկըցուցած էին որ աս բանս Անգղիայի կործանում կը բերէ, մանաւանդ եթէ որ աս ամուսնութենէն ժառանգ մը ծնանելու ըլլայ, նոյն իսկ Եղիսաբեթին շատ վնասակար կրնայ ըլլալ: Ասոր համար ամէն միջոց ձեռք առին որ Սկովտիայի թագուհին աս խորհուրդէն ետ կեցընեն: Ցայտնի պատերազմ բանալ չէին կրնար, որովհետեւ թէ Գաղղիա եւ թէ Սպանիա ոտք կ'ելլէին, անոր համար որոշեցին որ Սկովտիայի մէջ եղող Մարեմայ տժգոհները ապստամբութեան գրգռեն: Ասիկա ալ բաւական չէր, Եղիսաբեթ աս բանիս բոլոր պատճառը Լինոքս դուքսն եւ դքսուհին համարելով, ախակալութեան համար դքսուհին Թաւէր բանտը նետել տուաւ, իսկ զՏարնլին եւ Լինոքս կոմսը Անգղիա կանչեց, իրենց ինչքը յարքունիս գրաւելու սպառնալեօք: Խաբեբայ եւ ճարպիկ Թրոքմորթըն իբրեւ նոր պատգամաւոր Սկովտիայի արքունիքը խրկեց, որ բողոքէ, խոստումներ ընէ, սպառնայ. բայց ասիկա զՄարիամ որոշածին վրայ հաստատուն գտնելով Եղիսաբեթին բարկութիւնն յայտնեց եւ Սկովտիայի ատենակալաց դիմելով եւ անոնց Անգղիայի օգնութիւն խոստանալով ապստամբութեան գրգռեց:

Աս ամուսնութեան չէ թէ միայն Եղիսաբեթ եւ իր պաշտօնեայք դէմ էին, այլ նաեւ Սկովտիայի շատ մեծամեծներն ալ, որոնք Տարնլին եւ իր հօրը Լինոքս դքսին մէկէն այնչափ մեծնալուն վրայ ծուռ աչօք սկսած էին նայիլ: Սկովտիայի տժգոհաց գլուխ անցած էր Մորրէ կոմսն, որն որ նոյն ամուսնութեան դէմ էր զանազան պատճառաց համար, մանաւանդ անոր համար որ իր փառասիրութեան արգելք կ'ըլլար, որովհետեւ ինչպէս քիչ մ'առաջ ըսած էինք թագաւորութեան վրայ յոյս ունէր ի դիպուածի որ

Մարիամ անորդի մնաներ։ Իր դաշնակիցներն էին
Հաթեյլըրդ դուքսն որ նոյնպէս կը վախնար որ չըլ-
լայ թէ Լինոքսին գերդաստանը մեծնալով իրենն իյ-
նայ։ Թէ Արճէյլ կոմսն՝ որ Ցարնլիին հօր յափշտա-
կած երկիրները ետ տալու պարտաւորելով՝ վրէժ-
խնդրութեան ոգւով լեցուած էր, եւ թէ առջի
ապստամբութեան մասնակից եղող ատենակալաց շա-
տերն անոնց կողմն անցած էին։ Մորրէ՝ մոլեռանդ
բողոքականներն իր կողմը շահելու համար հրատարա-
կել տուաւ որ "Աւետարանական հաւատքը վտանգի
մէջ է,,. եւ ինքն ալ պալատէն հեռացաւ պատճառ
բերելով որ թագաւորական մատրան մէջ եղած ա-
ւելորդապաշտութեանց ներկայ գտնուելու խիղճ
կ՚ընէ։

Մարիամ սա ատենները Սթիրլինկ քաղքին
մէջ հանդարտ կը կենար իր որոշման մէջ հաստա-
տուն մնալով։ Մորրէ կոմսին պատգամաւոր մը խըր-
կելով իրեն սեպհական քաղցրաբարոյութեամբն ա-
նոր սիրտն առնուլ ջանաց, եւ ամուսնութեան ստո-
րագրութեան համար Սկովտիայի աւագանիներուն
առջեւ դրուելու հաստատութեան թուղթն իրեն ներ-
կայացուց, որ ինք երկրին գլխաւոր հպատակներէն
ըլլալով միւս կոմսից օրինակ տալու համար ամէնէն
առաջ ստորագրութիւն տայ։ Մորրէ մտածելու ժա-
մանակ ուզեց, բայց Մարիամ ստիպեց ըսելով որ
արդէն սա բանիս նկատմամբ ամէն յարաբերու-
թիւնները ճանչնալով մտածելու բաւական ժամանակ
ունեցած է, բայց Մորրէ յանձն չառաւ ըսելով որ
անանկ ծանրակշիռ բանի մէջ աճապարելն աղէկ չէ,
եւ անկից զատ սա ամուսնութիւնն իրեն այնչափ ա-
ղէկ չ՚երեւար, որովհետեւ կը վախնամ որ, ըսաւ,
Ցարնլի "Ճշմարիտ կրօնի (այսինքն բողոքական կրօնի)
թշնամի կրնայ ըլլալ,,։ Մորրէ ասանկ պատասխան
տալով թագուհւոյն քովէն բոլորովին հեռացաւ։ Իսկ
Մարիամ Էտինպուրկի մէջ ուրիշ ազնուականներ կա-
նչելով ստորագրութիւն առաւ։ Արրէն կոմսն ան թէու-
թեամբ ստորագրեց որ ունեցած կալուածոց ձեռք
չզարնուի. իսկ Արճէյլ կոմսն եւ ոչ երեւցաւ։

Նոյեմբերի 14ին Մարիամ զՏարնլի ասպետ եւ Էրոմէննէհի ատենակալ եւ Ռոսսի դուքս ըրաւ, եւ Դաւիթ Ռիչչիոյ իր գաղղիերէնի ատենադպիրն անոր հազարապետ դրաւ որպէս զի անոր ամէն բաները հոգայ։ Մարիամ ասի ընելէն եւ վերձակաց հաւանութիւն ընդունելէն ետեւ Եղիսաբեթին, նորէն իմացուց որ ազատ կամօք եւ սեփական ընտրութեամբ ամուսնութեան կը մտնէ, որուն վրայ այնչափ ատեն զինքն անորոշութեան մէջ ձգած էր։ Թրոքմորթըն Անգղիայի պատգամաւորը Մարեմայ միտքը փոխելու շատ աշխատելէն ետեւ Եղիսաբեթին ծանոյց որ Մարիամ Տարնլիին հետ անանկ յարաբերութեան մէջ մտած է որ ալ պսլազ ընել անկարելի է, անոր համար աս հանգոյցը քակելու համար բերան յոգնեցընելու չէ այլ բռնութեամբ եւ սրով խնդիրն որոշելու է։

Մորթըն, Արձէյլ, Մորրէ, Կլէնքէրն եւ ուրիշ աժգոհ կոմսերն իրենց գաստակերտները քաշուելով՝ քաղաքային պատերազմի խորհուրդ եւ պատրաստութիւն կը տեսնէին։ 1565ին Յունիսի 8ին Եղիսաբեթ գրած էր Ռանտոլֆին որ "Տալնլիին ամուսնութեան դէմ Մորրէ կոմսին օգնելու պատրաստ է,,։ Յունիսի 13ին նորէն յիշեցուց որ "Տարնլիին դիտաւորութեանց դէմ ամէն աժգոհները պիտի պաշտպանէ,,։ Ռանտոլֆ հաւատարմութեամբ ամէն աժգոհ Սկովտիացւոց աս խոստացած օգնութիւնն յայտնեց։ Նոյն ամսոյն վերջերը Մորրէ եւ իր կողմնակիցք Ռանտոլֆին հարցուցին որ եթէ Լինոքս եւ Տարնլի բռնեն եւ Պերրիք քաղաքը բերելու ըլլան, Անգղիայի կառավարութիւնը զանոնք կ'ընդունի՞, թէ չէ։ Ռանտոլֆ պատասխանեց որ Անգղիացիք իրենց մարդիկը ինչ եղանակաւ որ ըլլայ կ'ընդունին։ Ասանկով աժգոհները իրենց մէջ որոշեցին որ զՄարիամ, Լինոքսն ու Տարնլին բռնեն, թագուհին Լոչլըվէն բանտը դնեն, իսկ զՏարնլի եւ զԼինոքս սպաննեն կամ Անգղիացւոց մատնեն եւ Մորրէ կոմսը կառավարութեան գլուխ դնեն։ Մեթլէնտ կամնս այն որ թագուհւոյն քով մնացած էր անոր խորհուրդներն եւ գործքերը դաւաճանաց կը մատնէր։

Տճգոհներն իմացած էին որ Թագուհին իրեններով մինչեւ Յունիսի վերջերը Փըրթ քաղաքը պիտի կենար եւ անկից Քէլլէնտէր պիտի երթար Լիվինկսթըն կոմսին որդւոյն մկրտութեան ներկայ գտնուելու համար։ Ուստի որոշեցին որ ճամբուն վրայ Քիրք օֆ Պէյթ ըսուած տեղը զիրենք բռնեն։ Մորրէ՝ Քինրոսին քովերը, Արճէյլ՝ Քէմպէլ դաստակերտին մօտերը, Ռոթըս՝ իրեններով մէկտեղ Փարրօթ աղբերական քով, իսկ Արրէն՝ Քիննալ դաստակերտին քովերը դարանի մտաւ։ Բան հասկըցողներուն կարծեաց համաձայն ասոնց յատակագիծն այնպէս աղէկ շինուած էր, որ չյաջողելու ամէնեւին վախ չկար։ Գէթ Սեսիլ ասոր վրայ այնպէս համոզուած էր որ իր օրագրին մէջ 7 Յուլիս այսպէս գրած էր, "Համբաւ մ'ելած է որ Սկովտիայի Թագուհին Մորրէ եւ Արճէյլ կոմսերէն բռնուած է„։ Երբոր Թագուհին Տունքէլտէն Փըրթ հասաւ, Մորրէին դաւաճանութենէն քիչ մը տեղեկութիւն առաւ, եւ ինքզինքն նոյն քաղքին մէջ ապահով չհամարելով Աթթըլ եւ Ռութուէն կոմսերուն հրաման տուաւ որ զինքն երկրորդ օրը առտու իրեններով մէկտեղ Քէլլէնտէր տանին։ Երկրորդ օրը շատ կանուխ ժամը 5ին ձիու վրայ հեծած իր երեք օրիորդներով եւ երեք հարիւր հեծեալներով՝ շուտ ձիավարելով Քիննալ դաստակերտին քովէն անվտանգ անցաւ, ետքը Քինրոսէն ուր Մորրէ դարանի մտած էր առանց իմացուելու անցնելով Լիվինկսթըն կոմսին դաստակերտը հասաւ։ Ասանկով Մարիամ եւ Տարնլի ճարպկութեամբ ու հնարագիտութեամբ իրենց թշնամեաց ամէն դարաններէն անվտանգ անցնելով բռնուելէն ազատեցան, եւ Յուլիսի 4ին իրիկուան դէմ յաջողութեամբ Էտինպուրկ հասան, ուր դաւաճանաց յատակագծին համաձայն բողոքականները եւ քարոզիչները ժողված էին ապստամբութեան գլխաւորներն ընտրելու համար, բայց Թագուհւոյն յանկարծ հասնելով իրենց խորհուրդն ի դերեւ ելաւ, ու փախչելու ստիպուեցան։

[illegible] [illegible]՝ սկսած դաւաճանու-

թիւնը թողուլ եւ թագուհւոյն հետ հաշտուիլ իրենց նախատինք համարելով Յուլիսի 11ին Լոշլըվէն դաստակերտը ժողվեցան եւ իրենց մէջ որոշեցին որ Եղիսաբեթ թագուհիէն խոստացած օգնութենէն զէթ 3000 Սթերլին խնդրեն։ Վերջէն ամսոյն 17ին նորէն Սթիրլինկ քաղաքը ժողվուելով, երդում ըրին որ նախ Աստուծոյ, երկրորդ իրենց ընկերաց հաւատարիմ մնան, ետքը լի կեղծաւորութեամբ հրովարտակ մը հանեցին որուն մէջ կ'ըսէին թէ իրենց բռնած ճամբով ուրիշ բան չեն ուզեր բայց եթէ Աստուծոյ պաշտօնը պաշտպանել եւ իրենց թագուհւոյն հնազանդ ըլլալ։ Նոյնպէս Եղիսաբեթին պատգամաւոր մը խրկեցին, եւ զինքն՝ Աստուծմէ ետքը կրօնի պաշտպան անուանելով՝ խոստացած օգնութիւնը յիշեցուցին։

Իսկ Սկովտիայի թագուհին իր կողմանէ մեծամեծաց տժգոհութիւնը տեսնելով յայտարարութիւններ հանեց, որոնց մէջ կը զրուցէր որ մինչեւ հիմայ ոչ երբեք իր բողոքական հպատակաց կրօնական բաներու մէջ արգելք մը դրած է, եւ ասկից վերջը միշտ մտադիր պիտի ըլլայ որ իրենց կրօնքին կատարեալ ազատութիւն տայ եւ իրենց կրօնական որոշմանց համաձայն զիրենք պաշտպանէ։ Ասոր համար ժողովուրդը կը յորդորէր որ իրեն օգնական ըլլան, նոյնպէս առանձինն առանձինն երեւելի մարդիկներուն գրելով կը յորդորէր որ իր կողմը ժողվին։ Տժգոհներուն ամուսնութեան դէմ բերած պատրուակը ժողովրդեան առջեւ այնչափ մեծ ազդեցութիւն մը չընելով Դարնլիին ամուսնութիւնը թէ յարմար եւ թէ օգտակար կը տեսնէր։ Մարեմայ բոլոր ընթացքը իր նախնի Տունքանին ընթացքին պէս ժողովրդեան հաճոյ էր եւ հասարակաց վստահութիւնը վրան ունէր։ Ուստի երբոր ժողովրդեան հրաւէր ըրաւ, մեծ եւ փոքր պարոններէն շատերն իրենց մարդիկներովը Էտինպուրկ ժողվեցան, ասկից զօրաց գունդ մը կազմելով իր թշնամիքը գողացուց (Յուլ. 19, 21)։

Սակայն Մարիամ փոխանակ իր թշնամեաց դէմ

ըլլալու, հարսանեաց պատրաստութիւն կը տեսնէր։ Յուլիսի 20ին Տարնլի Ռոսսի կոմս ընելէն ետեւ Ալպանիայի դուքս անուանեց, եւ նոյն դքսութեան վերաբերեալ երկիրներն ու առանձնաշնորհութիւններն իրեն պարգեւեց։ Արդէն շատոնց քահանայապետական անօրինում, եւ իր մօրեղբօր Լոթարինգիայի կարդինալին հաւանութիւնն առած էր։ Ամսոյն 28ին հրովարտակ մը հանելով որոշեց որ Ալպանիայի դուքսն ասկից վերջը թագաւոր անուանուի եւ իբրեւ թագաւոր մեծարուի։ Կիրակի օրը 29ին ժամը 6ին առտուանց Հօլիրուտհուզի մատրան մէջ Սինքլէր անուն ուղղափառ քահանայ մը պսակն օրհնեց (1565)։ Քանի մ'օր Էտինպուրկի մէջ միայն ուրախութիւն եւ զբօսանք կը տիրէր։ Յուլիսի 30ին նոր հրովարտակ մը հանելով հրաման տուաւ որ ամէն տէրութեան հրամաններուն տակ իր ամուսնոյն անունն ալ դրուի։

Այսպէս այնչափ դժուարութեանց եւ այնչափ վտանգաց մէջ Մարեմայ ամուսնութիւնը գլուխ ելաւ, եւ աս ամուսնութենէն ծնաւ Յակովբ Զ., որն որ վերջէն երկու թագաւորութեանց վրայ տիրեց։ Ասանկով Տարնլի, մօր կողմանէ իրեն ինկած Սկովտիայի թագին մասնակից եղաւ, ան թագին զորն որ Մարիամ իր ձեռօք անոր գլուխը դրաւ, բայց ինք ոչ գիտէր եւ ոչ ալ կրնար յարգել ու ճանչնալ Մարեմայ ամէն ըրածները։ Եթէ որ ինք իմաստուն իշխան մ'ըլլար, խոհեմ եւ յառաջատես, ան ատեն կրնար անոր յարգը ճանչնալ, բայց ինքն յանկարծական փառաւորութենէն շլանալով թագուհւոյն պարտաւոր մեծարանքն ապերախտութեամբ ոտից տակ առաւ։ — Մա՛րիամ, որո՛ւն մտքէն կրնար անցնիլ որ աս ամուսնական կապով քեզի եւ քու ամուսնոյդ գերեզման պիտի բացուի։ Չճանչցա՛ր քու Սկովտիացիներդ, չէիր գիտեր որչափ եւ ուր կրնայ տանիլ փառամոլութիւնն ու վրէժխնդրութեան կիրքը կէս մը վայրենի մարդիկը։ Չէիր գիտեր քու Եղիսաբեթդ, չթափանցեցիր անոր միտքը՝ որ զքեզ կործանելու երդմնի եղած էր. քու ներկայութիւնդ, զինքը կը յանդիմանէր, իբրեւ Անգղիայի աթոռոյն

յափշտակող. չճանչցա՞ր ան Եղիսաբեթը, որուն խարդախութիւնը, անհաւատարմութիւնն եւ յողդողդութիւնն եւ անպիտան բարոյականութիւնը՝ կանանց մէջ հազիւ մէյ մ'ալ հաւասար կը գտնուի։

Տժգոհ կոմսերն աս ժամանակս թագուհւոյն դէմ դնելու բաւական զօրութիւն չունենալով, իրենց դատակերանները քաշուեցան, եւ թագուհւոյն ըրած կարգաւորութեանց դէմ բողոք կ'ընէին, իր ամուսինը թագաւոր անուանելը՝ բռնաւորութիւն կը կոչէին եւ կ'ըսէին թէ ժողովուրդն աս բռնաւորութեան չիկրնար դիմանալ, եւ անոր համար ժողովուրդը կը գրգռէին որ անմիջապէս իսկզգան աս բռնաւորութեան դէմ դնեն։ Բայց ժողովուրդն երկու կողմնակցութեանց ճշմարիտ դիտաւորութիւնները գիտնալով աս տեսակ խօսքերէն չյողդողդեցաւ։ Իսկ Եղիսաբեթ Մարեմայ վերջի որոշիչ քայլը տեսնելով կատաղութենէն ընելիքը չէր գիտեր։ Յայտնի թշնամութիւն սկսելու պատճառ մը գտնել չկրնալով՝ որոշեց որ Նորէն սպաննայ եւ փախցընէ։ Ռանտոլֆին ձեռօք՝ Տարնլիին եւ Լինոքս կոմսին Նորէն սպաննալիք ընել տուաւ որ Անգղիա դառնան, բայց երկուքն ալ զգուշ կեցան ու չդարձան, գիտնալով որ կամ մահ եւ կամ բանտարկութիւն կը սպասէր հոն իրենց։ Իսկ Լինոքս կոմսը դառն բողոք կ'ընէր Եղիսաբեթին վրայ որ իր կինը առանց յանցանքի բանտ դրած է պարզ վրէժխնդրութեան համար։ Եղիսաբեթ Նորէն զԹէմուարթ Մարեմայ խրկեց որ ան ամուսնութեան Նկատմամբ իր աժգոհութիւնն եւ սպառնալիքը յայտնէ եւ Մորրէ կոմսին խնդրած ստակը յանձնէ։ Բայց Մարիամ փօրձաւոր բերան բանեցընելով պատասխանեց որ իր բարի քոյրը Անգղիայի կառավարութեան հոգով շատանայ եւ Սկովտիայի հոգը անոր սեպհական թագուհւոյն ձգէ։ Եւ Ռանտոլֆին սպառնաց որ եթէ իր հպատակները ապստամբութեան գրգռելը դեռ շարունակէ, մանել ու բանտ դնել կու տայ, իսկ Թէմուարթը Տէօնպար տանիլ տուաւ որովհետեւ առանց անցագրի իր երկիրը մտնելու յանդգնած էր։

Տէգոհները Եղիսաբեթին խոստացած օգնութիւնը առնելով Թագուհւոյն դէմ դնելու չափ զօրք ժողվեցին եւ Օգոստոսի 15ին իրենց գործողութիւններն սկսան։ Անոնց հետ միացան Կլէնքէրն մէլեանդ բողոքական կոմսը, Ռուխհարթ Մարեմայ հաշուեկալը, որն որ Մորրէ կոմսին ծածուկ դաւակիցներէն մէկն էր, եւ Թագուհւոյն բոլոր գաղտնիքները մատնելէն ետեւ յայտնի ապստամբաց կողմն անցաւ։ Մաքսուէլ Ցօմֆրիսի կուսակալը Ռանտոլֆին հրապուրելով նոյնպէս անոնց կողմն անցաւ։ Մարեմայ խորհրդականաց շատերը զէնքը խաւելով Մորրէ կոմսին կողմը կը բռնէին, զոր օրինակ Մորթըն, Մեթլէնտ եւ Էլրաքին կոմսը զորն որ Մարիամ քիչ մ'առաջ Մար կոմս ըրած էր։ Համառօտ ըսելու համար Մորրէ թէ գաւառաց եւ թէ պալատին մէջ իրեն գործակիցներ ունէր։

Թագուհին եւ Թագաւորը Թէպէտ եւ չորս կողմանէ թշնամիներէն պաշարուած էին, ի վերայ այսր ամենայնի երկրին արեւմտեան կողմերը գացին ուր աժգոհաց գլխաւոր տեղերն էին։ Օգոստոսի 26ին զապստամբները հալածելու սկսան բայց այնպիսի բանակ մ'որ իրարու հակառակ մասունքներէ կազմուած եւ ժամանիչ առաջնորդաց տակ էր՝ յայտնի բան էր որ երեւելի բան մը չէր կրնար գործել։ Բանակին առաջնորդը Մորթըն կոմսն էր եւ հիւսիսային արեւելեան կողմերը սկսաւ յառաջ երթալ. իսկ Մորրէ եւ իր կողմնակիցները կամաց կամաց հարաւային կողմը քաշուելով Անգղիայի սահմանները կը մօտենային, որ եթէ իրենց գործը չյաջողի կարող ըլլան Անգղիա փախչիլ։ Մորթըն այսչափ ընելէն ետեւ զօրավարութենէն հրաժարեցաւ։ Ռանտոլֆ Սէսիլին գրած թղթին մէջ կ'ըսէ որ Մորթընին աս ժամանակները Մարեմայ քով կենալը Մորրէ կոմսին շատ օգտակար եղաւ։ Թագուհին Մէքզինք այսպէս չարաչար խաբուած տեսնելով Պէլկէրին քով իր 18.000 հոգի կեդրոնացուց. յառաջապահ զօրաց հրամանատարը Լեննոքս դուքսն էր, կեդրոնին Թագաւորը կը հրամայէր. Պոթուէլ եւ Ռութուէն

կոմսից օգնականութեամբ, իսկ Թագուհին զրահ եւ սաղաւարտ հագած եւ ատրճանակներով զինուորած վերջապահ բաժնին մէջն էր, որուն Ատըլ եւ Հունթլի կոմսերը կը հրամայէին։ Այս կարգաւ բանակը դէպ ի Տօմֆրիս յառաջ կ'երթար։ Մորրէ եւ իր կողմնակիցք տեսնելով որ իրենց զօրքով՝ Թագուհւոյն բազմաթիւ բանակին դէմ չեն կրնար դնել, Պետֆրըտ կոմսին ապաւինեցան, որ զիրենք ընդունելու համար մինչեւ Քարլէյլ անգղիական զօրքով յառաջացած էր։

Մորրէ եւ իր կուսակիցք Անգղիա փախչելէն ետեւ Լոնտոն գացին։ Բայց Եղիսաբեթ զիրենք պաղութեամբ ընդունելու երես ըրաւ։ Ինքն անոնց ձեռօք Սկովտիացւոց մէջ նախանձայուզութեան եւ երկպառակութեան ոգի ձգելով վախճանին հասաւ որով Մարեմայ խորհրդականաց ժողովքը բնականապէս երկայն ատեն աղմկի եւ շփոթութեան մէջ պիտի մնար։ Եւ հիմայ ուրիշ բան չէր մտածեր, բայց եթէ ինչպէս ինքզինքը Սպանիայի եւ Գաղղիայի դեսպանաց առջեւ, որոնք իր վրայ յանցանք կը դնէին որ իր խռովասիրութեամբը Սկովտիայի մէջ նորէն ապստամբութեան կրակը վառած էր՝ անկողմնակալութեան պատրուակաւ արդարացընէ։ Եւ ասոր համար ձեռք առած միջոցն՝ իր ինչ ըլլալը շատ աղէկ երեւան կը հանէ, եւ միանգամայն փախստականաց ցածութիւնը կը ցուցընէ որոնք օտարի մը առջեւ իրենց պատիւն ոտքի տակ առին։ Փոխանակ նոյն ապստամբները մարդասիրութեամբ ընդունելու իրենց Թագուհւոյն դէմ ելլելով՝ որոնք իրենց կեանքն եւ ինչքը կշիռքի մէջ դրած էին, պահանջեց իրենցմէ որ Գաղղիայի եւ Սպանիայի դեսպանաց առջեւ հրապարակաւ խոստովանին որ ոչ ինք եւ ոչ իր կողմանէ մէկը զիրենք ապստամբութեան գրգռած է։ Ապստամբք ասի յանձն առնելէն եւ հրապարակաւ դեսպանաց առջեւ խոստովանելէն ետեւ, Եղիսաբեթ իրեն յանդիմանելու եղանակաւ զրուցեց. "Որովհետեւ ճշմարտութիւն կը խոստովանիք, ես չեմ ուզեր այնպիսի մարդկան օգնել, որոնք որ իրենց օրինաւոր

իշխանին դէմ ոտք կ՚ելլեն որպէս զի չըլլայ թէ իմ հպատակացս ապստամբութեան օրինակ տամ. ձեր ամօթալի մատնութեան համար կորսուեցէք, ձեր ե֊րեսը չտեսնեմ, անզգամ մատնիչներ,,։ Եղիսաբեթ սուվ յիշեալ դեսպանները խաղաղցընել ուզեց, որոնք զինքն աս խռովութեանց պատճառ կը հա֊մարէին։ Ա՛ս ննջաւոր եւ անձոռնի խարդախու֊թեամբ դեսպանները խաբել ջանաց։ — Եղիսա֊բեթ՝ Մորրէ կոմսին եւ անոր կուսակցաց աս նու֊աստութեան համար տարեկան մուտք մը կապեց ան պայմանաւ որ ընդունած բարերարութիւնը բարե֊կամներէն առած հրատարակեն։ Աս թատրն ալ աս կերպով լմընցաւ։

Մարիամ իր հակառակորդաց վրայ կանգնած յաղթութեան վրայ չկեցաւ, այլ արդար վրէժխընդրութեան հոգւով նայեցաւ որ ան կողմնակցութիւնն ուսկից որ այնչափ վիշտ եւ նեղութիւն կրած էր իր թագաւորութենէն բոլորովին ջնջէ։ Աս դիտաւորութեամբ խորհրդանոցը կանչել տուաւ, եւ որպէսզի ապստամբաց վրայ օրինաւոր եղանակաւ դատաստան ըլլայ եւ զիրենք իբրեւ հայրենեաց մատնիչ կարող ըլլայ հրատարակել, զիրենք յական յանուանէ հրապարակաւ դատաստանի կանչեց։ Խորհրդանոցին բացուելու օրը Մայիսի 12ին որոշուեցաւ։ Ցօդուածներու ատենակալները, ըստ սովորութեան ընտրուեցան, որոնց պաշտօնն էր խորհրդանոցին մէջ խօսուելու եւ որոշուելու նիւթերը պատրաստել եւ կարգի դնել։ Մորրէ կոմսին եւ անոր ընկերաց կործանումն անհրաժեշտ կ՚երեւար եւ սրտաթունդ երկիւղալից կը սպասէին ան որոշման, որն որ Սկովտիայի մէջ մեծատարած կողմնակցութեան մը վերջ պիտի տրուէր մէկ հարուածով մը, եւ գուցէ ալ բողոքական եկեղեցւոյ մեծ ցնցում պիտի պատրաստէր, բայց անակընկալ դիպուած մը բոլոր պարագաները մէկէն փոփոխեց։



## ԳԼՈՒԽ ԺԴ.

Մարեմայ եւ Ցամբրիին մէջ աթոռակցութեան պատճառաւ եղած գժտութիւնները։ Ոխերիմին դէմ դաւաճանութիւնք։

Եթէ որ աս ժամանակիս բարբարոսական բարքը մտածելու ըլլանք, ուր որ անգութ բռնաւորութիւններն օրըստօրեայ գործքերն էին, հիմայ մեր պատմելու դիպուածն այնչափ ծանրակշիռ բան չ'երեւար. բայց եթէ աս դէպքին նախընթաց ու հետեւորդ պարագաներն եւ անոր հետեւութիւնները կշռելու ըլլանք, տն ատեն ան դէպքը շատ նշանաւոր կ'ըլլայ եւ մեր մտադրութիւնը կը գրգռէ որ անոր սկիզբն եւ ամբողջ ընթացքն իմանանք։

Մարիամ իր ապստամբ հպատակաց վրայ յաղթանակ կանգնելու ատեն, իր ամէն թշնամեաց չկրցաւ յաղթել, դեռ մնացած էր վտանգաւոր եւ անհանգիստ թշնամի մը, որն որ էր նոյն իսկ իր ամուսինը։ Ամուսնութենէն յառաջ հետը քիչ անգամ տեսնուելով, անոր ամէն պակսութիւնները չէր կրցած տեսնել. բայց փորձով իմացաւ որ ըստ կամի մարդ մըն էր, բարկացոտ, կրից մէջ սաստիկ, անհամբոյր եւ գինեսէր, այնպէս որ շատ անգամ գինովութեան ատեն թէ իր պատուոյն եւ թէ նոյն իսկ թագուհւոյն պարտաւոր մեծարանաց դէմ խենթական գործքեր կ'ընէր։ Հպարտ եւ գոռոզ բնութիւն մ'ունենալով կը կարծէր որ աս պատուն իր արդիւնքով ստացած էր, զորն որ Մարիամ իրեն շնորհած էր։ Թագուհւոյն ցուցուցած սէրն եւ մեծարանքն անոր վրայ քիչ տպաւորութիւն կրցան ընել եւ անոր փառասէր եւ անսանձ ոգին զսպել։ Մարիամ անոր ինչ ըլլալը հետզհետէ իմանալով, իսկզբանէ անոր քով այնպիսի անձինք դրած էր որ կարող էին զինքն ուղղել, բայց անոր քանի մը անճոռնի գործողութեանց առջեւ չկրցաւ առնուլ։ Ամէն տեսակ ուրախութեանց եւ երիտասարդական մոլութեանց ետեւէ իյնալով թագուհւոյն սէրը բոլորովին մոռցաւ։ Ասանկ անճոռնի եւ ապերախտ վարմունքը բնականապէս ինչ եւ իցէ կնոջ մը եւ եւս առաւել թագուհւոյ մը ան-

տանելի կ'երեւար, մանաւանդ որ Մարիամ ինքզինքն
նուաստացընելով զՑարնլի այնպիսի պատուոյ բար-
ձրացուցած էր։ Ամուսնութենէն քանի մը ամիս ետ-
քը տնային գժտութիւններն սկսան, եւ ամէնը
զՑարնլի ասոր պատճառ կը դնէին անոր անկարգու-
թեանց համար։ Ցարնլի փոխանակ Թագուհիէն ըն-
դունած շնորհքներով, իշխանութեամբ եւ Թագա-
ւորական տիտղոսով գոհ ըլլալու, անամօթ եղանա-
կաւ կը պահանջէր որ իրեն աթոռակից ըլլայ ու
Շաթելլըրոյ դուքսը հայրենեաց մատնիչ հրատա-
րակուի։ Աս Շաթելլըրոյ դուքսը վերջի դաւաճա-
նութեան մէջ մաս ունեցած ու Թագուհիէն թո-
ղութիւն խնդրելով հաշտուած էր։ Բայց որովհետեւ
նոյն դուքսը Թագաւորական տան ամենէն աւելի մեր-
ձաւորն էր, անոր համար Ցարնլի զինքը Լինոքս գեր-
դաստանին հակառակորդ կը համարէր, եւ աս պատ-
ճառի համար զանիկայ մատնիչ հայրենեաց հրատա-
րակել եւ ինքզինքն Սկովտիայի ժառանգական Թա-
գաւոր պսակել տալով ժառանգական իրաւունքը բո-
լորովին իր վրայ անցընել կ'ուզէր։ Թագուհին թէ-
պէտ եւ բիւր անգամ ցուցուցած էր իրեն որ աս
վերջի խնդիրն իր ձեռքը չէ, այլ խորհրդանոցին
հաւանութեամբ միայն կրնայ ըլլալ, ի վերայ այսր ա-
մենայնի Ցարնլի անոր արդար պատճառներն ըմբռ-
նելու կամ բաւական խելք եւ կամ չափաւորու-
թիւն չունէր։ Կրկին եւ կրկին անգամ նոյն պա-
հանջումներն սպառնալեօք խնդրելէն ետեւ երբոր
տեսաւ թէ Մարիամ չիզիջանիր, կարծեց որ Թա-
գուհւոյն աս հաստատութիւնն անոր խորհրդական-
ներէն է, մանաւանդ Ռիչչիոյ անուն Իտալացիէն։

Աս Ռիչչիոյ Փիէմոնթեցի էր եւ Սավոյայի
դեսպանին հետ Սկովտիա եկած էր։ Նոյն դեսպա-
նին աղաչանքով Մարիամ զինքն իր պալատին մէջ
թռաւ, եւ Ռոլէ Գաղղիացւոյն հեռանալէն ետեւ
Մարիամ զինքն՝ օտար լեզուներ գիտնալուն համար
քարտուղար ըրաւ։ Թագուհին բոլոր օտար տէրու-
թեանց հետ թղթակցութիւնը անոր ձեռօք կ'ընէր,
եւ իր յաջողակութեամբ եւ ցըցուցած հաւատար-

մութեամբ Թագուհւոյն շատ հաճելի եղաւ, եւ երբ որ Մարիամ Տարնլիին հետ ամուսնացաւ պալատին ընչից մատակարարութիւնն իրեն յանձնեց։ Ռիչչիոյ աս պաշտօնին մէջ կրկին պատճառաւ Տարնլիին հետ թշնամացած կ'երեւայ. մէյ մ'որ տնային գժտութեանց մէջ միշտ Թագուհւոյն կողմը կը բռնէր, եւ երկրորդ՝ շատ անգամ առանց Թագուհւոյն հրամանին Տարնլիին դրամոց մեծ գումար մը չէր տար։ Տարնլիէն զատ շատերն անոր պաշտօնին վրայ նախանձելով հետը թշնամացած էին, նոյնպէս աս դժբախտ օտարականն ուղղափառ ըլլալուն համար բողոքականաց եւ քարոզչաց առջեւ ատելի եղած էր։ Տարնլին ասոր ձեռքէն ազատելու համար երդմնի եղաւ զինքն սպաննել։

Անգղիա փախած կոմսերէն զատ ուրիշ խել մը ազնուականներ ալ կային, որոնք թէպէտեւ Թագուհւոյն հետ միացած, բայց դաւաճանաց հետ գաղտնի միաբանութեան մէջ էին եւ անոնց հետ բանագնաց կ'ըլլային, ասոնց գլխաւորներն էին Մորթըն, Ռութուէն, Լինսի եւ Մեթլէնտ կոմսերը, որոնք գիտնալով որ իրենց բախտը փախած դաշնակցաց հետ խիստ կապակցութիւն ունի, կը ջանային որ փախստականաց դէմ մատնութեան հրովարտակը չհանուի։ Տարնլին Ռիչչիոյէն վրէժ հանելու մտօք նոյն կոմսերուն հետ միաբանեցաւ, որոնց օգնականութեան կարօտ էր իր խորհուրդն յառաջ տանելու համար։ Ամենէն յառաջ Ռութուէն կոմսին երթալով իր խորհուրդն յայտնեց։ Ռութուէն աս առաջարկութիւնն այնչափ սիրով ընդունեցաւ, որչափ որ չէր յուսար որ Թագաւորութեան մէջ իշխանութեամբ երկրորդ անձը իրենցմէ ատելի եղած թշնամւոյն եւ իրենց գործողութեանց մի միակ խափանարարին դէմ խորհուրդ խորհի։ Բայց մէկալ կոմսերը Տարնլիին կրակոտութենէն աւելի անոր փոփոխամտութենէն զանգիտելով չուզեցին իսկզբան հետը միաբանիլ մինչեւ որ իրենց կենաց եւ ընչից ապահովութիւնը չգտնեն։ Մորթըն կոմսն՝ որ բանսարկութիւն ընելու մէջ մէկ հատիկ էր, Թագաւորին վրէժխնդրութիւնն աւելի

եւս գրգռելու համար՝ անոր տկար ու գլխաւոր կողմը սկսաւ շօշափել, այսինքն անոր փառասիրութեան ախտէն բռնելով, զրուցեց որ Ռիչչիոյ՝ որն որ թագուհւոյն այնչափ հաճելի եւ այնչափ բարձր պատիւներու հասած է, իր դիտաւորութեանց գլխաւոր արգելքն է։ Անոր վրայ ըսաւ, թագուհին մեծ վստահութիւն ունի, եւ անոր խորհրդովը Սկովտիայի բոլոր ազնուականները եւ նոյն իսկ իր ամուսինը թագաւորութեան խորհրդականութենէ մերժած է։ Տարնլի ասոնք լսելով կատաղութենէն ինչ ընելիքը չէր գիտեր, եւ ալ աւելի համբերել չկրնալով՝ սպառնաց որ Ռիչչիոյ իր դաշունի հարուածէն պիտ'որ իյնայ։

Անխոհեմ իշխանն աս անձնասէր խորհուրդէն խաբուելով այնպիսի մարդկան ինքզինքը յանձնեց, որոնք մինչեւ հիմայ իրեն մահուչափ թշնամի էին, եւ անկից վերջն ալ միշտ մնացին մինչեւ որ զինքն ալ կործանեցին։ Տարնլի ասանկ չարաչար խաբուելէն ետեւ երկու դաւաճանական թղթերուն ստորագրութիւն տուաւ, առջինին մէջ իր վրայ պարտք առաւ փախստականաց դատապարտութեան վճիռն հանել չտալ, եւ անոնց համար թագուհիէն շնորհք խնդրել, իրենց կրօնը պաշտպանել եւ ամէն դէպքի մէջ իրենց թեւ թիկունք ըլլալ։ Իսկ երկրորդ թղթին մէջ դաւաճան լորտերը խոստացան իրեն որ իբրեւ հաւատարիմ հպատակք, իր բարեկամաց՝ բարեկամ, եւ իր թշնամեաց՝ թշնամի ըլլան, իրեն՝ իբրեւ թագուհւոյն ամուսին՝ թագը ապահովցընելու ջանան, եւ որպէսզի աս վախճանին հասնին, աշխատին պիտ'որ որ կամ անոր ամէն հակառակորդները հեռացընեն եւ կամ սպաննեն։ Աս սարսափելի դաւաճանութեան գլխաւոր զոհերն պիտ'որ ըլլային Հունթլի, Պոթուէլ եւ Ատոլլ կոմսերը, Ֆլեմինկ եւ Լիվինկսթըն ատենակալները եւ Յակոմբ Պոզֆուր պարոնը։ Ո՛չ թագուհին եւ ո՛չ իր տիկնայք ու ծառաներն աս դաւաճանութենէն տեղեկութիւն մ'ունէին։ Բոլոր պաշտօնեայք աս դաւաճանութեան մասնակից էին, եւ Մեթլէնտ կոմսն, որուն պարտքն էր զթագուհին պաշտպանել եւ տէրութիւնը խաղաղու-

թեան մէջ պահել, անոնց գլուխն անցած էր։ Ասոր վրայ Թագաւորն եւ անոր հայրն ալ աւելցընենք, որոնք աս դաւաճանութեան ոգին էին։ Եղիսաբեթ եւ Սէսիլ աս դաւաճանութեան մանրամասն պարագաները գիտնալով, իրենց կողմանէ հաւանութիւն տուած էին։

Դաւաճանութեան մասնակից եղող ատենակալք ամենայն փութով լուր տարածելու սկսան որ "Աւետարանը (բողոքական կրօնը) վտանգի մէջ է, Ռիչչիոյ Քահանայապետին ծածուկ գործակալն է, եւ Մարիամ սուրբ կոչուած դաշնակցութեան մէջ մտած է, որուն վախճանն է կ'ըսէին ամէն բողոքականները մէկէն ջարդել։ Աս ստոյգ է որ Մարիամ Ս. Քահանայապետէն պատգամաւորութիւն մ'ընդունեցաւ։ Ս. Քահանայապետն ինչպէս որ սովորութիւն էր զԹագուհին ուղղափառ հաւատքի մէջ հաստատուն կենալու յորդորելէն եւ Սկովտիայի ուղղափառներն անոր առանձին հոգաբարձութեան յանձնելէն ետեւ Տրիտենդեան ժողովոյն համար քանի մը Սկովտիացի եպիսկոպոս ուզեց։

Դաւաճանութեան մէջ եղող բողոքականաց գլխաւորները՝ նոր ժողովք մ'ընելով յայտարարութիւն մը դուրս հանեցին որուն մէջ կը հրամայէին որ հասարակաց աղօթք եւ մինչեւ որ խորհրդանոցը բացուի ամբողջ շաբաթ մը պահք պահուի։ Եւ որպէսզի իրենց կրօնակիցներն արիւնային տեսարաններու եւ բռնական միջոցներով կառավարութեան եղանակը փոփոխելու վարժեցընեն, ամէն օր եկեղեցեաց մէջ հին կտակարանէն ան կտորները ժողովրդեան առջեւ կը կարդային, որոնց մէջ անհաւատութեան ջնջումն ու անաստուած իշխանաց պատուհասը կը սպառնացուէր, եւ թէ ինչպէս Աստուած իր ժողովրդեան երբեմն երբեմն խստիւ պցելութեան կ'ելլէ երբոր մարգարէից խրատներուն չեն հնազանդիր։

Աս դաւաճանութիւնը գլուխ հանելու համար ուրիշ բան չէր մնացած բայց եթէ յատակագիծ մը շինել ու անձինքը եւ ամէն մէկուն ընելու գործքը որոշել։ Աս դէպքիս մէջ ամէն մէկ պարագան նոյն ժամանակին սովորութիւնն ու մտածելու կերպն

աչքի զարնող գոյներով կը նկարագրէ։ Թէպէտեւ Մարիամ յղութեան վեցերորդ ամսուան մէջն էր եւ Ռիչչիոյ առանց դժուարութեան ուրիշ տեղ մ'ալ կրնար սպաննուիլ, ի վերայ այսր ամենայնի Տարնլի ընտրեց որ աս գործքս Թագուհւոյն ննջարանը կատարուի, որպէսզի Թագուհւոյն հաւատարիմ ծառային սպանմամբ ան չար եւ սատանայական ուրախութիւնը զգայ։ Ռութուէն կոմսը երկայն ժամանակեայ հիւանդութեամբ այնպէս տկարացած էր որ զէնք չէր կրնար վերցընել, եւ երկու հոգի թեւէն բռնելով զինքը կը քալեցընէին, ի վերայ այսր ամենայնի իբրեւ ժառանգական դահճապետ աս գործքս անձամբ ուզեց կատարել։

Մ՚որթըն շաբաթ օրն իրիկուան դէմ ժամը շուրջ եօթին ութին 80 հոգւով Թագուհւոյն պալատին դռները առանց աղմուկ հանելու մէկէն բռնեց։ Մարիամ նոյն ատեն ինչպէս որ վերը ըսինք յղութեան վեցերորդ ամսուան մէջ քիչ մը հիւանդկէկ ըլլալով, Արճէյլ կոմսուհւոյն եւ անոր ազգականաց ու պալատին հրամանատարին հետ մէկտեղ իր ննջարանը ընթրեաց նստած էր, Ռիչչիոյ, Էրսքին՝ Թիկնապահաց հարիւրապետն եւ Պիթն տան հազարապետը սեղանի ծառայութիւն կ'ընէին։ Յանկարծակի Թագաւորը գաղտնի դռնէ ներս կը մտնէ եւ Թագուհւոյն քով կը նստի, քիչ մ'ետքը անոր ետեւէն Ռութուէն՝ գլխէ մինչեւ ոտք զինեալ, Գէորգ Տուկլաս, Պալլենթայն եւ Քէր սենեակը կը մտնեն։ Մարիամ՝ Ռութուէն տեսնելուն պէս կը խռովի եւ ընդպատժով քրէական յանցանաց կը հրամայէ իրեն որ սենեկէն դուրս ելլէ, բայց անիկայ աներեսութեամբ պատասխան կու տայ թէ “իմ գործքս Ռիչչիոյին հետ է,,։ Ռիչչիոյ զարհուրած “արդարութիւն արդարութիւն,, պոռալով Թագուհւոյն պաշտպանութեան կը դիմէ եւ անոր զգեստներուն կը փաթթուի։ Թագուհին մէկէն Տարնլիին կը հարցընէ որ աս ինչ է, բայց Տարնլին չգիտնալու կը զարնէ։ Թագուհին իր հաւատարիմ պաշտօնէին վտանգը տեսնելով կը պաղատի շնորհք կը խնդրէ, բայց ոչ իր պաղա-

տանաց եւ ոչ սպառնալեաց մտիկ ընող եղաւ։ Ռութուէն սեղանի վրայէն ծռելով ու սեղանը դէպ ի Թագուհին հրելով տակն ու վրայ կ'ընէ եւ զինեալ ձեռքը Թագուհւոյն ուսին վրայէն երկընցընելով՝ ետեւի դին պահուըտած Ռիչչիօյին կռնակը կը խոթէ դաշոյնը. Պալլենթայն դաշոյնը հանած, իսկ Քէր ատրճանակը Թագուհւոյն կուրծքը բռնած կրակ տալ կը սպառնայ։ Իսկ մէկալները խեղճ զոհը Թագուհւոյն քովէն յափշտակելով քաշկռտելով կը տանին։ Ոմանք կ'ուզէին որ երկրորդ օրուան պահեն եւ հանդիսութեամբ կախեն, բայց Գէորգ Տուկլաս Թագաւորին դաշոյնը ձեռքէն կ'առնու ու Ռիչչիօյին կուրծքը կը խոթէ, ըսելով, "Ահա Թագաւորին դաշոյնը"։ Ասոր վրայ ամէնն ալ վրան կատաղաբար կը յարձակին եւ 56 դաշունի հարուածներով կը սպաննեն։

Թագուհւոյն հաւատարիմները որոնք սենեկին մէջ եղած կռիւը չէին գիտեր, պալատին դուռը կը թափուին որպէս զի Մորթընին բերած զօրքը վանեն, բայց յաղթուելով ներս կը քաշուին. Հունթլի եւ Պոթուէլ պատուհանէ մը փախչելով ազատեցան, իսկ մէկալները սենեակներու մէջ փակուելով կռուեցան եւ առտուանց կանուխ ժամը երկուքին հազիւ կրցան ազատիլ։ Թագուհին զարհուրած եւ աչքն արցունքով դեռ իր դժբախտ ատենադպրին համար շնորհք կը խնդրէր, բայց երբոր անոր մահը իմացաւ, արցունքը սրբեց եւ մէկէն գոչեց "Հիմայ ժամանակն է մարդասպաններէն վրէժ առնուլ"։ Ռութուէն Ռիչչիօյին սպաննուելէն ետեւ Թագուհւոյն սենեակը մտաւ. երեսը տժգոյն եւ սաստիկ յոգնած, անանկ որ հազիւ ոտքի վրայ կրնար կենալ, եւ անմիջապէս գաւաթ մը գինի ուզեց որ յոգնութիւնն անցընէ, կարծես թէ աշխարհքիս ամենէն անմեղ գործք մը գործելով յոգնած ըլլայ։ Մարիամ քիչ մը հոգի առնելով սպառնաց Ռութուէնին որ իր արդար վրէժխնդրութենէն վախնայ, բայց անիկայ աներեսութեամբ պատասխան տուաւ թէ իրենք բաւական պատճառ ունին Թագուհւոյն ընթացից եւ անոր բռնաւորութեան վրայ նեղանալու, եւ թէ Թա-

գուհին Ռիչչիոյին խորհուրդներէն խաբուած ըլլալով իրենց պարտքն էր որ զինքն անոր մնասակար ազդեցութենէն ազատեն, իրենց կրօնը հաստատեն եւ փախստական ազնուականները փրկեն։

Երկրորդ օրը մարտի 10ին Տարնլի անձամբ խորհրդանոցին գումարումն ուշացուց։ Նոյն օրը Մորրէ եւ ուրիշ փախստականք որոնք Պերրիք կը կենային եւ Ռիչչիոյին սպաննուելէն օր մը յառաջ արդէն ծածուկ Սկովտիա հասած էին, եկան ժողվեցան եւ խորհուրդ ըրին որ Թագուհին կամ Էտինպուրկ կամ Սթիրլինկ բերդի մէջ այնչափ ատեն փակուած պահեն մինչեւ որ "Աւետարանը (Նոր կրօնը) օրինօք՝ տէրութեան մէջ չհաստատէ, եւ Տարնլին Թագաւոր պսակել չտայ։ Իսկ ոմանք առաջարկեցին որ Թագուհին կամ սպաննեն կամ մշտնջենաւոր բանտի մէջ դնեն։ Մինչեւ որ ասոնք ըլլան՝ Մորրէ եւ Մորթըն Տարնլիին անուամբ Սկովտիա կառավարեն։ Ասոնք որոշելէն ետեւ իրարմէ բաժնուեցան եւ իրենց տեղերը գացին։

Մարիամ առջի գիշերը ցաւով ու հեծեծանօք անցուց, եւ երբոր առանձին իր ամուսնոյն հետ եղաւ, եւ անոր անհանգստութիւնը, խղճի խայթ եւ երկիւղն երեսին վրայ նկարուած տեսաւ, քիչ մը սիրտ առաւ եւ անոր ըրածին անպատեհութիւնը երեսը զարկաւ։ Թագուհին պալատին մէջ ինք զինքն ապահով չհամարելով շատ ջանաց համոզցընել զՏարնլի որ աս արիւնլուայ տեսարանը թողուն։ Առջեւը դրաւ թէ որպիսի անամօթութեամբ հետը ան բարբարոս մարդիկը վարուեցան, եւ թէ որչափ աւելի աներեսութեամբ վարուելու երկիւղ կայ թէ որ երկայն ատեն հոս կենան։ Դարձեալ առջեւը դրաւ թէ որչափ դաշնակից ուղղափառ թագաւորները կը վշտանան երբոր լսեն թէ (Տարնլի) իր հաւատքը ուրացաւ։ Մարիամ ասոնք առջեւը դնելէն ետեւ, Տարնլի ամըչնալով ու զղջալով ըրածին վրայ խոստացաւ որ թագուհւոյն հետ մէկ ըլլայ ու զինքն աս դաւաճանութեան մոլորեցընողներն հալածէ։

Մարիամ նոյն գիշերը Տարնլիին, Էրոլքին Թիկ-

նապահաց գլխաւորին հետ եւ երկու սպասաւորօք ծածուկ պալատը ձգեց եւ առանց դժբախտութեան Ցէօնպար բերդը հասաւ։ Հոս հասածին պէս թագաւորական դրօշը կանգնել տուաւ, եւ քիչ ժամանակին մէջ այնչափ մարդ ժողվեց որ դաւաճանաց դէմ կրնար ելլել։ Բայց ասոնք թագուհւոյն զօրութիւնը տեսնելով չյանդգնեցան յայտնի քաղաքական պատերազմ բանալ։ Կլենքէռն կոմսը թագուհւոյն քով եկաւ եւ թողութիւն առաւ, Ռօթէս կոմսն անոր օրինակին հետեւելով նոյնպէս թագուհւոյն հետ հաշտուեցաւ։ Մորրէ եւ Արճէյլ կոմսերը զանազան եղանակներով թագուհւոյն քով մօտենալ ջանացին որ թողութիւն գտնեն։ Մարիամ աս խռովութեան վրայ Մորրէին առաջուան ըրածները մոռնալով ան պայմանաւ թողութիւն տուաւ որ Արճէյլ կոմսութեան մէջ երկուքն ալ այնչափ ատեն կենան որչափ որ ինքն ուզէ։ Իսկ Մորթըն, Ռութուէն. եւ Լինսի կոմսերը ուրիշ դաւաճանաց հետ Պերրիք փախան։ Մեթլէնտ կոմսն աներեւոյթ եղաւ, նոյն իսկ Նաքս քարոզիչն ալ փախաւ “չէ թէ ինք զինք յանցաւոր համարելուն, այլ օրինաց խստութենէն ազատելու համար,,։ Մարիամ իր թշնամիքը զարհուրեցընելէն հինգ օր ետքը Նորէն Էտինպուրկ դարձաւ։

Անգղիայի թագուհին, ինչպէս որ ըսած էինք աս դաւաճանութեան ինչ ըլլալը ու. անոր նպատակը գիտէր, եւ Մորրէ կոմսին Պերրիք քաղքէն երթալէն առաջ 300 Սթերլին խրկած է։ Բայց երբոր Մարեմայ յաղթութիւնը լսեց ան ատեն իր Սկովտիայի քրօջը շնորհաւորութիւններ խրկեց. եւ երբոր Մարիամ պահանջեց որ մարգասպանները իր թագաւորութենէն հանէ, Եղիսաբեթ հրաման տուաւ որ իր երկրէն հեռանան, բայց միանգամայն զրուցել տուաւ անոնց որ Անգղիա բաւական ընդարձակ է եւ բռնուելէն երկիւղ չունենան։



## ԳԼՈՒԽ ԾԳ.

Մարիամ Սկովտիայի ժառանգ մը կը ծնանի։ Տարնլէին եւ Մարեմայ մէջ եղած գժտութիւնները կը շարունակուին։ Տարնլէին դէմ ազնուականաց նիւթած դաւաճանութիւնը։ Տարնլի կը սպաննուի։

Մարիամ դաւաճանաց վրայ յաղթանակ կանգնելէն ետեւ, իր զիջանող բնական քաղցրութիւնը նորէն ձեռք առաւ։ Իր ամուսնոյն ջատագովութեանց եւ խոստովանութեանց հաւտալ ձեւացուց թէպէտ եւ աղէկ գիտէր որ Ռիչչիոյին սպանման գլխաւորն ինքն էր։ Բայց դժբախտաբար Տարնլի ինքզինքը չուղղեց. Մարեմայ ազնուական վարմանց յարգը ճանչնալու բնաւ յարմարութիւն չունէր, եւ աւանկով իրենց մէջ անհամաձայնութիւն կը տիրէր թէպէտ եւ կատարեալ հաշտութեան քողով ծածկուած էր։

Մարիամ երբոր ծնանելու մօտ եղաւ Էտինպուրկի պալատը քաշուեցաւ։ Եղիսաբեթ, Մորրէ, Անգղիա եւ Սկովտիա մեծ յուսոյ եւ երկիւղի մէջ էին։ Կրնար Մարիամ Սկովտիայի ժառանգ մը եւ Եղիսաբեթին իրաւանց յաջորդ մը ծնանիլ, կրնար դարձեալ յառաջուան խռովութեանց պատճառաւ դժուարածին ըլլալ եւ թէ որդւոյն ու թէ իր կեանքը՝ կորսնցընել. Եղիսաբեթ եւ Մորրէ աս երկրորդին սրտանց կը բաղձային։ Բայց Մարիամ բարեբախտութեամբ Յունիսի 19ին զաւակ մը ծնաւ որն որ երկու տէրութեանց վրայ պիտի իշխէր։ Եղիսաբեթ Կրինիչ քաղաքը պար կը խաղար երբոր Սէսիլ լուր բերաւ որ Մարիամ որդի մը ծներ է։ Կարծես թէ կայծակէ զարնուածի պէս մէկէն աթոռի մը վրայ ինկաւ, եւ ձեռքը գլխուն տանելով խորունկ մտածմանց մէջ ընկղմեցաւ։ Քովը կեցող պալատան կանայք իրենց թագուհւոյն յանկարծական փոփոխութիւնը տեսնելով պատճառն հարցուցին, եւ զինքը մխիթարել սկսան։ Բայց ինքն պըրած սրտով պյսպէս զըուցեց "Չլսեցի՞ք որ Սկովտիայի թագուհին որդի մը ծներ է, իսկ ես անպտուղ կոճղ մըն եմ„։ Եր-

կրորդ օրը ինքզինք քիչ մը ժողվելով ծննդեան լուրը բերող պատգամաւորին առջեւ իր կեղծեալ ուրախութիւնն յայտնեց եւ միանգամայն նորածին իշխանին կնքամայր ըլլալու բաղձանք ցըցուց. եւ ասոր համար իր տեղը Պետփըրտ դքսին հրաման տուաւ որ իբրեւ դեսպան մկրտութեան ատեն ներկայ գտնուի։

Սկովտիայի իշխանին ծնունդն, որն որ Յակովբ անուանեցաւ Անգղիայի մէջ սկովտական գերդաստանին բազմաթիւ կողմնակիցներն ուրախութեամբ լեցուց, եւ շատերը քանի որ Մարիամ անորդի էր, անտարբեր կեցած էին, ասկից վերջն անոր կողմը բռնել սկսան։ Իսկ Եղիսաբեթ Սկովտիայի թագուհոյն բախտին վրայ նախանձելով ամուսնանալու կը մտածէր որպէսզի ինքն ալ ժառանգ մը թողու։

Տարնլի Ռիչչիոյին սպանմամբ՝ իր յուսացածին չկրցաւ հասնիլ։ Փոխանակ թագն եւ վերին իշխանութիւնն ընդունելու, առանց իշխանութեան եւ ազդեցութեան մնաց, մէկ կուսակցութենէն անարգուած եւ մէկալին առջեւ ատելի եղած՝ իր անխոհեմ վարմանց պտուղը կը քաղէր։ Մարիամ թէպէտեւ իրմէ քաշածները կրնար ծածկել, բայց բոլորովին մոռնալ չէր կրնար, դեռ ան զարհուրելի տեսարանը, Ռիչչիոյին երկիւղն ու պաղատանքը, սպանչաց աններեսութիւնն եւ Տարնլիին խաբէութիւնը, քաշած վախն ու վտանգը վրան մեծ ազդեցութիւն ընելով դեռ չէին փարատած։ Առանց իրեն խորհուրդ մը հարցընելու կառավարութեան մէջ փոփոխութիւն ըրաւ, Հունթլի կոմսն ատենադպիր, եւ Պոթուէլ կոմսը Սկովտիայի ժառանգական ծովապետ ընելէն ետեւ իր բնական եղբայրը Մորրէ, եւ Արճէյլ կոմսը քովը կանչեց։ Մորրէ եւ Պոթուէլ կոմսից բարեխօսութեամբ Մեթլէնտ կոմսին թողութիւն տուաւ Տարնլիին կամացը հակառակ։ Տարնլի ինք զինքն այնպէս առանց իշխանութեան տեսնելով սաստիկ նեղացաւ եւ անխոհեմութեամբ սպառնալիք ըրաւ զՄորրէ սպաննելու. ու պալատէն հեռացաւ եւ չէր ուզեր դառնալ մինչեւ որ թագուհիէն դրուած

երեք գլխաւոր պաշտօնեաները Թագաւորական ատենէն չեն հեռանար։ Սթիրլինկ քաղքին մէջ քաշուելով միտքը դրաւ որ Սկովտիայէն ելլէ երթայ, ուր ո՛չ մեծարանք եւ ո՛չ հանգիստ կրնար գտնել։ Լինոքս դուքսն իր հայրը՝ չկրնալով զինքն աս անխոհեմ խորհրդէն ետ կեցընել, անմիջապէս Թագուհւոյն իմացուց որն որ առանց յապաղելու զինքն Էտինպուրկ հրաւիրեց։ Տարնլի ժամը տասնին գիշերն Էտինպուրկ հասաւ, բայց իմանալով որ պաշտօնեայք պալատի մէջն են, յանձն չառաւ ներս մտնելու մինչեւ որ Թագուհին վար ինջաւ եւ զինքը վեր տարաւ։ Երբոր Մարիամ առանձին իրեն հետ եղաւ զինքն աս խորհուրդէն հեռացընելու շատ աշխատեցաւ, եւ երկրորդ օրը ձեռքէն բռնելով զինքը տէրութեան ժողովքը տարաւ եւ աղաչեց որ իրեն վրայ ունեցած տրտունջները մէկիկ մէկիկ պատմէ եւ չխնայէ իրեն (Մարեմայ) թէ որ տժգոհութեան առիթ մը տուած է։ Տարնլի ատենակալաց առջեւ տուած պատասխանին մէջ զԹագուհին արդարացուց եւ ըսաւ որ "Թագուհին իրեն տժգոհութեան առիթ մը տուած չէ,, բայց ուրիշ բաներու նկատմամբ պատասխան չկրնալով տալ շփոթած մնաց. եւ Թագուհւոյն դառնալով՝ "Մնաս բարով Տիկին, մնաք բարով Տեա՛րք իմ, երկայն ատեն զիս պիտի չտեսնէք,, ըսելով պալատէն ելաւ գնաց։ Աս անքաղաքավար բաժանումէն ետեւ Գլեսկօ գնաց ուր տեղս իր հայրը Լինոքս դուքսը կը կենար, եւ Սկովտիա թող տալու մտօք նաւ մը բռնելու ետեւէ էր։ Վերջէն Թագուհւոյն նամակ մը գրելով իր տժգոհութիւնը երկու գլխաւոր բաներու վրայ ամփոփեց։ Նախ որ Թագուհին իր վրայ վստահութիւն չէցուցընէր, եւ զինքը պատուոյ հասցընելու եւ ժողովրդեան առջեւ սիրելի ընելու ինչպէս որ յառաջագոյն ըրած էր, ա՛լ հոգ չէտանիր։ Եւ երկրորդ որ Սկովտիայի ազնուականներէն ոչ ոք իրեն կ'ընկերանայ, մանաւանդ թէ իրմէ կը փախչին։ Թագուհին աս տրտունջներուն ասանկ պատասխան տուաւ թէ իսկզբան նոյն իսկ իր սեպհական պատուոյն վնասովը զինքը պատուեց եւ մեծցուց. բայց ինքն անոր

ցրցուցած բարութեամբն այնչափ զեղծաւ մինչեւ Թագուհւոյն դէմ եղած դաւաճանութեան մը մասնակից եղաւ։ Ի վերայ այսր ամենայնի ինքն ան մեծ յանցանքին չնայելով միշտ շարունակեց զինքը յարգելու եւ երբոր դաւաճաններն իր սենեակը մտնելով հաւատարիմ պաշտօնեաներէն մէկն սպաննեցին եւ ըսին թէ աս գործքիս գլուխը Ցարնլին է, ինքն երբեք չէ ուզած զինքը դատապարտել, այլ միշտ ջատագոված է, չհաւատալով որ ինքն այնպիսի վրիժագործութեան մը գլուխ եղած ըլլայ։ Իսկ եթէ որ ազնուականներն անոր ետեւէն չեն երթար, յանցանքն անորն է, ինչու որ զիրենք շահելու ամենեւին փոյթ տարած չէ։ Ինք բոլոր պալատականներուն հրամայած էր որ իրեն ծառայեն եւ թագաւորական մեծարանքն ընեն, բայց մեծամեծներն ինչպէս յայտնի է, միայն անոր ետեւէն կ'երթան որն որ իրենց յարգը կը ճանչնայ եւ զիրենք կը պատուէ։ — Նոյնպէս տէրութեան ժողովքն ալ հրապարակաւ յայտնեց որ Ցարնլի տրտնջելու բնաւ առիթ մը չունի, նա մանաւանդ աշխարհքիս իշխանաց մէջ ինք զինքն ամենէն երջանիկ համարելու բաւական պատճառ կայ թէ որ իր բախտը ճանչնայ եւ յարգել գիտնայ։ Լը Քրոք Գաղղիայի դեսպանն որն որ զՑարնլի Թագուհւոյն հետ հաշտեցընելու շատ աշխատեցաւ, կ'ըսէ, որ բոլոր թագաւորութեան մէջ չկայ մէկը որ զՑարնլի սրտանց յարգէ, եւ եթէ յարգող ալ գտնուի պարզ ի շնորհս Թագուհւոյն, եւ ես, կ'ըսէ, չտեսայ ժամանակ մը որուն մէջ Թագուհին իր ժողովրդէն այնչափ սիրուած ըլլայ ինչպէս հիմայ տեսնելով Թագուհւոյն քաղցր վարմունքն եւ իր տժգոհ ամուսնոյն սիրտը վաստըկելու հաշտարար միջոցները։

Աշնան սկիզբները Հոկտեմբերին 8ին Թագուհին իր ատենակալներով միատեղ Ճետպորըյ գնաց որպէսզի գաւառական կամ թափառական ըսուած դատաստանն ընէ՝ նոյն կողմերը բռնուած քանի մը աւազակաց գլխաւորներուն վրայ։ Հոս սաստիկ տենդէ մը բռնուելով ծանր հիւանդ պառկեցաւ (17 Հոկտ.). հիւանդութեան եօթներորդ եւ ութերորդ օրը քա-

նի մը ժամ անզգայ մնալով առողջանալու յոյս չէր տեսնուեր: Ցարնլի Թագուհւոյն ծանր հիւանդութիւնն իմանալով մէկ անգամ մը միայն քովը եկաւ (Հոկտ. 28ին) ուր պէտք էր որ այնպիսի ժամանակ միշտ քովը մնար, որովհետեւ անոր Թշնամի ատենակալք խորհուրդ ըրած էին որ Թագուհին մեռնելու ըլլայ զինքը բոլորովին կառավարութենէն մերժեն: Հոկտեմբերի 26ին հիւանդութեան երեւոյթներն աւելի յաջող ըլլալով վտանգը բոլորովին անցաւ: Մարիամ իր հիւանդութեան ատեն իր բարեպաշտութեամբն եւ ինքզինքն Աստուծոյ կամացը յանձնելով՝ ամենուն բարի օրինակ տուաւ: Գաղղիայի Թագաւորին եւ Անգղիայի Թագուհւոյն գրած լի հոգւով յանձնարարական Թղթին մէջ որդին իրենց հոգացողութեան յանձնեց: Ատենակալները քովը կանչելով երդմնեցուց զիրենք որ ամէն գժտութիւնները մէկդի ձգելով միաբան կենան, յորդորեց զիրենք որ մանուկ իշխանին կրթութեան աղէկ հսկեն, եւ իբրեւ վերջին շնորհք խնդրեց իրենցմէ որ իր հաւատակցաց խղճի մտաց ազատութիւն տան որպէս զի անոնք կարող ըլլան ան կրօնը վայելել որուն մէջ ինք մեծցած եւ միայն մխիթարութիւն գտած էր, եւ որուն մէջ մեռնելու ալ պատրաստ է:

Երբոր Թագուհին ձի հեծնելու չափ զօրացաւ (Նոյ. 20ին) Քրէկմիլլէր դաստակերտը գնաց: Թագաւորն որ ճէտպորոյ անգամ մը միայն Թագուհւոյն այցելութեան եկած էր, նոյնպէս հոս եկաւ եւ քովը գնաց բայց առանց կատարեալ հաշտութիւն մ'ընելու ետ դարձաւ: Հպարտ ըլլալով չէր ուզեր Թագուհւոյն առջեւ խոնարհիլ, իսկ Թագուհին ասոր հակառակ որչափ որ կը բաղձար որ կատարեալ հաշտութիւն ըլլայ՝ տեսնելով որ աս գայթակղութեան վերջը չի գար, այնչափ ալ իրեն վրայ չվստահանալու բաւական փորձ առած էր: Հիւանդութեան յողդողդ վիճակն, որն որ տրտմութենէն եւ անհանգստութենէն աւելի եւս վատթարացած էր, Թագուհւոյն երեսը տխուր կերպարանք մ'առաւ, զորն որ Ցարնլի հակակրութենէ յառաջ եկած մեկնեց:

Որչափ որ ինքը տժգոհ կ'ըլլար, այնչափ ալ Թագուհին զինքն անուղղայ կը համարէր, եւ շատ անգամ աս խորհուրդներով տանջուած ատեն լալով կ'ըսէր Ո՛հ ինչու ճետպորթի տենդը զիս չմեռցուց։

Մորրէ եւ Մեթլէնտ Տարնլիին մահուչափ թշնամիք Թագուհւոյն վիճակը աղէկ կը դիտէին. ուստի երբոր Թագաւորը պալատէն հեռացաւ, իրենց մէջ խորհուրդ ըրին թէ ինչպէս անոր բարկութենէն ազատին, ինչու որ, ինչպէս վերը ըսինք Տարնլի սպառնացած էր զՄորրէ սպաննելու եւ Թագուհւոյն հետ հաշտուելու պայման դրած էր որ Մեթլէնտ եւ քանի մ'ուրիշ կոմսեր պաշտօնարանէն հեռացընէ։ Յուսով համոզուած էին որ Մարիամ ամենեւին ընդդիմութիւն չիցուցըներ այնպիսի մարդէ մը բաժնուելու, որն որ զինքն այնպէս անգթութեամբ վշտացուցած էր։ Աս խորհուրդը՝ Պոթուէլ, Արճէյլ եւ Հունթլի կոմսից յայտնելով՝ Մարեմայ քով գացին։ Մեթլէնտ իր ճարտարախօսութեամբը Թագուհւոյն առջեւ դրաւ Տարնլիին անպիտանութիւններն, անոր ապերախտ վարմունքն եւ պինտգլխութիւնը որով իր սկսածին մէջ կը յարատեւէր, եւ իբրեւ մէկ հատիկ միջոց ասոր գերութենէն ազատելու եւ տէրութենէն այնպիսի մարդ մը հեռացընելու, որն որ թէ իրեն եւ թէ նոյն իսկ տէրութեան վտանգաւոր կրնար ըլլալ, առաջարկեց որ իրմէ բաժնուի։ Մարիամ իսկզբան ասոր այնչափ ընդդիմութիւն չցըցուց, բաւական որ բաժանումն օրինաւոր ճամբով ըլլայ եւ իր որդւոյն իրաւանց չդպչուի։ Բայց ասոր հետեւանքներն աղէկ մը մտածելէն ետեւ խորհուրդ հարցուց անոնց որ արդեօք աւելի լաւագոյն չըլլար մի՞, որ ինք քիչ մը ժամանակ Գաղղիա երթայ իր խնամիներուն քով. գուցէ Տարնլի առանձին մնալով խելքը գլուխը կը ժողվէ եւ կ'ուղղուի։ Եւ ի վախճանի խօսքն ասո՛վ լմընցուց ըսելով, որ ինչ որ կ'ուզէ, ըլլայ, ձեզի կը հրամայեմ որ իմ պատուոյս ու խղճիս դպչող բան մը չընէք կամ չխօսիք. անոր համար կ'աղաչեմ զձեզ որ աս բանս այնպէս թո-

ղուք ինչպէս որ է, մինչեւ որ Աստուած իր ողոր-
մութեամբն ատոր ճար մը հոգայ:

Թագուհին ատանկ պատասխան մը տալով կոմ-
սից ըրած առաջարկութիւնը չյաջողեցաւ, անոր հա-
մար նորէն իրենց դաւաճանական խորհրդին դարձան,
ու որոշեցին որ զՑարնլի սպաննեն: Պոթուէլ աս
չարագործութիւնը գլուխ հանելու յանձն առաւ այն
պայմանաւ որ մէկալները խօսք տան զինքն ատոր հե-
տեւանքներէն պաշտպանելու: Ցակովբ Պալֆուր ժող-
վուած դաւաճաններէն թղթի մը ստորագրութիւն
առաւ, որուն մէջ գրուած էր թէ Թագաւորը խենթ
երիտասարդ եւ ամբարտաւան բռնաւոր մըն է, եւ
ստորագրեալքս որոշած են իրենք զիրենք անոր իշ-
խանութենէն ազատել եւ իրենք զիրենք պարտա-
ւորած են որ ամէն կարելի միջոց բանեցընեն զինքը
կառավարութենէն հանելու; եւ ամէն մէկը խօսք
տուաւ թէ ով որ աս գործքս գլուխ հանելու ըլլայ,
իբրեւ իրենց սեպհական գործք պիտի համարին: Աս
դաւաճանութեան ստորագրած էին Հունթլի, Արճէյլ,
Պոթուէլ, Մեթլէնտ եւ Պալֆուր կոմսերը: Բայց
թէ Մորրէ կոմսն ալ ատոր մասնակից եղած է, ան
յայտնի չէ, բայց աւելի հաւանական է որ իր սո-
վորական խարդախութիւնն հոս ալ բանեցուցած ըլ-
լայ ոչ մէկ կողմը եւ ոչ մէկալը բռնելով, որպէսզի
եթէ դաւաճանութիւնը չյաջողի, ինքն ազատ մնայ:

Թագուհին Քրեկմիլլէր դաստակերտէն Ստիր-
լինկ գնաց ուր նորածին իշխանը պիտի մկրտուէր
(17 Դեկ.): Ցարնլի թէպէտ եւ նոյն ատենը պալա-
տին մէջն էր, բայց հանդիսութեան ատեն չուզեց
ներկայ գտնուիլ, որն որ շատ փառաւորութեամբ
կատարուեցաւ: Պետֆըրտ դուքսն, եւ Քասթելնոյ
Գաղղիայի դեսպանը մկրտութեան հանդէսը առիթ
առնելով թագուհւոյն աղաչեցին որ Մորթընին թո-
ղութիւն տայ. Մորրէ եւ Պոթուէլ եւ ուրիշ ատե-
նակալք իրենց աղաչանքն անոնց հետ միացընելով
Մարիամ ալ չկրցաւ ընդդիմանալ եւ Մորթընին եւ
ուրիշ 76 փախստականաց ան պայմանաւ շնորհք
տուաւ որ երկու տարիէն ետքը Սկովտիա դառնան:

Բայց դաւաճանք՝ Մորթընին եւ անոր ընկերակցաց համար Թագուհւոյն առջեւ բարեխօս ըլլալէն առաջ, պահանջեր էին իրմէ որ ինքն ալ նոր կազմուած դաւաճանութեան ստորագրութիւն տայ։ Եւ քանի մ'օր ետքը նորէն Թագուհւոյն քով ժողվելով Մորթընին համար աղաչեցին որ անմիջապէս Սկովտիա դառնալ կարենայ։ Մարիամ զիջաւ ան պայմանաւ որ պալատէն եօթը մղոն հեռու կենայ։ Ուստի երբոր Մորթըն Սկովտիա ոտք կոխեց, Պոթուէլ եւ Մեթլէնտ դիմացն ելան եւ Ութթենկէմին քով Լաննըրմուր ըսուած լերան ստորոտը Տարնլի մեռցընելու նորէն խորհուրդ ըրին։

Երբոր Տարնլի իմացաւ որ Մորթընին շնորհաց թղթին վրայ Թագաւորական կնիքը դրուեցաւ, Թագուհւոյն ըրած շնորհաց վրայ շատ նեղացաւ, եւ տեսնելով որ Սկովտիայի մէջ իր թշնամիները երթալով կը շատնան, Սթիրլինկէն ելաւ եւ իր հօրը քով Կլեսկօ գնաց։ Նոյն ժամանակները ան քաղքին մէջ ծաղիկ հիւանդութիւնը կը տիրէր եւ Տարնլին ալ նոյն հիւանդութենէ բռնուելով ծանր հիւանդացաւ։ Մարիամ անոր ծանր հիւանդ ըլլալն իմանալուն պէս, իր անձնական բժիշկն իրեն խրկեց եւ խոստացաւ որ ինքն ալ քիչ մ'ետքը իրեն այցելութեան կու գայ եւ Յունուարի 24ին քովը գնաց։ Աս առթով իրենց ամուսնական սէրը նորէն կենդանանալու սկսաւ, մեծանձն Մարիամ ամէն կրածները մոռցաւ, եւ խոստացաւ որ անցածներուն վրայ քօղ մը ձգելով, անկից ետքը միաբանութեամբ ապրին։ Երբոր Տարնլի ոտք ելլելու չափ առողջացաւ, Մարիամ զինքն Էտինպուրկ տարաւ (31 Յունուար) եւ բժշկաց խորհրդով Ս. Մարիամ ըսուած ժողովրդապետութեան վերաբերող տան մը մէջ զինքը դրաւ որն որ քաղքէն դուրս էր եւ Քիրք օ'Ֆիէլտ կ'անուանէր։

Դաւաճանները տեսնելով որ երկու ամուսնաց մէջ սէրն ու միաբանութիւնը նորէն հաստատուեցաւ, իրենց կենաց վրայ դողալ սկսան, որովհետեւ կը գուշակէին որ եթէ աս միաբանութիւնը շարունա-

կուերու ըլլայ երկուքը մէկէն զօրաւոր միջոցներով տէրութիւնը կառավարելով իրենց բանը լմընցած կ'ըլլայ։ Ասոր համար իրենց դաւաճանութիւնը շուտով գլուխ հանելու կ'աճապարէին։ Թագուհին ամէն օր Տարնլիին քով կ'երթար ու հետը քաղցրութեամբ կը վարուէր, շատ անգամ գիշերներն անոր քով կ'անցընէր։

Դաւաճաններն իմացած էին որ Փետրուարի 9ին իրիկունը Թագուհին խոստացած էր կաքաւի մը մէջ ներկայ գտնուելու, որն որ իր երկու պալատականաց հարսանեաց առթով պիտի ըլլար։ Նոյն գիշերն իրենց գործքը գլուխ հանելու համար որոշեցին եւ սուտ բանալի մը շինելով Տարնլիին բնակած տան ներքնատունը. եւ տան չորս անկիւնները ական բացին եւ վառօդով լեցուցին մանաւանդ այն անկիւնը որուն վրայ որ Տարնլիին սենեակը կը կենար։ Փետրուարի 9ին ըստ սովորութեան ժամը վեցին Մարիամ բազմաթիւ ամբոխիւ Քիրք օ'Ֆիէլտ եկաւ եւ մինչեւ ժամը 11 Տարնլիին քով կեցաւ։ Երթալու ատեն ինչպէս որ ամէն անգամ կ'ընէր, գրկեց զինքը եւ ամուսնական համբոյրը տալէն ետեւ՝ վառուած ջահերով Հոլիրուտ պալատը գնաց կաքաւին ներկայ ըլլալու, ուր մինչեւ ժամը տասուերկուք ու կէս կեցաւ։ Ժամը երկուքին Պոթուէլ լայն վերարկուով մը ծածկուած գաղտագողի Տարնլիին բնակած տան մօտեցաւ ուր արդէն իր կուսակիցները ժողված էին։ Անոնցմէ երկուքը դէպ ի տուն գացին եւ վառօդին հետ հաղորդութիւն ունեցող պատրոյգը վառեցին։ Պատրոյգը կամաց կամաց վառուելուն համար Պոթուէլ վախնալով որ մարած է, անհամբերութեամբ տան քով երթալ ուզեց որ նորէն փռընկցընէ, բայց քովինները թող չտուին։ Շատ չանցաւ վառօդը փռընկեցաւ։ Պալատն եւ քաղաքը սասանեցաւ (10. Փետր.)։ Քիչ մ'ետքը քաղքին մէջ՝ Քիրք օ'Ֆիէլտին օդն ելլելուն լուրը տարածուեցաւ։ Թագաւորին եւ անոր Թայլոր անուն պատանեկին մարմինը անապական պարտեզին մէջ տեղը, իսկ ուրիշ երեք հոգւոյ եւ մէկ տղու մը մարմինը տան փլատակաց տակ թաղուած գտնուեցաւ։

Ասանկ դժբախտ վերջ ունեցաւ Տարնլի իր քսան ու մէկերորդ տարուան ծաղիկ հասակին մէջ։ Բախտիւ եւ ոչ եթէ արդեամբք պատուոյ վերջի ծայրն հասաւ, որուն ոչ արժանի էր եւ ոչ ալ իր թեթեւամտութեամբ յարգել գիտցաւ։ Իր հպարտութեամբն եւ փոփոխամտութեամբ ազնուականներէն շատերն՝ որոնք որ իր բարձրանալուն գործակից եղած էին, թշնամի ըրաւ, թեթեւամտութեամբն եւ յամառութեամբ ժողովրդեան առջեւ արհամարհելի եղաւ որն որ զինքը ի սկզբան իբրեւ յաջորդ Սկովտիայի թագաւորաց եւ դիւցազանց կը յարգէր։ Եթէ որ բնական մահուամբ մեռած ըլլար, իր յիշատակը դիւրաւ ամենուն մտքէն բնաջինջ կ'ըլլար, բայց իր սպանման զարհուրելի պարագաներն եւ մահուան վրէժը հանելու զանցառութիւնը՝ առիթ կուտայ որ զինքը ցաւով յիշենք եւ իր դժբախտութիւնը լանք, որն որ անյիշատակ մնալու արժանի էր։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

*Տարնլիի դաւաճանութեան դէմ եղած քննութիւնները։ Մարիամ դաւաճաններէն մէկէ մը կը յափշտակուի եւ անոր հետ ամուսնանալու կը ստիպուի։*

Աս զարհուրելի դիպուածն ամենուն սիրտը ցաւով եւ դժկամակութեամբ լեցուց. շատերուն խօսակցութեան առիթ տուաւ թէ արդեօք թագուհին աս զարհուրելի ոճրագործութեան տեղեկութիւն կամ թէ մէջը մաս ունէ՞ր, թէ չէ։ Պատմութեանց մէջ քիչ դէպք կայ որ այնչափ տաքութեամբ եւ յամառութեամբ վիճաբանուած ըլլայ ինչպէս որ ասիկայ։ Թէ Մարեմայ պաշտպաններն եւ թէ ամբաստաններն աւելի իրար յաղթահարելու կը նային քան թէ ճշմարտութիւնն երեւան հանելու. երկու կողմնակցութիւններն ալ մանաւանդ ամբաստանները կրօնին մոլեռանդութենէն յառաջ եկած ատելութեան ոգւով չափազանցօրէն մոլորութեան մէջ կ'իյնան, անանկ որ անկողմնակալ պատմագիր մը ասոնց իրարու հակառակ կարծիքներն եւ դիտաւորու-

թիւններն, եւ երկու կողման յաղթելու հնարքները տեսնելով մեծ շփոթութեան մէջ կ'իյնայ: Տարնլիին սպաննութենէն յառաջ Մարեմայ վրայ յանդիմանութեան եւ կասկածանաց արժանի բան մը չենք տեսնեք, իսկ անկից ետքի վարմանց մէջ կան քանի մը գործքեր որ յանցանքը ենթադրելով՝ աս ոճրագործութեան հետեւանք կ'երեւան, բայց ասոր հակառակ իր անմեղութիւնն ենթադրելով նոյն գործքերը ան ժամանակուան դժուարին եւ խառնաշփոթ վիճակէն բնական կ'առնուն:

Մարեմայ թէ ջատագովներն եւ թէ թշնամիք ասոր մէջ կը միաբանին որ ինքն իսկզբան այնպէս վարուեցաւ, ինչպէս կը վայելէր անմեղ կնոջ մը: Դու լաւ կ'ողբար իր ամուսնոյն մահը որուն հետ քիչ մ'առաջ հաշտուած էր, յայտնեց որ զինքն ալ նոյն չարագործութեան մասնակից ընելու կը ջանային եւ շատ անգամ կրկնած է որ այնպիսի անօրէն գործքին վրէժը չարաչար պիտի հանէ: Սենեկին մէջ սեւ լաթեր կախել տալով ցերեկուան լոյսը խափանեց, աս առանձնութեան եւ մթութեան մէջ իրեն մեծալանքն ու ցաւակցութիւնը ցուցընել ուզողներէն քիչերը կ'ընդունէր: Ոճրագործութեան պատմութիւնը, իր հիմնական վիճակն եւ ընելու տրամադրութիւնները օտար ազգութեանց յայտնելէն ետեւ (10. փետր.), հրովարտակ մը հանելով մարդասպանները յայտնողին եւ բռնողին ստակ ու կալուածներ տալու վարձք կը խոստանար, եւ աս դաւաճանութեան մասնակից եղողներուն անյիշաչարութիւն կը շնորհէր թէ որ իրենց ընկերները յայտնելու ըլլան (12. փետր.):

Ամէն մարդ գիտէր թէ որչափ ատեն թագաւորը թագուհւոյն հետ աւրուած կ'ապրէր, եւ ասի կասկածելու առիթ տուաւ որ չըլլայ թէ Մարիամ աս ոճրոյն գաղտնի մասնակից ըլլայ: Բայց Էտինպուրկի մէջ անմիջապէս քննութիւններ ըլլալով շատ բան երեւան ելաւ, եւ ընդհանուր կասկածը Պոթուելին եւ անոր ծառայից վրայ ինկաւ: Քաղքին երեւելի թաղերուն մէջ գիշերանց թղթեր փակցուած գտնուեցան, որոնց մէջ զՊոթուել մարդասպանութեան

գլուխ՝ եւ իր ընկերները յականէ յանուանէ կը ծանուցանէին։ Հրապարակական տեղեաց մէջ դրուած նկարներու եւ պատկերաց մէջ զինքն եւ իր ընկերները կը ներկայացընէին։ Գիշեր ատեն փողոցաց մէջ միշտ ձայներ կը լսուէին եւ զինքն աս բարբարոսական գործքին գլխաւոր կատարիչը կը հրատարակէին։ Քանի մ'օրէն ետեւ Լինդըս կոմսը Ցարնլիին հայրը որդւոյն վրէժխնդիր ըլլալու համար բողոք ըրաւ, եւ թագուհւոյն քանի մը նամակ գրելէն ետեւ յորդորեց զինքը որ խորհրդանոցը ժողվելով մարդասպանները դատաստանի կանչէ, եւ զՊոթուէլ եւ ուրիշ քանի մը հոգի մարդասպանութեան ամբաստանեց։ Դատաստանին օրը որոշուելէն ետեւ Լինդըս Կլէսքօյ քաղքէն ելաւ եւ թագուհւոյն նամակ մը գրելով աղաչեց զինքն որ դատաստանին օրը քիչ մ'ուշացունի (4. Ապր.)։ Բայց թէ ինչ պատճառի համար Լինդըս կոմսն որոշուած օրը դատաստանի առջեւ չելաւ, չի գիտուիր, բայց առ հասարակ կը կարծուի որ Պոթուէլին եւ անոր կողմնակցաց զօրութենէն վախնալուն համար ըլլայ, որոնք զՊոթուէլ պաշտպանելու երդում ըրած էին։ Պոթուէլ դատաստանին որոշեալ օրն այնչափ բազմաթիւ զօրքով եկաւ երեւցաւ որ զինք դատապարտել անկարելի էր։ Իր կողմնակիցներէն եւ հպատակներէն զատ զինեալ 200 հոգւոյ չափ ազնուազնդէն զատ որոնք որ նոյն ժամանակուան սովորութեան համաձայն տէրութեան զանազան կողմերէն կրնային ժողվուիլ, 4000 վարձուոր զինուորներով, բացուած դրօշներով Էտինպուրկի փողոցներէն անցաւ եւ Թոլպութ ըսուած տէրութեան բանտը գնաց ուր դատաստան պիտի ըլլար։ Մեթլէնտ ատենադպիրն եւ Մորթըն զինքը պաշտպանելու համար, իսկ Արճէյլ կոմսը իբրեւ Սկովտիայի ժառանգական դատաւոր անոր քովէն ձիով կ'երթային։ Պոթուէլին դէմ ամբաստանութեան թուղթը կարդացուելէն ետեւ ամբաստանողին ձայն տրուեցաւ որ ամբաստանածներուն վկայ եւ ցուցում բերէ։ Ռոպերթ Քաննինկէմ Լինդըսին հպատակներէն մէկը, որն որ տիրոջը անուամբ դատա-

տանարանը եկած էր, Լինոքս կամաւին չգալուն պատճառը ժամանակին կարճութեանը կու տար, որով իր հպատակներէն եւ բարեկամ ազնուականներէն այնչափ մարդ չկրցաւ ժողվել որ այնպիսի վտանգաւոր եւ զօրաւոր հակառակորդի մը դէմ դնելու կարող ըլլայ, ուստի ասոր համար խնդրեց որ 40 օր դատաստանը ուշացուի, բայց աս իրաւացի խնդիրը բացարձակապէս մերժուեցաւ, եւ երդուեալ դատաւորք, որոնք որ Պոթուելի կողմնակիցներէն ու դաւաճանութեան մասնակից եղողներէն էին ասկից պատճառ առնելով հրատարակեցին թէ Լինոքս կոմսն ասոր համար չէ երեւցած, վասն զի ըրած ամբաստանութիւնները սուտ են։ Ասոր վրայ Պոթուել իբրեւ անմեղ ազատ թող տրուեցաւ։

Մարիամ իր վրայէն կասկածը վերցընելու համար, հարկ էր որ մարդասպանաց վրայ խիստ արդարութիւն բանեցընէր, այսպէս Նաեւ խորհուրդ կու տային իրեն թէ Եղիսաբեթին եւ թէ իր Փարիզ կեցող դեսպանը, նոյն իսկ ինքն ալ ասոր հարկաւորութիւնը կը ճանչնար։ Բայց կը հարցընեն իր թշնամիքը թէ ինչպէս վարուեցաւ Մարիամ, ինչ պատրաստութիւն ըրաւ մարդասպաններէն վրէժ հանելու։ Իր աներոյն իրաւացի պահանջումները չմերժեց մի՞. Պոթուելին վրայ ձեւի համար դատաստան ընել չէ՞ տուած, եւ դատաւորաց վճռով զինքն անմեղ հրատարակած չէ մի՞, որով ամէն անկողմնակալ մարդ սանկ անիրաւ դատաստան տեսնելով բնականապէս Պոթուելին վրայ եղած կասկածին վրայ կը հաստատուէր։ Ինչ պատճառ կրնար ունենալ Մարիամ որ իր համբաւոյն վնասով այսպէս գործէր, եթէ ոչ նոյն մարդասպանութեան եւ յանցանաց գիտակցութիւն կամ անպատկառելի հակում մը մարդասպանութեան գլխաւորին՝ Պոթուելին վրայ. զՄարիամ ամբաստանողներուն գլխաւոր պատճառներն ասոնք են։ Մարեմայ պաշտպաններն ասոր հակառակ այսպէս պատասխան կու տան։ Մարիամ նոյն ժամանակը մատաղ եւ անզէն կնիկ մըն էր՝ դաւակցութենէ մը չորս կողմը պաշարուած, միայն իր խոր-

Հրովարտակաց եւ պաշտօնէից ձեռօք լուր եւ տեղեկութիւն կ'առնուր, եւ անոնց խորհրդով միայն կարգաւորութիւններ կրնար ընել. բայց այս խորհրդականաց եւ պաշտօնէից ժողովքը նոյն իսկ անոնցմէ կը բաղկանար, որոնք կամ այս դաւաճանութիւնը գլուխ հանած են եւ կամ գրով եւ երդմամբ խոստացած էին որ իրար պաշտպանեն եւ պատժէն ազատ ընեն: Ուստի զարմանալու չէ որ Մարիամ այսպիսի պարագայից մէջ տիրադրուժ եւ անձնատէր խորհրդականներէն՝ որոնք բարոյական սկզբունքներէ ամենեւին զուրկ էին եւ իրենց շահուն միայն կը նայէին՝ խաբուած ըլլայ թէ Պոռթաւէլ բոլորովին անմեղ է, վրան եղած ամբաստանութիւնները թշնամեաց չարութեան ծնունդն է, եւ Լինոքս անոր համար որոշեալ օրը չերեւցաւ եւ դատաստանին յապաղումը խնդրեց որովհետեւ ըրած ամբաստանութիւնները չէր կրնար ցուցընել:

Դատաստանը լմննալէն երկու օր ետեւ խորհրդանոցին բացուելով մէջը խօսուածներէն ու գործուածներէն դաւաճանաց ծածուկ դիտաւորութիւնները քիչ մը պարզուեցան: Թէպէտ եւ Մարիամ քիչ ժամանակ է որ Սկովտիայի վրայ իշխելու սկսած էր, ի վերայ այսր ամենայնի իր պաշտօնէից աղաչանքով տէրութեան կալուածոց երրորդ մասը անոնց կողմնակցաց պարգեւած էր: Բայց այս պարգեւած կալուածոց խնամքը դեռ ապահովցուած չէր, որովհետեւ Սկովտիացւոց օրինաց համաձայն թագաւորը քսան եւ հինգ տարին չէր լմնցուցած իշխանութիւն ունէր ան ամէն կալուածները յետս կոչելու՝ զորոնք որ մինչեւ այս քսան եւ հինգերորդ տարին պարգեւած էր: Ամէնը գիտէին որ Տարնլի թագուհւոյն այս անխոհեմ բարութեան եւ չափազանց առատաձեռնութեան դէմ շատ անգամ տրտունջ ըրած էր եւ անոր խորհրդով Մարիամ անցած տարի Ապրիլի մէջ քանի մը կալուածներ յետս կոչած. եւ որովհետեւ այս տարին վերջին տարին էր, որուն մէջ թագուհին իր իրաւունքը գործածելու իշխանութիւն ունէր, եւ գիտէին որ Տարնլի պիտի ստիպէր զթա-

թագուհին որ ամէն տրուած կալուածները յետս կոչէ, անոր համար դաւաճան կողմէն գլխաւոր վախճաններէն մէկն աս էր, որուն համար զՑարնլի սպաննեցին: — Երեք օրուան միջոցին մէջ Հունթինկ, Մորթըն, Քրաւֆըրտ, Քեթնէս, Ռոթէս, Սէմփըլ, Հերրիս, Մեթլէնտ եւ ուրիշ շատ ատենակալաց կալուածոց պարգեւման մը հաստատութիւն տրուեցաւ: Նոյնպէս նոյն խորհրդանոցին մէջ՝ քահանայապետական իրաւաբանութիւնը մերժող 1560ին շինուած վճիռը, որն որ մինչեւ հիմայ թագաւորական հաստատութիւն չէր առած, խորհրդանոցէն ընդունուեցաւ, բայց գիտնալով որ թագուհին ասոր դէմ պիտի կենայ, զինքը հանդարտեցընելու համար նոյն վճռոյն վրայ աս աւելցուցին որ Ամէն Սկովտիացի ըստ խղճի մտաց զԱստուած պաշտելու մէջ ազատ է:

Իսկ ասկից վերջը պատահածներէն, դաւաճանութեան ուրիշ գլխաւոր մաս մ'ալ երեւան ելաւ: Պոթուէլ Ցարնլին սպաննելու յանձն առած ատեն, կ'երեւայ թէ դաւակիցներէն սպանելոյն այրին (զՄարիամ) իրեն կնութեան առնելու անոնցմէ հաւանութիւն խնդրած ըլլայ իբրեւ վարձք աս բնութեան դէմ գործքին համար, որովհետեւ խորհրդանոցին լուծուելու երկրորդ օրը (20. Ապր.), զանազան դաւաճանութեանց մէջ մտնող ըլլող ատենակալներէն քսան հոգւոյ չափ մէկտեղ եկան ժողվուեցան, եւ իրենցմէ շինուած յայտարարութեան մը ստորագրութիւն տուին, որուն մէջ Պոթուելին անմեղութիւնը հրատարակելով զինքը մինչեւ ի մահ ամենայն եղանակաւ եւ միասու ամէն ամբաստանից դէմ պաշտպանելու յանձն առին, եւ երդմամբ չափ խոստացան որ ամէն միջոցները ի գործ դնելով աշխատին որ ինքը թագուհւոյն հետ ամուսնանայ, եթէ որ թագուհին յանձն առնու եւ աս վախճանիս համար իրեն քուէով, ստակով եւ արիւն թափելով օգնական ըլլալու խոստացան: Խորհրդանոցի մէջ եղող եպիսկոպոսներէն միայն մէկը, կոմսերէն միայն երկուքը եւ ատենակալներէն միայն հինգ հոգի աս անարժան դաշնակցութեան ստորագրութիւն չտուին:

Ասանկով աս անօրէն դաշինքը կատարուեցաւ որ պատմութեանց տարեգիրներու մէջ յիշուած դաւաճանութեանց մէջ ամենէն գարշելին է, որուն մէջ թագաւորասպանութեան վարձք՝ այրի թագուհի մը կը մատուցուէր։ Աս գործքիս անճոռնիութիւնը շատերն զգալով ստորագրութիւն տալ չէին ուզեր, բայց Պոթուէլ՝ շողոքորթելով, եւ վախցընելով շատերը ակամայ իր կողմը ձգեց, իսկ անոնց որոնք որ աս ամուսնութեան բոլորովին հակառակ էին, թագուհիէն ստորագրուած շինծու թուղթ մը ցըցուց ըսելով թէ թագուհին աս ամուսնութեան հաւան է։

Ապրիլի 22ին Մարիամ Սթիրլինկ գնաց իր որդին տեսնելու համար, զորն որ մեծագոյն ապահովութեան համար Մար կոմսին յանձնած էր։ Ի դարձին նոյն ամսոյն 24ին հազիւ թէ Փուլպրիկս՝ Էտինպուրկի դաստակերտէն կէս մղոն հեռու հասած էր՝ Պոթուէլ 1000 ձիաւորով մէկէն դիմացն ելաւ։ Դէմ դնել անկարելի ըլլալով թագուհին իրեններով, Հունթլի, Մեթլէնտ եւ Մելլուիլ կոմսերով մէկտեղ անոր ձեռքն ինկաւ ու Տէօնպար տարուեցաւ։ Հունթլի եւ Մեթլէնտ կոմսերն երկրորդ օրն ազատ թողտրուեցան, իսկ թագուհին տասն օր բանտի մէջ մնաց մինչեւ որ խօսք տուաւ որ Պօթուէլին հետ ամուսնանայ։

Մարեմայ թշնամիք աս արտաքոյ կարգի դէպքին այսպէս կը մեկնեն եւ կ՚ըսեն թէ ասիկայ յառաջագոյն խօսուած եւ որոշուած ըլլայ, ‘‘Թագուհին ու Պօթուէլ, կ՚ըսեն, արդէն շատոնց իրար կը սիրէին, եւ ամուսնանալու խորհուրդ ունէին, բայց որպէս զի թագաւորական պատիւը ոտքի տակ չառնուի, ձեւի համար բռնութիւն եղաւ,,։ Բայց հաւանականութիւնը կը պահանջէ որ նոյն իսկ Մարեմայ հարցընենք։ Պօթուէլ թագուհւոյն Սթիրլինկ երթալէն յառաջ ամուսնութեան առաջարկութիւն ըրած էր, բայց անանկ խիստ պատասխան ընդունած էր իրմէ որ համոզուեցաւ թէ բռնութեամբ միայն անոր բերնէն հաւանութիւն կրնայ առնուլ։ Ուստի երբոր թագուհին Սթիրլինկէն կը դառնար, ճամբու վրայ բռնեց

եւ Ցէօնպար բերդը տարաւ։ Հոս տեղը ամուսնութեան խնդիրն աւելի բռնութեամբ կը կրկնէր, կ'երդմընցընէր զինքը որ ըրած բռնութիւնը կրեց սատակութենէն է, եւ 24 ատենակալներէն ստորագրուած թուղթն առջեւը դրաւ։ Թագուհին ալ թուղթն պատռելով եւ զարհուրանօք կարդաց, բայց ի վերայ այսր ամենայնի իր խնդրածին չզիջաւ, չէ թէ անոր համար որ Պոթուէլին վրայ թագաւորասպանութեան կասկած ունէր (պաշտօնեայք եւ իր քովինները հաւատացուցած էին իրեն որ Պոթուէլ թագաւորասպանութեան մէջ ամենեւին մաս չունի), այլ որովհետեւ ամուսնութիւնը իբրեւ անհաւասար, եւ եղած առաջարկութիւնն ապաժաման էր, եւ կ'ըսէր որ նորէն ամուսնանալու համար թէ Սկովտիայի եւ թէ դրացի բարեկամ տէրութեանց խորհուրդ հարցընել կ'ուզէ։ Ասով թագուհին ժամանակ վաստըկիլ կ'ուզէր, յուսալով որ աս իրեն կրած նախատանաց վրայ հաւատարիմ հպատակները կը ժողվին եւ զինքը բանտէն կ'ազատեն, բայց օր աւուր վրայ անցաւ, եւ ոչ ոք իրեն համար ոտք ելաւ, ոչ ալ զինքը ազատելու համար ձեռնամուխ եղաւ։ Ան ատեն համոզուեցաւ խեղճ թագուհին որ ատենակալաց անզգայութիւնը ստորագրուած թղթին վաւերական ցոյց մըն է, եւ զինքը ժպիրհ հպատակին ձեռքը բանտարկեալ տեսնելով յուսահատեցաւ։ Պոթուէլ կամաց կամաց ձայնը բարձրացուց եւ բռնութիւն բանեցընել սկսելով, չդադրեցաւ մինչեւ որ հաւանութիւն չառաւ։ Նոյն խեղճ Մարեմայ թշնամիք կը հաստատեն եւ կ'ըսեն որ բռնութեամբ, երկիւղիւ եւ ինչպէս զանազան պարագաներէն յայտնի կը տեսնուի ապօրինաւոր միջոցներով՝ բռնաբարութեամբ ստիպեց զինքն որ հետն ամուսնանայ։ Աս բանս կը հաստատեն տէրութեան խորհրդականաց եւ 1567ին ժողված խորհրդանոցին վճիռներն, որոնք Պոթուէլին վրայ երեք բան գլխաւորապէս կ'ամբաստանեն, նախ թագուհին յափշտակելուն, երկրորդ զինքը բռնութեամբ Ցէօնպար տանելուն եւ բանտարկելուն, եւ երրորդ նոյն բերդին մէջ այնչափ ատեն բանտար-

կեալ պահելուն համար մինչեւ որ ամուսնանալու յանձն առաւ: Եթէ աս վկայութիւնը ստոյգ է, որուն ստուգութեան վրայ տարակոյս չկրնար ըլլալ, ան ատեն Թագուհին բոլորովին անմեղ կ'ելլէ աս բանին մէջ, ան ատեն զինքը բռնելն ու առերեւոյթ բռնութիւն ընելը Թագաւորական անունն եւ պատիւը պահելու համար պատրուակ չէ եղեր: Եւ դարձեալ կը տեսնենք որ Թագուհին քիչ մը ետքը իր հպատակաց վրայ կը տրտնջէր որ քանի որ անոր (Պոթուելին) գերութեան մէջ կը նեղուէր ոչ ոք գտնուեցաւ որ զինքն ազատէ բայց յափշտակողին հետ ամուսնանալէն ետեւ հազարաւորներ զէնք առին որ զինքն հալածեն եւ Թագաւորութենէն վար առնուն: Ասկից յայտնի կը տեսնուի թէ ինչպէս աս դժբախտ Թագուհին բռնութեամբ եւ խարդախութեամբ որոգայթի մէջ ինկաւ՝ զոր որ նոյն իսկ իր մերձաւորներն եւ տէրութեան մեծերն եւ պաշտօնեաները միախորհուրդ լարեցին:

Երբոր Թագուհին բռնաբարեալ ամուսնանալու հաւանութիւն տուաւ, Պոթուէլ զինքն Էտինպուրկի բերդը տարաւ (13. Մայ.), այսինքն մէկ բանտէն մէկալը: Հոս տեղս Մարիամ քիչ մը ժամանակ խնդրեց որ Գաղղիայի Թագաւորէն եւ Կիզեան Թշնամիներէն հաւանութիւն առնու: Պոթուէլ չթողուց եւ ասոր համար կրցածին չափ կը փութացնէր որ պսակը շուտով կատարուի: Բայց Պոթուելին գլխաւոր արգելքներէն մէկն ալ, Հունթլի կոմսին քրոջը Յովհաննային հետ ունեցած ամուսնութիւնն էր, բայց աս ալ շուտով վերցուեցաւ եւ ազգականութեան պատրուակաւ անկից բաժնուեցաւ: Ասանկով Պոթուէլ իր վրայ դատաստան ըլլալէն ամիս մը ետքը զԹագուհին դատաստանարան տարաւ ուր Մարիամ դատաւորաց առջեւ Պոթուելին ըրած բռնական յափշտակութիւնը շնորհեց, եւ միանգամայն յայտնեց ալ որ հիմայ կատարեալ ազատութեան մէջ է: Երկրորդ օրը Մարիամ զՊոթուէլ Օրքնի դուքս ըրաւ, եւ ստորագրութիւն տուաւ ամենակալոց թողութիւն տալէն ետեւ անմիջապէս երրորդ օրը Մայ-

իսկ 15ին Հոլիրուտհուզի սրահին մէջ բողոքական պաշտօնէայն պսակը օրհնեց։ Ռոպերթսըն՝ Անտերսընէն առնելով կ՚ըսէ որ բողոքական պաշտօնէին առջեւ պսակն ըլլալէն ետեւ, երկրորդ օրը ծածուկ ուղղափառ քահանայ մ՚ալ նոյնը նորէն օրհնեց։

Ի վերայ այսր ամենայնի Մարիամ միշտ բանտարկեալ մնաց. պահապաններն անդադար իր բնակած սենեակներուն առջեւ պահպանութիւն կ՚ընէին, ոչ որ հետը կրնար խօսիլ, եւ միայն Պոթուէլին ներկայութեան առեն ուրիշներուն ընդունելութիւն կու տար։ Պոթուէլին խիստ եւ ամբարտաւան վարմունքէն՝ զորն որ օր ըստ օրէ փորձ առնելով կը կրէր, իմացաւ որ վայրենի եւ անգութ փառամոլի մը ձեռք ինկած է։ Դժբախտ թագուհին շատ անգամ գիշեր ցերեկ իր վիճակին վրայ կու լար կ՚ողբար. քաշած նեղութիւնները առաջուան անխոհեմութիւնները ճանչնալ կու տային եւ անոնց վրայ դառնապէս կը ցաւէր, բայց դեռ անկից յառաջ գալի դժբախտութեանց երկայնածիգ տողանը մինչեւ չէր անցներ։

Մինչեւ հիմայ ինչ որ պատմեցինք Տարնլիին մահուընէ յառաջ՝ մէկտեղ եւ եղբը պատահած գիպաց պատմութիւնն է։ Լինկարտ անգղիացի պատմագիրն որուն պատմութեան մէջ հետեւեցանք, անկողմնակալ եղանակաւ ամէն պատահած դէպքերը պատմելէն ետեւ՝ ընթերցողին կը թողու որ դատաւոր նստի եւ ի կողմն կամ հակառակ Մարեմայ դատաստան կտրէ։ Բայց մենք համոզուած ըլլալով Մարեմայ անմեղութեան վրայ ինչպէս որ նոյն պատմագիրն ալ եւ ուրիշ շատ հին եւ նոր թէ ուղղափառ եւ թէ բողոքական եւ Անգղիական պատմագիրները համոզուած են, չենք ուզեր անցնիլ առանց քանի մը անոնց խորհրդածութիւնները յառաջ բերելու։

Ստոյգ է որ Մորրէ, Մեթլէնտ, Պոթուէլ եւ ուրիշ քանի մը կոմսք առաջարկած էին Մարեմայ որ Տարնլիէն բաժնուի, եւ կրնայ ըլլալ որ աս առաջարկութիւնն իրեն առջի բերան քաղցր երեւցած ըլլայ, որովհետեւ զինքը աս ծանրաբեռնութենէն

կ՚ազատէր, բայց անկից յառաջ գայթ կարծելի հետեւութիւնները մտածելով, եւ կոմսից խաբեբայ միտքն իմանալով՝ այնպիսի բացարձակ եղանակաւ մերժեց որ դաւաճանները զՏարլին խաղաղական ճամբով վերցընելու խորհուրդը թող տալով՝ երկրորդ յատակագիծը զոր որ յառաջագոյն մտածած էին ձեռք առին այսինքն զՏարնլի սպաննել։ Հիմայ հարցում մը կ՚ընենք որ արդեօք կարելի բան մըն է որ կնիկ մը իր ամուսնոյն հետ չհամաձայնելով լաւագոյն ընտրէր զինքը սպաննելով ամուսնական կապը քակել, երբոր օրինաւոր եղանակաւ կրնար իրմէ բաժնուիլ։ Երբոր մտածելու ըլլանք որ Մարիամ այնպիսի բարի կրթութիւն առած էր, եւ ուղղափառ կրօնի մէջ մինչեւ ցմահ հպատակ էր եւ անոր ամէն կարգաւորութիւնները խստիւ կը պահէր, աս բանս մեզի շատ անհաւատալի կ՚երեւայ։ Պատմութեանց մէջ կը կարդանք որ շատ ամուսնութիւնք թէպէտ եւ հեռաւոր՝ բայց ազգականութեան պատճառաւ լուծուած են։ Մարիամ եւ Տարնլի, երկուքն ալ Հենրիկոս Ը.ին Մարգարետա քրոջը թոռներն էին. արդ ենթադրենք որ Մարիամ աս ամուսնութիւնը իրեն խիղճ համարելով, ինչ դժուարութիւն կրնար ունենալ նոյնը եկեղեցիէն լուծել տալ։ Բայց չէ, օրինաւոր եւ ապահով ճամբան մերժելով մարդասպանութեան խորհուրդ ունեցած ըլլալ ըսելը շատ պարհուրելի բան է եւ ասի ընելու համար գաղտնական սիրտ մ՚ունենալու է։

‘Այն իսկ դաւաճան ատենակալք՝ Տարնլին սպաննելու խորհուրդէն յառաջ՝ խաղաղական միջոց մը ձեռք առին, որպէս զի կարող չըլլայ իրենց վնասել եւ իրենց դիտաւորութեանց արգելք դնել, եւ ասիկայ անով միայն կրնար ըլլալ թէ որ զինքը թագաւորական պատիւներէ զրկելով հասարակ քաղաքացւոց կարգի մէջ դնէին։ Արդ ինչ որ աս դաւաճան ատենակալք ուրիշի մը ամուսնական կապը օրինաւոր կերպով քակելը՝ մարդասպանութենէն վեր դասած էին, նոյնը Տարլինին ամուսինը պիտի չընտրէր մի՞. Ինչ, օրինաւոր եղանակը մերժելով լաւագոյն

համարեցաւ մարդասպանութեամբ, նախատանօք եւ իր պատուոյն եւ անուան վնասովը իրմէ բաժնուիլ:

Եթէ որ Մարիամ բացարձակապէս իր ամուսնոյն մահն ուզէր, արդեօք անկից զատ ուրիշ միջոց չկար որ ձեռք առնու: Տարնլի մահացու հիւանդութեան մէջ ինկած էր, ծաղիկ հիւանդութիւնը բնականապէս վտանգաւոր է, եւ ամենափոքր անզգուշութիւն մը անյապաղ մահ կը բերէ: Ինչու համար Մարիամ անոր հիւանդութիւնը իմանալուն պէս իր անձնական բժիշկը խրկեց. ինչու համար այնչափ փութով ինքն ալ անոր քով գնաց եւ հիւանդութեան ատեն զինքը հոգաց իր գեղեցկութիւնն եւ կեանքը վտանգի մէջ դնելով: Արդ եթէ Մարիամ զինքը մեռցընելու միտք ունենար, եւ կամ թէ նոյն իսկ ամուսնական կապը քակելու սրտանց բաղձար, ինչու համար զինքը առողջացընելու հոգ տարաւ, ինչու ինքզինքն ալ վտանգի մէջ դրաւ տարափոխիկ եւ մահացու հիւանդութեամբ բռնուածի մը քով երթալով եւ զինքն ամուսնական սիրով հոգալով: Եթէ անոր մահն ուզէր, թող զինքը հիւանդութեան ընթացքին թողուր որուն մէջ եթէ ամենափոքր անզգուշութիւն մ'ալ ըլլար, անհրաժեշտ Տարնլեին մահ կը բերէր: Եթէ որ բնականին թող տալով Տարնլի առողջանար, արդեօք Մարիամ իրմէ մահուամբ բաժնուիլ ուզելով Սկովտիայի մէջ անզգամ մը չէ՞ր կրնար գտնել որ Տարնլեին դեղ մահու խմցընելով մէջ տեղէն վերցընէր:

Չկայ ապացոյց մը որ հաւատանք թէ Մարիամ Տարնլեին կենդանութեան ատեն զՊոթուէլ սիրած ըլլայ: Աս ստոյգ է որ Մարիամ անոր ծառայութեանց եւ հաւատարմութեան համար երախտագիտութիւն կը ցուցընէր, եւ գուցէ Պոթուէլ թագուհւոյն ցըցուցած երախտագիտութեան ցոյցը տեսնելով մասնաւոր սիրոյ տեղ առած, եւ աս խորհրդով այնպիսի յանդուգն գործքի ձեռք զարկած ըլլայ:

——

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Մարեմայ եւ Պոթուելին հետ եղած ամուսնութեան դէմ նոր դաւաճանութիւն կ'ելլէ։ Մարիամ իր թշնամեաց ձեռքը կը յանձնուի, եւ Լոշլըվէն բերդը կը տարուի։

Ով որ այս ժամանակուան Սկովտիայի պատմութիւնը ձեռք առնելու ըլլայ. կը տեսնէ որ նոյն երկրին ազնուականաց անձնական շահն ուրիշ ամէն նկատմունքներէն մեծ էր։ Պարագայից համեմատ իրենց վարմունքը կը փոխէին. շահու կամ մեծութեան նոր ակնկալութիւն մը նորանոր ճամբաներու եւ անօրէնութեանց դուռ կը բանար, ծանր պարտաւորութիւններն եւ երդումներն ինչ դիւրութեամբ որ կը դնէին, զարմանալի անտարբերութեամբ ալ կը լուծէին։ Իսկզբան տեսանք թէ ինչպէս նոյն ազնուականներն, որոնք Աստուծոյ առջեւ երդում ըրած էին որ Տարնլիին ամուսնութիւնը խափանեն, յետոյ ասոր հակառակ նոյն իշխանը գահին վրայ հաստատելու երդմնի եղած են, եւ ի վերջոյ զինքը մէջ տեղէն վերցընելու համար նոր դաւաճանութիւն մը շինած են։ Անոր համար չզարմանայ ընթերցողն երբոր տեսնէ որ դարձեալ նոյն ազնուականք չորրորդ դաւաճանութիւն մը շինած են, որպէսզի զՊոթուէլ թագաւորասպանը, որուն ոճրական գործքը իբրեւ իրենց օրինական համարելու երդում ըրած էին, պատժեն, եւ թագուհւոյն ձեռքէն վերին իշխանութիւնը յափշտակելով իրենցմէ ընտրուած մէկու մը յանձնեն։

Պոթուելին ամուսնութեան թղթին ստորագրութիւն տուող քսան եւ չորս ատենակալներէն շատերը թէպէտ եւ Տարնլիին սպանութեան խորհրդին մասնակից չէին եղած, ի վերայ այսր ամենայնի կամ շահու կամ երկիւղի համար եւ կամ անոր խաբեպատիր վարմունքէն խաբուելով ասանկ ցած եւ անլուր բանի մը իրենց ձեռնագիրը տուէին։ Բայց երբոր տեսան թէ այս գործքով բոլոր Եւրոպայի, առջեւ իրենց անունը կորսնցուցին եւ ամենուն առջեւ իբրեւ բարբարոս համարուեցան, շատ

զրկեցան։ Պօթուէլ՝ ձեռք բերած իշխանութեամբ զեղծանելուն, եւ նորածին իշխանը ձեռք ձգելու քանի մը փորձ ընելուն եւ անխոհեմութեամբ նոյն ատեննակալաց դէմ քանի մը սպառնական խօսքեր զրուցելուն համար, խորհուրդ ըրին որ զինքն ալ կործանեն։ Մորթըն, Մար, Աթոլ, Հոմ, Սէմփլ Լինտսի, Ռոլլիպարտէյն եւ Կրէնձ Սթիրլինկ քաղքին մէջ ժողվուելով եւ իրենց հետ Մոնթրոզ, Կլէնքէռն, Ռութուէն եւ Սինքլէր կոմսերը միանալով, որոշեցին որ Պորթուըքի մէջ թագուհին եւ Պօթուէլը բռնեն։ Բայց այս խորհուրդը չյաջողեցաւ, որովհետեւ թագուհին անոնց միտքը յառաջուընէ իմանալով Տէօնպար փախաւ։ Բայց նոյն ատեննակալք նորէն Էտինպուրկի մէջ ժողվուելով հրովարտակ մը հանեցին որուն մէջ զՊօթուէլ Տարնլիին սպանութեան եւ զթագուհին յափշտակելուն եւ հետը բռնութեամբ ամուսնանալուն եւ նորածին իշխանը բռնելու եւ հօրը պէս սպաննել ջանալուն համար կ'ամբաստանէին։

Այս հրապարակական ամբաստանութեան վրայ չորս օր դեռ չանցած՝ Պօթուէլ իր կուսակիցները ժողվելով դէպ ի Էտինպուրկ քալել սկսաւ. բայց դաշնակից ազնուականք բազմաթիւ եւ աղէկ պատրաստուած զօրքով դիմացն ելան, ան տեղն ուր որ յառաջագոյն Փիքնէյի պատերազմն եղած էր։ Հոս տեղս երկու բանակները մինչեւ իրիկուն դիմացէ դիմաց կեցան. Թագուհւոյն եւ Պօթուէլին զօրաց մեծ մասը զինուորական կրթութիւն եւ քաջասրտութիւն չունէր, իսկ դաշնաւորաց բանակը բոլոր ազնուականներէ եւ անոնց հաւատարիմ հպատակներէ կազմուած էր։ Լը Քրոք ծերունին՝ Գաղղիայի դեսպանը, որն որ թագուհւոյն բանակին մէջն էր՝ շատ ջանաց որ ազնուականները թագուհւոյն հետ առանց արիւն թափելու միաբանէ։ Դաշնակցաց առջեւ դրաւ որ Մարիամ պատրաստ է խաղաղութիւն ընելու եւ իրենց թողութիւն տալու ան պայմանաւ որ բոլոր զէնքերը ցրուեն։ Մորթըն ամենուն կողմանէ պատասխան տուաւ թէ դաշնաւորք թագուհւոյն դէմ

ուղղակի զէնք առած չէին այլ անոր ամուսինը սպաննողին դէմ ոտք ելած էին եւ զէնքերը վար չեն առնուր մինչեւ որ Թագուհին զինքը արդարութեան ձեռք չմատնէ կամ գէթ իր քովէն զինքը չհեռացընէ. Եթէ ասի կատարուի իրենք ալ պատրաստ են իրենց պարտաւոր մեծարանքը Թագուհւոյն ցուցընելու եւ զինքը պաշտպանելու։ Իսկ Կլենքէռն կոմսը մէջը մտնելով անամօթութեամբ զրուցեց որ իրենք թողութիւն խնդրելու եկած չեն այլ զիրենք վշտացընողէն վրէժ հանելու։ Աս ամբարտաւան պատասխաններէն տեսաւ Լը Քրոք որ ազնուականաց կիրքերն այնպէս զօրացած էին որ խաղաղութիւն ընելու ամենեւին յոյս չկար։

Թագուհւոյն զօրքը բլրակի մը վրայ բանակած եւ աղէկ դիրից մէջ էր։ Դաշնաւորք քաջութեամբ բայց մեծ զգուշութեամբ յառաջ շարժիլ սկսան։ Թագուհւոյն զօրքը թշնամեաց կարգաւորեալ յարձակումը տեսնելով վհատեցաւ, միայն քանի մը գնդեր, որոնք Պոթուէլին անմիջական իշխանութեան տակ էին քաջութեամբ դէմ դրին, իսկ մեկալները փախչելու սկսան։ Պոթուէլ զանոնք քաջալերելու համար առաջարկեց մենամարտութեամբ բանը լմընցընելու որպէս զի ասով իր անմեղութիւնը ցուցընէ։ Կրէնճ, Թոլլիպարտէյն առանձին առանձին յանձն առին, բայց Պոթուէլ անոնց պատրաստականութիւնը մերժեց ըսելով որ իրենք ազնուականութեան նոյն աստիճանին մէջ չեն, եւ պահանջեց որ Մորթըն դիմացն ելլէ։ Մորթըն յանձն առնելով երկու խոշոր սուր որոշուեցաւ անանկ մեծ եւ ծանր որ միայն երկու ձեռօք կրնար գործածուիլ, մենամարտութիւնը ոտքի վրայ պիտի ըլլար։ Լինսի միջնորդ մտնելով աղաչեց զՄորթըն որ իրեն թողու Պոթուէլին հետ մենամարտութիւնն ընելու պատիւը, բայց Թագուհին աս անմեղութիւնը ցուցընելու բարբարոսական եղանակը բացարձակապէս մերժեց եւ տեսնելով որ դէմ դնելու եւ փախչելու հնարք չկայ, իր անգութ եւ անողորմ հպատակաց ձեռքն յանձնուելու որոշեց որովհետեւ դաշնաւորաց ձիաւորաց մէկ մասը զինքը

բլրակին վրայ պաշարած էին։ Ասոր համար դաշնաւորաց բանակը պատգամաւոր մը խրկելով խնդրեց որ Քիրքպալտի օֆ Կլէնճ իր բանակը գայ խաղաղութեան վրայ խօսելու։ Օֆ Կրէնճ դաշնաւորաց գլխաւորներէն դաշնադրութիւն դնելու լիակատար իշխանութիւն առնելով Թագուհւոյն քով եկաւ եւ յանուն իր կողմնակցաց խօսք տուաւ Մարեմայ որ եթէ Պոթուէլ թող տալու եւ թագաւորութիւնը հաւատարիմ ազնուականաց խորհրդին համաձայն կառավարելու ըլլայ, իրենք՝ իրեն իբրեւ Թագուհւոյ՝ պարտաւոր մեծարանք եւ հպատակութիւն կը ցուցընեն։ Վերջէն Պոթուելին դառնալով զրուցեց որ բանակէն շուտով հեռանայ *)։ Պոթուելին հեռանալէն ետեւ Կրէնճ Թագուհւոյն ձեռքէն բռնելով դաշնաւորաց բանակը տարաւ, եւ Մորթըն ամենուն կողմանէ ծնկան վրայ գալով աս խօսքերս Թագուհւոյն զրուցեց։ "Աս է ձեր տեղը մեծարոյ Թագուհի, կ'ուզենք զձեզ մեծարել, ձեզի ծառայել եւ հնա-

---

*) Պատմագիրներէն շատերը կը պաշտպանեն որ Մորթըն եւ Մեթլէնտ կոմսերը Տարնլի սպաննելու համար Պոթուելին հետ միացած ատեն ուրիշ դիտաւորութիւններ ունեցած ըլլան, զորոնք միւս դաւակիցներէն զգուշութեամբ ծածուկ կը պահէին, այսինքն զԹագուհին բռնել, աթոռէն վար առնուլ եւ Մորրէ կոմսը կառավարութեան գլուխ դնել։ Եւ կրնայ զրուցուիլ որ իրենց բովանդակ ջանքն ուրիշ բան չէր՝ բայց եթէ աս բանս գլուխ հանել։ Եւ աս կարծիքն այնչափ աւելի ստուգութիւն կ'առնու, որչափ Թագուհւոյն դաշնաւորաց ձեռք իյնալէն ետեւ Պոթուէլ առանց ընդդիմութիւն մը գտնելու անպատիժ ելաւ գնաց, ուր ասոր հակառակ զԹագուհին բանտարկելէն ետեւ թագաւորական իշխանութիւնը բռնութեամբ ձեռքէն առին։ Ասկից յայտնի կը տեսնուի որ իրենց ըրած դաւաճանութեամբը ուղղակի զՊոթուէլ կործանելու եւ զԹագուհին ազատելու երես կ'ընէին, բայց իրօք սաանկ չըրին, որովհետեւ զՊոթուէլ արձակ թող տուին։ Եւ թէ սա ինչու համար ըրին, պատճառը յայտնի է։ Եթէ որ զինքը բռնելու ըլլային, վրան դատաստան պիտի ընէին. բայց ինչ երեսով վրան ամբաստանութիւն պիտի ընէին, երբոր նոյն իսկ իրենք ալ նոյն զարհուրելի գործքին մասնակից եղած էին, եւ զինքը միայն իբրեւ գործիք նոյն գործքը կատարելու գործածած։

զանդիլ ինչպէս որ բոլոր ազնուականները ձեր նախորդներուն ըրած էին,,։

Հազիւ թէ ժամ մը անցաւ Մարիամ ինք զինքն անողորմ թշնամեաց ձեռքը մատնուած տեսաւ։ Դաշնաւորաց բանակին հետ Էտինպուրկ մտնելու ատեն, դիմացն ելաւ վերջի աստիճանի գրգռուած ամբոխ մը, որն որ զինքն յանդիմանութիւններով, անարժան խօսքերով ու անիծիւք ընդունեցաւ։ Ամէն կողմ ուր որ աչքը կը դարձընէր դրօշ մը կը տեսնէր, որուն վրայ իր սպաննուած ամուսինը եւ տղան նկարուած էր, որն որ իր մեռած հօրը առջեւ ծնկան վրայ եկած աս խօսքերը կը զրուցէր։ "Տէր վրէժխնդիր եղիր ինծի համար,,։ Մարիամ աս ահարկու տեսարանէն զարհուրանօք երեսը կը դարձընէր. Ինք զինքն անգութ հպատակաց ձեռք ինկած տեսնելով դժբախտ թագուհւոյ մը վիճակը երեւակայել սկսաւ, եւ խստասիրտ եւ տիրադրուժ ազնուականներէն դառն յանդիմանութիւններ լսելով սկսաւ լալ ու նուաղելով հազիւ ինքզինքը ձիուն վրայ հաստատուն կրցաւ բռնել։ Կը յուսար որ տեղէ մը իր հաւատարիմներէն օգնութիւն մը գալով զինքն անողորմ ազնուականաց ձեռքէն կ'ազատեն, բայց ասիկայ պարզ եւ իր անմեղութիւնը գիտցող դժբախտի մը խաբեբայ յոյս մըն էր։ Երբոր Էտինպուրկ հասաւ՝ փողոցները մարդիկներով լեցուն էին, որոնք մոլեռանդութենէ կամ հետաքրքրութենէ՝ ժողվուած էին աս բարբարոսական տեսարանին հանդիսատես ըլլալու համար։ Թագուհին ճամբուն դժուարութենէն յոգնած, փոշւով լեցուած, աչքը արցունքով, տխուր երեսով փողոցներու մէջէն անցնելու ատեն իր հպատակաց ամօթալի տեսարան մ'եղած էր։ Գէթ ասով կը մխիթարուէր որ ժողովրդեան առջեւ խաղ խայտառակ ըլլալէն շուտով կ'ազատի արքունի պալատը մտնելով, բայց աս ալ չեղաւ, այլ խեղճ տնակի մը մէջ զինքը բանտարկեցին, եւ իր տիկնանց՝ քովը մօտենալն ալ արգիլեցեն։ Մարիամ աս տնակիս մէջ բոլոր գիշերն անպատմելի խռովութեամբ անցուց ոչ այնչափ ժողովրդեան ըրած աղմուկէն, այլ իր խեղճ

վիճակին հետեւութիւնները երեւակայելով, որուն մէջ զինքը ձգած էր իր ազնուականաց անհաւատարմութիւնը, որոնք ոչ կրօն ոչ բարոյականութիւն, ոչ պատիւ եւ ոչ ալ հաւատարմութիւն ունէին։ Եթէ յոյս կամ մխիթարութիւն մ՚ունէր, իր անմեղութեան գիտակցութիւնն էր։ Դառն կ՚արտասուէր իր անխոհեմութեան վրայ, որով այնչափ անգամ խաբուելէն ետեւ ազնուականաց խորհրդին անսալով անոնց անգթութեան զոհ եղաւ։ Քսան ու չորս ժամ բանտարկութեան մէջ իր ապագայ վիճակը չգիտնալով՝ թագուհին յուսահատութեան մէջ ինկաւ։ Առտուանց (Յունիս 16) Մարեմայ արտասուքէն յոգնած աչաց առջեւ ինկած առարկան՝ վերյիշեալ դրօշն եղաւ զորն որ իր բանտին պատուհանին առջեւ իր անողորմ դահիճները կախել տուած էին։ Շատ անգամ շփոթած, առանց քողի եւ ցրուած մազերով բանտին պատուհանէն գլուխը երկընցընելով անցնող գացողները կ՚աղաչէր կ՚երդմընցընէր որ զէնք առնուն եւ իրենց թագուհին անողորմ մատնըչաց ձեռքէն ազատեն։

Ասոր վրայ քաղաքացիներէն շատերը՝ զորոնք որ ազնուականները իրենց կողմը շահելու համար՝ հրատարակած էին որ զթագուհին Պոթուելին ձեռքէն ազատելու պիտի աշխատին, շատ կատղեցաւ տեսնելով որ իրենց սիրելի թագուհին սաստիկ անարգ բանտարկութեան մէջ ինկած է։ Ասով ազնուականաց ըրած անհաւատարմութեան վրայ բոլոր քաղաքը խռովեցաւ եւ զթագուհին անոնց ձեռքէն ազատելու պատրաստուեցաւ։ Բայց դարձեալ անոնց խաբեպատիր յայտարարութիւններով հանդարտեցան խօսք առնելով որ թագուհին անմիջապէս ազատ թող կը տրուի եւ նորէն թագաւորական գահը պիտի նստի։ Նոյն օրը իրիկուան դէմ ազնուականք իրենց խոստման համաձայն զթագուհին պալատը տարին, ասով քաղաքացիք աւելի եւս հանդարտեցան, բայց թագուհին ո՛չ ազատութեան եւ ո՛չ ալ՝ իշխանութեան հասաւ։ Նոյն գիշերը ժամը 9ին ազնուականք թագուհւոյն զգեստները փոխել տալով ծպտեալ չորս

հարիւր զօրքով զինքը քաղքէն դուրս հանեցին եւ Լոշլըվէն անառիկ դաստակերտը դրին, որն որ Ուիլեէմ Տուկլաս՝ Մորրէին խորթ եղբօրն էր։

Լոշլըվէն բերդը լճի մը մէջ տեղն եղող համանուն կղզւոյն վրայ էր, որն որ Էտինպուրկի ծովածոցին եւ Թէյ գետաբերնին մէջ կ՚իյնայ եւ Էտինպուրկէն օր մը հեռու է։ Աս անառիկ դղեակը տասուիրեքերորդ դարուն մէջ շինուած էր, չորս կողմը բակով գոցուած եւ երկու ծայրերը կլոր աշտարակներով ամրացուած էր։ Հարաւային ճակտին կողմը պատով գոցուած եւ ծառերով ու մութ կանանչ բույսերով պարտէզ մը կը տարածուէր, որն որ լճին մակերեւոյթը ժողվուած առաւօտեան եւ երեկոյեան մթագգած մշուշի առեն թէ պարտէզն եւ թէ բերդը թուխ ժայռի մը պէս կը տեսնուէր։ Բայց երբոր մշուշը թէատրոնի վարագուրի մը պէս կը փարատուէր, Մարեմայ պատուհանէն երկու զանազան գեղեցկութեամբ տեսքեր կը բացուէին մէկը դէպ ի արեւմուտք ընդարձակ եւ մշակեալ Քինրոսի դաշտավայրին եւ համանուն գիւղակին վրայ, իսկ մէկալը դէպ ի հարաւ ուր Պէն Լոմոնտի սրածայր լերանց շղթայից սարերը կամաց կամաց լեռներէ բլրակներու իջնալով մինչեւ լճին եզերքը կը հասնէին։

Թագուհին բերդը հասնելով իր հիւրընկալուներէն կամ թէ իր բանտապաններէն ընդունուեցաւ. աս բանտապետներն էին Նախ Տիկին Տուկլաս Յակովբ Ե.ին տարփածուն, որն որ թագաւորին հետ ամուսնանալու վրայ էր երբոր անդիէն Յակովբ՝ Կիզեան Մարեմայ հետ ամուսնացաւ։ Ասով տիկին Տուկլաս բնականապէս Կիզեան Մարեմայ վրայ ունեցած ատելութիւնը անոր դստեր Մարեմայ վրայ անցուցած էր։ Քառասուն տարեան հասակին մէջ Նորոգչաց աղանդն ընդունեցաւ, եւ որովհետեւ իր ծաղիկ հասակին մէջ եղածներուն վրայ բաւական զղջալու բան ունէր, անոր համար կը ջանար որ չափազանց մոլեռանդութեամբ անցած գացած բաները աշխարհքիս մոռցընել տայ, զորոնք որ ինքը չէր կրնար մոռնալ։ Պառաւ տիկնոջմէ ետեւ, որն որ

թէպէտ եւ բերդին նիւթական տնտեսութիւնը չունէր, բայց մէկ վերին իշխանութիւն մը բերդին մէջ եղած բաներուն վրայ ցուցընելու ջանք ունէր, կուգար բուն բերդին հրամանատարը՝ իր մեծ որդին Ուիլեէմ Տուկլաս որն որ երախտագիտութեան համար Մորրէ կոմսին հաւատարիմ էր: Ասիկայ շուրջ երեսուն տարուան էր կերպարանօք եւ բարուք բուն Տուկլաս, կարմիր մազերով, կապոյտ աչքերով, լայն եւ կարմիր երեսով, բայց ամենէն աւելի ամբարտաւան եւ անողոք բնութեամբը նշանաւոր էր: Իսկ երրորդ անձն էր որբ պատանեակ մը տասուերկու մինչեւ տասնուչորս տարուան, զորն որ իր ազգականներն իրենց քովն առած էին չէ թէ ողորմածութեան համար՝ այլ որպէսզի չզրուցուի թէ Տուկլասեանց ցեղէն մէկը խեղճութեան մէջ մնացած է: Արդէն երեք տարիէ ի վեր բերդի մէջ ըլլալով իրեն ամենեւին պաշտօն եւ կամ զբաղում մը տրուած չէր, բայց մեծ Տուկլասին խստութիւնն եւ անոր մօրն անտարբերութիւնը կրելու շատ անգամ առիթ ունեցած էր, որուն հետեւութիւնն ան եղաւ որ պատանին կատարեալ ազատութեան մէջ մեծնալով իր օրերն լերանց մէջ որսով եւ լճին մէջ ձկնորսութեամբ եւ կամ դղեկին դարբնոցի մէջ նետեր եւ նիզակաց գլուխներ շինելով կ'անցընէր:

Մարեմայ՝ բերդն հասած ատեն Գէորգ Տուկլաս Ուիլեէմին եղբայրը հոն չէր: Աս Գէորգ Տուկլասը քսան տարեկան գեղեցիկ երիտասարդ մըն էր, որն որ Տուկլասեանց փոքր ճիւղին սեպհական կարմիր գունէն կը տարբերէր, եւ սեւ աչքերով, սեւ մազերով, սեւ մօրուօք տգոյն երեսով էր: Աս երիտասարդին Տուկլասեան մէկալ եղբօր մէջ տարբերութիւնն այնչափ մեծ էր, որ Տուկլաս տիկնոջ վրայ ուրիշ կարծիքներու երթալու սկսած էին, եւ աս կարծիքէն է որ սեւ գունով Տուկլասին ծնունդը ընտանեաց մէջ անմիաբանութեան առիթ մ'եղաւ, որով ո՛չ հայրը եւ ո՛չ եղբայրը զինքն իբրեւ որդի եւ եղբայր կ'ընդունէին: Աս պատճառիս համար Գէորգ Տուկլաս իր ընտանեաց մէջ իբրեւ օտարական

մեծնալով, եւ առով վերը յիշուած պատանւոյն հետ խիստ բարեկամութեամբ կապուեցաւ։

Մարիամ աս բերդին մէջ առանձնութեամբ օրերը կ՚անցընէր, ուրիշ զբօսանք չունենալով բայց եթէ վերը յիշած պարտեզին մէջ քիչ մը պտըտիլ եւ կամ բոլոր օրն իր ննջարանին պատուհանէն Պէն Լոմոնտի լերինքը դիտել, եւ կամ մանաւանդ իր ընդունելութեան խուցէն Քինրոս գեղին տեսքը վայելել։ Աս պատուհանէն Թագուհին շատ կը նայէր, որովհետեւ Քինրոսի եզերքն աւելի բազմամարդ ըլլալով աւելի կը զբօսնուր։ Իսկ իր հիւրընկալուներէն միայն Ուիլեէմը սեղանի ատեն կը տեսնէր, որն որ Թագուհւոյն ապահովութեան համար անոր ամէն կերած կերակրոց եւ ըմպելեաց համը կը նայէր։ Տուկլաս տիկնոջ հետ միայն պարտէզը կը տեսնուէր, բայց անոր արգոսեան աչուըներէն ձանձրանալով այլ պարտէզը ոտք չկոխեց։ Փոքր Տուկլասը միայն ան ատեն կը տեսնէր երբոր անի նաւով ձկնորսութիւն կ՚ընէր եւ կամ եզերքի վրայ որսորդութիւն։ Բարեբախտութեամբ Մարիամ Սէյթոն իր պալատական օրիորդներէն մէկն իրեն ընկերութիւն ընելով որչափ կարելի էր անոր բանտին վշտերը կը քաղցրացընէր։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Եղիսաբեթ Մարեմայ եւ անոր ապստամբ ազնուականաց մէջ միջնորդ ըլլալ կ՚ուզէ։ Մարիամ բռնութեամբ թագաւորութենէն հրաժարելու կը ստիպուի։ Մարեմայ որդին Յակոբ Զ. Սկովտիայի թագաւոր կ՚օծուի, եւ Մորրէ խնամակալ կը դրուի։

Յուլիսի 17ին ապստամբ ատենակալք քանի մը հոգի բռնելով եւ անոնց վրայ թագաւորասպանութեան յանցանք դնելով սպաննեցին։ Ասկէց քիչ մ՚ետքը Հոլիրուտ պալատին մէջ թագուհւոյն արծաթեղէններն ու գոհարներն յափշտակեցին։ Նոյն օրը Կլէնքէռն կոմսն իր սպասաւորներով թագուհւոյն մատուռը մտաւ, խորանները կործանեց, սրբոց պատ-

կերոնները, արձանները եւ եկեղեցւոյ զարդերը խորտակեց։

Դաշնաւորք թէպէտ եւ մինչեւ հիմայ յաղթութեամբ կ'երթային բայց դեռ ամէն կողմնակցութեանց յաղթած չէին։ Ազնուականներէն դեռ շատերը աս ամէն եղածներուն վրայ զչարելով կը նայէին, իրենց եւ ազգին ամօթ կը համարէին որ ափ մը ազնուականք ասանկ անլուր գործքի մը ձեռք զարկին։ Ասոնցմէ շատերը Հեմիլթոնեանց քով կը ժողվէին եւ խորհուրդ կ'ընէին թէ ինչպէս թագաւորին ազատեն։ Թագուհւոյն աս կողմնակցութիւնը թէպէտ եւ մեծ ու զօրաւոր էր բայց միութիւն եւ գլխաւոր գործող մը չունենալուն համար ազդեցութիւն մը չունեցաւ. իրենց խորհրդոց բոլոր պտուղն ուրիշ բան չեղաւ բայց եթէ բողոքներ եւ տրտունջներ հրատարակել, որոնք ապստամբաց հակառակ ըրած յառաջացման բնաւ արգելք մը չէր կրնար ըլլալ։

Երբոր Եղիսաբեթ՝ ապստամբաց խրկած դեսպանին ձեռօք Սկովտիայի մէջ եղած յանկարծական յեղափոխութիւնն իմացաւ իր տհաճութիւնը դեսպանին իմացընելէն ետեւ, զրուցեց "Սկովտիայի թագուհւոյն եղած նախատինքը ամէն իշխանաց հաւասարապէս կը համարուին։ Ասիկայ Նաքսի վարդապետութեանց հետեւութիւնն է զորոնք միշտ մերժեր էր։ Աս համար հարկաւոր է որ ապստամբք անյապաղ պատժուին որպէսզի հպատակները սորվին իրենց անմաքուր ձեռքը իշխանաց սուրբ անձին վրայ չդնելու,,։ Աս բանիս համար Թրոքմորթըն Սկովտիա խրկեց (30 Յուլ), որպէսզի ստիպէ զապստամբները որ Մարեմայ ազատութիւն տան, եւ միջնորդ մտնելով թագուհիէն ապստամբաց թողութիւն խնդրէ, թագաւորասպանները պատժելու գործակից ըլլայ եւ թէ Մարիամէն ու թէ ատենակալներէն խնդրէ որ նորածին իշխանը Անգղիա իր քովը խրկուի ապահովութեան համար։ Ասիկա առջի անգամն է որ Եղիսաբեթ ուղիղ խօսած եւ գործել ուզած ըլլայ. բայց դժբախտութեամբ իր անհաւատարիմ պաշտօնէին

ձեռքը իր բարի կամքն անգործունեայ մնաց։ Թրոքմորթըն դըսանց Եղիսաբեթին դեսպանն էր եւ ծածուկ Սէսիլ պաշտօնէին գործակալը, անոր համար երբոր Էտինպուրկ հասաւ եւ ատենակալներէն պահանջեց որ Մարիամ անմիջապէս ազատ թող տրուի, դաւաճաններէն պատասխան առաւ որ, սպասէ մինչեւ որ ազնուականք Էտինպուրկ ժողվին. Նոյնպէս խնդրած էր որ Մարեմայ հետ տեսնուի, բայց երբոր լսեց թէ Գաղղիայի դեսպանն ալ հետը չէ կրցած խօսիլ, ետ կեցաւ։ Քանի որ Թրոքմորթըն Եղիսաբեթին հետ կը թղթակցէր, անդիէն ապստամբ ատենակալք ժողվուելով խորհուրդ կ'ընէին Մարեմայ վրայ։ Ոմանք առաջարկեցին որ թագաւորասպանները բռնելէն ու պատժելէն եւ նորածին իշխանին կեանքը ապահովցընելէն եւ նորաղանդ կրօնը երկրին մէջ հաստատելէն ետեւ թագուհին նորէն գահ նստի եւ յառաջուան իշխանութիւնը նորէն առնու։

Բայց այս մեղմ առաջարկութիւնն ինչպէս յայտնի էր նոյն ժամանակուան սրիկաներուն բաղձանաց համաձայն չէր կրնար ըլլալ, անոր համար այս մեղմ խորհուրդը մերժեցին եւ առաջարկեցին որ թագուհւոյն վրայ դատաստան ընելով պատժեն. այս առաջարկութիւնը նորաղանդ քարոզիչք շատ գովեցին, բայց ազնուականներէն շատերը չյանդգնեցան այսանկ բանի մը ձեռք զարնել։ Երկու կողմն ալ շատ վիճաբանելէն ետեւ մէկ բանի մէջ միաբանեցան որն որ ոչ այնչափ առջինին պէս մեղմ էր եւ ոչ ալ վերջինին պէս խիստ եւ յանդուգն։ Նախ որոշեցին որ Թագուհին համոզելով կամ բռնութեամբ թագաւորութենէն հրաժարել տան, երկրորդ նորածին իշխանը թագաւոր օծեն եւ երրորդ թագաւորին անչափահասութեան ատեն խնամակալութիւնը Մորրէ կոմսին ձեռքն յանձնեն։

Մարիամ ամենեւին ազատելու յոյս չունէր. իր հպատակներէն ոչ ոք ոտք ելաւ զինքն ազատելու համար եւ ոչ ալ մէկը քովը կրնար երթալ որուն իր տառապանքը կարենար յայտնել, նոյն իսկ Գաղղիայի եւ Անգղիայի դեսպանաց քովը մտնելու հրա-

մանը զլացուեցաւ։ Ասանկ քանի մը շաբաթէ ի վեր խիստ բանտարկութեան չարչարանքները կրելով, լքեալ թողեալ առանց խորհրդականի եւ բարեկամի, թշուառութենէ ընկճեալ եւ ապագայ վտանգին երկիւղէն տանջուած, բնականապէս ինչ եւ իցէ պայմանաց ստորագրութիւն կու տար ազատութիւն գըտնելու յուսով։ Դաշնաւորք Մարեմայ ասանկ տրամադրութեան կը սպասէին, եւ անոր սրտաբեկութիւնը տեսնելով Յուլիսի 24ին Լինսի ատենակալը Լոշլըվէն խրկեցին որ թագուհիէն եղանակաւ մը վերոյիշեալ երեք յօդուածոց հաւանութիւն բերցընէ։ Լինսի դաժան եւ վայրենի մարդ մըն էր, եւ ասանկ գործքի մը համար մէկ հատիկ եւ իր պաշտօնը վերջի աստիճանի խստութեամբ կատարեց ինչպէս որ վերջէն պիտ'որ պատմենք։ Թագուհւոյն ուրիշ բան չմնաց բայց եթէ մահ կամ նոյն յօդուածոց ստորագրութիւն տալ։ Նոյն ատենները Ատոլ, Մեթլէնտ եւ Քիրքալտի, որոնք դաշնաւոր կոմսից մէջ աւելի մեղմ վարմունք ունէին եւ գոնէ իրենց թագուհւոյն բարիքը կը բաղձային, Մելուիլ ատենակալին ձեռօք իմացընել տուին թագուհւոյն որ բանտարկութեան մէջ բռնութեամբ առնուած թագաւորութենէն հրաժարումը զօրութիւն չունի եւ յետոյ կրնայ առնուիլ։

Մ՝արիամ որ իր խցին պատուհանին առջեւ նստած էր մէկէն եզերքէն փողի ձայն մը լսեց եւ տեսաւ որ զինեալ բազմութիւն մը եզերքը նաւուն կը սպասէր, որն որ դղեկէն զինքը ընդունելու համար եկած էր։ Թէպէտ եւ աս բազմութիւնը հազիւ տասը տասուերկու հոգի էր, բայց անոնցմէ միայն երեքը դէպ ի բերդ նաւեցին։ Մարիամ որուն ասանկ վիճակի մէջ ամէն բան նոր կ'երեւար, հետաքրքրութեամբ անոնց կը նայէր, բայց կամաց կամաց քանի որ կը մօտենային հետաքրքրութիւնը երկիւղի փոխուեցաւ, ինչու որ եկողներուն մէջ իր մահուչափ թշնամին Լինսի կոմսը կը նշմարէր։ Եւ իրօք ալ այնպէս էր. Լինսի կոմսը եկողներուն մէջն էր որն որ թէ պալատի եւ թէ պատերազմի դաշտի մէջ

մի եւ նոյն զգեստը կը կրէր, այսինքն պողպատէ սաղաւարտ, սեւ մօրուք որուն կուրծքին վրայ ինկող թելերը արդէն ճերմըկնալու սկսած էին, գոմէշի կաշիէ բաճկոն որն որ իսկզբան մետաքսով բանուած էր, բայց թէ պատերազմի եւ թէ խաղաղութեան ատեն շատ գործածուելով այնպէս հինցած ու աղտոտած էր որ բուն սկզբնական գոյնը ճանչնալ անկարելի էր. ասկից զատ խոշոր սուր մ՚ալ ունէր որն որ միայն երկու ձեռօք կրնար գործածուիլ եւ նոյն ատեններս ասոր գործածութիւնն արդէն կէս մը վերցուած էր հսկայի զօրութիւն ունեցող մարդկան պակասութեան պատճառաւ։ Երկրորդ անձն էր Ռոպերթ Մելուիլ Թագուհւոյն հազարապետին Անդրէաս Մելուիլին, եւ անոր Անգղիայի դեսպանին Յակովբ Մելուիլին եղբայրը։ Իսկ երրորդ անձը Թագուհին չկրցաւ ճանչնալ, որովհետեւ նաւ մնած ատեն կռնակը դղեկին դարձուցած էր։ Մարիամ թէպէտեւ անոնց գալըստեան պատճառը չէր կրնար գիտնալ, բայց իմացաւ որ իրեն այցելութեան եկած են, եւ ասոր համար զՍէյթոն վար խրկեց որ անոնց գալըստեան պատճառն հարցընէ, իսկ ինքն իր խուցը քաշուեցաւ որ անոնց այցելութեան ինք զինքը քիչ մը պատրաստէ։ Սէյթոն քանի մը րոպէէն ետեւ դառնալով լուր բերաւ որ եկողները Մորրէ կոմսէն իբրեւ պատգամաւոր եկած են, եւ երրորդ անձը զորն Մարիամ չէր կրցած ճանչնալ՝ Ռութուէն ատենակայն էր Ռութուէն կոմսին որդին, որն որ զՌիչչիոյ սպաննած էր։ Մարիամ աս անունն որ լսեց ինքզինքը կորսնցուց։ Բայց որովհետեւ աստիճանաց վրայ արդէն անոնց ոտքի ձայները կը լսուէին հրամայեց Թագուհին որ դրան նիգը անցընէ, որպէսզի առանձին մնալով ինքզինքը ժողվելու քիչ մը ժամանակ ունենայ։ Սէյթոն հազիւ թէ նիգն անցուց, Լինտի դուռը բանալ փորձելէն ետեւ կոշտ եղանակաւ դուռը բախեց։ — Աս կերպով Սկովտիացի Թագուհւոյն դուռը զարնողն ո՞վ է, հարցուց Սէյթոն։ — Ես Լինտի կոմս, պատասխանեց զօրաւոր եւ հաստ ձայն մը, եւ դուռը բանալու համար այնպէս ուժով

նորէն շարժեց որ քիչ մնաց պիտի կոտրէր։ — Թէ որ իրօք դուք էք Լինսի կոմս, ըսաւ Սէյթոն, այսինքն ազնուական Տէր մը, եւ կիրթ ասպետ, ան ատեն պէտք էք սպասել մինչեւ որ ձեր թագուհին զձեզ ընդունելու հաճի։ — Ի՛նչ, սպասե՜լ, պատասխանեց Լինսի, Լինսի կոմսը թէ որ իր գործքերուն համար եկած ըլլար՝ չէր սպասեր, որչափ եւս առաւել հոս իբրեւ պատգամաւոր եւ գաղտնի ժողովին պատգամաբեր եկած է, բացէք ապա թէ ոչ... դուռը կը կոտրեմ։

Մ՚ելուիլ կոմսը մէջը մտնելով Սէյթոնին ըսաւ որ առանց յապաղելու թագուհւոյն իմացընէ որ Անդրէաս Մելուիլ անոր հաւատարիմ ծառան կը սպասէ, բայց Սէյթոն ըսաւ որ թագուհին՝ ժամանակին եկած ատեն դուռը բանալու հրաման կու տայ եւ մինչեւ որ ատենը գայ հարկ է որ սպասէք։ Սէյթոն հազիւ թէ աս խօսքերը զրուցեց, Լինսի այնպէս ուժով ոտքով դրան զարկաւ որ դուռը հիմունքէն սասանեցաւ, եւ ստուգիւ երկրորդ ասոր նման հարուածի մը դուռը տեղի պիտ՚որ տար. ասոր վրայ թագուհին հրամայեց Սէյթոնին որ դուռը բանայ։ Լինսի կոմսն այնպէս կոպտութեամբ ներս մտաւ որ դուռը բանալու ատեն օրիորդը պատին հրեց եւ անոր գլուխը վիրաւորեց, եւ առանց անոր վայնասունին միտ դնելու մինչեւ խցին մէջ տեղն եկաւ եւ չորս դին նայելով երբոր մէկը չտեսաւ, ըսաւ, Մարիամ տիկինը դարձեալ աներեւոյթ եղած է, եւ միշտ պէտք է որ ազնուական ատենակալները, որոնք իրեն այցելութեան կու գան, դրան առջեւ կամ խցին մէջ սպասեցընէ։ Թող յիշէ որ հիմայ ինչ վիճակի մէջ է, ապա թէ ոչ միտքը կը բերենք....։

Քիչ մ՚ետքը թագուհին ննջելու խցէն ելաւ, եւ այնպիսի թագաւորական վայելչութեամբ որ կարծես թէ իր պալատին մէջ տէրութեանց դեսպանները կ՚ընդունի, անանկ որ Լինսի՝ որն որ Սկովտիայի մէջ գրեթէ ամենէն կոպիտը բայց միանգամայն իր ժամանակին ամենէն քաջն էր՝ չկրցաւ անոր հայեցուածքին դիմանալ եւ անոր առջեւ խոնարհեցաւ։ Կը

կարծեմ, ըսաւ Թագուհին, որ զձեզ քիչ մը սպասեցուցի, բայց թէպէտեւ բանտարկեալ եմ, ի վերայ այսր ամենայնի միշտ կնիկ եմ. թէպէտ պարզ ձեւ մըն է զորն որ արք դիւրաւ կրնան զանց առնուլ, եւ կ'առնուն, բայց կնոջ մը համար անհրաժեշտ հարկաւոր սեպած եմ որ իմ հագուստիս համար քանի մը րոպէ զոհեմ այցելութիւն մ'ընդունելու ժամանակ, մանաւանդ այսպիսի անակընկալ այցելութիւն մը։ Լինսի իր ժանգոտած զրահին վրայ հայեցուած մը նետելով ուզեց ինք զինքն արդարացնել արագ ճամբորդութիւնն ու ստիպող առաքելութիւնը պատրուակ բերելով, բայց Թագուհին անոր միտ չդնելով Մելուիլին դարձաւ եւ զրուցեց որ կարծեմ թէ առանձին չէինք՝ ուրիշ երրորդ անձն մ'ալ տեսայ նաւուն մէջ։ Այնպէս է, ըսաւ Մելուիլ, եւ Ռութուէն նոյն ժամանակը ձեռքը թղթեր բռնած սենեակը մտաւ։ Աս Ռութուէն երեսուն չորս տարուան մարդ մըն էր, պաղ երեսով, եւ զինուորական կեցուածքին հետ քաղաքագետի կերպարանք մ'ալ առած, եւ հօրը խիստ նման։ Մարիամ զինքն որ տեսաւ բովանդակ մարմնոյն վրայ, սարսուռ մը զգաց, ինչու որ ինքզինքը բաց ի Մելուիլէն այնպիսի մարդկան դիմացը տեսաւ, որոնք իրենց նպատակին հասնելու համար ամէն բռնական միջոց ի գործ դնելու պատրաստ էին։

Թագուհին աթոռի մը վրայ նստելով անոնց գալըստեան պատճառն հարցուց։ "Տիկին, ըսաւ Ռութուէն, սեղանին մօտենալով, յանուն գաղտնի ժողովքին եւ ազնուականաց հոս եկած ենք . . . ։ — Թողութիւն ըրէք, ըսաւ Մարիամ թէ որ զձեզ կ'ընդհատեմ, բայց ասի առջի անգամ է որ ասանկ իշխանութեան մը վրայ խօսք կը լսեմ, եւ չեմ յիշեր որ հոս գալէս յառաջ ասանկ իշխանութիւն մը գրած ըլլամ։ — Իրաւունք ունիք Տիկին, պատասխանեց Ռութուէն, ինչու որ ծանր պարագայից նայելով ազնուականք իրենք իրենցմէ ասանկ իշխանութիւն մը հաստատած են, եւ ես յանուն նոցա եկած եմ որ . . . ։ — Իզմէ այնչափ ժպրհութեան համար թո-

ղութիւն խնդրէք ինչպէս որ կը յուսամ, զրուցեց Մարիամ, եւ զիս աղաչէք որ նորէն գահն ելլեմ ուսկից որ Քարպերի Հիլ դաշտավայրին վրայ ձեր անհաւատարմութեամբը քիչ մ'ատեն զիս վար առիք։ Նոյն ատենը դուք հոն չէիք, բայց թէ որ չեմ սխալիր Լինսի կոմսը հոն էր եւ կրնայ յիշել որ ինչ թէութեամբ Քիրքալտի օֆ Կրէնճին ինքզինքս յանձնեցի։ — Այո՛, պատասխանեց Լինսի, բայց գիտեմ միանգամայն որ ինչ խոստում ըրած էիք դուք ձեր կողմանէ, խոստացած էիք ան վատահամբաւ եւ անպիտան Պոթուելի հետ չտեսնուելու։ — Ի՞նչ անկից ետեւ անոր հետ տեսնուեցա՞յ, հարցուց թագուհին։ — Չէ՛, բայց անոր թուղթ գրեցիք։ — Եւ ո՞ւր լսուած է որ ամուսին մը իր ամուսնոյն թուղթ գրելու արգիլուած ըլլայ, հարցուց Մարիամ։ — Թէ որ ամուսինը մատնիչ եւ մարդասպան է, պատասխանեց Լինսի, եւ կնիկը անոր մեղսակից ըլլալու քիչ մը կասկածի մէջ է, թէպէտ եւ իրօք չէ բայց գէթ դիտաւորութեամբ։

Տէր իմ, ըսաւ թագուհին, ան մարդը զորն որ դուք մարդասպան եւ մատնիչ կ'անուանէք, յանցաւոր կամ արդար ըլլալը չեմ գիտեր, բայց աս միայն գիտեմ որ հիմայ նոյն է ինչ որ նոյն ատենն էր, երբոր Սկովտիայի ազնուականաց ամենէն նշանաւոր անուններով ստորագրուած թուղթ մը ինծի բերաւ, որուն մէջ նոյն ազնուականք ինծի զինքը իբրեւ ամենէն յարմար ամուսին, եւ տէրութեան խաղաղութիւնը հաստատող կը յանձնէին։ Ան թուղթը դեռ քովս է, եւ աղէկ պահած եմ, տէր իմ, եւ թէ որ ստորագրութեանց աղէկ միտ դնելու ըլլամ անո՛նց անունները կը գտնեմ որոնք հիմայ ան ամուսնութիւնը յանցանք կը համարին։ Թէպէտեւ դժբախտութեամբ վերջէն իմացայ որ աս թուղթը պանդոկի սեղանի մը վրայ շինուած էր կէս օրուան սեղանը լմըննալէն ետեւ, կոտրտած շիշերու եւ դատարկացած բաժակներու մէջ. բայց որո՞ւն միտքէն կրնար անցնիլ որ անոնք որոնց ձեռքը տէրութեան գործքերը յանձնուած են, իրենց խորհրդեան ժամանակը գի-

նովութեան տանը ընտրեն, եւ իրենց ժողովարանը քաղքին ամենէն ստորին եւ ապականեալ մարդկան ժողովատեղին ընեն։ — Տիկին, ըսաւ Ռութուէն, պարապ բանի վրայ վիճաբանութիւն չընենք, եղածը եղած է, եւ հոս անոր համար չխրկուեցանք որ անցած գացած բաներուն վրայ դատաստան ընենք, այլ որպէս զի ապագային համար քանի մը որոշումներ հաստատենք։ Գաղտնի ժողովքէն կ'աղաչուիք որ աս թղթերուն ստորագրութիւն տաք, եւ մէջը բովանդակածներուն համեմատ վարուիք ինչու որ ասիկայ մէկհատիկ միջոցն է տէրութեան խաղաղութիւնը հաստատելու եւ ձեր մնացած կենաց հանգարտութիւնը ապահովցընելու։ — Ասոնք շատ զարմանալի խոստմունքներ են, ըսաւ թագուհին, անանկ զարմանալի են որ հաւատալիք չէգար, անոր համար կը բաղձայի որ զանոնք կարդաք որպէս զի համոզուիմ։

Ռութուէն ձեռքը բռնած թղթերէն մէկը բացաւ եւ կարդալու սկսաւ. "Տղայութեան հասակէն ի վեր Սկովտիայի թագը ժառանգելու եւ վեց տարիէ ի վեր թագաւորութիւնը կառավարելու կոչուած, ամէն ջանքն ըրինք զանոնք աղէկ վարելու. բայց այնչափ նեղութիւն եւ աշխատանք կրեցինք որ ոչ բաւական ազատ միտք եւ ոչ ալ հարկաւոր զօրութիւն մեր վրայ կը գտնենք տէրութեան բեռը յաւուհետեւ տանելու, եւ որովհետեւ աստուածային բարութիւնը հաճեցաւ մեզի որդի մը պարգեւելու, անոր համար կը բաղձանք մեր կենդանութեան ատեն տեսնել զինքը թագը գլուխ, որուն ծննդեան իրաւամբ կը վերաբերի։ Ասոր համար ի սէր նորա, ի շնորհս նորա ներկայ թղթովս կը հրաժարինք Սկովտիայի թագէն եւ կառավարութեան իրաւունքէն, կամենալով որ ինքն անմիջապէս գահն ելլէ, իբրեւ թէ մեր մահուամբն անոր հասած ըլլայ եւ ոչ եթէ մեր կամօք։ Եւ որպէսզի աս ներկայ մեր հրաժարումն ըստ բաւականի կատարեալ եւ ըստ բաւականի հրապարակական երեւոյթ մ'ունենայ, եւ որպէս զի մէկը չգտնուի եւ ըսէ որ անկից բան մը չլսած, մեր սիրելի խնամիներուն Ուիլեէմ Ռութուէն եւ Լինսի

Գիրէս ատենակալաց լիակատար իշխանութիւն կու տանք որ յանուն մեր, Սկովտիայի ազնուականներն եկեղեցական ու քաղաքացւոց վիճակները ժողվեն, որպէս զի Սկովտիայի թագին եւ կառավարութեան վրայ ունեցած մեր ամէն իրաւունքները հրապարակաւ եւ հանդիսապէս անոնց ձեռքը յանձնեն։ Լոշլըվէն դաստակերտը Յունիս . . . 1567„։

Թագուհին ամենայն հանդարտութեամբ մտիկ ըրաւ, եւ երբոր Ռութուէն լմնցուց, ըսաւ, Բոլոր ասի՞ է մեր հաւատարիմ հպատակած ուզածը։ Ստոյգը ըսելու համար ես աւելի դժուարին բանի մը կը սպասէի քան եթէ՛ թագս դեռ մէկ տարուան չեղած տղու մը գլուխը դնել եւ թագաւորական գաւազանս իլի մը փոխել. բայց անտարակոյս իբրեւ ճարտար պատգամաւոր քայլ առ քայլ յառաջ գալ կ'ուզէք եւ ձեր այցելութեան բուն գլխաւոր պատճառը մէկալ թղթի մէջ պիտի ըլլայ։ — Աս երկրորդ թղթին մէջ, կրկնեց Ռութուէն, Յակովբ Ստուարթ Մորրէ կոմսին մատաղ թագաւորին անչափահասութեան ատեն կառավար անուանիլը կը բովանդակէ։ Մարիամ երբ որ լսեց որ իր խորթ եղբայրը իր թշնամեաց հետ միանալով կառավարութեան ղեկն առած է, շատ վշտացաւ, ինչու որ բոլոր յոյսն անոր վրայ դրած էր, եւ Ռութուէնին ըսաւ, Ըսէք ան ժողովքին որ դուք զՄարիամ Ստուարթ իբրեւ բանտարկեալ, բայց միշտ իբրեւ Թագուհի գտաք, եւ գիտցած ըլլաք որ իշխանութեանս առջի գործքը պիտի ըլլայ ան ապըստամբ եւ մատնիչ ազնուականաց գլուխները կտրել տալ, որոնք որ աստանկ առաջարկութիւն մը ինծի ընելու ժպրհած են։ — Աստուծոյ սիրոյն համար Տիկին, մտածեցէք որ ո՛ւր էք եւ ինչ վիճակի մէջ էք։ — Ես չեմ մոռցեր որ ո՛ւր եմ, այլ թէ ինչ եմ. Թագուհի եմ, Տիրուհի եմ, օծեալ, եւ Աստուծմէ թագս առնելուս միայն անոր ձեռքը զանի յանձնելու պարտական եմ։ — Տիկին, ըսաւ Ռութուէն, ձեր ճարտարախօսութիւնը կը ճանչնանք եւ գիտենք որ գեղեցիկ ասացուածներու եւ ճարտար խօսքերու գաղտնիքն ունիք, եւ անոր համար հրա-

մանոցը միայն զրահակիրներ խրկուեցաւ եւ ոչ եթէ
ճարտարախօսներ որ քաղաքական, աստուածաբանա-
կան վիճաբանութիւններ ընեն, եւ իբրեւ վերջին
խօսք հրամանոցը կը հարցընենք որ արդեօք ձեր
կեանքն եւ ձեր պատիւն ապահովցընելով Սկով-
տիայի թագէն կը հրաժարի՞ք։ — Եւ դնենք թէ
հրաժարումս տամ, տեա՛րք եմ, ըսաւ թագուհին հեգ-
նելով, ինչ երաշխաւորութիւն կու տաք որ աս խոս-
տումն տուջի խոստումէն աւելի հաւատարմութեամբ
բռնէք։ — Մեր խօսքն եւ մեր պատիւը, Տիկին, ըս-
աւ Լինսի։ — Տեա՛րք իմ, ըսաւ Մարիամ, աս ե-
րաշխաւորութիւնն ինծի քիչ մը թեթեւ կ՚երեւայ,
ունի՞ք ուրիշ փոքր բան մ՚ալ որ վրան դնէք, որ
քիչ մը ծանրանայ, եւ չըլլայ թէ առջինին պէս թե-
թեւ հով մը առնու տանի։ — Ա՛լ բաւական է,
պոռաց Լինսի Ռութուէնին, որն որ բարկութենէն
շառագունեցաւ, ելլենք երթանք Էտինպուրկ, եւ
թողունք աս անզ... կնիկը, թող Աստուծմէ օրօ-
շուած գլխուն գալիքը վրան գայ։ Բայց Մելուիլ մէջը
մտնելով աղաչեց զիրենք որ քիչ մը սպասեն եւ
զինքն առանձին թագուհւոյն հետ թողուն։ Երբոր
առանձին եղան, թագուհին գանգատ ըրաւ Մելուի-
լին որ ինքն ալ ասանկ մարդկան հետ միաբաներ է
զինքը հալածելու համար։ Բայց Մելուիլ ինքզինքն
արդարացընելէն ետեւ իր գալուն պատճառն ուրիշ
բան չէ ըսաւ, բայց եթէ զինքն համոզցընել որ զի-
ջանի եւ անոնց հետ քաղցրութեամբ վարուի։ Սա-
կայն թագուհին կրկնեց, ըսելով, Կը կարծէ՞ք որ ես
անոնցմէ կը վախնամ, ինչ կրնան ինծի ընել, դա-
տաստա՛ն բանալ, ուզածս ալ ան է, ինչու որ անիկա
մէկ հատիկ միջոցն է զիս իմ վրաս դիզած ամբաս-
տանութիւններէն մաքրելու։ Ո՛հ գար ան օրը։ Գուցէ
քանի մը տկարութիւններ վրաս գտնեն, բայց ոչ
երբեք յանցանք, եւ չեմ կարծեր որ բոլոր Սկով-
տիայի մէջ անանկ ապականեալ եւ կաշառեալ դա-
տաւոր մը գտնուի որ զիս դատապարտելու յան-
դըգնի։ — Այսպէս է, ըսաւ Մելուիլ, իրաւունք
կ՚ունենայիք թէ որ իրերն ասանկ ընթացք մը առ-

նուին, բայց բաւական ապացոյցներ աչքին առջեւ ունինք որ այնպէս պիտի չըլլայ։ Յիշեցէք, Տարնլի, Ռիչչիոյ եւ ձեր երեք նախահարքը զորոնք բռնական մահուամբ վերցուցած են։ Յիշեցէք Տիկին որ հոս առանձին էք, առանց պաշտպանի, առանց բարեկամի միայն մէկ օրիորդ մը ձեզի ընկեր է։ Ոչ ոք ձեր ձայնին կու գայ, ոչ ոք ձեզի օգնութեան կը հասնի, մէկ մթին եւ փոթորկալից գիշեր մը աներեւոյթ կ՚ընեն զձեզ եւ ամէն բան կը լմըննայ, որո՞ւն հոգը պիտ՚որ ըլլայ, ով ձեզի թեր պիտ՚որ ելլէ, ձեր որդի՞ն, օրրոցի մէջ տղայ մը՝ որն որ չգիտեր որ մայրն ինչ է, Եղիսաբեթ, ձեր նախանձորդը, ձեր թշնամին, ո՛հ Տիկին, ան կնիկը ձեր մահուընէ զատ ուրիշ բան կրնա՞յ մի բաղձալ, որուն զօրութեամբ հաւատար եւ գեղեցկութեամբ գերազանց էք։ Գիտեմ որ մահուընէ չէք վախնար, անոր փորձը պատերազմի դաշտին վրայ բաւական ցըցուցիք, ընտիր Սթուարթեան դուստր մըն էք որ սրէն յայտնապէս չէք վախնար. բայց գիշերական դաշոյն մը, ծածուկ թոյն մը, անծանօթ մահ մը առանց բարեկամի առանց մարմնաւոր եւ հոգեւոր մխիթարութեան . . . եւ այնպիսի ժամանակ մը երբոր ձեր բարեկամները միաբանելու ելած են, եւ երդմնի եղած են զձեզ աս տեղէն ազատելու կամ ձեզի հետ մեկտեղ մեռնելու։ Ո՛հ Տիկին, գէթ իրենց համար ձեր կենաց խնայեցէք։ Եւ դարձեալ գիտցէք Տիկին, որ ամէն մարդ ձեր հիմակուան վիճակը գիտէ, ամէնն ալ գիտեն որ բանտարկեալ էք եւ սպառնալեաց տակ ինկած եւ ասոր համար ով կրնայ հաւատալ որ կամաւ ձեր հրաժարման ստորագրած ըլլաք։ Ոչ ոք։ Բայց թէ որ հաւատացող ալ ըլլայ, ահաւասիկ մենք երկուքը, ես ու աս մատաղ օրիորդը ձեզի եղած բռնութեան վկայ կ՚ըլլանք, եւ ես որն որ աս պատգամաւորութիւնն ուրիշ բանի համար առած չեմ բայց եթէ զձեզ սպառնացող բանտարկութենէ, մահուանէ եւ կամ անուանարկութենէ ազատելու։ Ասկից զատ, Տիկին, բնաւ Մելուիլ Թագուհւոյն ձեռքը թուղթ մը տալով, Հերրիս եւ Սէյթըն կոմ-

սից վրայ վստահութիւն ունեցէք որոնք քաջ եւ հաւատարիմ հպատակներ են։ Մարիամ Թուղթը կարդաց ասոր մէջը ազնուականներէն ոմանք կը յորդորէին զԹագուհին որ ամէն բանի հաւանութիւն տայ ինչ որ գաղտնի ժողովքը կը պահանջէ, եւ ամէն Թղթերու ստորագրէ, վստահացընելով զինքն որ երբոր ազատ կ'ըլլայ եւ անոնց դէմ բողոք կ'ընէ, ան հրաժարումը զօրութիւն չ'ունենար։

Ւրիչ մ'եւսքը Ռութուէն եւ Լինսի ներս մտնելով հարցուցին Թագուհւոյն որ ինչ որոշած է։ — Տեարք իմ, ըսաւ Մարիամ, պէտք է որ յանձնուիմ երբոր ինքզինքս չեմ կրնար պաշտպանել. Թէ որ լճին մէկալ կողմը միայն տասը ասպետ քովս ըլլային, ան ատեն այնչափ դիւրութեամբ ձեռքէս հաւանութիւնը չէիք առնուր, բայց հոս աս բերդիս մէջ, եւ կամ Թէ աս Լոշլըվէն բանտին մէջ բարձր պատուարներով եւ խորունկ ջրերով պաշարուած՝ ձեզմէ ստիպուած, չեմ կրնար իմ սրտիս ազդածին համեմատ գործել. ասոր համար վիճակիս համեմատ կը գործեմ. տուէք ան Թղթերը, ըսաւ Թագուհին ձեռքը գրիչ մ'առնելով, որ ստորագրեմ։

Տիկին, ըսաւ Ռութուէն Թղթերը Թագուհւոյն երկընցընելով, յայտնի բան է որ դուք ձեր կամաց ազատ տէր ըլլալով ազատութեամբ ալ կը ստորագրէք, եւ աս վիճակը որուն մէջ որ հիմայ կը գտնուիք ի շնորհս ձեր չգործածելու պատրուակ պիտի չառնուք։ Թագուհին արդէն ստորագրելու վրայ էր երբոր Ռութուէն աս խօսքերը զրուցեց, բայց հազիւ Թէ բերնէն ելաւ, Թագուհին գրիչը ձեռքէն նետելով վեհութեամբ մը ոտք ելաւ, եւ ըսաւ, Տէր իմ, Թէ որ կը սպասէք որ ես անձնական մղմամբ իմ Սթուարթեանց Թագէն հրաժարիմ զորն որ երեք դարէն ի վեր կը կրենք, մեծապէս կը սխալիք, եւ երեք միացեալ՝ Գաղղիայի, Սկովտիայի եւ Անգղիայի Թագաւորութեանց փոխարէն՝ որանցմէ առջինը իմս էր, երկրորդը իմս է եւ երրորդն իմս պիտի ըլլայ, ասանկ անարժան գործքի մը համար չէի ստորագրեր։ — Տիկին պոռաց անդիէն Լինսի Թագուհ-

ւոյն վրայ յարձակելով եւ անոր ձախ բազուկը իր
երկաթապատ ձեռօք այնպէս ճզմելով որ Թագուհին
ցաւէն պոռաց, պէտք է որ ստորագրէք, ըսաւ, ո-
րովհետեւ ձեզի ըսողն ես եմ։ — Այո՛, տէր իմ,
ըսաւ Թագուհին, ինքզինքը ժողվելով, ես ասանկ
բանի մը արդէն ձեզմէ կը սպասէի։ Ազատ կամօք կը
ստորագրեմ եւ ասոր ապացոյցը արդէն դուք տե-
սաք, եւ մէկէն թղթերն ստորագրեց։ Լինսի՛ ուզեց
քանի մը ջատագովութեան խօսքեր թոթովել բայց
Թագուհին ընդհատեց զինքն, ըսելով. Ես մանաւանդ
ձեզի շնորհակալութեան պարտական եմ, եւ միայն
ասոր վրայ կը ցաւիմ որ աս Թագաւորական բազուկս
ինչպէս որ հիմայ կարմիր եւ ճեղքուած է, մինչեւ
ան օրը չեմ կրնար այսպէս պահել որ Հոլիրուտ
պալատին պատուհանէն ժողովրդեանս կարող ըլլամ
ցուցընել։ Անկից զատ ուրիշ բան մը ինծմէ չէք ու-
զեր, ըսաւ Մարիամ, մնաք բարով եւ կամ թէ վեր-
ջէն կը տեսնուինք տեա՛րք իմ, եւ կը յուսամ որ
այլազգ պարագայից մէջ եւ ուրիշ տեղ մը ձեզի
հետ կը տեսնուիմ ուր աւելի ազատութեամբ զգած-
մունքներս՝ զորոնք որ դուք հիմայ գրգռած էք, յայ-
տնի ընեմ։ Աս ըսելով Մարիամ՝ Սէյթոնին հետ
սենեկէն ելաւ։ Իսկ պատգամաւորք իրենց կողմանէ
նոյնպէս դղեակէն հեռացան տժգոհութիւն ցուցը-
նելով որ խնդիրը ասանկ դարձուած մ'ունեցաւ։
Թէպէտ եւ ստորագրութիւնը իրենց ձեռքն էր որն
որ իրենց առաքման գլխաւոր նպատակն էր, ի վերայ
այսր ամենայնի տեսան որ այնպիսի միջոցներով խըն-
դիրը կատարուեցաւ որ քաղաքականութեան հասա-
րակ ճամբէն զարտուղի էր, եւ օր մը Թագուհին
բողոք ընելով կրնար հրաժարումը ոչինչ ընել. մա-
նաւանդ որ Մելուիլին ներկայութեամբ եղած էր՝ որն
որ Մարեմայ գլխաւոր կողմնակիցներէն մէկն էր։

Դաշնակից ազնուականք աս հրաժարման հաս-
տատութիւն մը տալու համար առանց յապաղելու
մանուկ իշխանը թագաւոր պսակել տուին։ Յուլիսի
29ին թագադրութեան հանդէսը կատարուեցաւ որուն
ներկայ էին միայն իրենց կողմնակիցները։ Անկից ե-

տեւ ամէն թագաւորական հրամանաց տակ Յակովբ Դ.ին անուամբ ստորագրութիւն կը տրուէր։

Տարեգրոց մէջ չկայ դէպք մ'որ այնչափ դիւրութեամբ եւ այնպիսի թեթեւ միջոցներով գլուխ հանուած ըլլայ ինչպէս աս դէպքս։ Գրեթէ տասն ամսուան միջոցին մէջ ազնուականաց մաս մ'որ այնչափ զօրաւոր եւ հարուստ չէր, եւ որն որ միայն երեք հազար հոգւոյ չափ բանակ մը կազմելու կարողութիւն ունէր, թագուհի մը բռնեց, բանտ դրաւ, ստիպեց թագէն հրաժարելու եւ առանց կաթիլ մ'արիւն թափելու անոր տասուիրեք ամսուան որդին գահը նստեցուց։

Աս ժամանակներս ապստամբաց կողմնակցութիւնը Մորրէ կոմսին Նորէն Սկովտիա դառնալով շատ զօրացաւ։ Նոյն կոմսը թագաւորին սպաննուելէն ետեւ Գաղղիա գացած էր, եւ քանի որ հոն էր՝ դաշնակցաց հետ միշտ թղթակցութիւն կ'ընէր, եւ անոնց աղաչանքով Նորէն Սկովտիա եկած էր որպէսզի մանուկ թագաւորին յանձանձիչ ըլլայ։ Մորրէ յառաջ քան յանձանձչութեան պաշտօնն առնուլը բանտարկեալ թագուհւոյն հետ տեսնուիլ ուզեց, որպէսզի զրուցուի թէ թագուհւոյն հետ տեսնուած ատեն, Մարիամ զինքը ստիպած ըլլայ աս պաշտօնը վրան առնուլ։ Մորրէ կոմսին գալստեան լուրը դըժբախտ թագուհւոյն սիրտը յուսոյ ճառագայթ մը ծագեց։ Մորրէ թագուհւոյն եղբայրն էր եւ իր ամէն ունեցած ստացուածները, պատիւներն եւ իշխանութիւնը թագուհւոյն բարութեան պարտական էր. Մարիամ անոր մատնութեանց եւ ապերախտութեանց ներելով տէրութեան մէջ զինքն ամենէն առաջին կոմսն ըրած էր, ուստի եւ զինքը տեսածին պէս վստահութեամբ դիմացը վազեց, բայց Մորրէ զինքը վերջի աստիճանի պաղութեամբ ընդունեցաւ։ Մարեմայ արցունքը պաղատանքներն անոր բերնէն մխիթարական խօսք մը չկրցան հանել տալ, անանկ որ բաժնուելու ատեն խեղճ թագուհին չկրցաւ իմանալ որ բարեկամի թէ թշնամւոյ տեղ դնէ։ Ընթրիքէն ետեւ երկրորդ անգամ հետը տեսնուելու ատեն

Մորրէ խիստ թերան բանեցուց, եւ անմխիթար քոյրը բիւր յանդիմանութիւններով լեցուց: Առանց բարկանալու չիկրնար մէկը գրել եւ կարդալ թէ որպիսի անամօթութեամբ Մորրէ կոմսը Տարնլիին մահուան պարագլուխներէն մէկը իր յուսահատ քոյրը դատապարտութեան եւ դահճի ձեռօք մեռնելու խօսքերով կը զարհուրեցընէր: Գիշերը ժամը մէկին քովէն բաժնուելու ատեն զինքն աւելի եւս սրտաբեկ ընելու համար զրուցեց Մարեմայ որ տեղէ մը յոյս չկայ եւ միայն Աստուծոյ ողորմութեան վրայ յոյսը դնէ: Երկրորդ օրն երրորդ անգամ տեսնուելուն Մորրէ ինքզինքը շատ փոփոխուած երեւցուց, Մարեմայ դժբախտութեան վրայ ցաւակցութիւն կը ցուցընէր, եւ զինքն անոր թշնամեաց վրէժխնդրութենէն ազատելու կամքն յայտնեց. Մարիամ որ բոլոր գիշերն անհանգստութեամբ ու վախով անցուցած էր, Մորրէ կոմսին ասանկ փոխուելուն վրայ ուրախացաւ եւ աչքն արցունքով լեցուած աղաչեց զինքը որ խնամակալութիւնը վրան առնու որպէսզի թէ իր եւ թէ որդւոյն կեանքը ազատէ: Մորրէ՝ այնչափ անգամ իր խեղճ քոյրը վախցընելէն եւ յուսահատցընելէն ետեւ աս մեղմ լեզուն անոր համար բանեցուց որպէսզի Մարիամ առջի անգամ ասոր վրայ խօսքը բանայ: Մորրէ իսկզբան յանձն չառնուլ ձեւացուց կարծես թէ կը քաշուէր աս ծանր պաշտօնէն, որուն այնչափ ատեն ետեւէն ինկած էր, մինչեւ որ Մարիամ զինքը երդմնեցուց որ յանձն առնու: Մորրէ անկից բաժնուելէն յառաջ խստիւ պատուիրեց իրեն որ մեծ զգուշութեամբ եւ խոհեմութեամբ վարուի, եւ ապսպրեց որ չըլլայ թէ փախչելու փորձ ընէ կամ թէ կառավարութեան արգելք դնէ, որովհետեւ ինքն ան ատեն չիկրնար զինքն ազատել իր հալածչաց ձեռքէն: Մորրէ աս կերպով ուզածին հասնելէն ետեւ հրապարակաւ ծանուցանել տուաւ որ յանձանձչութեան պաշտօնը ակամայ եւ միայն թագուհւոյն աղաչանքէն եւ հրամանէն ստիպուած յանձն առած է:

Ընթերցողը կը յիշէ որ դաշնաւոր ատենակալաց պատրուակեալ դիտաւորութիւններէն մէկն էր

զՄարիամ Պոթուելին ձեռքէն ազատել. բայց Թագուհին բռնեցին եւ բանտ դրին եւ քանի մը օրէն ետքը զինքը Թագաւորութենէն մերժեցին։ Այս աղաղակող անիրաւութիւնը պաշտպանելու համար յառաջ կը բերեն նոյն ատենակալք որ Մարեմայ իբրեւ Թագաւորութեան վերնագունի հնազանդելու եւ ծառայելու ան պայմանաւ յանձն առած էին, եթէ որ Պոթուելէն բաժնուէր եւ անոնց կողմը անցնէր եւ զինքը (զՊոթուէլ) որն որ Տարնլիին գլխաւոր մարդասպանն էր դատաստանի տակ ձգէր։ Բայց որովհետեւ Մարիամ, կ՚ըսեն, ասիկայ ընդունած չէ, անոր համար զինքը բանտ դրած են յուսալով որ առանձնութեան մէջ կը զգաստանայ եւ Պոթուելին վրայ ունեցած ապօրինաւոր սէրէն կը հրաժարի, բայց տեսնելով որ Թագուհւոյն յամառութիւնը երթալով կ՚աւելնայ եւ մանկահասակ իշխանին եւ ատենակալաց եւ կառավարութեան դէմ դաւաճանութիւններ կը նիւթէ, ցաւով հարկ համարեցան իրմէ Թագաւորական իշխանութիւնը առնուլ եւ իր որդւոյն ձեռքը տալ։

Բայց ասոնք բոլորն ալ դատարկ պատրուակներ էին. Մարիամ իսկզբան յանձն առած էր ատենակալաց դատաստանի տակ ինքզինքը ձգել եւ Մեթլէնտ կոմսին հրաման խրկած էր որ վիճակաց ժողովքը ժողվէ, որպէսզի թէ իր ամուսնութեան օրինաւորութեան եւ թէ արքայասպանաց վրայ քննութիւն ըլլայ, եւ ինչ որ անոնք որոշելու ըլլան, ինքզինք պատրաստ ցըցուց յանձն առնելու։ Այս բանաւոր առաջարկութեան միտք ունեցող մը ընդդիմութիւն չէր կրնար հանել, բայց իր հակառակորդք արդարութեան դէմ եւ անբնական պահանջում ըրած կ՚ըլլային եթէ զԹագուհին ստիպէին իր ամուսինը թողուլ, զորն որ նոյն ատենակալաց հաւանութեամբ առած էր, եւ ծնանելի զաւակը ապօրինաւոր համարիլ պարզ անոր համար որովհետեւ զինեալ կողմնակցութիւն մը այնպէս կ՚ուզէր։

Քանի մ՚ամիս ետքը դաւաճան ատենակալք դիմակը վար առնելու ժամանակ եկած համարեցան։

Digitized by Google

Original from
HARVARD UNIVERSITY

Արծաթէ տուփ մը՝ զորն որ Մարիամ իր առջի Փրանկիսկոս ամուսինէն ժառանգած էր, եւ զորն որ Մարիամ Պոթուելին տուած ըլլայ, Մորթըն կոմսին ձեռքն ինկաւ (20 Յունի. 1567)։ Եթէ որ Մորթընին հաւատանք նոյն տուփին մէջ թագուհւոյն շատ մը ձեռնագիր նամակներ գտնուած ըլլան, որոնցմէ թագուհւոյն յանցաւոր ըլլալը կը ցուցընէին։ Մորթըն աս երեւելի գիւտը ամէն դաշնաւորաց եւ Անգղիայի թագուհւոյն յայտնեց, բայց ասոր մանրամասն տեղեկութիւնները մինչեւ Դեկտեմբեր ամիսը ուշացուց, որ ժամանակ դաւաճանք որոշած էին որ զթագուհին ամբաստանեն ամուսնական անհաւատարմութեան, արքայասպանութեան եւ Պոթուելէն հրապուրուելու, եւ Տարնլիին մահուան հաւանութիւն տալուն համար, որպէսզի Պոթուելին հետ կարող ըլլայ ամուսնանալ։ Դաւաճաններն աս թղթերէն ցուցումներ կցկցելով զանազան ամբաստանութիւններ կազմեցին, զորն որ խորհրդանոցը քանի մը փոփոխութիւններ ընելով ընդունեցաւ (14 Դեկ.) նոյներուն վրայ ուրիշ յօդուած մ'ալ աւելցընելով, որուն զօրութեամբ Պոթուելին ստացուածները յարքունիս պիտի գրաւուէին, վրան յանցանք դնելով որ "ընդդէմ օրինաց զթագուհին իր իշխանուհին բռնեց, եւ բռնութեամբ հետն ամուսնանալու ստիպեց"։ — Կ'երեւայ որ խորհրդանոցն այնպէս ատելութեամբ շլացած էր որ աս յօդուածոց իրարու հետ ունեցած հակառակախօսութիւնը տեսնելու կարող չէր եղած։ Եթէ նոյն թղթերը վաւեր էին, որոնց վրայ որ դաւաճաններն իրենց բոլոր շէնքը շինած էին՝ ան ատեն թագուհին Տարնլիին մահուընէ յառաջ Պոթուելին հետ ապօրինաւոր հաղորդակցութիւն ունէր, եւ ան ատեն անոր առ երեսս յափափումը յառաջուընէ խօսուած էր։ Բայց խորհըրդանոցին մէջ նոյն իսկ Մարեմայ ամենադառն թշնամիներէ շինուած ամբաստանութեան յօդուածոց հակառակախօսութենէն յայտնի կը ցուցուի որ թագուհին իրօք յափափուած եւ Պոթուելին հետ բըռնութեամբ ամուսնանալու ստիպուած էր։ Եւ դար-

ձեւալ թէ ինչ բանի համար նոյն ազնուականք ապստամբ եղած էին, չէի՞ն հրատարակած որ զԹագուհին ազատել կ'ուզեն Պոլթուելին բռնութենէն: Ասոնք տեսնելով կրնանք դատաստան ընել որ նոյն թղթերը կամ շինծու եւ կամ խարդախուած էին: Այս թղթերուն վաւերականութեան վրայ քիչ մ'ետքը նորէն խօսելու առիթ պիտի ունենանք:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Մարեմայ կողմնակիցները զինքը բերդէն ազատելու համար զանազան փորձեր կ'ընեն, Թագուհին բանտէն կ'ազատի: Լանկսէյտի պատերազմը. Թագուհին կը յաղթուի եւ Անգղիա փախչելու կը ստիպուի:*

Թէպէտ եւ Մարեմայ ձեռքէն ամենայն իշխանութիւն յափշտակած էին, ի վերայ այսր ամենայնի զինքը խիստ բանտ դրին Տուկլաս տիկնոջ նախանձոտ աչաց տակ: Հոս տեղս Մարիամ ամենէն մոռցուած կ'երեւար, ազատութիւն գտնելու համար պարապ տեղ Մորրէ կոմսին եւ տէրութեան ժողովոյն զանազան առաջարկութիւններ կ'ընէր. բայց խստասիրտ Մորրէ եւ ժողովքը հաստատուն որոշած էին զՄարիամ բանտէն չհանել եւ ինչպէս որ ամենք կ'ըսեն միջոց կը փնտռէին անոր կենաց օրերը կարճեցընելու: Բայց Մարիամ դեռ ուրիշ ծածուկ բարեկամներ ունէր, որոնք իր երիտասարդական շնորհքը եւ քաղցր վարմունքը տեսնելով անոր դժբախտութեան ցաւակից կ'ըլլային եւ զինքն անիրաւ բանտարկութենէն ազատելու հնարքներ կը մտածէին. բայց Լոխլեվէն բերդին անմատոյց դիրքը՝ պահապանաց արթնութիւնն եւ չյաջողելուն վտանգին մեծութիւնը տեսնելով փորձ մը փորձելու չյանդգներցան: Գէորգ Տուկլաս Մորրէ կոմսին եղբայրն անձամբ Թագուհւոյն քաշած վշտերը տեսնելով միտքը դրաւ նոյն իսկ իր սեպհական կենաց վտանգաւը Թագուհին ազատել: Այս վախճանիս համար Մարեմայ հաւատարիմ ծառային հետ որն որ բերդին մօտ գեղ մը կը կենար, խօսք մէկ ըրաւ: Իրենց մէջ որոշածին

համաձայն Տուկլաս Թագուհւոյն սենեակը լուացարար կնիկ մը խոթեց եւ անոր բերած զգեստները Թագուհին հագնելով եւ գլխուն վրայ կապոց մը լուացք դնելով գեղացի աղջկան հագուստով դղեկէն դուրս ելաւ, եւ Նաւակ մտաւ (1568, 25 Մարտ)։ Գրեթէ լճին մէկալ կողմը հասած էին, երբոր Մարիամ իր քողը Թիակաւարին անյաջողակութենէն պաշտպանելու համար՝ առանց հետեւութիւնը մտածելու ձեռքը վերցուց որ քողն ամփոփէ, մէկէն Նաւաւարներէն մէկը ձայն հանեց եւ ըսաւ որ "ասի լուացարար կնոջ ձեռք չ'երեւար"։ Մարիամ ճանչցուելով նորէն բերդ տարուեցաւ։

Գէորգ Տուկլաս իր առջի չյաջողած փորձէն չվհատեցաւ, եւ Թագուհին ազատելու ուրիշ հնարք մը մտածեց, որն որ առջինէն աւելի ապահով կ'երեւնար։ — Ըստ սովորութեան Թագուհւոյն սեղանի առեն Ուիլեէմ Տուկլաս իբրեւ բանատապետ կերակրոց եւ ըմպելեաց համը կը նայէր. բայց երկայն գործքի մը համար Էտինպուրկ երթալով աս պաշտօնը տիկին Տուկլասին մնաց որն որ իր սովորական կանացի նախանձայուզութեամբ քանի մը օր Թագուհին չարչարելէն ետեւ, երբոր տեսաւ որ Մարիամ սեղանի առեն չէր ուզեր երեւնալ, ստիպուեցաւ աս պաշտօնն իր երկրորդ որդւոյն Գէորգ Տուկլասին յանձնել։ Գէորգ որ ուրիշ առեն Թագուհւոյն հետ տեսնուելու առիթ չէր կրնար ունենալ, անմիջապէս աս՝ առիթը գործածել ուզեց Թագուհւոյն իմացընելու ան նշանները, որոնցմով որ կրնար խօսիլ ցամաք երկրի վրայ եղող բարեկամաց հետ։ "Աս պատուհանէն, տեսէք, ըսաւ Քինրոս բլրակին վրայի տնակը. ամէն իրիկուն հոն լոյս մը կը տեսնէք, եւ աս լոյսը ձեզի իբրեւ փարոս մը պիտի ծառայէ որ յուսաք։ Թէ որ կը բաղձաք ձեր բարեկամաց հարցընել որ ազատութեան պատրաստութիւններն որչափ յառաջ գացած են, ան առեն ձեր կանթեղը պատուհանին մերձեցուցէք, եւ Քինրոսին լոյսը անմիջապէս աներեւոյթ կ'ըլլայ. ձեր ձեռքը սրտի վրայ դրէք եւ երբոր Քինրոսի լոյսը չծագած քան հա-

րուած կը համրէք, ըսել է որ դեռ բան մը չէ պատրաստուած, թէ որ տասը սրտի հարուածէն ետեւ լոյսը կ'երեւայ, ան ատեն ըսել է որ ութը օրէն ետեւ ձեր ազատութեան ժամը որոշուած է, իսկ թէ որ միայն հինգ, ան ատեն նշան է որ երկրորդ օրն է, բայց երբոր բնաւ չ'երեւնար ան ատեն կը նշանակէ որ նոյն գիշերը պիտի ազատիք։ Ասկէց զատ, ըսաւ Տուկլաս Թագուհւոյն թուղթ մը երկընցընելով, հոս ամենայն ինչ ճշդիւ նշանակուած է որպէսզի չմոռնաք եւ կամ սխալմունք մը չպատահի,,։ Ասոնք յանձնելէն ետեւ, պէտք է որ հեռանամ, ըսաւ, ինչու որ հոս երկայն կենալս կրնայ կասկածի առիթ տալ եւ աս կասկածը հրամանոցը շատ վնաս կրնայ բերել. հոս հրամանոցն ամէնն ալ թշնամութեամբ են բաց ինձմէ եւ պատանեկէն որ ինծի կամակից եւ միաբան է։ Մնաք բարով, Տիկին, չեմ գիտեր երբ եւ ուր կը տեսնուինք, Քինրոսի լոյսը զգուշութեամբ հարցուցէք, եւ քանի որ ան լոյսը պիտի լուսաւորէ, ես ալ կ'ապրիմ, եւ որչափ որ շունչս վրաս է ձեզի ծառայելու միշտ պատրաստ պիտի ըլլամ։ Աս ըսելով Գէորգ Թագուհւոյն առջեւ խոնարհեցաւ եւ սենեկէն հեռացաւ Մարիամ Սթուարթ ազատութեան յուսով եւ ուրախութեամբ լեցուած ձգելով։

Նոյն իրիկունը Թագուհին Քինրոսի տնակին լոյսը տեսաւ, եւ ինքզինքը համոզցընելու համար որ ան լոյսն իրեն համար է, որոշուած փորձն ըրաւ. տնակին լոյսն անմիջապէս աներեւոյթ եղաւ եւ քսան սրտի հարուածէն ետեւ նորէն երեւցաւ. տեսաւ Թագուհին որ Տուկլասին ըսածն ստոյգ էր, եւ թէ հաւատարիմ եւ անձնանուէր բարեկամք ընկճեալ Թագուհւոյն վրայ կը հսկեն։

Ուիլեէմ Տուկլաս Լոշլըվէն բերդը դառնալով, Թագուհւոյն քով իր սովորական պաշտօնը նորէն առաւ։ Մարիամ իր կողմանէ կասկածի առիթ չտալու համար զինքն ըստ սովորութեան ընդունեցաւ եւ սանկով ամիս մ'անցաւ առանց բան մը պատահելու որ պատմուելու արժանի ըլլայ։ Ամէն իրիկուն

Թագուհին իր աստղին ծագիլը կը տեսնէր, զորն որ հիմայ ալ երկնից վրայ չէր փնտռեր այլ երկրի վրայ, ամէն իրիկուն հաւատարմութեամբ եւ ճշդիւ նոյն աստղն իրեն կը պատասխանէր որ բան մը դեռ չէ որոշուած։ Վերջապէս ամսէ մ'ետեւ լոյսը լեզուն փոխեց եւ սրտին տասը հարուածէն ետեւ երեւցաւ։ Մարիամ ուրախութենէն աղաղակ մը հանեց որուն վրայ Մարիամ Սէյթոն հանելով զԹագուհին գունատ եւ դողդոջուն գտաւ անանկ որ հազիւ ոտքի վրայ կրնար կենալ։ Առած լուրին չէր կրնար հաւատալ եւ կը վախնար որ սխալած ըլլայ։ Սէյթոն փորձը նորոգեց. լոյսն իմացաւ որ իրմէ հաստատութիւն կը խնդրեն տուած լուրին վրայ, տասը հարուածէն ետեւ նորէն երեւցաւ։ Ըստ այսմ ազատութիւնը մօտ էր, եւ երկու բանտարկեալք ուրախութենէն գիշերը պատուհանին քով անցուցին։ — Երկրորդ օրը Թագուհին եւ Սէյթոն խցին մէջ նստած ասղնագործի մը կը զբաղէին, քարի կտոր մը պատուհանին ապակին կոտրելով խուցն ինկաւ. Թագուհին իսկզբան կարծեց որ ըստ պատահման եւ կամ զինքը նախատելու համար մէկը նետած ըլլայ, բայց Սէյթոն դիտեց որ քարին վրայ թուղթ մը փաթթուած էր որուն մէջը հետեւեալները գրուած էին։ "Քանի մը օրուան մէջ ամենայն ինչ պատրաստ պիտի ըլլայ եւ Թագուհւոյն ազատութիւնը անյապաղ պիտի կատարուի թէ որ կէտ առ կէտ հետեւեալ կարգաւորութիւնները կատարուին։ — Վաղը՝ օրիորդ Սէյթոն առանձին պարտէզը իջնալու է, եւ պարտեզի դրան ետեւ եղող ուռույ ծառին խոռոչին մէջ խարտոց եւ չուանէ սանդուղ մը կը գտնէ. խարտոցը՝ պատուհանին վանդակին գաւազանը խարտոցելու եւ սանդուղը՝ խցէն բակին մէջ իջնալու համար է։ — Թագուհին ամէն իրիկուն լոյսը հարցընելու է, եւ լոյսն ազատութեան որոշուած օրը կ'իմացընէ, ինչու որ հիմայ չիկրնար զրուցուիլ, որովհետեւ պահպանութիւն ընող զինուորաց կարգէն կախում ունի, որոնցմէ մէկը աս գործքիս համար կաշառուած է։ — Ազատութեան որոշուած օրը տասներորդ ժամէն ե-

 

տեւ Թագուհին պատրաստ կենալու է, եւ երբոր երեք անգամ բուի ձայն լսելու ըլլայ, պատուհանին խարտոցած գաւազանը տեղէն առնելու է, եւ սանդուղը հաստատելէն եւ չափելէն ետեւ որ արդեօք մինչեւ գետին հասած է, մէկ մարդ մը սանդուղէն վեր պիտի ելլէ փորձելու համար որ արդեօք սանդուղը բաւական զօրաւոր է, եւ աս զգուշութիւնն ընելէն ետեւ Թագուհւոյն վար իջնալու առեն պիտի օգնէ։ — Անկից ետեւ Աստուծոյ օգնականութեամբ ամենայն ինչ կը յաջողի,,։ — Թագուհին պատուհանը վազեց, բայց ոչ զոք տեսաւ, Նամակը երկրորդ անգամ կարդաց, բայց մէջի գրուածն այնպէս յայտնի գրուած էր որ տարակոյս չէր վերցըներ, եւ միանգամայն ճրագի լուսին տուած լոյսն հետ շատ միաբան էր։ Բոլոր օրը Թագուհին արտաքոյ կարգի այլայլութեամբ անցուց, շարունակ աչքը լճին եւ Քինրոսի տնակին վրայ սեւեռելով. բայց տնակին փեղկերը գոցուած էին, եւ լճին վրայ ուրիշ մէկը չտեսաւ բայց եթէ նաւակով ձկնորսութիւն ընող պատանեակը։ Իրիկունը դարձեալ լոյսն հարցուց, որն որ տասը սրտի հարուածէն ետեւ նորէն երեւցաւ. ըստ այսմ իրերը դեռ նոյն վիճակի մէջն էին։ Երկրորդ օրը Սէյթոն պարտէզն ինջաւ եւ ետեւէն մէկը եկող չըլլալով ուռւոյ խոռոջացեալ բունին մէջ խարտոցն եւ չուանէ սանդուղը դտաւ եւ ուրախութեամբ մը Թագուհւոյն ցըցուց անոր բարեկամաց գործունէութեան ապացոյցները։ Թագուհին եւ Սէյթոն անմիջապէս իրենց պատրաստութիւնները տեսնել սկսաւ. Սէյթոն սկսաւ երկաթէ գաւազանը խարտոցելու, իսկ Մարիամ իր մնացած սակաւաթիւ գոհարները կարգի դնելու եւ մէկ տուփի մը մէջ տեղաւորելու։ Իրիկունը Թագուհին որոշեալ նշանն հազիւ թէ տուաւ այսինքն կանթեղը հազիւ թէ պատուհանին մօտեցուց, անդիէն լոյսն աներեւոյթ եղաւ, եւ Թագուհին հազիւ թէ հինգ սրտի հարուած համրեց եւ լոյսը նորէն աստղի պէս ծագեցաւ. Թագուհին փորձը կրկնեց, եւ լոյսը նոյն պատասխանը տալով իմացուեցաւ որ ազատութեան վայրկեանը երկրորդ օրուան.

համար որոշուած էր։ Թագուհին բոլոր նոյն գիշերը չկրցաւ քնանալ եւ աղօթքով անցուց։

Երեւուն լոյսը ծագածին պէս Մարիամ պատուհանը վազեց. Սէյթոն արդէն վանդակին գաւազանը խարտոցած էր եւ բարակ թելով մը միայն կպած էր, եւ հարուած մը տալով տեղի կու տար. չուանէ սանդուղը պատրաստ էր եւ թագուհւոյն գոհարները տուփի մէջ տեղաւորուած էին։ Մարիամ ամբողջ օրն ընելու բան մը չունենալով օրն իրեն դար մը երեւցաւ։ — Նախաճաշկի եւ կէս օրուան կերակրոյ ժամանակը ըստ սովորութեան Ուիլեէմ Տուկլաս իր ծառայութիւններն ըրաւ։ Մարիամ հազիւ անոր երեսը հայեցուած մը նետելու յանդգնեցաւ, կը վախնար որ իր ամէն շարժմունքը զինքը կրնան մատնել, բայց Ուիլեէմ թագուհւոյն խռովութենէն բան մը չկրցաւ իմանալ։ Իրիկուն եղաւ, երկինքն որ բոլոր օրը կապուտակ վերարկուաւ մը ծածկուած էր, մթնցաւ՝ եւ խոշոր ամպեր որոնք արեւելքէն դէպ ի արեւմուտք իրար կը հալածէին երկնից աստղները ծածկեցին, միայն լոյս մը Քինրոսի տնակէն խոր մթութեան մէջ կը շողար։ Թագուհին փորձելու համար որ արդեօք որոշուած ազատութեան յատակագիծը դեռ կը տեւէ՞, իր լոյսը պատուհանին մօտեցուց. տնակին լոյսն անմիջապէս աներեւոյթ եղաւ եւ մէյ մ՚ալ չերեւնալով ամէնայն ինչ խոր մթութեան մէջ մնաց։ Ըստ այսմ որոշումը հաստատուն էր եւ ազատութիւնը նոյն իրիկուան համար որոշուած։ Թագուհին իր կողմանէ կանթեղը մարեց որպէսզի կարծուի որ քուն մտած է, իսկ Սէյթոն գաւազանին մէկալ մասն ալ խարտոցեց. ասկից ետեւ երկուքն ալ հանդարտ կեցան, եւ բերդին մէջ եղած պէսպէս աղմուկին ականջ դրին, որն որ գիշերուան յառաջանալովը կը պակսէր մինչեւ որ բոլորովին դադրեցաւ։ Ժամը տասնին պահապանները ըստ սովորութեան փոխուեցան, եւ անկից ետեւ ամենայն ինչ խոր լռութեան մէջ մտաւ։ Քանի մը րոպէէն ետեւ երեք անգամ բուի ձայն լսուեցաւ. ասիկայ նշանաբանն էր։ Երկուքն ալ չուանէ սանդուղը վանդակին

գաւազաններուն վրայ հաստատելով վար իջեցուցին, եւ անմիջապէս իմացան որ սանդուղը ձգտուելու սկսաւ, պատուհանէն ծռեցան, բայց գիշերն անանկ մութ էր որ եւ ոչ բան մը կրցան նշմարել մինչեւ որ մէկը սանդուղէն վեր ելլելով պատուհանին մօտեցաւ, եւ ճանչցան որ եկողը Գէորգ Տուկլաս է։ Տիկին, ըսաւ Գէորգ, ամենայն ինչ պատրաստ է. Թովմաս Ուարտըն դրան առջեւ կեցած է եւ մեզի բանալու պատրաստ է, նաւակը լճին մէջ մեզի կը սպասէ, եւ ձեր բարեկամք եզերքին անդիի կողմն են, երթանք ժամանակ չկորսնցընենք։ Մարիամ աս յանկարծական յուսէն այլայլած լեզուն կապուեցաւ, դողալ սկսաւ եւ Սէյթոնին վրայ կռթընելով խորունկ հառաչանք մը հանեց։ — Տիկին, ըսաւ օրիորդն որն որ Թագուհին մարելու մօտ տեսաւ, Սուրբ Աստուածածինն ու սուրբերն օգնութեան կանչեցէք։ — Տիկին, կրկնեց Գէորգ, Սկովտիայի հարիւր թագաւորները յիշեցէք որոնցմէ որ սերած էք անոնց ոգիները ձեզի օգնական ըլլան։ — Հոս եմ ըսաւ Թագուհին, պատրաստ եմ, քանի մը վայրկենի մէջ զիս զօրացած կը տեսնէք ինչպէս որ սովորեալ եմ. առջի այլայլութեանս չկրցայ յաղթել. յառաջ երթանք, պատրաստ եմ։ Գէորգ անմիջապէս պատուհանին վրայ ելաւ, եւ հազիւ թէ ոտքը սանդուղին վրայ դրաւ, անդիէն աշտարակէն ձայն մ'ելաւ, Ո՞վ է։ Անիծեա՜լ ըլլաս պոռաց Գէորգ ցած ձայնիւ մը, մատնուեցա՜նք։ Նոյն ձայնը երկրորդ եւ երրորդ անգամ աւելի սպառնալեօք լսուեցաւ, եւ քիչ մ'ետքը լոյս մը ծագեցաւ եւ հրացանի ձայն մ'ելաւ, կապարէ գնդակ մը սուլելով պատուհանէն ներս մտաւ ու խուցին մէջ գամուեցաւ։ Գէորգ վախնալով որ Թագուհւոյն վտանգ մը հասած է նորէն սենեակը մտաւ, նոյն րոպէն սենեկին դուռը շառաչմամբ բացուեցաւ եւ Ուիլեէմ եւ Տիկին Տուկլաս ներս մտան, պահապաններով եւ սպասաւորներով որոնք ձեռքը ջահեր բռնած էին։ Ջահերուն լոյսը սենեկին մէջ տարածուելով Թագուհին եւ Սէյթոն իրարու փաթթուած, Գէորգ երեսը գոյնը նետած բայց հաս-

 

տատանուն եւ ձեռքը սուր բռնած պաշտպանութեան դիրքի մէջ՝ տեսնուեցան։ Վայրկեան մը զարհուրելի լռութիւն մը տիրեց, որուն ատեն աս զարմանալի թէատրոնին հանդիսատեսք իրարու միայն կը նայէին հանդարտութեամբ եւ լռութեամբ։ Վերջապէս Ուիլեէմ Ցուկլաս իր մօրը դառնալով, արդ մայր իմ, ըսաւ, յառաջագոյն չէի ըսած ձեզի որ Գէորգ աս Մոլարացի կնոջ օգնականաց միջնորդն է։ Զուզեցիք իմ խօսքերուս հաւատալ, արդ ձեր աչքովը տեսէք։ — Գէորգ, մռնչեց Ցիկլին, թեւերը անոր երկընցընելով, կը լսես քու եղբայրդ ինչ կ'ըսէ, որպիսի՞ կասկած քու պատուոյդ վրայ կեցած է, ստոյգ է՞ որ աս կնոջմէ մոլորեցար, բառ մը միայն ըսէ որդեակ իմ, մէկ հատիկ խօսք մը միայն ըսէ որ Ցուկլաս մը իր պարտքերը ոչ երբեք կը մոռնայ, ես Ցուկլաս եմ։ — Ցիկլին, ըսաւ Գէորգ, մօրը առջեւ խոնարհելով, եթէ որ Ցուկլասեանք իրենց սեպհական տիրապետին դէմ զէնք կ'առնուն, ան ատեն իրենց պարտքերը կոտրած կ'ըլլան, եւ ոչ եթէ ան ատեն երբոր աննենգ հաւատարմութեամբ իրեն դըժբախտութեան ատեն զինքը կը պաշտպանեն։ Ասոր համար, Մայր իմ, ես նախանձու արժանի եմ եւ անիկայ, մատով եղբայրը ցուցընելով, մատնիչ է եւ Ցուկլասեանց արիւնը ուրացող։ — Պաշտպանէ ինքզինքդ, պոռաց Ուիլեէմ սուրը հանելով եւ եղբօր վրայ յարձակելով, որն որ սուրը դիմացը բռնած պաշտպանողական դիրք առաւ։ — Զէնքերը վա՛ր, ըսաւ Թագուհին երկու պատերազմողաց մէջ այնպիսի վեհութեամբ մը մտնելով որ յակամայ կամս եւ քաշուելու ստիպուեցան. զէնքերը վա՛ր ես ձեզի կը հրամայեմ։ — Բռնեցէք զինքը պոռաց տիկին Ցուկլաս, բռնեցէք եւ բերդին ամենէն խորունկ ծակը նետեցէք մինչեւ որ Սկովտիայի կառավարը վրաս որոշում մ'ընէ։ — Գէորգ ըսաւ Թագուհին, պահապանաց եւ զինուորաց յապաղումը տեսնելով որ զԳէորգ բռնելու չէին յանդգնիր, փախէք, ձեր փախուստն իմ ազատութեանս յոյսն է։ Գէորգ դէպ ի ծառաներն եւ զինուորները դառնալով որոնք տիկին

եւ Ուիլեէմ Տուկսալէն ստիպուելով զինքը բռնելու երես կ'ընէին, պոռաց, տեղ բացէք կրտսեր Տուկլասին, եւ երկու վազք ընելով սանդուղին գլուխն հասաւ ու մէկ զինուոր մը զգետնեց որն որ իրեն արգելք ըլլալու կ'աշխատէր։ — Կրակ տուէք, պոռաց Ուիլեէմ, կրակ տուէք մատնիչին վրայ։ Ասոր վրայ քանի մը հրացան պարպուեցան, բայց չէ թէ զԳէորգ մեռցընելու որչափ որ Ուիլեէմին հրամանը կատարելու համար, բայց փախստականը արդէն լճին մէջն էր։ — Ո՛հ, ըսաւ տիկին Տուկլաս, մեր տան հին պատիւը ոտքի տակ առնուեցաւ, արատեցաւ մեր փառքը, մատնիչ մը մեր մէջէն ելլելով, ամէնքս իբրեւ մատնիչ պիտի կարծուինք։ Տիկին, ըսաւ Թագուհին, դէպ ի Տուկլաս տիկին երթալով, աս գիշերը երկրորդ անգամ իմ յոյսերս ի դերեւ հանեցիք, թագս գլխէս յափշտակեցիք զոր նորէն առնելու վրայ էի, արդէն կէս մը բացուած բանտին դռները ազատութեան բաղձացող բանտարկելոյն առջեւ նորէն գոցեցիք, ի վերայ այսր ամենայնի, Տիկին հաւատացէք իմ թագաւորական խօսքիս, աս րոպէիս մէջ ձեզի վշտակից կ'ըլլամ, եւ զձեզ մխիթարելու կը ջանայի։ — Մէկդի գնա խաբեբայ օձ, պոռաց տիկին Տուկլաս, զարհուրանօք ետ քաշուելով, մէկ դի կորսուէ Յուդա, քու համբուրէդ կը վախնամ ինչու որ թունալից խածուած մըն է։ — Տիկին, ըսաւ Թագուհին, աս րոպէի մէջ ինչ որ ինծի ըսելու ըլլաք չիկրնար զիս վշտացընել, ինչու որ աս գիշերը ձեր որդւոյն շատ շնորհակալութեան պարտաւոր եմ, եւ մօր մը նախատական խօսքերն որչափ որ կոպիտ եւ անարժան ալ ըլլան չեն կրնար զիս վշտացընել. աս ըսելով Թագուհին իր ներքին սենեակը քաշուեցաւ եւ դուռը կղպեց։

Տիկին Տուկլաս Թագուհւոյն վերջին խօսքէն յաղթահարած իր խուցը քաշուեցաւ, իսկ Ուիլեէմ իր հսկողութիւնը կրկնապատկելով, պահապանները աւելցուց, եւ նաւակաց քով նոր պահանորդ դնել տուաւ։ Թագուհին երբոր տեսաւ որ՝ դղեակին մէջ հանդարտութիւն տիրեց, Սէյթոն օրիորդին վրայ յի-

նած Նորէն պատուհանին քով մօտեցաւ, եւ հազիւ թէ աչքը տնակին վրայ դարձուց, տեսաւ որ լոյսը ծագեր է. ուրախութեան աղաղակ մը հանելով ձեռքերը երկինք վերցուց: Բլրակին լոյսը նորէն վառուած էր եւ լուսատու աշտարակը նորէն փոթորկալից ծովուն մէջ իր շողն արձակած էր: Թագուհին անկից աւելի ուրիշ բան չէր կրնար բաղձալ: Իմացաւ որ զինքը ազատելու չյաջողած փորձը թշնամեաց հսկողութիւնը կրկնապատկեց եւ իր ազատութեան յոյսը միայն անորոշ ժամանակ մը յապաղեց: Բայց լոյսը նորէն երեւնալով, տեսաւ որ իր կողմնակիցք իրեն ծանոյց կու տային որ բոլոր յոյսը դեռ կորսուած չէ, եւ միանգամայն ուրախութեամբ թագուհին դիտեց որ Գէորգ Տուկլաս իր հաւատարիմ ազատիչն առանց դժբախտութեան ցամաք հասած է: —

Ամէն ճգնաժամերէն ետեւ միշտ հանդարտութեան վայրկեան մը կը տիրէ, որուն մէջ բնութիւնը նոր զօրութիւններ կը ժողվէ պատահելու նոր դժուարութեանց հակառակ կենալու համար: Օր մը յառաջ երբոր թագուհին կը յուսար որ նոյն իրիկուն իր ազատութիւնը պիտի գտնէ, անտանելի չարչարանք մը կը համարէր թէ որ նոյն բանտին մէջ դեռ տասնուհինգ օր կենալու ստիպուած ըլլար, իսկ հիմայ վերը յիշած հանդիսութենէն քանի մը ժամ ետքը երբ որ իր յոյսերը յանկարծական հարուածով մը ի դերեւ ելան, յետագայ փախստեան յոյսն որուն ոչ պարագաները եւ ոչ ժամանակն որոշուած էր, իրեն մեծ մխիթարութիւն պատճառեց: —

Երկրորդ օրն երբոր թագուհին սենեկին մէջն էր՝ բակին մէջէն նետուած քար մը թագուհւոյն առջեւ ինկաւ: Ինչպէս որ առջի անգամ՝ քարը թղթի մը մէջ փաթթուած էր որուն մէջ հետեւեալ նամակը գրուած էր “Ինծի հրամայեցիք որ ապրիմ, եւ ես հնազանդեցայ, շնորհակալ եմ ձեզի որ ասով ի վիճակի կ'ըլլամ հրամանոցը համար իմ օրերս կշիռքի մէջ դնելու: Բայց ո՛հ, մեր փորձին դժբախտ ելքը՝ զձեզ ազատելու համար յարմար ժամանակը շատ

երկընցուց։ Հեմիլթըն, Հերիս, Արճէյլ, Սէյթըն եւ ուրիշ դաշնաւորք ստիպուեցան իրենց զօրքը ցրուել, զորոնք զանազան պատրուակներով Քինրոսի կողմերը ժողված էին. Նոյն իսկ իրենք ալ իրենց դղեակները քաշուեցան, ես միայն մնացի որ ոչ տափ մը երկիր եւ ոչ ալ հպատակ ունիմ։ Ասոր համար հրամանոցը որոշ բան մ'ըսել կամ ժամանակ որոշել չեմ կրնար, միայն կրնամ զձեզ ապահովցընել որ գիշեր ցորեկ ձեզի համար արթուն եմ եւ ասոր ապացոյցն ալ նամակս ձեզի ըլլայ. աս առթով կը ծանուցանեմ հրամանոցը որ Լոշլըվէն բերդին մէջ դեռ բարեկամ մ'ունիք եւ աս բարեկամը թէպէտ եւ դեռ հասակաւ տղայ է, բայց այրական սիրտ մ'ունի։ Անոնց ամենուն կրնաք վստահանալ որոնք որ ձեզի մօտենալով իբրեւ նշանաբան հետեւեալ ոտանաւորը կ'ըսեն, որն որ մեր ազգատոհմին պատուոյն համար շինուած է, այսինքն "Ցուկլամս, Ցուկլամս, սիրուն եւ հաւատարիմ,,։ —

Շաբաթներ անցան, ետքը ամիսներն ալ. աշուն եկաւ, եւ բանտարկեալ թագուհին տեսաւ որ ծառոց տերեւները թառամեցան ու թօթափեցան, ձմեռը կը մօտենար, Պէն Լոմընտի սարերուն վրայ առջի ձեան փունջեր ինկան, եւ հետզհետէ մինչեւ դաշտավայրն ալ տարածեցաւ, եւ վերջապէս թանձր սպիտակ օթոցով մը շրջակայ տեղերը ծածկեց։ Լճին ջուրը սառեցաւ անանկ որ եթէ թագուհին դղեկին պարսպին մէկալ կողմն ըլլար ոտքով ցամաք կրնար անցնիլ։ Աս ժամանակներս Մարիամ ամէն իրիկուն մխիթարիչ լոյսը տեսնելով, հանդարտութեամբ եւ ապաւինութեամբ օրերը կ'անցընէր, եւ երբեմն երբեմն իր առջի զուարթութեան վայրկեանները կը գտնէր։ Վերջապէս ձիւնն աներեւոյթ եղաւ, սառոյցը հալեցաւ, բնութիւնը կամաց կամաց կեանք եւ կենդանութիւն առաւ եւ Մարիամ իր վանդակապատ պատուհանէն գարնան զուարթ վերստին ծնունդը կը տեսնէր առանց անոր երջանիկ փոփոխման մասնակից ըլլալու։

Թագուհին բերդէն դուրս եղած բաներուն

վրայ բնաւ տեղեկութիւն չէր կրնար առնել, իսկ բերդին մէջ եղածներէն միայն անոնք կ՚իմանար զորոնք որ իր աչօք կրնար տեսնել. իր ազատութեան բովանդակ յոյսը պատանեկի մը յաջողակութեան վրայ հիմնեալ էր, եւ Գէորգ Տուկլաս փախչելու ատեն ժամանակ չէր ունեցած պատանեկին մասնաւորապէս յանձնելու թագուհւոյն ազատութեան ամէն հոգը։ Ամէն անգամ երբոր թագուհին փոքր Տուկլաս տեսնելու առիթ կ՚ունենար, պատանեակը բնաւ անոր նշան մը չտալէն զատ, այնպէս մը կը վարուէր որ իբրեւ թէ թագուհին բերդի մէջ չըլլար, ասոր վրայ թագուհին կարծիքի գնաց թէ պատանին իր հասակին սեպհական անհոգութեան մէջ ինկած եւ Գէորգ Տուկլասին տուած խոստումները բոլորովին մոռցած ըլլայ։

Վերջապէս Ապրիլ ամսոյն սկիզբները Մարիամ գիտեց որ պատանին սովորականէն աւելի յաճախ իր պատուհանին տակ կը խաղար. եւ օր մը երբոր պատանին պատին ստորոտը փոս մը փորելով թռչուն բռնելու որոգայթ մը կը յարմարցընէր, որուն թագուհին գործ մը չունենալով հետաքրքրութեամբ կը նայէր, տեսաւ որ պատանին մէկ ձեռօք փոս բանալու ատեն մէկալ ձեռօք աւազի վրայ գիրեր կը փորէր։ Եւ իրօք թագուհին աղէկ մը դիտելով համոզուեցաւ որ այն բառերը իրեն համար էին, եւ մէկիկ մէկիկ զանոնք ինչ կարգաւ որ տղան կը գրէր եւ անմիջապէս կ՚աւրէր, միտքը պահելով, հետեւեալ իմաստը հանեց "Այսօր կէս գիշերը ձեր պատուհանէն չուան մը երկընցուցէք,,։ Առանց հակառակութեան աս խօսքերը թագուհւոյն համար էին, բայց ոչ նշան մը եւ ոչ հայեցուած մը տղուն կողմանէ թագուհին կրցաւ ընդունիլ. եւ փոքր Տուկլաս ենթադրելով որ բանը հասկցուց, որոգայթը լարեց եւ առանց վեր պատուհանին նայելու՝ ուսկից որ թագուհին անպատմելի անհամբերութեամբ կը սպասէր, հեռացաւ։ Բանտարկեալ թագուհին ընդունած ակնարկութիւնը կատարելու փութաց։ Չուան չունենալուն Մարիամ Սէյթոն թաշկինակներ իրարու

Հետ կապեց, եւ կանթեղը իրենց ննջելու խուցը տանելէն ետեւ որոշուած ժամը աս կերպով պատրաստուած չուանը վար երկընցուց։ Քանի մը րոպէէն ետեւ իմացաւ որ չուանին վարի ծայրը բան մը կապուեցաւ, անմիջապէս վեր քաշել սկսաւ եւ մեծկակ կապոց մը պատուհանին առջեւ ելաւ, զորն որ խոտորնակի դարձընելով վանդակին երկաթէ գաւազաններուն մէջէն բռնութեամբ ներս քաշեցին։ Երկու բանտարկեալք անմիջապէս կապոցը իրենց ննջարանը տարին, եւ դուռը կրկին կղպելէն ետեւ, կապոցը բացին։ Աս կապոցին մէջ կային երկու պղրական հագուստ Տուկլասեան սպասաւորաց նշանազգեստին նման եւ մէկ հագուստին օձիկին վրայ գնդասեղով նամակ մը հաստատուած էր, որուն մէջ հետեւեալները գրուած էին։ "Թագուհւոյն համար գիտնալու բաներ։ — Ամէն իրիկուն ժամը իննէն սկսեալ մինչեւ կէս գիշեր, Թագուհին եւ Սէյթոն աս հագուստներն հագնելու են, որպէսզի նախ եւ առաջ իրենք զիրենք վարժեցընեն, եւ երկրորդ որպէսզի փախչելու միշտ պատրաստ կենան ընդ որ յարմար առիթ մը պատահի։ Աս հագուստները ձեզի աղէկ պիտի յարմարին, ինչու որ Մարիամ Ֆլեմինկին եւ Մարիամ Լիվինկսթընին վրայէն չափ առնուած են, որոնք ձեր երկուքին հասակն ունին։ Ամէն իրիկուն Թագուհին լոյսը հարցընելու զանց չառնէ, որպէս զի որչափ որ կարելի է կանուխ իմանայ եւ յանկարծակիի չհասնի։ Թագուհւոյն կողմնակիցք միշտ կը ժողվուին, անոր բարեկամք միշտ արթուն են„։ Աս լուրն որչափ որ մթին էր այնչափ ալ Թագուհւոյն մեծ ուրախութեան պատճառ եղաւ. բոլոր երկարատեւ ձմերուան միջոցին մէջ ինքզինքը մոռցուած եւ թող տրուած կը համարէր։ Իր բարեկամաց արթնութեան եւ անձնանուիրութեան նոր ապացոյցը իր յոյսը բոլորովին նորոգեց, եւ վերստին նոր ույժ եւ զօրութիւն առաւ։ Անմիջապէս նոյն իրիկուն երկուքն ալ հագուստները փորձեցին, եւ տեսաւ որ նոյները այնպէս իրենց աղէկ կը յարմարէին որ կարծես թէ իրենց վրայէն չափ առնուած ըլլային։ Երկրորդ օրը

շատ աշխատեցաւ Թագուհին փոքր Տուկլասին հետ տեսնուիլ՝ յուսալով որ պատանին նշանով եղեր է, աչքով եղեր է եղածին վրայ հաստատութիւն մը կու տայ, բայց պարապ տեղ, պատանին միշտ փախուստ կու տար։ Իրիկունը Մարիամ լուսին հարցում ըրաւ, որն որ քսան սրտի հարուածէն ետեւ գարձեալ երեւցաւ, ասով յայտնուեցաւ որ որոշ ժամանակ մը դեռ չէ սահմանուած։ Բայց սակայն ժամը ինինին ընդունած հրամանին համեմատ ամէն իրիկուն հագուստը կը փոխէին եւ մինչեւ կէս գիշեր կը սպասէին։ Տասնուհինգ օր աս կերպով անցաւ առանց նոր բան մը պատահելու, վերջապէս Ապրիլին վերջերը լոյսը տասը զարկէն ետեւ երեւնալով յայտնեց որ ազատութեան վայրկեանը մերձեցած է։

Օր մը Թագուհին բերդին մէջ աղմուկ մը լսեց, անմիջապէս պատուհան վազեց եւ տեսաւ որ լճին մէկալ կողմը զինեալ բազմութիւն մը կեցած է, նոյն վայրկեանն ալ որչափ որ բերդին մէջ նաւ կար նոր եկողները բերդը բերելու համար ճամբայ ելան։ Մարիամ որ աստնկ պարագայից մէջ բերդի մէջ ինչ եւ իցէ փոփոխութիւն մը իրեն մեծ դժբախտութիւն կը համարէր, զՍէյթօն խրկեց հարցնելու որ եկողներն ով են։ Սէյթօն քանի մը վայրկեանէն ետեւ խռովեալ ներս մտաւ ըսելով որ եկողը Ուիլեէմ Տուկլաս Լոշլովէն բերդին տէրն է, որն որ մէկ տարի բացակայութենէն ետեւ իր ամբողջ սպաներով եկած է բերդին մէջ քանի մ՚օր անցընելու համար։ Աս լուրին վրայ Թագուհին ալ խռովեցաւ, ինչու որ Լոշլովէն բերդատիրոջ գալովը բերդին պահապանները կը շատնային եւ փախչելու նոր ընելու փորձը պէտք էր որ յապաղուէր մինչեւ որ բերդին տէրը իրեններով հեռանայ։

Քանի մը ժամէն ետքը Թագուհին աստիճաններու վրայ ոտքի ձայն լսեց, Թէպէտեւ իր խուցին բանալիքը իր բանտապետին քովն էին եւ դռները ներսէն չէին կրնար կղպուիլ, ի վերայ այսր ամենայնի վեր եկողը՝ փոխանակ ինչպէս որ սովոր էին դռները մէկէն բանալու եւ իբրեւ անկոչ հիւր մտնելու, յար-

գութեամբ դուռը բախեց։ Սէյթոն դուռը բացաւ։ Եկողը բերդին ծեր տան հազարապետն էր, որն որ ծեր Ուիլեէմ Տուկլասին կողմանէ եկած էր զԹագուհին կերակրոյ հրաւիրելու, զորն որ տան տիրոջ գալստեան համար պիտի ընէին։ Մարիամ շնորհակալ ըլլալէն ետեւ ըսաւ որ քիչ մը տկար ինքզինքը կը զգայ, եւ միանգամայն կը վախնայ որ իր տխրութեամբը բաղմականաց հասարակաց ուրախութիւնը կ'աւրէ։ Տան հազարապետը յարգութեամբ խոնարհեցաւ եւ գնաց։ Բոլոր օրը բերդին մէջ շարժում եւ աղմուկ կը տիրէր, ամէն վայրկեան Տուկլասեանց նշանազգեստներով սպասաւորները կ'երթային կուգային, այսինքն ան տեսակ զգեստներով, զորոնք որ Թագուհին ընդունած էր։ Թագուհին սա միջոցիս մէջ պատուհանին քով նստած տխրութեամբ քինրոսին տան վրայ աչքերը դարձուցած էր. տան պատուհանին փեղկերը ըստ սովորութեան գոցուած էին, բնակութեան բնաւ նշան չէր երեւնար։ Իրիկուն եղաւ, բերդին պատուհաններն լուսաւորուեցան եւ բակին մէջ երկայն լուսաւոր շերտեր տարածեցին, միւս կողմանէ բլրակին վրայ փոքր աստղը կամաց կամաց սկսաւ լուսաւորուիլ։ Թագուհին երկայն ատեն զինքը դիտեց բայց իրեն հարցընելու սիրտ չըրաւ. վերջապէս Սէյթոնին աղաչանաց զիջանելով որոշուած նշանը տուաւ։ Լոյսն անմիջապէս աներեւոյթ եղաւ եւ Թագուհին իր անմխիթար սրտին վրայ ձեռքը դրած զարկը համրելու սկսաւ, բայց երբոր տասնուհինգին հասաւ եւ լոյսն երեւան չելաւ, կարծեց որ իր ազատութիւնը ուշացուած է եւ վհատութեամբ գլուխը ձեռաց վրայ դրած աթոռին վրայ նստեցաւ։ Իսկ Մարիամ Սէյթոն՝ որն որ ոտքի վրայ կեցած էր եւ սրտին զարկը համրելն յառաջ կը տանէր, երբոր տեսաւ որ լոյսը չ'երեւար, բոլորովին հակառակ կարծիք ունեցաւ, այսինքն մեկնեց որ իրենց փախուստը նոյն իրիկուան համար որոշուած է։ Եւ ասիկայ Գէորգ Տուկլասին տուած թղթին բոլորովին համեմատ էր։ Այսպէս տասը վայրկենի չափ սպասելէն ետեւ երբոր բնաւ լոյսը չերեւցաւ, իր

կարծիքը Թագուհւոյն յայտնեց: Թագուհին ոտք ելաւ եւ միատեղ քառորդի մը չափ պատուհանին ուղղութեամբ կը նայէր, եւ երբոր լոյս չտեսան, ուզեցին նորէն փորձ ընել, բայց պարապ տեղ, մարած փարոսը չկրցան լուսաւորել տալ: Անմիջապէս իրենց ննջելու խուցը վազեցին, ներսէն դուռը կղպեցին եւ իրենց հագուստը փոխեցին, ինչու որ նոյն իրիկուն քիչ յոյս ունենալով իրենց զգեստները չէին փոխած: Հազիւ թէ հագուեցան փոխուեցան, մէյ մ՚ալ ընդունելութեան խուցին դռները բացուեցան, եւ իրենց դրան մօտենալու նուազ ոտնաձայն մը լսեցին: Մարիամ Սէյթոն վախէն անմիջապէս ճրագը մարեց: Դուռը բախուեցաւ: — Ո՞վ է, հարցուց Թագուհին դողդոջուն եւ խռովեալ ձայնիւ: “Տուկլա՛ս, Տուկլա՛ս, սիրուն եւ հաւատարիմ„, մանկական ձայնով պատասխան մ՚եկաւ: — Ասի նշանաբանն է հառաչեց Թագուհին կիսամար անկողնոյն վրայ իյնալով, իսկ Սէյթոն գնաց դուռը բացաւ: — Պատրա՞ստ էք, հարցուց փոքր Տուկլաս: — Այո՛, ըսաւ Թագուհին ցած ձայնիւ, պատրաստ ենք, ի՞նչ պէտք ենք ընել: — Ետեւէս եկէք, ըսաւ պատանին իր կարճաբանութեամբ բայց հաստատուն ձայնիւ: — Ուրեմն աս իրիկո՞ւն է, հարցուց Թագուհին: — Այո՛, աս իրիկուն է: — Ամէն բան պատրա՞ստ է: — Այո՛, ամէն բան ի կարգի է: — Ո՞վ մեզի դուռը պիտի բանայ: — Բանալիքը քովս են, պատասխանեց պատանին: — Ուրեմն յառաջ երթանք որդեակք իմ, ըսաւ Թագուհին, Աստուած մեզի հետ ըլլայ: — Փոքր Տուկլաս ասոնց առջեւ անցնելով մինչեւ սանդղին գլուխը եկան, հոս նշան ըրաւ երկուքին ալ որ քիչ մը սպասեն, եւ ինքը գնաց եւ Թագուհւոյն սենեկաց դռները գոցեց, որպէսզի թէ որ պահանորդները անցնելու ըլլան բան մը չտեսնեն. ասկից ետեւ աստիճաններէն վար իջնալու նշան ըրաւ անոնց: Բայց Թագուհին աղմուկ լսելով ան սենեկին մէջ՝ ուսկից որ բակ մտնելու համար հարկ էր որ անցնէին, պատանւոյն ձեռքէն բռնելով հարցուց որ զիրենք ո՞ւր կը տանի: — Բակը, պատասխանեց պատանին: — Բայց,

նորէն հարցուց Թագուհին, հոն հասնելու համար հարկ է որ ան սենեկէն անցնինք ուր որ հիմայ խնջոյք կ'ըլլայ։ — Անտարակոյս, ըսաւ պատանին։ — Ուրեմն անկարելի է, ըսաւ Թագուհին, կորսուած ենք։ — Ի՞նչպէս, կորսուած էք, հարցուց պատանին, դուք եւ օրիորդ Սէյթոն Տուկլասեանց նշանազգեստը հագած չէ՞ք մի, բերդի սպասաւորներէն մէկը կը համարուիք եւ ո՞վ զձեզ պիտի ճանչնայ. եւ ասկից զատ ուրիշ միջոց չկայ։ — Գէորգ Տուկլաս գիտէ՞ որ ազատութիւնս աս ճամբով պիտ'որ ըլլայ։ — Այո՛ պատասխանեց պատանին, ինքը մտածեց աս ճամբան, ես միայն բերդին բանալիքը ձեռքս բերի։ — Յառաջ երթանք ուրեմն, ըսաւ Թագուհին, աս անարգ բանտարկութենէն ամենայն ինչ վեր կը դասեմ։ — Փոքր Տուկլաս աստիճանին ստորոտը հասնելով մութ անկիւնէն գինւով լեցուն կուժ մը հանեց եւ Թագուհւոյն աջ ուսը դրաւ, անանկ որ երեսը բոլորովին ծածկուեցաւ. եւ բազմականք չէին կրնար անոր դէմքը ճանչնալ։ Իսկ Մարիամ Սէյթոն գլուխը հացի կտորներով լեցուն սակառ մը դրաւ եւ աջ ձեռքով նոյն սակառը բռնելով նոյնպէս երեսը ծածկեց։ Աս նախազգուշութեամբ նախասենեակը մտան, որն որ մեծ սենեկին կից էր. եւ ասկից լոյս եւ աղմուկ կ'ելլէր. շատ սպասաւորք ծառայութեան զբաղած ըլլալով իրենց միտ դնող չեղաւ։ Առջի փորձը զԹագուհին քիչ մը քաջալերեց որն որ մեծ սենեկէն անցած ատեն յանդուգն հայեցուած մը նետեց։ Սենեկին երկայնութեամբ երկայն սեղան մը դրուած էր եւ անոր չորս կողմը բազմականք իրենց աստիճանին համեմատ շարուած նստած էին, այսինքն Լոշլըվէն բերդին տէրը (Ուիլեէմին հայրը), տիկին Լոշլըվէն եւ Ուիլեէմ Տուկլաս իրենց մեծ որդին սեղանին գլուխն էին, եւ մէկալները ըստ իրենց կարգի եւ պաշտօնի՝ զորն որ դղեակին մէջ ունէին, բազմած էին։ Թէպէտ եւ սեղանին վրայ բազմաթիւ ճրագներ վառուած էին, բայց սրահն այնպէս մեծ ու լայն էր որ հեռաւոր կողմերը դեռ կէս մթութեան մէջն էին, եւ Թագուհւոյն փախստեան շատ նպաստաւոր։ Փախըս-

տակաւնք տեսան որ Տէր եւ Տիկին Լոշըլէյէն իրենց կռնակը դարձուցած էին, իսկ Ուիլեէմ Տուկլաս՝ որն որ հօր եւ մօր քովը կողմնակի նստած էր, իր կասկարմիր այտերէն եւ փայլուն աչքերէն իմացան որ աս վայրկենի մէջ իրենց քիչ վնասակար կրնայ ըլլալ քան եթէ սեղանէն առաջ: Թագուհին անկից աւելի իր զննութիւնները յառաջ տանելու ժամանակ չունեցաւ, ինչու որ փոքր Տուկլաս անվեհերութեամբ սրահը մտնելով, Թագուհին եւ Սէյթոն անոր ետեւէն գացին:

Իրենց երեւակայածէն աւելի նուազ էր վտանգը: Երկու փախստականք սրահէն անցան առանց բազմականներէն եւ ծառաներէն ճանչցուելու, եւ նախասենեակը մտան որն որ առջի նախասենեկին դիմացն էր: Հոս պատանին Թագուհւոյն ձեռքէն կուժը եւ Սէյթոնին գլխէն հացով սակառը առաւ եւ հոն կեցող ծառայից յանձնեց որ զինուորաց համար որոշուած սեղանին վրայ դնեն, եւ քանի որ սպասաւորները սենեկէն հեռանալով գինին եւ հացը սեղանի վրայ կը դնէին ինքը դուռը բացաւ ու զիրենք բակը մտցուց: Պատին մէկ անկիւնը երեքն ալ պահանորդաց հանդիպեցան, որոնք գիշերական պտոյտներ կ՚ընէին, բայց ասոնք անոնց միտ չդրին կամ չտեսան, որով Թագուհին աւելի եւս հոգի առաւ: Անկից այնպիսի տեղ մը հասան ուր պատուհաններէն լոյս չէր զարներ, եւ իրենց փախստեան շատ յարմար մթութիւն մը կը տիրէր: Պատին քովէն քիչ մը ժամանակ երթալէն ետեւ, պարտէզին դրան առջեւ հասան: Հոս տեղը ահու եւ անձկութեան քանի մը վայրկեաններ ունեցան փախստականք, ինչու որ տասը մինչեւ տասուերկու բանալեաց մէջէն դուռը բացող բանալին պիտի գտնուէր: Թագուհին եւ Սէյթոն ամենէն մութ տեղ մը պատին կռթընեցան եւ իրենց շունչը բռնեցին, վերջապէս դուռը բացուեցաւ երկրորդ բանալին փորձելով: Երկու կանայք պարտէզը վազեցին, պատանին դուռը ետեւէն գոցելով հազիւ անոնց կրցաւ հասնիլ: Աս վայրկենին մէջ Թագուհին հոգի առաւ, գրեթէ կէս մը ազատած էր: Պատա-

նին իր Ճամբան շարունակելով պարտէզին մէկդալ դուռը եկաւ, եւ ծառախմբի մը մօտենալով փոխըրտականոց Նշան ըրաւ որ քիչ մը հանդարտ կենան, իսկ ինքը ձեռքերը ամփոփելով ու մէջը փչելով բուի ձայն այնպէս ճիշդ հանեց որ Թագուհին կարծեց թէ իրապէս բուն է պոռացողը: Անմիջապէս պարտէզին անդիի կողմէն ուրիշ բուի ձայն մը լսուեցաւ, եւ ատոր վրայ խոր լռութիւն մը տիրեց, իսկ պատանին ականջները տնկած դեռ ուրիշ նշանի մը կը սպասէր: Եւ իրօք քանի մը վայրկեանէն ետեւ խորունկ հառաչանք մը եւ թնդիւն մը լսուեցաւ իբրեւ թէ մէկը գետին ինկած ըլլայ: Թագուհին ալ կրկին շառաչման վրայ բոլոր մարմնով դողալ սկսաւ: Ամենայն ինչ ի կարգի է ըսաւ փոքր Տուկլաս ու Ճամբան շարունակեց: Դուռը բացուեցաւ եւ մարդ մը պարտէզ մտաւ: Մտնողը Գէորգ Տուկլաս էր. Եկէք, ըսաւ Տիկին, Թագուհւոյն թեւէն բռնելով ու քաշելով, ամենայն ինչ պատրաստ է: Թագուհին ետեւէն գնաց բայց իր չորս կողմը նայելով պատին քով բան մը տեսաւ որ պառկած մարդու մը կը նմանէր եւ զարհուրեցաւ: Գէորգ Մարեմայ դողալէն իմացաւ որ բան մը տեսեր է, Արդարութիւն մը կայ, ըսաւ, որ միշտ կը հսկէ, Տիկին, աս մարդը նոյն մարդն է որ զմեզ առջի անգամ մատնած էր, ասկէց վերջը ալ մատնութիւն պիտի չընէ: — Ո՜հ, ըսաւ Թագուհին, զոհ մ'ալ ուրիշ: — Երթանք, Տիկին ըսաւ Տուկլաս, ժամանակ չկորսնցընենք: — Լճին քով հասնելով, Գէորգ պզտիկ քար մը մէջը նետեց, ասոր վրայ եղեգներուն մէջ ծածկուած նաւակ մը լուիկ մօտենալու սկսաւ, եւ քանի մը քայլ մօտենալէն ետեւ նաւուն մէջ եղողներէն մէկը չուան մը ցամաք նետեց: Գէորգ մէկ ձեռօք չուանը բռնեց եւ նաւակը ցամաք մօտեցուց, եւ մէկալ ձեռօք նաւ մտնելու օգնեց Թագուհւոյն որն որ Սէյթոնին հետ յառաջակողմը նստեցաւ, պատանին ղեկին կողմը ցաթկեց, իսկ Գէորգ թիավարներուն մէջ խառնուեցաւ նաւակը ցամաքէն հրելէն ետեւ: Սկովտիայի բախտը տանող նաւակը գիշերական թռչնոյ մը պէս ջրի վրայ

շարժիլ սկսաւ։ Բայց միկէնիմէկ երկինքը լուսաւորուեցաւ որն որ մինչեւ հիմայ ամպերով ծածկուած թագուհւոյն փախստեան նպաստամատոյց կ'ըլլար, կարծես թէ չար ոգւոյ բազուկ մը ամպերը պատռած ըլլար, լուսնոյ ճառագայթները ամպերուն ճեղքուածներէն նաւակին եւ անոր շրջակայ տեղերն ինկան։ Նոյն վայրկենի մէջ Գէորգ Տուկլաս կարծելով որ թաքչելու յոյս չմնաց, թիավարաց հրամայեց որ աճապարեն, բայց դժբախտաբար ասոնք իրենց արագութիւնը չէին կրնար կրկնապատկել առանց մի եւ նոյն ժամանակ ալ թիակներուն շառաչիւնը մեծցընելու։ Բերդին պահանորդը պարիսպին վրայ քալած ատեն մէկէն կեցաւ եւ սովորական ձայնով "Նաւ մը նաւ մը պատրաստեցէք, պոռաց։ — Թիավարեցէք, պոռաց Գէորգ ապա թէ ոչ հինգ րոպէ չանցած զմեզ հալածելու կը սկսին։ — Թող ընեն եթէ կրնան, ըսաւ փոքր Տուկլաս, ինչու որ կամ պատէն ցատկելու եւ կամ դուռը կոտրելու են, որովհետեւ զիրենք դուրսէն գոցեցի, եւ դղեակին մէջ եւ ոչ մէկ բանալի մը կայ։ Եւ բանալեաց տրցակը շարժելով, ասոնք ալ Նեղփի հաւերժահարսին կը յանձնեմ, զինքը ձեր Հիլտեպրանտին տեղ դղեակին դռնապան կ'ընեմ ըսելով՝ բանալիները լիճը նետեց։ — Աստուած զքեզ օրհնէ, ըսաւ Գէորգ, ձեռքը պատանեկին երկընցընելով, Աստուած զքեզ չափահաս մարդու քաջութեամբ եւ իմաստութեամբ օրհնած է։ — Նաւ, նաւ, պոռաց երկրորդ անգամ պահանորդը, նաւ պատրաստեցէք եւ տեսնելով որ մարդ ընող չկայ ձեռքի հրացանը պարպեց, եւ աշտարակին զանգակը զարնելով, մատնութիւն, մատնութիւն պոռալ սկսաւ որչափ որ կրնար։ Մի եւ նոյն րոպէն բերդին դեռ չլուսաւորուած պատուհանները հետզհետէ լուսաւորեցաւ, եւ սենեկէ սենեակ ջահերներու պէս կը վազէին։ Թէպէտ եւ փախստականք ըստ բաւականի հեռացած էին, ի վերայ այսր ամենայնի զօրաւոր ձայն մը "Կրակ տուէք," լսեցին եւ մի եւ նոյն ժամանակ պայծառ լուսաւորութիւն մը լիճին վրայ տարածեցաւ եւ գնդակ մը նաւէն քանի մը ոտք

հեռու անդին ջրին մէջ ինկաւ։ Ասոր վրայ Գէորգ իր բարեկամաց Թագուհւոյն երջանկութեամբ ազատելուն նշան տալու համար ատրճանակ մը պարպեց, որուն վրայ ցամաքին կողմանէ խնդութեան մեծ աղաղակ մը լսուեցաւ։ Քանի մը րոպէէն ետքը Թագուհին ցամաք ելաւ ուր իրեն շատ մը ասպետք Սէյթոն կոմսին հրամանատարութեան տակ կը սպասէին։

Մարիամ երբոր ցամաք ոտք կոխեց առջի գործքն եղաւ ծնկան վրայ գալ եւ Աստուծոյ շնորհակալ ըլլալ իր ազատութեան համար։ Անկից ետեւ Գէորգին եւ փոքր Տուկլասին ձեռքէն բռնելով Սէյթոն ատենակալին զիրենք ներկայացուց իբրեւ իր գլխաւոր ազատիչները։ Բայց Գէորգ առջինն եղաւ որ Թագուհւոյն յիշեցուց որ ժամանակ չկորսնցընէ, ըսելով որ Թնդանօթն արձակելով բոլոր շրջակայ բնակիչք հարկաւ ոտք ելած կ'ըլլան։ Ասոր վրայ Թագուհին իրեն համար պատրաստուած ձիուն վրայ իր սովորական յաջողակութեամբ ելլելով, եւ Գէորգ իր մէկ կողմը իսկ փոքր Տուկլաս իր մէկալ կողմը առնելով, եւ Սէյթոն չուխին գլուխն անցած ի չորս արշաւելով մեկնեցան, եւ տատուանց կանուխ Ուէսթ Նիտորի գղեակն հասան, որն ալ Սէյթոնին դաստակերտներէն մէկն էր։ Աս դաստակերտը որ նոյն ատենուան սովորութեան համեմատ աղէկ ամրացուած էր, եւ գիտնալով որ Թագուհւոյն առջի ապաստանարանն հոս պիտի ըլլար, աւելի եւս զօրացուցած էին եւ ընտիր զօրքով լեցուցած։ Հոս Մարիամ իր ազատութեան առջի գիշերն անցուց, եւ երկրորդ առտու ուրախութեամբ տեսաւ իր հաւատարիմ կոմսից գնդերը որոնք դաստակերտին չորս կողմն առած վաշտ վաշտ կեցած էին։ Թագուհին իրեն հաւատարիմ մնացած կոմսերը ժողվելով խորհուրդի նստեցաւ եւ որոնք որոշեցին որ ամենէն առաջ Տրաֆնէ բերդն առնուն որպէսզի անկից Տէօնպարթըն բերդն անցնելու կարող ըլլան եւ զԹագուհին հոն դնելով ապահովցընեն, ինչու որ Տէօնպարթըն այնպիսի ամրոց մըն էր որ գրեթէ երեք ամսի չափ Սկովտիայի բոլոր զօ-

րութեան դէմ կրնար դիմանալ։ Որոշուեցաւ ալ որ երկրորդ օրն անմիջապէս կանուխ արշաւանքն սկսին։ Նոյն գիշերը նոր զօրք հասնելով, չէ թէ միայն զԹագուհին պահպանելու բաւական գունդ մը, այլ երեւելի բանակ մը կազմեցին։ Անկից ետեւ Հեմիլթընեանց դղեակն անցան, ուր որ քանի մ'օր կեցաւ եւ զօրահանդէս ըրին (3 Մայիս)։

Թագուհւոյն ազատութեան լուրը զարմանալի շուտութեամբ բոլոր Սկովտիայի մէջ տարածուելով, ժողովուրդն ուրախութեամբ լեցուց։ Ժողովուրդ մը խաբել շատ դիւրին է, բայց սովորաբար երբ որ ինքիրեն թող կը տրուի, անմիջապէս արդարացի բանին կը դառնայ։ Ասկից աղէկ կը տեսնուի որ ամէն յեղափոխութիւններէն, որոնց մէջ կողմնակցութիւն մը տէրութեան կամ ազգին երջանկութեան պատրուակաւ հասարակ ժողովուրդը իբրեւ գործիք կը գործածէ, հասարակօրէն ժողովուրդը բնաւ, իսկ իրօք շատ քիչերը օգուտ մը կը քաղեն անկից։ Այսպէս ալ Սկովտիայի ժողովուրդը տեսնելով որ Մորրէ, Մորթըն, Մեթլէնտ եւ ուրիշ դաւաճան ատենակալք անոր համար միայն զՄարիամ կործանելու աշխատեցան, որպէսզի ձեռք բերած իշխանութեան մէջ հաստատուն մնան եւ ըրած թագաւորասպանութեան պատիժը չքաշեն։ Եւ դարձեալ արդէն ժողովրդեան մէջ ձայն ելած էր թէ Մորրէ կոմսը՝ զԹագուհին անոր համար մարդասպանութեան կ'ամբաստանէ, որպէսզի զանիկայ ժողովրդեան աչքէն հանէ, եւ Թագաւորութիւնը երկամեայ տղու մը ձեռքը դնելով եւ ինքն անոր յանձանձիչ ըլլալով բոլոր իշխանութիւնը իրեն քաշէ։ Բայց ժողովրդեան մեծ մասը Թագուհւոյն երիտասարդական շնորհքը, վայելչութիւնն եւ բարութիւնն, որն որ ժողովրդեան սիրտը խոր արմատներ ձգած էին եւ անոր քաշած վշտերն եւ Թշնամեաց անողորմ վարմունքը տեսնելով՝ անոր չորս կողմը ժողվուեցաւ եւ բազմաթիւ գունդ մը կազմեցին, ինը կոմս, այնչափ մ'ալ եպիսկոպոս, տասնութը ատենակալ եւ ազնուականաց բազմութիւն մը եկան իրեն ուրախակից ըլլալու եւ իրենց ծառայու-

թիւնը մոռացնելու։ Հոս տեղս առջի անգամ իմացաւ Մարիամ, ինչպէս որ Անտերսըն կը պատմէ, Ցանկլիին սպանման ճշմարիտ պատմութիւնը եւ Պոթուէլին նոյն սպանման գլխաւոր եւ կատարիչ ըլլալը։

Մարեմայ առջի գործքն եղաւ իր եղբօրը Մորրէ կոմսին պատգամաւոր խրկել որ ամէն կռիւ եւ գժտութիւնը ազատ ժողվուած խորհրդանոցի մը առջեւ դրուի, եւ Ցարնլիին սպանութեան ամէն ամբաստանեալները անաչառութեամբ դատաստանի տակ ձգուելով պատժուին։ Մորրէ եւ Մեթլէնտ իրենց եղեռնագործութեանց տեղեակ՝ Մարեմայ առաջարկութիւնը չընդունեցան, պատգամաւորները բռնեցին բանտ դրին եւ Թագուհւոյն ամէն կողմնակիցները հայրենեաց մատնիչ հրատարակեցին։

Թագուհին Հեմիլթընեանց դաստակերտի մէջ ժողվուած ատենակալաց առջեւ հրատարակեց որ Լոչլըվէն բանտի մէջ թագաւորութենէն հրաժարումը՝ Լինտսիէն բռնութեամբ եւ մահու սպառնալեօք եղած է, եւ ասոր վկայ ցուցուց Ռոպէրթ Մելուիլ, որն որ նոյն ատեն ներկայ էր։ Ժողովականք միաբերան գոչեցին որ ասանկ պարագայից մէջ եղած հրաժարումը ոչինչ է եւ իրենց Թագուհին թագաւորութեան մէջ հաստատուն պահելու համար պատրաստութիւն կը տեսնէին։

Մելուիլէն նայելու ըլլանք Մարիամ ոչ պատերազմի մէջ մտնելու եւ ոչ իսկ պատերազմ ընելու կամք ունէր, այլ Ցէօնպարթըն բերդը քաշուիլ եւ օտար տէրութիւններէն օգնութեան սպասել՝ որոնց պատգամաւոր խրկած էր։ Բայց քովինները իրենց զօրութեան եւ բազմութեան վրայ ապաւինելով կը մտածէին որ ճարպկութեամբ՝ առանց թշնամւոյն արթըննալու ժամանակ տալու մէկէն յարձակելով բոլոր կողմնակցութիւնը մէկ հարուածով բնաջինջ ընեն։ Աս խորհուրդը գովելի կ՚ըլլար թէ որ թշնամւոյն որչափ զօրաւոր ըլլալը գիտնային։ Մորրէ թէպէտ եւ իսկզբան Մարեմայ յաջողութեամբ ազատելուն եւ զօրաւոր կողմնակցութիւն մը քովը ունենալուն վրայ շատ այլայլեցաւ, բայց ինքն ան մարդիկ-

ներէն չէր, որոնք փոքր դժուարութիւններէն կամ վտանգներէն կը զանգիտէին։ Ուստի յափշտակութեամբ առած իշխանութիւնը չկորսնցընելու համար սակաւաւոր բայց աղէկ կրթուած զօրք ժողվեց եւ Մորթընէն՝ որուն զինուորական տաղանդը յարգել գիտէր, եւ Քիրքպատրիէն որն որ բոլոր Սկովտիայի մէջ առջի զօրավարն էր՝ օգնութիւն գտնելով՝ Լէնկսէյտի բարձրաւանդակները բռնեց ուսկից որ Թագուհին Ցէօնպարթըն երթալու համար հարկ էր որ անցնէր։

Մորրէ՝ բարձունքը բռնելով եւ ամէն անցքերու տիրելով Թագուհւոյն կողմնակցաց կը սպասէր։ Զարմանալի բան մըն էր որ երկու բանակաց մէջ ալ մի եւ նոյն Սկովտական դրօշն զինուորաց գլխէն վեր կը ծփար, ինչու որ կառավարին կողմնակիցք իրենց Թագաւորին համար պատերազմած կը համարէին։ Խեղճ տղան, դեռ օրրոցի մէջ մայրապան ըլլալ կ'ուզէին։ Թագուհւոյն կողմնակիցք հոս հասնելով ալ չէին կրնար ետ դառնալ. Թշնամւոյն պատրաստութիւնները յայտնի կը ցուցընէին որ անցքը խափանելու դիտաւորութիւն ունի. ուստի հարկ էր վրան յարձակում՝ ընել, որն որ դիւրին բան չէր, ինչու որ Թշնամին բոլոր բարձունքը բռընած եւ ձորին վրայ կը տիրէր, ուսկից որ Թագուհւոյն բանակը հարկ էր որ անցնէր։ Արճէյլ կոմն որն որ Թագուհւոյն բանակին հրամանատարն էր՝ պատերազմին դիրքը աղէկ զննելով տեսաւ որ Լէնկսէյտ գեղը երկու բանակաց օգտակար կրնայ ըլլալ, եւ զօրն որ կառավարը զանց առած էր գրաւելու։ Դժբախտութեամբ Գէորգ Ցուկլաս ալ աս գիտողութիւնն ըրած էր եւ անմիջապէս Թագուհւոյն իմացուց՝ որն որ Սէյթընին հրաման տուաւ որ Լէնկսէյտ գեղը գրաւէ։ Բայց որովհետեւ Արճէյլ կոմն արդէն Արպրոաթ ատենակալին հրաման տուած էր որ նոյն տեղն առնու, անոր համար երկու առաջնորդք իրենց բաժիններուն գլուխն անցած դէպ ի հոն կ'արշաւէին։ Հոս տեղս երկու առաջնորդաց մէջ նախանձաւորութեան կռիւ մը բացուեցաւ, եւ երկուքն ալ հպարտ եւ յամառ իրարու չէին ուզեր զիջանիլ, ին-

չու որ մէկը բանակին հրամանատարէն իսկ մէկալը Թագուհիէն հրաման առած էր։ Վերջապէս Սէյթոն իր ձիուն կուշտը մտրակ զարնելով կռուոյն վերջ տուաւ ըսելով «Ետեւէս եկէք Սէյթոնեանք, Ս. Բենեդիկտոս, յառաջ երթանք։ Ետեւէս եկէք, պոռաց Արպրօաթ ատենակալը, հաւատարիմներս, Հեմիլթոնեանք. Աստուած եւ Թագուհի,,։ Եւ երկու բաժիններ իրարու հետ մրցելով յառաջ կ'երթային քանի որ ճամբուն վրայ բաւական տեղ կար. բայց տեղ մը ճամբան անանկ նեղ էր որ հազիւ չորս հոգի կրնային անցնիլ։ Ա՛լ մտածելու էր հոն մարդիկներէ եւ երիվարներէ պատճառած խռովութիւնն, որոնք լեռնէն բրդած ձեան հիւսի մը պէս դէպ ի կիրճ կը վազէին։ Զարմանալի պատերազմ մը բացուեցաւ որուն մէջ աս յիմարները իրար կը զարնէին փոխանակ թշնամւոյն դէմ իրենց ուժը պահելու։ Վերջապէս առջեւն անցնողները կիրճը անցան բայց ետեւէն եկողները նոյն կատաղութեամբ իրարու հետ կը կռուէին, եւ շատ մարդ եւ երիվար ճզմուեցան, խեղդուեցան կամ վիրաւորուեցան։ Ասով դաշնակցեալք անգին ժամանակ կորսնցուցին, ինչու որ Մորրէ անոնց դիտաւորութիւնն իմանալով զօրենք յառաջեց եւ հեծելոց չափաւոր բաժին մը խրկեց որ Լէնկսէյտ գեղը գրաւեն։ Արճէյլ Մորրէին աս շարժումը տեսնելով անմիջապէս Հերրիէս ատենակալին հրամայեց որ երկու բարեկամաց օգնութեան հասնի։ Հերրիէս իրեններով ի չորս արշաւելով գնաց, բայց նոյն րոպէն երբոր կիրճը հասաւ, եւ Տուկլաս Թագուհին կը վստահացընէր որ քանի որ հեծեալք հեծելոց դէմ կը կռուին, պատերազմին յաջողութիւնը իրենց կողմն է, փոքր Տուկլաս որն որ իր մանկութեան սեպհական հետաքրքրութեամբ աս ամէն շարժմանց կը նայէր, մէկէն Տուկլասին մօտեցաւ եւ ձեռքը երկընցընելով թշնամւոյն երկրորդ հեծելոց բաժնին ուղղութիւնը կը ցուցընէր։ Ի՞նչ կայ, հարցուց Գէորգ։ — Չես տեսներ, չես տեսներ, ըսաւ պատանին։ — Ըսիկայ Հեծելոց նոր յարձակում մըն է, ուրիշ բան չէ։ — Այնպէս է ըսաւ պատանին, բայց

ամէն մէկ հեծեալը իր ետեւը հրացանաւոր մ'առած կը տանի։ — Իրաւ է ըսաւ Գէորգ, պատանին իրաւունք ունի, տես արդէն ձիէն վար կ'իջնան եւ դաշտի վրայ կը տարածուին. Հերրիէս կիրճէն չանցած անոնք արդէն բռնած կ'ըլլան։ Մա՛րդ մը, պոռաց Գէորգ, որ աս լուրը Հերրիէսին տանի։ — Ես, ըսաւ փոքր Ցուկլաս, ինծի կ'իյնայ Հերրիէսին իմացընել, որովհետեւ ես ամէնէն յառաջ վտանգը տեսայ, եւ աս ըսելով աներեւոյթ եղաւ թագուհւոյն աղաչանաց միտ չդնելով։ — Ի՛նչ, ըսաւ Կալոմէյ ատենակալը, տղայ մը մեզմէ յառաջ հասնի, յառա՛ջ երթանք քա՛ջերս։ Յառա՛ջ երթանք, ըսաւ Թոմսթ, ապա թէ ոչ ամէնէն ուշ կը հասնինք։ — Յառա՛ջ, պոռաց Հունթլի որն որ վերջապահաց հրամանատարն էր։ Եւ աս կարծես թէ դիւահարած ամբոխը փոթորկի մը պէս թագուհւոյն առջեւէն անցաւ, որն որ սեւեռած անոնց կը նայէր։ Իսկ Ցուկլաս թագուհւոյն դառնալով չէր դադրեր ըսելէն, ո՛հ անմիտներ։ — Ի՞նչ կ'ըսես, հարցուց թագուհին։ — Տիկին, ըսաւ Ցուկլաս, ասի ան պատերազմելու կերպն է, որով ամէն անգամ պատերազմը կորսնցուցած ենք։ — Աստուա՛ծ իմ, պոռաց թագուհին, ուրեմն պատերազմը վտանգի մէջ է։ — Չէ, կրկնեց Գէորգ, բայց գէշ սկսուած է, ինչպէս որ ամէն անգամ շատ կրակով եւ մեծ յանդգնութեամբ սկսած եւ կորսընցուցած ենք։ Ասի ըսելով Գէորգ միշտ անհանգըստութեամբ մը չորս դին կը նայէր։ — Ինչ կը փընտռես հարցուց թագուհին։ — Աւելի բարձր գիրք մը կը փնտռեմ, ըսաւ Գէորգ, ուսկից կարող ըլլանք բոլոր պատերազմը տեսնել. մտածեցէք Տիկին որ աս վնասակար վաղվաղկոտութեամբ բոլոր ձեր բանակը պատերազմի մէջ է եւ ձեր քովը միայն քսան հոգի ունինք։ Անոր համար հարկ է որ կռուոյն ամէն փոքր պարագաները աչքէն չկորսնցընենք։ Ասոր վրայ թագուհին Քրուքսթէն դղեակին բլրակի մը վրայ տարաւ ուր որ ծառ մը միայն կար. հոս թագուհին ա՛լ ձիուն վրայ չկրնալով կենալ տգոյն եւ գրեթէ մարելու մօտ ծառին տակ նստաւ։ Թնդանօթներուն

ձայնը սկսաւ յաճախել եւ մուխին ամպերը գրեթէ բոլոր տեսքը գոցեցին, անանկ որ հազիւ կը տեսնուէր որ վարը ինչ կ'ըլլար։ Բայց Կլեսկոյի բարձրաւանդակաց վրայ կեցող վերջապահներէն կ'իմացուէր որ Մորրէ դեռ չէր ստիպուած իր ամբողջ զօրութիւնը ի գործ դնելու։ Աս պարագան Տուկլասը շատ անհանգիստ կ'ընէր։ Մէկէն Գէորգ առանց բան մ'ըսելու Թագուհւոյն երիվար մը ցըցուց որն որ առանց հեծելոյ ի չորս եկած դէպ ի Թագուհին կ'արշաւէր։ Թագուհին ճանչցաւ ձին որն որ արեամբ ներկուած էր եւ խորին հառաչանք մը հանեց։ Խեղճ տղայ, ըսաւ Տուկլաս, իր առջի պատերազմը վերջինն ալ եղաւ, բայց իր մահը նախանձելի է, որովհետեւ իր Թագուհւոյն՝ Մարիամ Ստուարթին համար մեռած է։ Թագուհւոյն քովը կեցող զինուորներէն մէկը Գէորգին դառնալով Կլեսկոյին ուղղութիւնը ցըցուց։ Գէորգ իր աչքերը պատերազմի դաշտին վրայ նետելով, տեսաւ որ քիչ մ'առաջ բարձրաւանդակները բռնող վերջապահ զօրքը վար ինջած էր պատերազմին բախտն որոշելու համար, եւ եղած խռովութենէն իմացաւ որ Թագուհւոյն կողմնակիցք արդէն փախչելու սկսած էին։ — Ձի հեծնանք Տիկին, ըսաւ Գէորգ, եւ դուք քաջեր զէնք առէք, թշնամին տեսէք։ Բայց Մարիամ ձի հեծնելու վիճակի մէջ չէր. Գէորգ զինքը ձիուն վրայ նստեցուց եւ մէկ ցաթկելով ինք ալ իր ձիուն վրայ աշտանակեցաւ։ Հազիւ թէ ձի հեծած էր, տեսաւ որ հինգ հոգի կիրճն անցնելով իրենց կողմը կ'արշաւէին։ — Տէր Աստուած, պոռաց Գէորգ, ասիկայ Լինսին է, զինքն իր ոսկի առուտի տերեւներէն կը ճանչնամ, փախէք Տիկին, ժամանակ վաստըկեցէք քանի որ ես զիրենք կը զբաղեցընեմ, վայրկեան մը մի կորսնցընէք։ Եւ դուք, Թագուհւոյն քովը եղող հեծեալներուն դառնալով ըսաւ, մինչեւ վերջին մարդը պատերազմեցէք եւ մի թողուք որ ձեր Թագուհին նորէն բռնուի։ — Գէորգ, պոռաց Մարիամ, յանուն երկնից կ'աղաչեմ զիս առանձին մի թողուր։ Բայց Գէորգ արդէն երկայն ատեն անհամբերութեամբ իր

երկտասարդական կրակը զսպած էր, եւ իր քաջութիւնը ցըցունելու աս առիթը գտածին պէս փայլակի մը պէս թռաւ եւ հասաւ ան տեղն, ուր որ միայն մարդ անցնելու տեղ կար եւ Նիզակն երկընցընելով հարուածին կը սպասէր: Իսկ Թագուհին փոխանակ Գէորգին խրատուն անսալու, անշարժ շլացածի մը պէս կեցաւ աչքերը աս անհաւասար եւ մահաբեր կռուոյն վրայ դարձընելով, ուր մէկը հինգ հոգւոյ դէմ պիտի կենար: Մէկէն երբ որ արեւու ճառագայթ մը պատերազմողաց վրայ ինկաւ, ճանչցաւ Թագուհին որ Թշնամւոյն մէկուն վահանին վրայ սիրտ մը նկարուած էր, ասիկայ Տուկլասեանց զինանշանն էր: Մարիամ ձեռքերը դէպ ի երկինք վերցուցած աղաղակեց, Տէր ասիկայ վերջին հարուածն ըլլայ Տուկլաս Տուկլասի դէմ, եղբայր եղբօր դէմ: Քովը կեցողները վտանգին մեծութիւնը տեսնելով շարունակ կ'աղաղակէին Տիկին, Տիկին ժամանակ չկորսընցընենք, տեսէք Թշնամին կը մօտենայ: Եւ իրօք հեծելոց բազմաթիւ գունդ մը դէպ ի վեր Թագուհւոյն ուղղութեամբ շարժելու սկսած էր. բայց Մարիամ դեռ կը կենար, եւ մէկէն հառաչանք մը հանեց, տեսաւ որ Գէորգ Նիզակով սիրտը վիրաւորեցաւ ինկաւ: Մարիամ տեսնելով որ պատերազմի դաշտին վրայ սիրտը գրաւող բան մը չմնաց եւ բախտն ալ այնպէս խոժոռ դիմօք իրեն կը նայի՝ մէկէն ան քաջասրտութիւնը կորսնցուց զորն որ այնչափ յառաջուան նեղութիւնները չէին կրցած յաղթահարել: Թող տուաւ իր ձիուն սանձն՝ որն որ իր քովիններուն աղաղակէն գրգռուած սկսաւ փախչիլ: Այսպէս Մարիամ գրեթէ անգղիական վաթսուն մղոնի չափ անդադար ձիավարեց՝ Ռենֆրիւ եւ Էր կոմսութիւններէն անցնելով մինչեւ յոգնածութենէ կիսամահ Տունտրէնէն աբբայութիւնն հասաւ: Հոս վանքին մեծաւորը դրան առջեւ զինքն ընդունեցաւ. Հայր իմ, ըսաւ Թագուհին ձիէն վար իջնալով, ձեր տան դժբախտութիւն կը բերեմ: — Թող բարով գայ մեր վրայ, պատասխանեց վանահայրը, ինչու որ մեր պարտուց ընկերութեամբ կու գայ: Մարիամ

հագիւ կրցաւ քալել. Հէրրիէս՝ որն որ Թագուհւոյն ետեւէն հասած էր՝ օգնեց իրեն եւ զինքը խուցը տարաւ: Հոս Մարիամ իր վիճակին ահաւորութենէն սոսկաց. իր բանակը ցրուած էր, կողմնակիցք կամ ցիր ու ցան եղած էին եւ կամ սպաննուած, եւ իր ամէն քաջլափոխը վեց տարիէ ի վեր արեամբ շաղախած տեսաւ: Միայն երկու որոշում մնացած էր իրեն ընելու. կամ Գաղղիա քաշուիլ, ուր բարի ընդունելութիւն մը կը յուսար, բայց ասկից Սկովտիայի մէջ եղած շարժմունքները դժուարաւ կրնար տեսնել եւ իր օգտին ծառայեցընել, եւ կամ Անգղիա ապաւինիլ, ուր Եղիսաբեթին տարակուսական բարեկամութիւնը զինքը քիչ մը կը վախցընէր. բայց աս միայն կար որ կրնար՝ Սկովտիայի մէջ եղած բաներուն վրայ, Սկովտիայի մէջ գտնուածի պէս գոնէ դատաստան ընել: Թագուհւոյն հաստատուն ու անմահ յոյսը, վերջինը որոշել լաւ համարեցաւ, որուն մէջ նոյն խսկ Հէրրիս ատենակալը դժբախտաբար աւելի եւս զօրացուց: Ասոր համար Սէյթօնին եւ վանահօր աղաչանաց եւ պաղատանաց հակառակ երկրորդ օրը Եղիսաբեթին նամակ մը գրեց զոր մասնաւոր պատգամաւոր մը սահմանները Քէօմպերլէնտ կոմսութեան Լաւթեր անուն կառավարին տարաւ, որն որ անմիջապէս Եղիսաբեթին խրկեց:

Աս դժբախտ պատերազմէն ետեւ յաջորդ շաբաթուան մէջ Թագուհւոյն քանի մը բարեկամք անոր ապաւինած տեղն իմանալով քովը ժողվուեցան. բայց անոնցմէ եւ ոչ մէկը իրեն հանգուցիչ լուր մը բերաւ: Այնչափ աս յաղթութիւնը Մորրէին կառավարութիւնը հաստատեց որ Թագուհւոյն ամէն կողմնակիցք խորհուրդ կու տային որ նորէն փորձ մը փորձելու ատենը չէ: Միայն Թագուհւոյն Անգղիա ապաւինելու ըրած որոշման վրայ, կարծեաց մէջ անմիաբանութիւն ինկաւ. ոմանք վնասակար եւ ոմանք աղէկ կը համարէին. եւ քանի որ ասանկ աս որոշման վրայ իրարու հետ կը վիճէին, անդիէն ծովու կողմանէ փողերու ձայն լսուեցաւ: Մարիամայ արիւնը պաղեցաւ. պատուհանը վազեց ու տեսաւ որ ծովուն

ալեաց վրայ տատանող նաւ մը կեցեր է։ Աս նաւը Անգղիայի դրօշը կը կրէր։ Ժամ մը ետքը Անգղիայի սահմանաց վերատեսուչը Մարեմայ այցելութեան եկաւ եւ Եղիսաբեթին անգիր պատասխանը բերաւ։ Եղիսաբեթ իր Սկովտիացի քրոջը համար միայն ապաստանարան մը կը մատուցանէր, իսկ իրեն համար զէնք առնող մեծերը չէին կրնար իրեն ընկերանալ. միայն քանի մը սպասաւորք կրնային իրեն հետ գալ, որոնց թիւն ալ որոշուած էր։ Մարիամ իրարու ետեւ յաջորդող հոգոց եւ նեղութեանց մէջ արիութիւնը կորսնցընելով ինչ եւ իցէ պայմանները ընդունելու յանձն առած էր։ Թագուհին վերատեսչին պատասխան տուաւ որ երկրորդ օրը առտու անոր նաւուն մէջ կ՚ըլլայ։ Մարեմայ բարեկամք բոլոր օրը քովն անցուցին, եւ անոր միտքը փոխել ջանացին։ Պարապ տեղ՝ իրեն եւ Եղիսաբեթին մէջ եղած այնչափ ատենուանգժտութիւնները կը յիշեցընէին, փուճ տեղ Եղիսաբեթին անհաւատարմութիւնը անոր առջեւը կը դնէին, որն որ Սկովտիայի ամէն փոքր խռովութեանց մէջ յայտնապէս ցըցուցած էր եւ ի վերջոյ ի զուր անոր նախանձոտութիւնն եւ փառասիրութեան տենչն առջեւը կը դնէին, որն որ անոր ամէն գործքերուն առաջնորդ եղած էր։ Ասոր հակառակ զինքը համոզցընել կը ջանային որ Գաղղիա անցնելու կարելի դիւրութիւնը կայ, ուր տեղս որ ստուգիւ ապահովութիւն եւ ցաւակցութիւն կը գտնէր թէպէտեւ աստ եւ այժմ օգնութիւն գտնելու յոյս մը չունենայ։ Բայց Մարիամ մեծ դժուարութիւն կը քաշէր իբրեւ փախստական Գաղղիայի արքունեաց մէջ երեւալ, ուր ատեն մը իբրեւ թագուհի կը փայլէր։ Իր հաւատարիմ բարեկամաց եւ խորհրդականաց բանաւոր պատճառները եւ աղաչանքները զինքը չկրցան շարժել, կարծես՝ թէ աներեւոյթ բազուկ մը զինքը իր բախտին կ՚առաջնորդէր։ Ս. Անդրէի արքեպիսկոպոսը ծնկան վրայ եկած կ՚երդմնցընէր զինքը որ աս խորհուրդը թողու, ուսկից միայն դժբախտ հետեւութիւններ կը գուշակէր։ Հերրիս ատենակալը՝ որն որ յառաջագոյն Անգղիա

ապաւինելու իրեն խորհուրդ տուած էր, եւ ուրիշները իրենց աղաչանքը արքեպիսկոպոսին աղաչանաց հետ միացընելով նոյնը կը հաստատէին։ Մարիամ՝ Եղիսաբեթին գրած նամակներուն վրայ իր յոյսը դրած էր, որոնց մէջ Եղիսաբեթ զինքը կը համոզցընէր որ միայն Անգղիայի մէջ պաշտպանութիւն, ապահովութիւն եւ երջանկութիւն կրնայ գտնել։ Դարձեալ ան անդամանդեայ մատնին անոնց ցըցուց, զոր որ Եղիսաբեթ շատ ատենէ ի վեր իրեն խրկած էր ան պայմանաւ որ աս պարգեւը երկու քերց մէջ սիրոյ եւ մտերմութեան առհաւատչեայ պիտ'որ ըլլայ, եւ ի դիպուածի որ Սկովտիայի թագուհին օգնութեան կարօտ ըլլայ անմիջապէս նոյն մատնին Եղիսաբեթին դարձընէ։ Մարիամ ասիկայ ըրաւ եւ իր հաւատարիմ սպասաւորին ձեռօք նոյնը նամակով մը Եղիսաբեթին խրկեց։ Բայց շլացած Մարիամ դրով պատասխանին չսպասելով նաւ մտաւ եւ տասնուվեց հոգւով Սոլուէի նեղուցն անցնելով առանց վտանգի Ուորքինթընի նաւահանգիստն հասաւ։ Դըժբախտ թագուհին փախչելէն առաջ ժամանակ չունեցաւ կրկին զգեստ եւ քիչ մը դրամ հետն առնելու։

Ցամաք հասածին պէս Եղիսաբեթին նորէն նամակ մը գրելով իր Անգղիա հասնիլն ու գալըստեան պատճառն իմացուց։ Իսկզբան Մարիամ կը բաղձար որ անծանօթ մնայ, բայց մերձակայ անգղիացի ազնուականք իմանալով որ Սկովտիայէն օտարականք եկած են, դիմաւորելու եկան, եւ գծուծ զգեստուց տակ ճանչցան որ եկողը հասարակ կնիկ մը չէ, եւ մեծարանօք Քըքերմըթ յուղարկեցին եւ անկից ալ Քարլէյլ։



# ԳԼՈՒԽ ԺԹ.

Անգղիայի պաշտօնէից մէջ Մարեմայ նկատմամբ բռնելու ընթացից վրայ եղած խորհուրդը. Մարիամ Եղիսաբեթին հետ տեսնուիլ կ'ուզէ. Եղիսաբեթ տեսութիւնը կը զլանայ մինչեւ որ Մարիամ ինք զինք չարդարացընէ ։ Մարիամ ինքզինք քննութեան տակ կը ձգէ. Մորրէ Լոնտոն կ'երթայ եւ Եղիսաբեթէն ընդունելութիւն կը գտնէ ։ Մարիամ ասոր դէմ բողոք կ'ընէ եւ քննութիւնները ընդհատել կու տայ ։

Սէսիլ եւ իր պաշտօնակիցք Մարեմայ Անգղիա ոտք կոխելը մեծ յաղթութեան մը տեղ դրին, վասն զի ան պատուական որսն՝ որուն որ այնչափ ատեն կը սպասէին ինքիրեն իրենց ձեռքն ինկաւ ։ Բայց շփոթած կը կենային եւ ինչ ընելիքը չէին գիտեր, թէ ինչպէս արդարութեան եւ մարդավարութեան քողով իրենց ուզածը փախստական թագուհւոյն նկատմամբ միացընեն ։ Եթէ որ արդարութենէն եւ մեծանձնութենէն զատ ուրիշ բան մը անգղիացի պաշտօնէից խորհուրդներուն չառաջնորդէր, ան ատենը աս ներկայ դէպքիս մէջ այնչափ հոգ ընելու եւ գլուխ ճաթեցընելու հարկ չէր ըլլար ։ "Ապստամբ հպատակաց անողորմ ձեռքէն փախստական թագուհի մը, իր կեանքը վտանգի մէջ տեսնելով, եւ բարեբախտութեամբ անոնց ձեռքէն ազատելով՝ իր մերձաւոր դրացւոյն եւ խնամւոյն բազուկը դիմեց, ուսկից որ կրկին եւ կրկին անգամ բարեկամութեան եւ պաշտպանութեան խոստումներ ընդունած էր„ ։ Աս պարագաները դժբախտ թագուհւոյն յոյս կու տային որ իր վրայ ցաւակցելով օրինաւոր մեծարանքը ցուցուի, եւ բնականապէս լռելեայն կը պահանջէր որ կամ զինքը նորէն մերժուած թագաւորութեան մէջ հաստատեն եւ կամ ազատ թողուն որ ուրիշ արքունիքէն օգնութիւն խնդրէ ։ Բայց Եղիսաբեթ եւ իր խորհրդականք չէին մտածեր թէ արդարութիւնը կամ մեծանձնութիւնն ինչ կը պահանջէն, այլ թէ Անգղիայի որն է օգտակար ։ Կրկին խորհուրդ ընելէն ետեւ պաշտօնեայք երեք բան մտածեցին ։ Առջինն էր զՄարիամ նորէն գահը նստեցընել, երկրորդ զինքն ազատ թողուլ որ Գաղղիա կամ ինչ եւ իցէ օտար

արքունիք երթայ, եւ երրորդ զինքը իբրեւ բանտար-կեալ Անգղիայի մէջ պահել։ Աս երեք խորհուրդ-ներէն ամէն մէկը ծանր հետեւութիւններ կրնային ունենալ։ Եթէ որ Մարիամ, այսպէս կը մտածէին պաշտօնեայք, Անգղիայի միջնորդութեամբ նորէն Սկովտիայի իշխանութիւնը առնուր, ան ատեն ան ապստամբ ազնուականք որոնք որ մինչեւ հիմայ Ան-գղիայի կողմը կը բռնէին՝ անոր արդար բարկութեան պատիժը կը գտնէին։ Եւ երկրին մէջ խաղաղութիւն հաստատելէն, իր կողմնակցութիւնը թէ Անգղիայի եւ թէ Սկովտիայի մէջ զօրացընելէն, եւ Գաղղիայի հետ դաշինքները նորոգելէն ետեւ, մէկէ մը երկիւղ չէր ունենար եւ իր Անգղիայի թագին նկատմամբ ունեցած առջի պահանջումները զէնուց ձեռօք կը սկսէր պահանջել։

Նոյնպէս զՄարիամ թող տալը եւ Գաղղիա անցնելու վերահաս վտանգը ակներեւ էր։ Գաղղիայի թագաւորը բնականապէս պիտի ջանար որ իր հարսը կորսնցուցած թագաւորութիւնը նորէն ձեռք բերէ։ Ասանկով Եղիսաբեթ դարձեալ Բրիտանական կղզւոյն վրայ օտար բանակ մը պիտի տեսնէր, որն որ Սկով-տիացւոց յաղթելէն ետեւ, յարմար առթին Ան-գղիայի վրայ յարձակում ընելու պատրաստ պիտի կե-նար։ Եւ թէ որ Գաղղիայի մէջ կրօնական խռովու-թիւնները դադրին, գուցէ Լօթարինգիայի փառա-սէր իշխանները իրենց ամբարտաւան խորհուրդները նորէն ձեռք կ'առնուն եւ Գաղղիա Սկովտիայի հետ միաբանելով Անգղիայի ան կողման վրայ կը յարձա-կին ուր որ ամենէն տկար եւ քիչ պատսպարուած է։

Ասկից զատ ուրիշ բան մը չմնաց բայց եթէ զՄարիամ Անգղիայի մէջ պահել կամ իբրեւ բան-տարկեալ եւ կամ ազատ։ Աս վերջինը քիչ մը վտան-գաւոր կ'երեւար՝ որովհետեւ Մարեմայ արքունիքը ուղղափառ անգղիացի պալատականներով կը լեցուէր։ Եղիսաբեթէն այնչափ խիստ օրէնքներով ճնշուած ուղղափառ կոմսք եւ ազնուականք Մարեմայ քով կրնային ժողուիլ։ Թէպէտ եւ Եղիսաբեթ իսկզբանէ հետէ Անգղիայի աթոռը նստելէն ետեւ կ'աշխատէր

Մարեմայ՝ Անգղիայի վրայ ունեցած իրաւունքը իբրեւ չափազանց եւ առանց հիման երեւցընել, ի վերայ այսր ամենայնի չէր կրնար չտեսնել որ Անգղիացիք իրեն վրայ միշտ տարբեր աչօք կը նայէին եւ շատերը զՄարիամ յայտնապէս Եղիսաբեթէն աւելի օրինաւոր կը համարէին: Ասոր համար մտածելով որ եթէ Մարեմայ կողմը բռնելու եւ անոր գլխուն եկած դժբախտութեան վրայ ցաւակցութիւն ցուցընելու ըլլար, բնականապէս աւելի եւս իր դժգոհ ազնուականները Մարեմայ հետ սերտիւ կը կապէր, որոնք արդէն անոր մեծ առաւելութիւնները եւ քաշած վիշտերը տեսնելով ի գութ շարժած էին:

Բայց հոգալու բան էր Եղիսաբեթին որ զՄարիամ իբրեւ բանտարկեալ Անգղիայի մէջ պահելով հասարակաց անդորրութիւնը վրան չգրգռէր, եւ այնպիսի անլուր անգթութիւն մը փախստական թագուհւոյն վրայ գործելով, որն որ օգնութեան կարօտ անոր դիմած էր եւ որուն օգնելու խօսք տուած էր՝ արդարութեան եւ մարդասիրութեան դէմ յանցաւոր չգտնուի: Բայց Անգղիայի թագաւորը առանց հոգ մը չունենալէն զատ այնպիսի աքթներով իրենց տէրութիւնը Սկովտիացւոց ձեռքը զօրացընելու կը ջանային: Միջոցներուն ընտրութեան մէջ, անոնց իրաւացի կամ անիրաւ ըլլալը տէրութեան ներկայ շահը եւ օգուտը թող չէր տար որ տեսնեն: Հենրիկոս Գ. Անգղիայի թագաւորը՝ Սկովտիայի թագաւորութեան ժառանգը՝ որն որ սաստիկ ալէկոծութեան հանդիպելով անգղիացւոց նաւահանգիստներուն մէկուն մէջ մտնելու ստիպուած էր, առանց պատճառի եւ առանց իրաւանց շատ տարի գերի պահեց, ոչ հիւրընկալութեան իրաւանց, ոչ ժառանգին մատաղ հասակին եւ ոչ ալ Սկովտիայի թագաւորին արտասուաց եւ պաղատանաց միտ դնելու: Աս աւելի գործքին՝ որն որ բոլոր Եւրոպա զարհուրանօք լեցուց, սքանչելի Եղիսաբեթ հետեւելու բաւական պատճառ տեսաւ: Իր տկար առաքինութիւնը շահասիրութեան վատ ախտէն յաղթուեցաւ, դարձեալ ան սատանայական հաճութիւնն՝ որն

որ խոնարհեալ նախանձորդ մը չարչարելու ատեն
կրնար զգալ, նորէն ոյժ ելաւ։

Բայց այսպիսի անպիտան գործքէն հետեւած
արժանաւոր տուգիւտէն ազատ մնալու, եւ Մարեմայ
նկատմամբ բռնելու վարմանց, ժամանակին պարա-
գայից եւ հարկաւորութեան երեւոյթ մը տալու հա-
մար, այնպէս խարդախ ճամբայ մը բռնեց որ, կար-
ծես թէ միայն ինքն էր որ Մարեմայ երջանկութեան
կը բաղձար։ Մեծ ցաւ եւ տրտմութիւն ցըցուց Մա-
րեմայ պատահած դժբախտութեան վրայ, եւ նամակ
մը գրելով վստահացուց զինքը որ եթէ իր տուած
օգնութեամբը շատանայ եւ Գաղղիայի կամ Սպա-
նիայի եւ կամ ինչ եւ իցէ օտար տէրութեանց միջ-
նորդութիւնը մերժէ, ան ատեն ինք՝ իրեն վրայ ե-
ղած նախատանաց, որն որ ամէն իշխանաց հաւասա-
րապէս եղած կը համարէր, վրէժը կը հանէ։ Վեր-
ջէն յայտնեց Մարեմայ որ յառաջ քան զինուք
Սկովտիայի մէջ մտնելը լաւագոյն կը համարի յոր-
դորանօք եւ նոյն երկրի վրայ ունեցած ազդեցու-
թեամբը խնդիրը խաղաղութեամբ լմնցընելու։ —
Բայց աս ալ գիտնալու է որ նոյն պատգամաւորաց՝
որոնք որ վերոյիշեալ նամակը բերած էին, հրաման
տրուեցաւ որ Մարեմայ գործքերն եւ ամէն ըն-
թացքը դիտեն որ չըլլայ թէ Անգղիայէն ելլէ
երթայ։

Մարիամ Անգղիա ոտք կոխած ատեն առջի
գրուած նամակին մէջ աղաչած էր զԵղիսաբեթ որ
հետը տեսնուի, որպէսզի կրած անիրաւութիւնները
անոր պատմէ եւ իր թշնամեաց չինած ամբաստա-
նութիւններէն ինք զինք արդարացընէ։ Բայց այսպիսի
անձնական տեսութիւնը չէ թէ միայն Մորրէ կոմսին
եւ անոր կողմնակցութեան, այլ նաեւ նոյն իսկ Ան-
գղիայի դահլիճին մէջ եղած անոր բարեկամաց վտան-
գաւոր կրնար ըլլալ։ Ասոր համար Սէսիլ ջանաց
համոզցընել զԵղիսաբեթ որ այնչափ ծանր յանցանք-
ներով ամբաստանեալ կնիկ մը ինչպէս որ զՄարիամ
կը համարէր, կոյս թագուհւոյ մը առջեւ հանել մեծ
անպատեհութիւն է, եւ իր պատուոյն շատ վնասա-

կար, եւ յորդորեց զԵղիսաբեթ որ այնչափ ատեն հետը չտեսնուի, մինչեւ որ Մարիամ Անգղիայի գործակալաց առջեւ ինքզինքը ամէն ամբաստանութիւններէն չարդարացընէ։ Եւ ասի իրաւամբ իրմէ կրնայ պահանջել, կ'ըսէր, որովհետեւ պատմութիւնը կը ցուցընէ որ Սկովտիա Եդուարդ Ա.ին ատեն Անգղիայի աւատ էր, եւ աւատային տիրոջ եւ անոր հպատակաց կռիւներուն մէջ աւատի տէրը դատը կտրելու իշխանութիւն ունի։ Ասկից աւելի փուճ եւ անհիմ պատրուակ չէր կրնար ըլլալ, ի վերայ այսր ամենայնի Սկովտիայի թագուհին որոգայթի մէջ ձգելու միջոց եղաւ, զորն որ խարդախ պաշտօնեայք լարած էին։ Մարիամ՝ Եղիսաբեթին տուած պատասխանին վրայ շատ խռովեցաւ տեսնելով որ իր յոյսերը բոլորովին պարապի կ'ելլեն, ի վերայ այսր ամենայնի չէր կրնար հաւատալ որ այնչափ բարեկամական խօսքերուն վերջն ասանկ ըլլայ, ուստի եւ ինքզինքն աս խեղճ վիճակէն հանելու համար յանձն առաւ որ իր խնդիրը Եղիսաբեթին դատաստանին տակ ձգուի, իր անմեղութիւնը ցըցանէ եւ ամբաստանութեանց ստութիւնը երեւան հանէ։ Մարիամ՝ Եղիսաբեթին դատաստանին տակ ինքզինք ձգելով մտքէն չէր կրնար անցնիլ որ անկից որպիսի ծանր հետեւութիւններ կրնային յառաջ գալ։ Կը յուսար որ Եղիսաբեթ իրեն հաւասար ըլլալով անձամբ իր անմեղութեան ապացոյցները կը լսէ եւ կը քննէ, եւ ոչ եթէ իբրեւ վերին տէր դատաստանական կերպով, ուր հպատակը պարտաւոր է ինքզինքը պաշտպանել, այլ իբրեւ բարեկամ բարեկամի առջեւ ինքզինքն արդարացընելով։ Բայց Եղիսաբեթ այլազգ կը մտածէր։ Մարեմայ եւ անոր հպատակաց մէջ ինքզինքը դատաւոր համարելով դատաստանն ուզածին պէս կրնար երկընցընել կամ զանազան խնդիրներ մէջը խառնելով դժուարացընել։ Եւ աս մտօք սկսաւ պատրաստութիւններ տեսնել, գործակալներ ընտրեց, որոնք դատաստանի ներկայ պիտի ըլլային, Սկովտիայի կառավարին գրեց որ նոյնպէս պատգամաւորներ խրկելով իրենց թագուհւոյն վրայ ըրած ամբաս-

*տանութիւնները ցրցանէ, եւ մինչեւ հիմայ իր բռնած վարմունքին արդարացընէ։*

*Մարիամ մինչեւ այս ժամանակս զարմանալի դիւրահաւանութեամբ Եղիսաբեթին ըրած բարեկամական խօսքերուն հաւատալով կը սպասէր որ այնչափ անոյշ խօսքերը վերջապէս իրենց պատշաճ արդիւնքն յառաջ կը բերեն։ Բայց ուշ անոր խորամանկ դիտաւորութիւնները թափանցելով իմացաւ որ որչափ իր պատուոյն վնասակար է իր ապստամբ հպատակաց հետ մի եւ նոյն դատաստանի տակ մտնել այնպէս մէկու մը առջեւ որ յափշտակութեամբ ինքզինքը իրենց վերին տէր կ'ուզէ ընել։ Անոր համար շուտով իր հաւանութիւնը ետ կանչեց եւ բողոք ընելով կը մերժէր, ըսելով որ ինչ եւ իցէ դատաստան մը փոխանակ ժամանակ կը ծախէ որուն ամէն վայրկեանները ինծի դանկագին են, յապաղում ընելով կառավարին յափշտակած իշխանութիւնը կը զօրանայ եւ իմ կողմնակիցք կը թուլնան երբոր տեսնեն որ ես իմ ապստամբ հպատակաց հետ միատեղ մի եւ նոյն դատաստանի մէջ կը դատուիմ իբրեւ յանցաւոր։ Եւ ուսկից եկած է այս առաջարկութիւնը. ան մարդէն չէ մի՞ որն որ միշտ իմ դառն թշնամիս էր. ո՞վ պիտի ընտրէ գործակալները կամ ո՞վ դատաստանին ընթացից վրայ պիտի հսկէ։ Անտարակոյս կողմնակցութիւն մը՝ որն որ քանի որ թագաւորական իշխանութիւնս ձեռքս ունէի, իմ ապստամբ հպատակացս օգնութիւն ընելէն չէ դադրած. եւ վերջապէս ո՛վ պիտի ըլլայ իմ դատաւորս. չեմ կրնար ինծմէ վեր մէկն ընդունիլ. անկախ թագուհի եմ եւ ոչ երբեք կրնամ զիջանիլ եւ Սկովտիոյ թագս օտար իշխանի ոտքը դնել։ Անոր համար կը պահանջեմ որ կա՛մ Սկովտիա դառնալու թողուն զիս եւ կա՛մ Անգղիոյի վրայէն Գաղղիա անցնելու հրաման տան։ — Մարեմայ ըրած պահանջումը բարի եւ արդարացի էր, բայց իր թշնամեաց կամացը համաձայն չէր եւ իրենց խորհուրդներուն ձեռք չէր տար, անոր համար իսկզբան փախուստ տուին եւ յետոյ բացարձակապէս մերժեցին։*

Աս ապօրինաւոր քաղաքականութիւնը՝ որն որ հետզհետէ Մարեմայ ամէն ակընկալութիւնները ի դերեւ կը հանէր, զինքը բիւրաւոր մտածութեանց եւ խորհուրդներու կը տանէր, որոնք Թագուհւոյ մը պատուոյն եւ զրպարտութեամբ մշտացեալ կնոջ մը սրտէն կը բղխէին: "Անգղիա գալուս պատճառը, կ'ըսէր, Լոշըրվէն բանտին մէջ Եղիսաբեթէն ընդունած վստահացուցիչ խօսքերէն էր, որոնց դիւրահաւանութեամբ ականջ դրի. եթէ Եղիսաբեթ զղջացած է տուած խոստմանց վրայ, գէթ աս կրնայ ընել որ իրմէ խաբուած իշխանուհւոյ մը հրաման տայ որ Անգղիայէն անցնելով ուրիշ արքունիքներէն օգնութիւն խնդրեմ: Անգղիայի Թագուհին՝ փաստահամբաւ եւ ապստամբ Մորրէ կոմսին ընդունելութիւն տուած է, առանց միտ դնելու անոր յանցանաց, զորոնք նոյն իսկ ինքն անձամբ Եղիսաբեթին առջեւ խոստովանած էր, եւ հիմայ կը մերժէ ազգական Թագուհի մը ընդունելու որ անմեղ է եւ իր անմեղութիւնը ցուցընելու պատրաստ է: Իմ Թշնամիքս չսպասեն որ բանտիս մէջ անոնց սուտ ամբաստանութեանց պատասխան տամ, անոնք իմ հպատակներս են, իմ հաւասարս չեն, եւ աւելի սիրով յանձն կ'առնում բանտիս մէջ մեռնիլ քան եթէ անոնց հետ մի եւ նոյն դատաստանի մէջ հաւասար սեպուիլ: Եղիսաբեթ ազատութիւնս նորէն ձեռքս տայ, ան ատեն ես իմ բարի ազգականիս քով իբրեւ բարեկամի եւ ոչ եթէ իբրեւ դատաւորի առջեւ անմեղութիւնս կը ցուցընեմ: Մորթըն եւ Մեթլէնտ իմ ամուսնոյս գլխաւոր դաւաճանները թող երեւան, դիմացս ելլեն, սիրով Ուէսթմինսթերի սրահին մէջ Անգղիայի Թագուհւոյն եւ անոր ազնուականաց առջեւ անմեղութիւնս կը ցուցընեմ: Մէկ խօսքով Եղիսաբեթ չէզոք մնայ, անկից աւելի բան չեմ պահանջեր. եթէ կ'ուզէ՝ խոստացած օգնութիւնը ետ առնու, բայց միանգամայն ալ կը պահանջեմ որ իմ ապստամբաց օգնութիւն չընէ, որոնք զիս իրենց Թագուհին աթոռէն վռընտեցին,,:

Ասկից ետեւ աւելի ստիպողական եղանակաւ կը

խնդրէր Մարիամ որ Եղիսաբեթին առջեւ ելլէ, եւ անոր նամակ մը գրելով սրտին խռովութիւնն եւ դառնութիւնը յայտնեց։ "Հիմակուան պարագայիցս մէջ ոչ կ'ուզեմ եւ ոչ ալ կրնամ իմ հպատակացս ամբաստանութեանց պատասխան տալ։ Պատրաստ եմ տուած խոստմանս համաձայն զձեզ հանդարտեցընել եւ իմ վարմունքս արդարացընել։ Բայց իմ հպատակներս ինծի հաւատար չեն, եւ ասոր համար չեմ ուզեր օտար դատաւորին դատաստանին գլուխ ծռել. . .։ Ձեր բազկաց դիմեցի, համարելով որ դուք իմ մերձաւոր եւ ամենալաւ բարեկամս էք։ Իմ կարծեացս համաձայն ձեզի պատիւ մ'ընել ուզեցի, ուրիշ իշխաններէն աւելի զձեզ վերադասելով որ փախստական թագուհի մը նորէն աթոռը նստեցընէք. . .։ Իմ խորթ եղբայրս ձեր առջեւը հանել թող տուէք որն որ ապստամբ էր, եւ ինծի աս պատիւը կը զլանաք։ Աստուած չընէ որ ես ձեր բարի անուան բիծ մը գնեմ. . .։ Կամ թող տուէք զիս որ ուրիշ իշխանաց դիմեմ, որոնք քաշած չարչարանքներէս շարժեալ ինծի օգնելու չեն դժուարիր, կամ դուք օգնեցէք. . ."։

Այս թուղթը Եղիսաբեթին վրայ քիչ ազդեցութիւն ըրաւ, ի վերայ այսր ամենայնի Անգղիայի պաշտօնեայք երկայն խորհուրդ ընելէն ետեւ որոշեցին որ Մարիամ Եղիսաբեթին արքունեաց մէջ ընդունելութիւն չգտնէ, մինչեւ որ ինքզինք ամբաստանութենէն բոլորովին չարդարացընէ։ Անգղիայէն դուրս ելլելու խնդիրը մերժեցին, եւ Քարլէյլէն Պոլթըն դղեակը զՄարիամ տանել տուին, ուսկից որ դժուարաւ կրնար փախչիլ։ Աս դղեկէն Մարեմայ թղթակցութիւնը Սկովտիայի մէջ եղած բարեկամաց հետ շատ դժուարացաւ եւ փախչելու յոյսը բոլորովին կտրուեցաւ։ Հոս սկսաւ զգալ Մարիամ որ անողորմ Եղիսաբեթին ձեռքն ինկած է։ Ազատութեան զսպուելուն ճաշակն առած ըլլալով վերջի բանտարկութեան զարհուրանքները դեռ մտքին մէջ կենդանի նկարուած էին, եւ հիմայ նոր եւ գուցէ աւելի խիստ թշնամւոյ ձեռքն ինկած ինքզինքը տես-

նելով, անհնարին վհատութեան մէջ ինկաւ։ Շատ զղջաց Ս. Անտրէ արքեպիսկոպոսին խոհեմ խորհուրդին չանսալուն. Եղիսաբեթէն աւանկ չարաչար խաբուելուն վրայ դառն կ'արտասուէր չարիքը գլխուն գալէն ետեւ։ Դառն տրտունջներ կ'ընէր Անգղիայի շահախնդիր քաղաքականութեան վրայ որ զինքը խաբելով աւանկ դժբախտութեան հասցուց։ — Խեղճ Մարիամ մտքէն չէր անցըներ որ խաբեբայ պաշտօնէի մը եւ անհաւատարիմ թագուհւոյ մը մէջ կենաց եւ մահու պատերազմ մը բացուած ըլլայ, որուն մէջ ո՛չ իրաւունք ո՛չ արդարադատութիւն, ոչ հաւատարմութիւն եւ ոչ հաւատքն յաղթող պիտի ելլէր, այլ անի որ զօրաւոր էր տկարին վրայ յաղթանակ պիտի կանգնէր։

Բայց կրնայ հարցուիլ որ ինչ իրաւամբ Անգղիա զՄարիամ բանտ կը դնէ. ինքն Եղիսաբեթին հպատակ չէ. անոր բացայայտ հրաւիրելով Անգղիա ոտք կոխած է, եւ աս դժբախտ երկիրը գալէն ետեւ նոյն երկրին օրինաց դէմ բան մը գործած չէ, եւ վրան դեռ յանցանք մը ցրցուցած ալ չէ։ — Ասոր պատասխանն աւանկ կու տան։ Մարիամ իսկզբան Անգղիայի վրայ ունեցած իրաւունքը կը պաշտպանէր, եւ ոչինչ ընդդէմ 'է որ ազատութիւն գտնելու ըլլար նոյն խնդիրը կը նորոգէր։ Իբրեւ ուղղափառ թէ ներքին եւ թէ արտաքին ուղղափառաց օգնութեան վրայ ապաւինելով նորէն գահը նստելէն ետեւ Անգղիայի եւ Սկովտիայի բողոքական կրօնը վտանգի մէջ կ'իյնայ։ Ասոր համար հոգւով եւ մարմնով Անգղիայի պաշտօնեայք կը ջանային որ Մարեմայ վրայ դատաստանական քննութիւն ըլլայ, յուսալով որ գէթ ասով անոր բարի անունն եւ հասարակաց համարումը կորսնցընել կու տան։ Բայց Մարիամ իր թագաւորական պատիւը ոտքի տակ առնող քննութիւնը բացարձակապէս կը մերժէր։

Խորամանկ Սեսիլ Մարեմայ հաստատութիւնը տեսնելով ուրիշ միջոց մը մտածեց, որն որ նոյնպէս իր դիտած վախճանին կը հասցընէր, այսինքն առաջարկեց իր դատաստանն ուղղակի Մարեմայ վրայ

չըլլայ պըլ իր ապստամբ հպատակաց վրայ, որոնք եթէ անմեղ ցուցուելու ըլլան իրենց պատիւն եւ իշխանութիւնը պահեն, իսկ ասոր հակառակ թէ որ յանցաւոր ելլեն Մարեմայ թող տրուի զանոնք պատժել կամ անոնց թողութիւն տալ։ Եւ եթէ որ Մարիամ աս առաջարկութիւնն ընդունի, ան ատեն կը խոստանայ Եղիսաբեթ քանի մը պայմաններ դնելով Սկովտիայի հպատակները օրինաւոր ճամբու բերել եւ զինքը նորէն գահը նստեցընել։ Աս պայմաններէն մէկն էր որ Մարիամ Սկովտիայի մէջ ուղղափառ պատարագը վերցընէ եւ երիցական եկեղեցւոյ տեղ անգղիական կրօնը խօթել տայ։ Հերրիս ատենակալը գրեթէ ստիպողական կերպով խորհուրդ տուաւ Մարեմայ որ աս պայմանն ընդունի, նոյնը 16 ատենակալք որոնք որ Մարեմայ կողմնակիցք էին խորհուրդ տուին որ ընդունի։ Մարիամ ակամայ կամօք աս պայմանը ընդունեցաւ, եւ իր կողմնակցաց հրատարակեց որ "Թէպէտեւ ուղղափառ կրօնի մէջ մեծցած եւ կրթուած եմ, որն որ երկայն ժամանակ իմ տէրութեանս կրօնն էր, ի վերայ այսր ամենայնի իմ պատուական քրոջս խորհրդոց կը հետեւիմ, եւ թէ որ վիճակներս հաւանութիւն տան, ըստ կարի իմում պիտի ջանամ որ նոյն կրօնը (Անգղիականը) տէրութեանս մէջ տարածել տամ,,։

Մարիամ աս առաջարկութիւնն ընդունելէն ետեւ, բանակցութեան կամ քննութեան տեղը Եորք քաղաքը որոշուեցաւ։ Աս ծանր խնդիրը որոշող գործակալները Եղիսաբեթին կողմանէ ընտրուած էին Սէօսէքս կոմսը, Ռալֆ Սատլէր Սէսիլին մտերիմ բարեկամը։ Մարեմայ գործակալներն էին Լէսլէյ Ռոսի եպիսկոպոսը Լիվինկսթըն, Պոյտ եւ Հերրիս ատենակալներէն զատ ուրիշ չորս հոգի ալ։ Իսկ Մորրէ կոմսին կողմնակցութենէն ներկայ էին նոյն ինքը, Մորթըն, Լինտի, Օրքնի եպիսկոպոսը, Ցէօմֆէրմլինի մեծաւորը եւ Մեթլէնտ ուրիշ քանի մը խորհրդականներով։

Այս բանակցութեան մէջ մտնող իրարու հակառակ կողմնակցութեանց դիտաւորութիւնը եւ ա-

կրօնականութիւնները շատ տարբեր էին։ Մարեմայ գլխաւոր դիտումն ան էր որ կորսնցուցած իշխանութիւնը նորէն ձեռք բերէ եւ միայն աս պատճառաւ էր որ զինքը շարժեց օտար իշխանութեան մը դատաստանին տակ իր խնդիրը ձգելու, զորն որ յառաջագոյն այնչափ զարհուրանօք մերժած էր, եւ ասոր համար կը պնդէր որ Եղիսաբեթին տուած բացայայտ զինքը նորէն գահը նստեցընելու խոստումը բանակցութեան արձանագրին մէջ դրուի։ Իսկ Մորրէ կոմսին գլխաւոր նպատակն էր ձեռք բերած իշխանութեան մէջ ինք զինք հաստատելով իր կողմնակիցներն ապահովցընել, եւ ասոր համար ինքն ալ նոյնպէս Եղիսաբեթէն վստահութիւն առաւ որ եթէ Մարիամ յանցաւոր ցուցուելու ըլլայ չթողու որ նորէն Սկովտիա գայ։ Բայց Եղիսաբեթ անոնցմէ բոլորովին տարբեր դիտաւորութիւններ ունէր։ Եւ որովհետեւ աս խնդիրն երկու ելք կրնար ունենալ անոր համար երկուքին նկատմամբ քննելու ճամբան որոշած էր։ Եթէ որ Մարեմայ վրայ եղած ամբաստանութիւնները ստուգուելու ըլլան, միտքը դրած էր որ անոր ամենայն օգնութիւն զլանալով զինքը թագաւորութեան անարժան հրատարակէ. իսկ եթէ որ Մարիամ անմեղ ելլէ, եւ միայն թագաւորութիւնն անպիտան կառավարելուն վրայ խնդիրը մնայ, միտքը դրած էր որ զինքը նորէն գահը նստեցընէ, բայց այնպիսի սեղմիչ պայմաններով որ բոլորովին Անգղիայէն կախում ունենար եւ իր հպատակաց գերիի պէս ըլլար։

Ըստ ինքեան իրին նայելու ըլլանք կը տեսնենք որ Եղիսաբեթ աս խնդրոյս մէջ իբրեւ դատաւոր նստելու բնաւ իրաւունք չունէր, բայց երկու կողմնակցութիւններն իրարու հետ հաշտեցընելու թէ՛ պարտաւորութիւն ու թէ՛ կարողութիւն ունենալով ամէն մարդ կը յուսար որ միջնորդ մնալով կը համոզցընէ զՄարիամ որ անցած գացած բաներուն վրայ քող մը ձգելով իր հպատակաց թողութիւն տայ, եւ կամ զապստամբները խրատէ որ անկից վերջն իրենց թագուհւոյն պարտաւոր հնազանդութիւնը

չըլլան։ Բայց ինք ասոնք չընելէն զատ նայեցաւ որ իրենց մէջ անմիաբանութեան ոգին աւելի եւս բորբոքէ, զՄորրէ կոմսն ի մասնաւորի գրգռեց ինչպէս որ Անտերսըն կը պատմէ որ իբրեւ դատախօսող Մարեմայ վրայ ամբաստանութիւն ընէ։

1568ին Օգոստոսի 8ին Մարեմայ, Եղիսաբեթին եւ Մորրէ կոմսին գործակալք Եորք քաղաքը ժողվեցան, եւ երդում ըրին որ ըստ Աստուծոյ, բանաւորապէս, արդարութեամբ եւ ճշմարտութեամբ խօսին եւ վկայեն։

Երբոր ամէն պատրաստութիւնները լմնցան, Մարեմայ գործակալք ամբաստանեցին զՄորրէ եւ անոր կողմնակիցներն որ իրենց օրինաւոր թագուհւոյն դէմ զէնք վերցուցին, եւ դաւաճանութեամբ Լոչլըվէն բանտ դրին, եւ մահու սպառնալեօք թագաւորութենէն հրաժարել տուին։ — Ամէն մարդ կը սպասէր որ Մորրէ աս ամբաստանութեանց դէմ անզարհուրելի եւ բնութեան դէմ գործքը յառաջ պիտի բերէ, որով յառաջագոյն զՄարիամ վատահամբաւած էր, այսինքն Տառնլիին սպանումը։ Բայց Մորրէ ասի չըրաւ այլ Անգղիացի գործակալաց քով երթալով Մարեմայ յանցանաց ապացոյցները ծածուկ յայտնել ուզեց իբրեւ առանձնական մարդիկներու։ Պէտք է մտածել, ըսաւ, որ իմ եւ բարեկամացս կեանքը կշիռքի մէջ է, անոր համար հարկ կը համարիմ թագուհւոյն վրայ հրապարակաւ ամբաստանութիւն ընելէն յառաջ, ապահով ըլլալ որ արդեօք բերած ապացոյցներս բաւական են յանցանքը ցըցունելու, եւ թէ դատաւորք դատավճիռը կու տա՞ն, եւ թէ արդեօք վստահութիւն կու տան իրեն որ դատավճռէն ետեւ Մարիամ ոչ երբեք գահը պիտի նստեցընեն։ Ասոր վրայ նոյն գործակալաց ծածուկ յայտնեց տասնութը նամակաց թարգմանութիւնները, զորոնք որ Մարիամ թէ Տառնլիին մահուընէ յառաջ եւ թէ ետքը Պոթուէլին գրած ըլլայ. դարձեալ ամուսնութեան երկու դաշնադրութիւններն որոնց թէ Մարիամ եւ թէ Պոթուէլ ստորագրած ըլլան, եւ շատ մը սիրահարական երգեր որոնց համար կ'ըսէր

թէ Մարիամ Պոլթուելին խրկած ըլլայ։ Անգղիայի գործակալք ատոնց որոշ պատասխան մը չկրնալով տալ Եղիսաբեթին գրեցին եւ Նոր Հրամանի կը սպասէին։

Երբոր դատաստանական մանաւանդ մահու եւ կենաց ընթացից մէջ ցուցումներ կամ զորանք հակառակորդ կողմն իբրեւ յաղթահարող ապացոյցներ գործածել կ'ուզէ, սովորութիւն է ամէն երկրի մէջ ուր որ քիչ մ'ալ արդարութեան սկզբունք տիրած են, նոյներին ամբաստանելոյն ցուցընել, որպէսզի զանոնք ճանչնայ կամ մերժէ, որովհետեւ միայն անոնք ճանչնալէն կամ ընդունելէն դատաստանի մէջ կրնան զօրութիւն ունենալ։ Հոս տեղս Մորրէ կողմն իր ապացոյցները ծածուկ Անգղիայի գործակալաց հաղորդեց, եւ Մարեմայ գործակալքն անոնցմէ տեղեկութիւն մը չունէին։ Եթէ աս նամակները վաւեր էին, ինչո՞ւ Մորրէ զանոնք հրապարակաւ հրատարակելու կը վախնար. չէ՞ր գիտեր որ անոնցմով դատաստանը լմընցուցած կ'ըլլար։ Գուցէ ծածուկ գործակալաց յայտնելով իր քրոջը խնայել ուզած ըլլայ, որպէս զի անոր անունը չաւրէ։ Բայց նոյն ապացոյցներով չէ՞ր մի որ Մարեմայ անունը աղարտել ուզած է։ Մարիամ ուզած չէ՞ր մի որ նոյն թղթերն առջեւը դրուին, բայց մտիկ ընող չեղաւ։ Ուրեմն նոյն թղթերը սուտ էին եւ Մարեմայ գործք չէին, ապա թէ ոչ քննութեան առջի օրը Մորրէ անոնցմով զինքը պապանձեցուցած կ'ըլլար։ Եւ դարձեալ ինչո՞ւ համար նամակներուն բուն օրինակը չեն բերուիր այլ անոնց թարգմանութիւնը միայն։ Ճշմարտութիւն մը երեւան հանելու համար ասանկ վարմանց եղանակ մինչեւ հիմայ եղած չէ։

Մեր ըսած էինք որ Անգղիայի գործակալք Մորրէ կողմին աղաչանքով Եղիսաբեթին գրած էին եւ պատասխանի կը սպասէին. ասով քննութիւնը բնականապէս կ'ընդհատէր, բայց Մորրէ ասիկայ չընելու համար իր վրայ եղած ամբաստանութեան դէմ ուղղակի պատասխան տուաւ ըսելով որ ինքն եւ իր բարեկամք չէ թէ թագուհւոյն դէմ զէնք

տուած էին, այլ Պոլթուելին դէմ, որուն իշխանութեան տակ Թագուհին ինկած էր, բայց որովհետեւ Թագուհին Պոլթուելէն չէր ուզեր բաժնուիլ, իրենք զինքն անկից բաժնեցին, եւ վերջապէս Թագուհւոյն հրաժարումն ընդունած են եւ ոչ եթէ բռնութեամբ առած: — Թագուհւոյն գործակալքն ալ անհիմն եւ անզօր ջատագովութիւնը անանկ ցրեցին որ Մորրէ եւ իր կողմնակիցք խոստովանեցան, ինչպէս որ Անտերսըն կը պատմէ, թէ ալ տուած իրենց պատասխանն աւերեւոյթ ջատագովութիւն մըն է. Թէպէտ եւ երդում ըրած էին ճշմարտութեամբ խօսելու, առանց ատելութեան եւ վրէժխնդրութեան, մարդկային նկատմանց չնայելով խօսիլ եւ վկայել ինչպէս որ ամենազօր Աստուծոյ առջեւ կը խոստովանէին:

Այս ժամանակներս երբոր Եորք քաղքին մէջ բանակցութիւնները կ'ըլլային, Սկովտիայի մէջ երկու գլխաւոր կողմնակցութիւն կազմուեցաւ: Առջինը Թագաւորին կողմնակցութիւնն էր՝ որուն գլուխը Մորրէ կոմսն անցած էր. իսկ երկրորդը Թագուհւոյն՝ որուն գլուխն էր Համիլթընի դուքսը, որն որ քիչ մ'առաջ Գաղղիայէն դարձած էր: Երկու կողմնակցութիւնք ալ խաղաղութիւն ընելու բաղձանք կը ցուցնէին: Գիտէր Մորրէ որ իր բերած ամբաստանութեանց դիմացն իրեն եւ իր բարեկամաց դէմ աւելի զօրաւոր ամբաստանութիւն պիտի ելլէ, որուն ապացոյցները աւելի հիմնական էին:* Եթէ որ յաղթուելու ըլլար անտարակոյս իրաւամբ բարկացած քրօջը սրտմտութեանը զոհ

---

*) Աս նամակաց վաւերականութեան կամ սուտութեան վրայ այնպիսի մէկն իր խորհրդածութիւնը ըրած է, որն որ նոյներուն վրայ դատաստան կարելու վիճակի մէջը էր, այսինքն Սէօսէքս կոմսը նոյն բանակցութեան անդամներէն մէկը. Թէ որ Մարեմայ ամբաստանիչները նոյն նամակներէն ապացոյցներ առնելով զինքը Տառնլիին սպանութեան յանցաւոր հրատարակել կ'ուզեն, ան ատեն զանոնք ուրանալէն ետեւ կրնայ նոյն նամակներով ամբաստանիչներէն շատերը սպանութեան հաղորդ ամբաստանել. եւ ան ատեն շատ դժուարաւ կրնան իրենք զիրենք պաշտպանել, ինչու որ Թագուհւոյն պատճառները ամէն կողմանէ մտածելով շատ յաղթահարող են:"

պիտի ըլլար, իսկ եթէ որ յաղթելու ըլլար, դարձեալ իրեն օգուտ մը չէր ըլլար. որովհետեւ մինակ թագաւորը հիւանդագին ըլլալով երկարակեաց կենաց յոյս չէր տար, եւ ըստ յաջորդութեան իրաւանց թագաւորութիւնը Շաթելըրոյ դքսին պիտի իյնար որն որ իր մահուչափ թշնամին էր։ Ասոր համար Մարեմայ վրայ ըրած ամբաստանութիւններն ետ առնել եւ խորհրդանոցին վճռով զինքը անմեղ հրատարակել, եւ տարեկան մուտք մը իրեն կապել տալ ուզեց, թէ որ Մարիամ թագաւորութենէ հրաժարումը նորէն հաստատէ կամ գէթ թագուհւոյ տիտղոսը պահելով Անգղիայի մէջ բնակելու յանձն առնու, եւ իրեն (Մորրէ կոմսին) Սկովտիայի կառավարութիւնը թողու։ Իսկ Շաթելըրոյ դուքսն ասոր հակառակ Մորրէ կոմսին խորամանկութիւնը գիտնալով, եւ Լինոքս գերդաստանին թագաւորութեան վրայ նոր ստացած իրաւունքներէն վախնալով, կը պահանջէր որ Սկովտիայի կառավարութիւնը նորէն Մարեմայ ձեռքը տրուի։ Բայց պատրաստ էր միանգամայն մանկահասակ իշխանն Անգղիա խրկելու որ Եղիսաբեթին քով կրթուի, եւ յանձն առաւ որ Սկովտիա ազատ ընտրութեամբ ազնուականաց ժողովքով մը կառավարուի, որուն մէջ իւրաքանչիւր ազնուական իր աստիճանին համաձայն տեղ ունենայ։ Շաթելըրոյ դուքսն ասով ուրիշ բան չէր ուզեր, բայց եթէ գլխաւոր իշխանութիւնը ձեռք բերել։ Անոր համար Սէօսէքս կոմսը նոյն ատենն աղէկ գրուցեց որ աս կողմնակցութիւններն ոչ թագուհւոյն եւ ոչ մանկահասակ թագաւորին բարիքը կը բաղձան, հապա իրենց շահուն կը նային։ Նոյնպէս Նորֆոլք դուքսը գրուցեց որ ամէնք իրենց շահն ապահովցընելու ետեւէ են, եւ իրենց վախճանին հասածին պէս ոչ թագուհին եւ ոչ իշխանը կը հոգան։

Մորրէ՛ զՄարիամ իր առաջարկութեան համոզցընելու համար խաբեբայ Մեթլենտին դիմեց։ Ասիկայ բարեկամի երեսով Մարեմայ քով եկաւ ապահովցուց զինքն որ իր Եորք գալուն բուն պատճառն ուրիշ բան չէր բայց եթէ իրեն ծառայել եւ

օգտակար ըլլալ. եւ ծածուկ նոյն համբաւեալ նամակաց Սկովտիայի լեզուաւ թարգմանութիւն մը տալով, խորհուրդ կու տար իրեն՝ որ իր համբաւը պահելու համար խաղաղութիւն ընէ։ Վերջէն յանուն Մորրէ կոմսին Նորֆոլք դքսին դիմեց եւ Մարեմայ անմեղութիւնը խոստովանելէն ետեւ յանուն Սկովտիացւոց ազգին՝ կ'աղաչէր զինքը որ Մարեմայ հետ ամուսնանայ, եւ ի մէջ այլոց կ'ապահովցընէր դուքսն որ եթէ ամէն դժուարութիւնները թող տրուելու ըլլան, Անգղիայի պաշտօնեայք նոյն համբաւեալ նամակները չեն հրատարակեր։ Նոյնպէս Մեթլէնտ՝ Ռոսի եպիսկոպոսը համոզցընել ջանաց որ եթէ Մարիամ Լոշլըվէն դղեկին մէջ ըրած հրաժարումը հաստատելու ըլլայ եւ Նորֆոլք դքսին հետ ամուսնանանայ, Անգղիայի թագուհին զինքը նորէն Սկովտիայի աթոռը կը նստեցընէ։

Մէտիլ եւ իր պաշտօնակիցք անանկ կ'երեւցընէին որ ամէն կողմնակցութեան անաչառութեամբ արդարութիւն ընելու ծանր պարտաւորութիւն կը զգան, բայց անոնց առանձնական թղթակցութենէ յայտնի կը տեսնուի որ միայն Սկովտիայի թագուհւոյն վնասուն կը բաղձային, եւ անկից իրենց օգուտ մը հանելու ետեւէ էին։ Իրենց գլխաւոր դիտմունքն աս էր որ զՄարիամ՝ ամուսնական անհաւատարմութեան, եւ մարդասպանութեան ամբաստանութեամբ բոլոր Եւրոպայի առջեւ վատահամբաւեն։ Երբ քաղքին բանակցութեան վիճակը, Մորրէ կոմսին ամբաստանութեանց նկատմամբ ունեցած վախը, անոր բերած ապացոյցներուն անբաւականութիւնը, նոյնպէս Նորֆոլք դքսին Մարեմայ հետ ամուսնանալու խորհուրդը եւ Մեթլենտի սերմանած երկպառակութիւնները տեղն ի տեղ իմացած էին։ Անգղիայի դահլիճը Մորրէ կոմսին վերը ըրած խնդրոյն ուղղակի պատասխան տալու տեղ, պատասխանեց որ նոյն խնդիրներն ի գիր չեն կրնար անցնիլ, անոր համար ըսաւ որ ամէն կողմնակցութենէ երկ'երկու հոգի Ռալֆ Սատլերին հետ շուտով արքունիք գան որպէսզի անձամբ թագուհւոյն առջեւ խնդրոյն վրայ

քինութիւն ըլլայ։ Մարիամ աս անակընկալ պահանջման վրայ շատ զարմացաւ, բայց մէկալ կողմանէ ուրախացաւ տեսնելով որ իր դատը վերջապէս Եղիսաբեթին առջեւ կ'ելլէ։ Մորրէ իր պատգամաւորները խրկելով բաղձանք ցըցուց որ ինքն ալ կ'ուզէ գալ, իսկ Սէսսէքս եւ Նորֆոլք տեսնելով որ իրենց հարկաւորութիւն մը չկայ իրենց տեղը դարձան. ասանկով Եորքի բանակցութիւնը գործնականապէս լուծուեցաւ (20 Հոկտ.)։

Մարիամ մինչեւ հիմայ կը յուսար որ իր խնդիրը յաջողութեամբ պիտի երթայ, եւ կը պարծենար որ իր գործակալներն Եորքի բանակցութեան մէջ աւելի հաստատուն պատճառներով հակառակորդները պապանձեցուցած են եւ իրենց ստայօդ ամբաստանութիւնները լռեցուցած են։ Բայց երբոր լսեց որ Մորրէ Լոնտոն գնաց եւ Եղիսաբեթին խոստման հակառակ ընդունելութիւն գտաւ, սիրտը շատ կոտրեցաւ տեսնելով որ Եղիսաբեթին խոստացած անկողմնակալութիւնն եղծուած է. իմացաւ որ ծածուկ դաւաճանութիւն մը զինքը կործանելու երդում ըրած է, ասոր համար իր գործակալաց գրեց որ անմիջապէս Անգղիայի մեծերուն եւ օտար տէրութեանց դեսպանաց առջեւ բողոքեն որ ազգաց օրինաց դէմ զինքը բանտ կը պահեն Անգղիայի մէջ, իր ապըստամբ հպատակներն Եղիսաբեթէն ընդունելութիւն կը գտնեն, կատարեալ ազատութիւն կը վայելեն, իսկ զինքը խիստ եւ անարգ բանտարկութեան մէջ թող կու տան որ հիւծի, եւ թէ Եղիսաբեթ զանոնք կը գրգռէ որ իրեն դէմ ամբաստանութիւն ընեն եւ իր անոնց դէմ բերած ամբաստանութեանց զանազան դժուարութիւններ կը հանէ։ Աս ամէն պատճառաց համար կը պահանջէր Մարիամ որ ինքն ալ Եղիսաբեթին առջեւ ելլէ եւ ամբաստանիչներն իր դիմացը հանուին որպէսզի ուղղակի անոնց պատասխան տայ։ Մարիամ ասանկ իր գործակալաց գրելէն ետեւ, հրամայեց որ եթէ իր ուզածները չեն կատարուիր, հրատարակեն թէ իրենց լիակատար իշխանութիւնն եւ բանակցութիւնը լմնցած է, եւ

անկից վերջն ամէն եղած որոշմանց դէմ բողոքեն, զանոնք իբրեւ ոչինչ համարին եւ իրենց անցագիրները խնդրեն։

Հետեւութիւնը ցըցուց որ Մարեմայ կասկածն առանց հիման չէր։ Մորրէ կոմսին Եորք քաղքի մէջ ըրած հարցման յաջող պատասխան տուեցաւ որ Սկովտիայի Թագուհւոյն ոչ երբեք կը թողուն որ իշխանութիւնը նորէն ձեռք առնու, եւ ինչ որ ինքը (Մորրէ) ընելու ըլլայ մեծ հաճութիւն պիտի գտնէ (26 Նոյ)։ Մորրէ ասանկով գրգռուած Դեկտեմբերի 1ին մասնաւոր եղանակաւ Մարեմայ վրայ ամբաստանութիւն ըրաւ որ “իր ամուսնոյն սպանութեան խորհուրդն յառաջուընէ գիտէր, հաւանած եւ հրամայած էր. միանգամայն միտք ունէր մանկահասակ իշխանը հօրը պէս մեռցընել տալ, որպէսզի թագաւորութեան ժառանգութիւնն օրինաւոր գծէն, չարագործ մարդասպանին եւ անաստուած բռնաւորին վրայ դարձընէ„։ Մարեմայ գործակալներն ասոնք լսելէն ետեւ Եղիսաբեթէն խնդրեցին որ իրենց Թագուհւոյն ընդունելութիւն տայ, ինչպէս որ Մորրէ կոմսին եւ անոր կողմնակցաց որոնք իրենց Թագուհւոյն իբրեւ ամբաստանող էին, իրմէ ընդունելութիւն գտան; նոյնպէս հիմայ ալ նոյնն իրեն շնորհէ որպէսզի իր առջեւ ինքզինքը կարենայ արդարացընել. եւ քանի որ քննութիւնը չէ լմընցած, թէ Մորրէ եւ թէ անոր կողմնակիցք Անգղիայի մէջ բանտարկեալ կենան, մինչեւ դատավճիռն ելլէ որպէսզի իրենց գործոց արժանի պատիժն առնուն։ Եղիսաբեթ շատ պաղութեամբ աս արդար խնդրոյն պատասխան տալով, ըսաւ, որ ասիկայ հասուն քննութեանց հարկաւորութիւն ունի (3 Դեկ.)։

Ռոսի եպիսկոպոսն եւ իր ընկերները պարապ տեղ ամէն կարելի միջոցները ձեռք առին որպէսզի Եղիսաբեթէն գոհ պատասխան մը առնուն; խորհրդականաց դիմեցին, Թագուհւոյն աղաչեցին, դատաստանական ընթացքը դէմ բողոք ըրին, եւ երբոր տեսան որ ամենայն ինչ պարապ է Շաթելլըրոյ դքսին, Գաղղիայի եւ Սպանիայի դեսպանաց խորհրդով հրա-

տարակեցին որ բաժանկցութիւնը վերջացած է։ Սէսիլ աս ամէն բաները չլսելու կը զարնէր, եւ կը ջանար քանի որ քննութիւնը չէ ընդհատած՝ ամբաստանչաց բերած ապացոյցները դատաստանական կերպարանաց մէջ խոթել։ Եւ ամէն բան պատրաստելէն ետեւ, Անգղիայի գլխաւոր ազնուականները՝ Նորթէօմպըրլէնտ, Ուէսթմորլէնտ, Ուորսեսթըր, Շրուսպէօրի, Հանթինկտըն, եւ Ուորիք կոմսերը գաղտնի խորհրդեան մը կանչեց, եւ անոնց կատարեալ լռութիւն պահել տալու համար երդում ընել տալով մինչեւ հիմայ եղած դատաստանական ընթացքը մէկնեց, անոնց առջեւ դրաւ բնագիրները եւ օրինակուածները եւ Մարեմայ առ Եղիսաբեթ գրած թղթերը բերաւ որ համբաւեալ թղթերուն գրին հետ բաղդատեն։ Թէ նոյն ժողովականաց վրայ աս ամէն բաները ինչ ազդեցութիւն ըրին, եւ թէ հոն ինչ խօսուեցաւ չիգիտցուիր, բայց աս միայն գիտենք որ նոյն ապացոյցներու վաւերականութեան, եւ կամ ամբաստանելոյն յանցաւոր ըլլալուն անոնցմէ վճիռ չուզուեցաւ, հապա Սէսիլ ժողովականաց զրուցեց որ Մարիամ Եղիսաբեթին հետ տեսնուիլ կ'ուզէ որպէսզի ինքզինքը անոր առջեւ արդարացընէ, բայց Եղիսաբեթ թագուհւոյ մը պատուոյ հակառակ կը համարի Մարեմայ պէս վատահամբաւ կնոջ մը հետ տեսնուիլ։ Դատաւորք կամ գաղտնի խորհրդականք հաւանութիւն տուին որ Մարիամ Եղիսաբեթին առջեւ չելլէ։ Անմիջապէս երկրորդ օր Եղիսաբեթ Մարեմայ գործակալները կանչել տուաւ եւ զրուցեց որ իրենց տիրուհւոյն հետ չիկրնար տեսնուիլ եւ ասանկ պարագայից մէջ ինչ եւ իցէ միաբանութիւն կամ դաշնադրութիւն մը անոր հետ՝ զինքը մշտնջենաւոր անարգանօք կրնայ ծածկել, ատոր համար պէտք է որ Մարիամ իր անմեղութիւնն այնպիսի եղանակաւ ցուցընէ որ հասարակաց կարծիքը բոլորովին փոխել տայ։

Սէսիլ պաշտօնեան այսչափ պաշտօնական եղանակաւ, բայց շատ կանխածաւոր կերպարանաց մէջ, յաւելուածներով եւ փոփոխութիւններով մեր

ձեռքը հասուցած է։ Կրնայ կարծուիլ որ իր գիտաւորութիւններն յաջողած ըլլան, եւ ժողովուած կամքը կամ բերուած ապացոյցներու վրայ անվստահութիւն կամ իր բռնած ճամբուն վրայ տհաճութիւն ցուցուցած ըլլան։ Որովհետեւ անկից վերջն ուրիշ ճամբայ մը բռնեց եւ կարծելով որ Մարիամ նոյն թղթերուն հրատարակութենէն կը վախնայ, սպառնաց որ եթէ Մարիամ Ներէն Սկովտիայի թագաւորութեան հրաժարում մը չհաստատէր, անմիջապէս նոյները կը հրատարակէ։ Սակայն Եղիսաբեթ ալ կը մտածէր եւ ասոր համար Նոլլիսին գրեց որ իբրեւ իր անձին կողմանէ ամէն եղանակաւ փորձէ զՄարիամ Ներէն թագաւորութենէն հրաժարեցընել տալու, բայց Մարեմայ բացորոշութիւնն իր հակառակորդաց բոլոր խորհուրդները տակնուվրայ ըրաւ։ Մարիամ իմանալուն պէս որ Եղիսաբեթ զինքը տեսնել չ՚ուզեր, իր գործակալաց հրաման խրկեց որ Անգղիայի թագուհւոյն եւ անոր խորհրդականաց առջեւ զրուցեն թէ "Եթէ Մորրէ եւ իր յանցակիցները իմ ամուսնոյս սպանութիւնը յառաջուընէ գիտէին կամ խորհուրդ տուած եւ հրամայած էին, կ՚ըսեն ան ատեն ստութեամբ, մատնութեամբ եւ ցածութեամբ սուտ խօսած եւ իմ վրաս այնպիսի յանցանք մը դրած կ՚ըլլան, որուն սկզբնապատճառը, գտիչն եւ գործադրողն իրենք են։ Իսկ որդին հօրն ետեւէն խրկելուն նկատմամբ բնական սէրն որն որ մայր մը իր միածին որդւոյն վրայ կ՚ունենայ բաւական պատճառ է ամբաստանչաց ստախօսութիւնը ցրցունելու։ Սակայն դատն ամբաստանութեանց վրայ լռութեամբ չեմ կրնար անցնիլ, այլ կը պահանջեմ որ իմ գործակալացս ան նամակաց կամ օրինակը կամ բնագիրը յանձնուի, որպէսզի զանոնք քննեմ, եւ խօսք կու տամ որ իմ ամբաստանչացս մէջէն շատերը կրնամ նոյն սպանութեան յանցաւոր ամբաստանել վկաներով եւ ապացոյցներով, միայն թէ Եղիսաբեթին հետ տեսնուիմ։

Այս անակընկալ յայտարարութիւնը զԵղիսաբեթ եւ իր պաշտօնեաները շփոթցուց, բայց Քրիստոսի ծննդեան տօները տասնուչորս օր իրենց ժա-

մինակ թող տուին որ մտածեն։ Յունուարի 7ին Ռոս եպիսկոպոսն Եղիսաբեթին քով երթալով խնդրեց իրմէ որ նոյն թղթերուն օրինակները Մարեմայ խրկուին, որպէսզի անոնց մէկիկ մէկիկ պատասխան տայ, եւ ցուցընէ Եւրոպային թէ իր ամբաստանողները չէ թէ միայն մատնիչ են այլ նաեւ ստախօս ալ։ Եղիսաբեթ պատասխան տուաւ որ անոր վրայ քիչ մը մտածեմ, բայց զրուցեց միանգամայն թէ արգեօք աւելի լաւագոյն չ'ըլլար եթէ Մարիամ թագէն նորէն հրաժարի եւ Անգլիայի մէջ խաղաղութեամբ օրերն անցընէ։ Եպիսկոպոսը պատասխան տուաւ որ Մարիամ իրեն լիակատար իշխանութիւն տուած չէ ասանկ բաներու վրայ խօսելու, եւ բնաւ կամք չունի ասանկ բան մը յանձն առնելու, բայց պատրաստ է իր ապստամբ հպատակաց այնչափ զիջում ցուցընելու որչափ որ արդարութիւնը կը ներէ եւ տէրութեան երջանկութեանը վնասակար չըլլար։

Սկովտիայի թագուհւոյն աս յանդուգն եւ յաղթահարող բարբառը զորն որ ասկից վերջը գործածելու սկսած էր, կ'երեւայ թէ իր հակառակորդները խռոված ըլլայ, որովհետեւ բանակցութիւնը բոլորովին դադրեցուցին։ Մորրէ եւ իր ընկերներն ամենէն առաջ երթալու հրաման առին եւ դեռ Անգլիայէն չբաժնուած զրուցուեցաւ անոնց որ իրենք իրենց պատուոյն դէմ բան մը գործած չեն, բայց միանգամայն ալ բաւական պատճառ բերած չեն որով Եղիսաբեթ "իր բարի քրոջը,, վրայ չար համարում ունենայ։ Ասոր վրայ Ռոս եպիսկոպոսն եւ անոր ընկերները կանչուեցան եւ խօսք տրուեցաւ իրենց որ ան ամէն թղթերուն օրինակները Մարեմայ կը խրկեն, ան պայմանաւ որ ամենուն ալ ինչպէս որ պէտք է պատասխան տայ։ Ռոս պատասխանեց որ աս յաւելուածը պարապ է, որովհետեւ Մարիամ արդէն կրկին անգամ կնքուած գրով խօսք տուած էր որ ամենուն պատասխան կու տայ։ Բայց թէ որ իր ամբաստանչաց հրաման կը տրուի որ Սկովտիա դառնան ան ատեն աս շնորհքը Մարեմայ վրայ ալ տարածելու է։ Իսկ եթէ դիտաւորութիւն ունիք զինքը Ան-

դղեկայի մէջ բանտարկեալ պահել, ան ատեն անմիջապէս յանուն Մարեմայ կը բողոքեմ ան ամէն բաներուն դէմ որոնք բռնակալն կերպով անոր վրայ պիտի ըլլան։

Մարեմայ հակառակորդք կ'ըսեն որ Եղբի բանակցութեան ատեն Մարիամ իր ամբաստանիչները պապանձեցընելով յաղթեց, բայց Ուէսթմինսթրի քննութեան ատեն միայն Եղիսաբեթին առջեւ ինքզինքն արդարացընել ուզելուն համար՝ ունեցած առաւելութիւնը կորսնցուց, եւ ամբաստանները յաղթող գտնուեցան։ Եղիսաբեթին առջեւ ելլելու պահանջումը ուրիշ բան չէր, կ'ըսեն, բայց եթէ հրապարակական քննութենէ փախուստ տալ, ուսկից խաղ խայտառակ պիտի ելլէր։ — Աս տրամաբանութիւնը մեզի այնչափ համոզիչ չ'երեւար։ Մարեմայ պահանջումն արդարացի եւ կատարուելու բան էր, ինքն իր ամբաստանչաց հետ մի եւ նոյն դատաստանի մէջ չէր կրնար մտնել առանց իր թագաւորական պատուոյն անարգանք մը բերելու. իրենք դատաստանին ներկայ էին եւ իրենց ապացոյցները անձամբ կրնային յառաջ բերել, իսկ ինքն ահագին անջրպետութենէ մը գրեթէ 200 անգղիական մղոն հեռու տեղէն անոնց պատասխան պիտի տար։ Եւ ասոր հակառակ Եղիսաբեթ անոր պահանջումը չկատարելով ի հարկէ կասկածելու առիթ տուած է թէ Անգղիայի թագուհին անոր անմեղութենէն աւելի դատապարտութիւնը կը բաղձար։ Մորրէ կոմսին յաղթութիւնն երկայն ժամանակ չտեւեց, որովհետեւ Մարեմայ վերջի վարմունքը կը ցուցընէ որ քննութիւնը ընդհատելու միայն սպառնացած էր, որպէսզի Եղիսաբեթ իր խնդրոյն զիջանի։ Անմիջապէս նոյն օրը երբոր իմացաւ որ իր պահանջումը չէ կատարուած, իր գործակալաց գրեց որ Մորրէին ըրած ամբաստանութիւնները չիկրնար լսելով անցնիլ, եւ հրամայեց իրենց որ նորէն քննութիւնը սկսին եւ իր անձին դպչող ամբաստանութիւններն ուրանան եւ անոնց գլուխը դարձընեն։ Մարիամ ասի ընելուն պէս դարձեալ իր հակառակորդաց վրայ դեր ի վերայ եղաւ,

եւ որչափ որ կը ստիպէր որ քննութիւնը շարունակուի, այնչափ ալ Մորրէ սրտագող կը հրաժարէր։ Նոյն իսկ Եղիսաբեթ ասոր վրայ կ'ուզէր զիրենք հաշտեցընել, բայց Մարիամ չընդունեցաւ, ժամանակն անցած է ըսելով։ Մարիամ ասկից ետեւ եւ ոչ մէկ թէութեամբ խաղաղութիւն ընել կ'ուզէր, մինչեւ որ իր անմեղութիւնը հրապարակաւ չընդունուի, ասանկով իր թշնամեաց ուրիշ բան չմնաց բայց եթէ զՄորրէ բնութիւններով մէկտեղ Սկովտիա խրկել, որպէսզի Մարեմայ գործականները կարող չըլլան զանոնք քննել։ Առանց հակառակութեան յաղթութիւնը Մարեմայ էր եւ իր բարեկամները նոյնը իրեն կը շնորհաւորէին, նոյն իսկ Անգղիայի ազնուականաց գըլխաւորներն ալ՝ որոնք աս բանակցութեան մէջն էին նոյն յաղթութիւնը խոստովանած կ'երեւան։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Զմարիամ Նորֆոլք դքսին հետ ամուսնացընելու Մեթլէնտ եւ Մորրէ կամեց խորհուրդը. ամուսնութեան խորհուրդը կը յառաջանայ, եւ ապստամբութեան կերպարանք կ'առնու։

Ընթերցողը կը յիշէ որ Մեթլէնտ կոմսը Մարեմայ եւ Նորֆոլք դքսին հետ ամուսնութեան խորհուրդ մը ստեղծած եւ նոյն դքսին յայտնած էր, բայց Նորֆոլք կամ Եղիսաբեթին սրտմտութենէն, կամ Մեթլենտին ըրած առաջարկութիւնը բանի մը տեղ չդնելով ականջ չկախեց։ Ի վերայ այսր ամենայնի կասկածոտ Եղիսաբեթէն աս գաղտնի խորհուրդը ծածուկ չմնաց, ուստի երբոր դուքսն Եորքի քննութենէն ետ դարձաւ, Եղիսաբեթ զինք շատ պաղութեամբ ընդունեցաւ։ Նորֆոլք պատճառն իմանալով վստահացուց զինքն որ ան խորհուրդն ոչ իրմէ ելած է եւ ոչ ալ անոր հաւանութիւն տուած է։ "Բայց արդեօք, հարցուց Եղիսաբեթ, չէիք ամուսնանար Մարեմայ հետ, գիտնալով որ տէրութեան խաղաղութիւնն եւ անձինս ապահովութիւնը կ'ապահովցընէիք,,։ "Տիկին, պատասխանեց դուքսը, անիկայ որ ձեր հակառակորդն է եւ որուն այրը եր-

բեք հանգիստ չգտներ, իմ ամուսինս չկրնար ըլլալ։,, Դուքսն աս հեգնական պատասխանով Եղիսաբեթին կասկածն առ ժամանակ մը փարատեց։ Բայց Մորրէ Անգղիայէն դառնալէն յառաջ աս ամուսնութեան խորհուրդը Նորէն ձեռք առաւ։ Ռոպերթ Մելուիլ Մարեմայ խրկեց որ հետն աս Նիւթիս վրայ խօսի, իսկ ինքը դքսին քով գնաց եւ ջանաց զինքը համոզ-ցընել որ երկու տէրութեանց մէջ Նորէն խաղաղու-թիւն հաստատելու միակ միջոց ան կրնայ ըլլալ, եր-բոր բողոքական ասպետ մը Սկովտիայի թագուհւոյն հետ ամուսնանայ, եւ մէկը չկայ, կ'ըսէր, որ երկու կողմ-նակցութիւնները գոհ ընելու այնպէս յարմարութիւն ունենայ ինչպէս Նորֆոլք դուքս մը։ Դուքսն ասոր պատասխան տուաւ որ այնպիսի ծանր հետեւու-թիւններ ունեցող գործքի մը ձեռք չեմ կրնար զարնել առանց իմ թագուհւոյս հարցընելու։ Իսկ Մարիամ Մելուիլին պատասխան տուաւ որ ինքը քանի որ բանտի մէջն է, չկրնար ասոր Նկատմամբ որոշ պատասխան տալ։ Թող Մորրէ կոմսը Նորէն իշխա-նութիւնը ձեռքս տայ, եւ ան ատեն ես անոր խոր-հրդին կ'անսամ, եւ իբրեւ Ներողամիտ քոյր մը հետը կը վարուիմ, ինչպէս որ մինչեւ հիմայ վարուած էի։

Կարծելու բաւական պատճառ կայ որ Մորրէ աս անգամ ալ իր սովորական խարդախութիւնը բա-նեցուցած՛ է։ Աղէկ գիտէր որ Մարեմայ Սկովտիայի բարեկամք սահմանները ժողուած էին զինքը Նորա թող չտալու համար. Նոյնպէս Անգղիայի հիւսի-սային սահմանագլխոց վրայ Նորձնեանք եւ Մարքեն-ֆիէլտեանք եւ քանի մը ուրիշ գերդաստաններ միա-բանած էին զինքը բռնելու, որպէսզի իր թագուհ-ւոյն եւ քրոջը ըրած Նախատանաց վրէժն առնուն։ Ուստի իր թշնամեաց լարած որոգայթէն ազատելու համար վերը յիշած առաջարկութիւնը Ռոպերթ Մելուիլին ձեռօք Մարեմայ առջեւ դնել տուաւ, եւ իր դիւրահաւան քրոջ հաւտացուց որ իր բարւոյն եւ ազատութեան ետեւէ ինկած է. ասով Մարիամ խա-բուեցաւ եւ իր բարեկամաց հրաման խրկեց որ Մորրէ կոմսին բան մը չընեն։

Մարիամ այս ժամանակներս Ռոմին էր։ Եղիսաբեթ զՄորրէ պարգեւներով Սկովտիա խրկելով պէտք էր նաեւ Մարեմայ ալ ազատութիւն շնորհել, բայց աւիկայ չընելէն զատ, զՄարիամ աւելի եւս խիստ պահպանութեան տակ դրաւ, եւ իբրեւ իր հպատակ եւ անգղիական օրինաց յանցաւոր դառն բանտարկութեամբ կը չարչարէր։ Նոյնիսկին՝ անոր պահապանին հրաման տուաւ որ ապահովութեան համար ատրճանակներով զինեալ տասուերկու ձիաւոր բանտին քովը պատրաստ կենան, որպէսզի եթէ Մարիամ փախչիլ ուզէ, վրան կրակ տան։ Բայց ո՞ւր պիտի փախչէր Մարիամ, կղզւոյ մը մէջ էր, ո՛ր կողմն որ դառնար միշտ թշնամեաց մէջ ինքզինքը պիտի գտնէր։ Եղիսաբեթ ասկից ետքը իր որսն աւելի եւս ապահովցընելու համար տէրութեան ներսին կողմերը տանել տուաւ զՄարիամ Շրիւսպէօրի կոմսին պահպանութեան տակ, եւ բերդէ բերդ տանելէն ետեւ վերջապէս Թիւօթպէօրի տարաւ, ուր որ բանտի տեղ որսորդաց կայան մը որոշուեցաւ անոր, որն որ փայտէ տնակ մըն էր բարձր լերան մը վրայ շինուած եւ կէս մը կործանած։ Աս խեղճ տնակին չորս կողմը բարձր պատեր կային, որոնք արեւուն ճառագայթները կ՚արգելուին։

Աս տնակին ստորագրութիւնը Մարեմայ նամակի մը մէջ կը գտնենք զորն որ Էծքըթըն ատենական վարուց մէջ հրատարակուած է։ Մարիամ. աս տանս մէջ երկու փոքր սենեակներ ունէր, մէկը իրեն եւ մէկալը իր տիկնանց համար։ Բոլոր պատերը ճաթըրտած էին եւ շատ տեղ շաղախը ինկած էր, պատերուն ճեղքերէն անդադար պաղ օդ մը ներս կը թափանցէր, այնպէս որ ծածկոյթները, վարագոյրները եւ վերմակները զինքը պաղէն չէին կրնար պահել, եւ միշտ կը հազար եւ հարբուխէն կը տանջուէր։ Բոլոր տան մէջ մաքուր օդ շնչելու տեղ չկար միայն երկու փոքր ուրիշ սենեակներ կային 7 ոտք լայնութեամբ եւ այնչափ ալ երկայնութեամբ, բայց անոնք ալ այնչափ ծառաներով եւ պահապաններով լեցուն էին որ իրենք ալ իրարու վրայ կը

պաշտկէին։ Վերջապէս իր սենեկին պատուհանին տակ արտաքնոց դրուած էր, անանկ որ ապականեալ օդէն ազատելու ճար չկար։ Այս զարհուրելի բանտարկութենէն Մարիամ շատ նամակներ գրեց Եղիսաբեթին, որն որ եթէ մարդկային զգացմունքը խղդող անձնասիրութեան ախտէն ըմբռնուած չըլլար, սիրտը ամօթով կը լեցընէին այնպիսի դաժան խստութիւն մը ընելուն համար իր մերձաւոր եւ անմեղ ազգականին դէմ։ Նոյն իսկ օտար տէրութեանց դեսպանները կը տրտնջէին այսպիսի անլուր վարմուն դէմ, բայց Եղիսաբեթ պատասխան կու տար որ աւելի իր ներողամտութիւնը գովելու են որ Մարիամայ օձանին համար ան ապացոյցները վերցուցած է որոնք զինքը յաւիտենական անարգութեամբ կը խարէին։

Եղիսաբեթ՝ Մարիամայ հետ ասանկ վարուելով իր սեպհական հանգստութիւնը կորսնցուց. սրտին ատելութեամբ, նախանձու, եւ կասկածոտութեամբ այնպէս լեցուած էր, որ մինչեւ Շրիւսպէօրի կոմսին վրայ կասկածիլ սկսաւ, որն որ իր հաւատարիմ եւ բարի հպատակներէն մէկն էր, եւ իր կնոջ գաղտնի յանձնած էր որ ամուսնոյն վրայ հսկէ։ Շրիւսպէօրի կոմսն ազնուական սիրտ մ'ունենալով կը ջանար որ կարելի եղածին չափ իրեն յանձնուած բանտարկեալ կնոջ եւ թագուհւոյ մը աղէկ նայի, բայց իր սեպհական կնոջ չար կրքերէն եւ անոր Արգոսի աչուըներէն այնպէս կը տանջուէր որ քանի մը անգամ սրտի նեղութենէն ծանր հիւանդացաւ։ Մարիամ Ուալսինկէմ ատենադպրին նամակ մը գրելով աղաչեց զինքը որ Շրիւսպէօրի կոմսուհւոյն ամբաստանութեանց եւ չարախօսութեանց ականջ չկախէ, որն որ հիմայ ձեզի հետ է, կոմսուհին, կ'ըսէ, իմ եւ իմ որդւոյս մահուչափ թշնամին է, եւ կենացս դաւաճան եղած է . . . ։

Այս ժամանակներս քանի մը անգղիացի ազնուականք որոնց Մարիամայ եւ Նորֆոլք դքսին հետ ամուսնութեան խորհուրդը աղէկ երեւցած էր, ետեւէ ինկան որ խորհուրդն իրօք կատարուի։ Թորքմորթըն որն որ Սէսիլին վստահութիւնը կորսնցուցած էր եւ

Լեսթըր կոմսին կողմը բռնելու սկսած էր, ան առաջարկուած ամուսնութեան գլխաւոր գործողներէն մէկն եղաւ: Իր գործակցութեամբ Լեսթըր շատ անգամ Նորֆոլք դքսին, Արունտել եւ Փեմպրոք կոմսից հետ աս նիւթիս վրայ խորհրդակցեցաւ: Ըստ ինքեան աս խորհուրդը դքսին փառասիրութեան ձեռք կու տար, բայց Եղիսաբեթին տուած խոստումը յիշելով անոր կատաղութենէն կը վախնար: Ասոր համար ի շնորհս Լեսթըր կոմսին ինքը հրաժարեցաւ, բայց երբոր անիկայ չընդունեցաւ, ան առեն իր եղբայրը Հենրիկոս Հովարտ առաջարկեց, սակայն ան ալ չընդունեցաւ: Վերջապէս Նորֆոլք Մարեմայ գործակալաց, Մորրէ կոմսին Վուտ դեսպանին եւ վերը յիշեալ կոմսից հետ նորէն տեսնուած առեն համաձայնեցան, եւ Լեսթըր, Արունտել, եւ Փեմպրոք կոմսից հետ մէկտեղ համաձայնակաց նամակ մը գրեցին Մարեմայ որ իրենք ան պայմանաւ միաբանած են զինքը նորէն Սկովտիայի աթոռը հաստատելու եւ Անգղիայի նկատմամբ ունեցած իրաւունքները պահել տալու. եթէ Եղիսաբեթին եւ անոր մարմնաւոր ժառանգաց իրաւանց դէմ բան մը չգործէ, Անգղիայի հետ պաշտպանողական եւ յարձակողական մշտնջենաւոր դաշինք դնէ, անգղիական կրօնը Սկովտիայի մէջ խոթէ, իր խեռ հպատակաց թողութիւն շնորհէ, Անժու դքսին վրայ անցուցած իրաւունքները յետս կոչէ եւ վերջապէս Նորֆոլք դքսին հետ ամուսնանայ: Մարիամ առջի առաջարկութեանց համաձայնութիւն տուաւ, բայց վերջինին նկատմամբ պատասխանեց որ թէպէտ առած ցաւալի փորձերով ամուսնութեան վիճակին ամուսնութենէն վեր կը դասէ, ի վերայ այսր ամենայնի անոնց խորհրդին անսալով իր սեպհական միտումը կը զոհէ, միայն թէ ամենէն առաջ Եղիսաբեթէն համաձայնութիւն առնուն, որովհետեւ Անգղիայի թագուհւոյն Տարնլէին ամուսնութեան վրայ տհաճելովն եղաւ որ աս ամէն դժբախտութիւնները գլուխն եկան:

Արդ երբոր անգղիական դահլճին մէջ Մարիամ ազատ թող տալու վրայ խօսք կ'ըլլար, նոյն չորս ատենակալք Մարեմայ առաջարկուած առջի յօդու-

ածները մէջ տեղը բերին, բայց յառաջուընէ իրենց մէջ որոշած էին որ ամուսնութեան յօդուածին վրայ ամենեւին խօսք չբանան, մինչեւ որ Մեթլէնտ Սկովտիայէն գալով բոլոր խորհուրդն Եղիսաբեթին յայտնէ։ Դահլիճն առանց խորհրդին հաւնելով Պոյտ՝ եւ Վուտ՝ ատենակալները Սկովտիա խրկեց որպէսզի Սկովտիայի ազնուականներէն, Մորրէ կոմսէն եւ անոր կողմնակիցներէն հաւանութիւն առնուն։ Իսկ Նորֆոլք դուքսն որչափ որ մինչեւ հիմայ անտարբեր էր, այնչափ ալ անկից վերջը մեծ գործունէութիւն կը ցուցընէր, Ռոս եպիսկոպոսին միջնորդութեամբ Մարեմայ հետ թղթակցիլ սկսաւ, եւ կը կարծէր որ Եղիսաբեթ ասոր վրայ դեռ բնաւ տեղեկութիւն չունի, բայց շատ խաբուեցաւ, որովհետեւ շատ կասկածելու պատճառ կայ որ Լեսթըր հոս տեղս խաբէութիւն գործած է։

Այս խնդիրն երթալով վախճանին կը մօտենար։ Պոթուէլ աս ժամանակներս Մարեմայ ամուսնութենէն հրապարակաւ հրաժարած էր (1 Յուլ.), Գաղղիայի եւ Սպանիայի թագաւորները հաւանութիւն տուին եւ Սէսիլ խոստացաւ որ աս բանիս մէջ չէզոք կը մնայ, նոյնպէս ազնուականներէն շատերն իրենց հաւանութիւնը տուած էին, թէպէտեւ ոմանք վախ ցըցուցին որ դուքսն իր դիւրահաւանութեան զոհ պիտի ըլլայ։ Ուրիշ բան չէր մնացած բայց եթէ Մորրէ վերը յիշած պայմաններն ընդունելով եւ Մեթլէնտ Անգղիայի արքունիքը խրկելով բոլոր խորհուրդն Եղիսաբեթին առջեւը դնել եւ իրմէն ալ հաւանութիւն առնուլ։

Բայց Մորրէ կոմսն ան վտանգն որուն մէջ աս խորհուրդը ստեղծած եւ Նորֆոլք դքսին առաջարկած էր, անցած տեսնելով, այլազգ կը մտածէր, դքսին բարձրանալուն մէջ իր սեպհական կործանումը կը տեսնէր։ Ասոր համար Սկովտիայի խորհրդանոցը ժողվելով (25 Յուլ.) դրսանց ի նպաստ ազատութեան Մարեմայ խօսեցաւ, բայց իրօք ամենայն ազդեցութեամբ ջանաց որ ազատութիւնն ի գործ չդրուի, ուստի եւ Անգղիայի դահլճին մէջ ընդու-

նուած պայմանները խորհրդանոցը բացարձակապէս մերժեց։ Մեթլէնտ տեսնելով որ իր սիրական յատակագիծը Մորրէ կոմսին անհաւատարմութեամբը փճացաւ, Աթըլ կոմսին իր բարեկամին քով ապաւինեցաւ։

Մորրէ առանց ժամանակ կորսնցընելու անմիջապէս Եղիսաբեթին իմացընել տուաւ որ Սկովտացիք Մարեմայ Նորէն գահը նստիլ ոչ երբեք յանձն կ'առնուն։ Եղիսաբեթ՝ Ֆառնհէմ էր երբոր (13 Օգ.) Մորրէ՝ կոմսին պատգամաւորք եկան, եւ անմիջապէս պալատականաց մէջ համբաւ տարածուեցաւ թէ Նորֆոլք Մարեմայ հետ ծածուկ խօսուած է։ Թէպէտ եւ ամէն գաղտնիքն երեւան ելած էր, սակայն Եղիսաբեթ Լեսթըր կոմսէն ամենայն ինչ տեղն ի տեղ իմանալ կ'ուզէր, կոմսը խոստացաւ բայց ուշացուց։ Եղիսաբեթ անգամ մը Նորֆոլք դուքսը սեղանի կանչելով, կերակրէն ետեւ զրուցեց իրեն որ "Զգոյշ կեցէք եւ մտածեցէք որ ձեր գլուխն ինչ բարձի վրայ դնել կ'ուզէք։„ Աս խայթիչ խօսքը զինքը եւ իր բարեկամները հոգով լեցուցին։ Երբոր արքունիքը Թիչֆիլտ փոխադրուեցաւ, Լեսթըր ծանր հիւանդանալով, մահուան անկողնոյն մէջ Եղիսաբեթին ամենայն ինչ տեղն ի տեղ պատմեց, ես, ըսաւ, եւ մէկալ ազնուականք ջանացած ենք Նորֆոլք դուքսը Մարեմայ հետ ամուսնացընել։ Սիրահարն Եղիսաբեթ Լեսթըր կոմսին թողութիւն տուաւ, իսկ Նորֆոլք դուքսը խիստ յանդիմանելէն ետեւ, զինքը ստիպեց որ աս խորհրդէն հրաժարելու երդում ընէ։ Նորֆոլք երդումն ըրաւ, բայց տեսնելով որ ամէն անգամ Եղիսաբեթին առջեւ ելած ատեն անարգանօք եւ ցածութեամբ ընդունելութիւն կը գտնէր, եւ պալատականք իրեն ծուռ աչօք կը նայէին եւ Լեսթըր կոմսը մանաւանդ իրեն հետ թշնամութեամբ կը վարուի, պալատէն հեռացաւ. Նոյնպէս ըրին Արունտէլ, եւ Փեմպրոք կոմսերն ալ։ Կասկածոտն Եղիսաբեթ Նորֆոլք դքսին վրայ ամենեւին վստահութիւն չունենալով իրեն հրամայեց որ Նորէն արքունիքը դառնայ, եւ մեծագոյն ապահովութեան համար Հաթինկտըն

կոմսն եւ Հերեֆըրտ գերակոմսը Շրիւսպէրիի կոմսին օգնական դրաւ, որպէսզի Մարեմայ վրայ պահպանութիւն ընեն։

Ա՛ս դէպքս պատահելէն քիչ մ'առաջ Տարնլիի սպանութեան մէջ մաս ունեցող Փարիս անուն մանկլաւիկ մը բռնուեցաւ։ Եղիսաբեթ յուսալով որ անկէց շատ բան կրնայ ստուգուիլ, անմիջապէս Մորրէ կոմսին գրեց որ մանկլաւիկը Լոնտոն խրկուի, բայց Մորրէ արդէն զինքը մահուան դատապարտած էր, եւ անոր տեղ երկու խոստովանութիւն խրկեց, որոնց համար կ'ըսէր թէ Փարիս դատաստանի մէջ խոստովանած էր. առջինին համեմատ Մեթլէնտ նոյն դաւաճանութեան գլուխն էր, Արճէյլ Հանթլի եւ Պալֆուր անոր յանցակից, իսկ Մորթըն, Ռութուէն եւ Լինսի Պոթուելին կողմնակից էին։ Երկրորդին մէջ կար որ Մարիամ այս սպանութիւնը յառաջուընէ գիտէր, եւ անոր հաւանութիւն տուած էր։ Այս երկու խոստովանութիւններն ալ ատեն եղան, երբոր Մեթլէնտ եւ Մարեմայ կողմնակիցք զՄարիամ նորէն Սկովտիայի թագը ժառանգած տեսնելու յուսով՝ զարմանալի եռանդեամբ մը իրենց կողմնակցութիւնն եւ ազդեցութիւնը թէ Սկովտիայի եւ թէ Անգղիայի մէջ մեծցընելու կը ջանային։ Մեթլէնտ այս կողմնակցութեան հոգին էր, եւ անոր մեծ աջողակութենէն եւ կենդանի գործունէութենէն Մորրէ շատ կը վախնար։ Ինքն էր որ այս ծրագիրը հանելով Անգղիայի մէջ երկպառակութեան ջահը վառեց, եւ Սկովտիայի մէջ Մորրէ կոմսին անհաւատարիմ բարուց վրայ համոզուելով անոր կողմնակցութիւնը տկարացընել կը ջանար։ Իր աշխուժութեամբն Հիւմ եւ Քիրքալտի ատենակալներն եւ քանի մը ուրիշ Մորրէ կոմսին դաշնակիցներն Մարեմայ կողմը փոխուեցան։ Ուստի եւ քանի որ Մեթլէնտ ազատ էր, Մորրէ բռնութեամբ առած իշխանութեան մէջ ապահով չէր կրնար ըլլալ։ Մորրէ ասանկ թշնամիէն ազատելու համար զինքը Սթիրլինկ կանչեց ժողովքի մը համար, եւ զինքը բռնելով բանտ դնել տուաւ։

Երբոր Նորֆոլք նորէն արքունիք եկաւ, Եղի-

սարսեթ զինքը Թուէր բանտը խրկեց. Արունաէլ, Լեսթըր եւ Փեմպրուք կոմսերն արքունիքէն մերժեց, Րոս եպիսկոպոսը, Լէօմլէյ ատենակալն եւ ուրիշ քանի մը հոգի բանտ դնել տալով, նոյն ժամանակուան խիստ դատաստանական քննութեան տակ ձգեց: Անոնց ամէն մէկուն խոստովանածներն իրարու հետ բաղդատելէն ետեւ, դատաւորք կը ջանային որ ամբաստանեալներն իրար ամբաստանեն, որպէսզի ամենափոքր պարագաներն երեւան ելլեն: Քննութիւն քննութեան վրայ ըլլալով, տեսնուեցաւ որ դուքսն եւ իր կողմնակիցք տէրութեան կամ իրենց հպատակութեան դէմ բան մը գործած չեն, թէպէտեւ օտար իշխանուհւոյ մը հետ սանկ նիւթի վրայ դաշնադրութիւն ընելը մեծ յանդգնութիւն երեւցաւ, որն որ իրենց թագուհւոյն դիտաւորութեանց մեծ խոչընդոտ կ'ըլլար:

Բայց կամաց կամաց աս խորհուրդն ապստամբութեան երես մ'առնելով Եղիսաբեթին եւ անոր պաշտօնէից մտադրութիւնը գրգռեց: Սկովտիոյ թագուհին Անգղիոյ հիւսիսային կոմսութեանց մէջ շատ բարեկամ ունէր, եւ անհնարին էր որ բարի զգածում եւ ազնուական սիրտ ունեցող մարդիկ գեղեցիկ, բարի, եւ երիտասարդ իշխանուհւոյ մը կողմը չբռնեն, որն որ խոստմամբ հրապուրեալ իր տէրութեան սահմաններէն անդին անցնելով անապաժան եւ նախանձոտ ազգականէն բանտարկուած կը կենար: Մարեմայ քաջը մօտեցողն անոր վարուց ազնուականութենէն եւ սրտաշարժ խօսակցութենէն զարնուելով եւ անոր դժբախտութեան վրայ ցաւակցելով անկից կը բաժնուէին, միտքը դնելով որ պատեհ ժամանակին իրենց ծառայութիւնն անոր մատուցանեն: Մարեմայ Անգղիոյ կողմնակիցք կը դատապարտէին ան անձնատէր քաղաքականութիւնն որով անոր անունն եւ համբաւը նուազցընելու կը ջանար, եւ հին հաւատոյ պաշտպանները զինքը խոստովանողի տեղ կը դնէին, վասն զի իր հարց հաւատքը չուրանալուն համար կը չարչարուէր: Մարեամ բոլոր ամառն այնպիսի զգածմունք ունեցողներուն

հետ տեսնուեցաւ, որոնք նոյն ժամանակուան տա-
պետութեան ոգւով լեցուած, անիրաւութեամբ լլ-
կուած, եւ կանացի նախանձոտութեան պատճառաւ
բանտարկուած Թագուհի մը հալածչաց ձեռքէն ա-
զատելու համար իրենց կեանքն եւ ինչքը զոհելու
պատրաստ էին։ Մարիամ զգուշաւոր Նորֆոլք դքսին
խորհրդով անոնց պատրաստականութիւնը քաղցր
խօսքերով մերժեց։ Բայց երբոր տեսաւ որ դուքսն
Եղիսաբեթին առջեւ համարում եւ ազդեցութիւն
կորսնցուց, եւ իր ազատութեան բոլոր յոյսերն օդն
ելան, եւ իր պահպանութեան համար այնպիսի մար-
դիկ դրուեցան որոնք իր անհաշտ թշնամիք էին,
իր սեպհական կենաց վտանգը տեսնելով Ուէսթ-
մորլէնտէն (որն որ Նորֆոլք դքսին քրոջը հետ ամուս-
նացած էր) եւ Նորթէօմպըրլէնտ կոմսից դիմեց,
որոնք արքունիքէն նախատինք կրելով իրենց կալու-
ածները քաշուած էին։ Ասոնց ձեռօք Էկրեմոն,
Բէյթըլիֆ կոմսից, Լէօնարտ Տաքրին, Նորթընեանց,
Մարքֆելտեանց, եւ Թեմփեսթեանց ըրած՝ զինքն իր
թշնամեաց բռնութենէն ազատելու խոստումը յիշե-
ցուց։ Հոկտեմբերին մէջերը՝ Եորք, Տէօրէմ եւ Նոր-
թէօմպըրլէնտ կոմսութեանց մէջ արտաքոյ կարգի
խմորում մը կը տեսնուէր, որուն սկզբնապատճառն
իսկզբան արքունիքը չկրցաւ իմանալ։ Սէօսէքս կոմսը
նոյն տեղւոյն կուսակալը Նորթէօմպըրլէնտ եւ Ուէսթ-
մորէնլէնտ, կոմսից վրայ կասկածի երթալով զիրենք
Եօրք կանչեց, բայց անոնք զինքն առ երեւոյթ հա-
ւատարմական խօսքերով խաղաղցուցին։ Նորթէօմ-
պըրլէնտ դեռ ներկայ վտանգին եւ Մարեմայ տուած
խոստման մէջ կը տատանէր, մինչեւ որ տարածուած
սուտ համբաւէ մը խաբուելով՝ թէ գիշեր ատեն
զինեալ գունդ մը զինքը բռնելու պատրաստուեր
է, զինքն անորոշութենէն հանեց։ Աճապարելով
Դրանսփէթ դաստակերտը փախաւ ուր որ արդէն
Ուէսթմորէնլէնտ կոմսը հարիւրի չափ բարեկամներով
եւ հպատակներով ժողուած էր։ Երկրորդ օրը ապս-
տամբութեան դրօշը բացին (16 Նոյ.)։

Ապստամբաց դիտաւորութիւնն էր դէպ ի

Թոթպէօրի քալել ուր Սկովտիայի թագուհին բանտարկուած կեցած էր, որպէսզի զինքն ազատեն, եւ զԵղիսաբեթն ալ սպաննեն որ զՄարիամ իրեն յաջորդ ընդունի։ Ասոնք իրենց կողմը զօրացընելու համար, ուղղափառաց հրաւէր մ՚ըրին որ համարակաց վշտաց վախճան մը տալու գործակից ըլլան, հին հաւատքը նորոգեն, եւ երկրին ազնուականութիւնը կործանման սպառնալիքներէն ազատեն։ Շատ յոյս կար որ աս բողոքով իրենց կողմնակցութիւնը զօրանար, որովհետեւ, ինչպէս որ Սատլէր կ՚ըսէ, „Բոլոր Անգղիայի մէջ տասն ազնուական չկար որ Եղիսաբեթին՝ կրօնի նկատմամբ ըրած կարգաւորութեանց հաւան ըլլար։ Կոմսերէն շատերը նորաձեւ աստուածային պաշտօնին ներկայ ըլլալու ստիպուած էին՝ ծանր պատիժներէ եւ սպառնալիքներէ ազատելու համար։ Որ կողմն որ իրենց աչքը դարձընէին, կը տեսնէին որ ապստամբելով կամ խռովութիւն հանելով եւ օրինաւոր իշխանութեան դէմ ոտք ելլելով կրօնի ազատութիւն կը ստացուի։ Սկովտիայի կալուինականք բիւրաւոր արգելքներու յաղթելով օրինաւոր իշխանութեան դէմ ոտք ելան, որպէսզի իրենց նորաձեւ կրօնն ապահովցընեն. նոյնպէս Գաղղիայի նորոգիչք երեք անգամ իրենց թագաւորէն ապստամբեցան, եւ Անգղիայի թագուհին թէ ատոնց եւ թէ անոնց ստակով եւ զօրքով օգնութիւն ըրաւ։ Եթէ աս բանս ուրիշ կրօններուն թոյլ տուեալ է, ինչու համար ուղղափառ Անգղիացւոց միայն արգելուած պիտ՚որ ըլլայ, իրենց կրօնի ազատութիւնն ապահովցընելու պատճառաւ՝ ընդդիմանալ, զէնք առնուլ եւ հարստահարող իշխանութեան դէմ ոտք ելլել„։ Բայց շատ խաբուեցան որովհետեւ ուղղափառք իրենց պարտքը ճանչնալով օրինաւոր իշխանութեան դրօշին տակ զինուորեցան։ Ուղղափառ ազնուականք փոխանակ անոնց ականջ կախելու թագաւորական բանակին մէջ մտան, որն որ Սէօսէքս կոմսին առաջնորդութեան տակն էր։

Ապստամբք իրենց արշաւանաց ատեն Տէօրէմ քաղքին մայր եկեղեցւոյն մէջ բողոքականաց աւե-

տարանն եւ երգոց գիրքը հրապատակաւ այրեցին, եւ Ռիփըն քաղաքին եկեղեցւոյն մէջ ուղղափառ պատարագը հաստատեցին: Իրենց դրօշին վրայ արիւնլուայ փրկչին պատկերը նկարուած էր, զորն որ Նորթըն ծերունի ազնուականը կը տանէր որուն արծաթափայլ գագաթն եւ դիւցազնական տեսքը տեսնողները մեծարանօք կը լեցընէր: Քլիֆըրտմուրի քով զօրահանդէս եւ պատերազմական խորհուրդ ըրին: Սպանիայի դեսպանն *) իրենց զրուցել տուաւ որ ուղղակի իր թագաւորէն օգնութիւն մը չյուսան, այլ Ալպա դքսին դիմեն որն որ նոյն ատեն Բեղգիայի կառավարն էր եւ իրենց ուզած օգնութիւն ալ խոստացաւ: Ապստամբք՝ զՄարիամ ազատելու խորհուրդն առ ժամն մէկդի ձգեցին եւ 7000 զօրքով Հարթլփուլ քաղաքն առին (28 Նոյ.) որպէսզի Սպանիական ստորին նահանգաց հետ հաղորդակցութիւնն ապահովցընեն, բայց Ալպա դուքսն իր խոստացած օգնութիւնն զանազան պատրուակներով զլացաւ:

Ուղղափառաց անտարբերութիւնն եւ Ալպա դքսին խոստացած օգնութեան չտալու լուրը, երկու կողմից քաջասրտութիւնը կոտրեց, վասնզի ամէն օտար օգնութիւններէն զուրկ մնալով իրենց սեպհական զօրութեան մնացած էին որն որ դասալիքներու պատճառաւ օրըստօրէ կը նուազէր: Սակայն Սէօսէքս կոմսը թագաւորական բանակին հրամանատարն իր բանակին վրայ որն որ ուղղափառներէ կազմուած էր վստահութիւն չունենալով՝ եւ ուրիշ օգնութեան սպասելով զորն որ Ուարիք կոմսը 12.000 զօրք պիտի բերէր՝ անոնց հետ պատերազմիլ չէր կրնար յանդըգնիլ: Թագաւորական բանակին մօտենալով ապստամբք բոլորովին սրտաբեկ եղան եւ աճապարելով Հեսսէմ քաշուեցան (16 Դեկ. 1569) ուր ստա-

*) Նոյն ատենները Սպանիայի դեսպաններն ան քաղաքականութիւն կը բանեցընէին զորն որ մինչեւ հիմայ գեռ Անգղիացիք կը պահեն, այսինքն ուր որ ապստամբութեան շշուրթ մը կը տեսնէին ծածուկ՝ օգնութիւն խոստանալով կը գրգռէին:

նաւոր զօրքը ցրուեցաւ. իսկ 500 հեծեալք Նաւուրթի զօրավարը փախան, ասկից ալ երեք հազար դաշնակից Սկովտացւոց հետ սահմանն անցնելով Լիտ-խատէլ ապաւինեցան Սկովտիայի Թագաւորին բարեկամաց քով։

Երկու գլխաւոր կոմսք եւ Նորթեմպըրլէնտ կոմսուհին քանի մը օր Լիտխատէլի անապատներու մէջ թափառելէն եւ աւազակներէն կողոպտուելէն ետեւ վերջապէս ցրտաշունչ ձմեռուան ատեն բաց օդի մէջ անցնելով եւ անօթութեան վերջի կարօտութիւնք քաշելով իրենց դաշնակից Սկովտացւոց քով կրցան հասնիլ։

Եղիսաբեթ Սկովտացիներէն փախստականները պարապ տեղ պահանջելէն ետեւ սպառնալիք ընելու սկսաւ։ իսկ Մորրէ կէս մը կաշառքով կէս մ՚ալ սպառնալեօք զՀեկտոր Արէմ ստիպեց որ Նորթէօմպըրլէնտ կոմսն իրեն յանձնէ։ իսկ Նորթէօմպըրլէնտ կոմսուհին, Ուէսթմորլէնտ կոմսը, Ռեթքլիֆ, Նորթըն, Մարքէնֆիլտ, Թեմփէսթ եւ ուրիշ փախստականք՝ Եիւմ, Աքօթ, Քէր, Մաքսուէլ եւ Ճոնսթըն սահմանագնակ ազնուականաց պաշտպանութեան տակ ապաւինեցան, որոնք ոչ Եղիսաբեթին սպառնալիքներէն եւ ոչ Մորրէ կոմսին իշխանութենէն կը վախնային։ Ասոնք ամէնն ալ բաց ի Նորթէօմպըրլէնտ կոմսէն քիչ ատենուան մէջ ցամաք երկիրը փախ-դրուեցան, բայց Անգղիայի մէջ մնացող ասոնց բարեկամներն Եղիսաբեթին վրէժխնդրութեան անխնա-դառն տայժը կրեցին։ Ինչք ու ստացուած ունեցողներուն վրայ դատաստանական քննութիւն կ՚ըլլար, որպէսզի դատապարտուելէն ետեւ յարքունիս գրաւելով պատերազմին եղած ծախքը լեցուի. իսկ աղքատները պատերազմական օրինօք կը պատժուէին, անանկ որ Նիւքեսըլի եւ Ուէթերպայի մէջ տեղ եղած վաթսուն մղոն լայն գաւառաց մէջ չկար քաղաք կամ գեղ մը ուսկից քանի մը հոգի պատժուած չըլլան *)։ իսկ

*) Ցէօրեմի եպիսկոպոսը կ՚ըսէ որ ան կողմի կոմսութեանց գաւառացը երդուեալներ չէին կրնար գտնել, "որովհետեւ յանցաւորաց թիւն այնչափ շատ է որ քիչերն անմեղ։

անոնց որոնք որ աս պատիժները չկրեցին թողութիւն առուեցաւ ան պայմանաւ որ հաւատարմութեան երդումն ընելէն զատ վերնագունութեան երդում ալ ընեն, այսինքն զԵղիսաբեթ կրօնին գլուխ ճանչնան։

Թագուհւոյն գաւառապետք ապստամբներէն կշտամբելու չափ վրէժ հանելէն ետեւ, խորհուրդտուին Եղիսաբեթին որ իր մինչեւ հիմայ բռնած եւ ասկից ետեւ բռնելու ճամբան հրովարտակով մը յայտնէ։ Աս հրովարտակիս մէջ կ'ըսէ թագուհին որ, խաբեբաներէն ոմանք մեր վարմունքը կրօնը հալածելու դիտաւորութիւն մեկնելով շատերն ապըստամբութեան գրգռեցին։ Կը հրատարակենք, կ'ըսէ, որ ուրիշ հոգեւոր իշխանութիւն մը չենք ճանչնար, բայց եթէ անի զորն որ մեր նախորդները ճանչցած են, չենք կրնար յանդգնիլ, կ'ըսէ, հաւատոյ մասունքները մեկնելու կամ արարողութիւնները փոխելու կամ աստուածային բանք կամ խորհուրդները մատակարարելու զորն որ ուղղափառ եւ առաքելական եկեղեցին կը գործածէ։ Բայց մեզի պարտք կը համարինք մեր իշխանութեան տակ եղող ամէն վիճակի մէջ եղողները ստիպելու որ քրիստոնէական հաւատոյ մէջ ապրին, կրօնի ամէն պատուիրանները պահեն, եւ հոգ ունինք որ եկեղեցին ի ձեռն եպիսկոպոսաց եւ քահանայից կառավարուի,,։ Ասկից զատ իր հպատակներէն ամէն կասկածը վերցընելու համար, ապահովցուց զիրենք որ կրօնական կարծեաց համար ոչ զոք անհանգիստ պիտի ընէ, ենթադրելով որ սուրբ գրոց եւ առաքելական եւ ուղղափառ հաւատքին դէմ չեն ըլլար, նոյնպէս իրենց կրօնական արարողութեանց արգելք չդնէ պիտի եթէ որ որոշուած եկեղեցեաց մէջ ըլլալու աստուածային պաշտօնին ներկայ գտնուելու հրամանին դրանց հնազանդին։

Աս երկու կողմից յատակագծին դժբախտ հետեւանքը Մարեմայ բարեկամաց քաջասրտութիւնը

---

կամ կասկածաւոր ըլլալով յանցաւորաց երդուեալ դատաւոր կրնային ըլլալ,,։

բոլորովին չկտրեց։ Իր պաշտութեան համար գլխաւոր գործողներէն մէկն էր Լէոնարտ Տաքըր։ Ասիկայ նոյն կոմսից ապստամբութեան առջի օրերը պալատէն հեռացաւ եւ Եղիսաբեթին կողմը բռնելու պատրուակաւ զօրք ժողուել սկսաւ որ Նորթէօմպերլէնտ կոմսին հետ միանայ։ Բայց երբոր անոնց խուռնընթաց փախուստը տեսաւ, անոնց ետեւէն ինկաւ եւ ապստամբներէն շատ մարդ բռնելով բարի թագաւորականի համբաւ ստացաւ։ Բայց պաշտօնեայք բանն իմանալով Սէօսէքս կոմսին հրաման խրկեցին որ զինքը գաղտուկ բռնէ։ Լէոնարտ փախաւ եւ ամսէ մը ետքը Անգղիայի սահմանագլխոց վրայ բազմաթիւ գնդի մը գլուխ անցնելով՝ Անգղիայի ազնուականներէն շատերը "խեցի անուամբ" Տաքըրեանց դրօշին տակ ժողվեց։ Կէլթ գետին եզերքը թագաւորական բանակին հետ զարնուեցաւ. Լէոնարտ իբրեւ քաջ զինուոր եւ յաջողակ զօրավար վերջի աստիճանի քաջութեամբ պատերազմեցաւ, բայց բազմութեան տեղի տալու ստիպուելով Սկովտիա քաշուեցաւ, եւ անկից Բելգիա գնաց (22 փետր. 1570)։

Եղիսաբեթ տեսնելով որ իր երկրին ազնուականներէն շատերն առիթ մը պատահած ատեն յայտնապէս Մարեմայ կողմն անցնելով իր թագաւորութիւնը խռովութեամբ կը լեցընեն, միտքը դրաւ որ զինքը Սկովտիա ապաւինած փախստականաց տեղ փոխէ, եւ Մորրէ կոմսին հետ անոր վրայ գաղտնի դաշնադրութիւն մը լմընցընելու վրայ էր, երբոր Րոս եպիսկոպոսն աս անօրէն դաշնադրութիւնն իմանալով Գաղղիայի եւ Սպանիայի դեսպանաց հետ միատեղ աս ցած գործքին դէմ արիական բողոք ըրաւ՝ ըսելով որ զՄարիամ իր ապստամբ հպատակաց ձեռքը յանձնելն ուրիշ բան չէ բայց եթէ զինքը մահուան դատապարտել։ Եղիսաբեթ աս դաշնադրութեան կատարումը քիչ մը ժամանակ ուշացուց եւ վերջէն Մորրէ կոմսին մահուամբը բոլորովին արգելուեցաւ։



## Ի.

Մորրէ կոմսին մահը. Մարեմայ կողմնակցութիւնը կը մեծնայ. Եղիսաբեթին միջամտութեամբ Լինոքս կոմսը Սկովտիոյի կառավար կը դրուի. Մարեմայ վիճակը. Մարեմայ ազատութեան վրայ նոր բանակցութիւն կ'ըլլայ. զՄարիամ ազատելու Անգլիոյի մէջ եղած նոր խորհուրդն երեւան կ'ելլէ եւ Նորֆոլք դքսին վրայ դատաստան կ'ըլլայ, Նորֆոլք դուքսը կը սպաննուի. զՄարիամ մեռցընելու պաշտօնէից ջանքը. Մորրէ կոմսին մահուընէ ետեւ Սկովտիոյի մէջ եղած խռովութիւնները. Նորթըմպըրլէնտ կոմսին մահը. Եղիսաբեթ դարձեալ զՄարիամ Սկովտացւոց ձեռքը մատնել կ'ուզէ. Մար կոմսը Սկովտիոյի կառավարն ու խորհուրդը կը մերժէ. Մորթըն Սկովտիոյի կառավար կ'ըլլայ։

Մորրէ կոմսը Լէնկսէյտի պատերազմէն ետեւ Հեմիլթոնեանց կալուածներէն շատերը յափշտակած էր, որպէսզի նոյն գերդաստանը տկարացընելով Մարեմայ կողմնակիցները տկարացընէ. աս կալուածներէն մէկն էին Պոթուէլհաւ անուն մէկուն կնոջ ժառանգական կալուածները, զորոնք Մորրէ կոմսն իր բարեկամաց մէկուն մը պարգեւեց։ Նոյն բարեկամը յանկարծ Պոթուէլհաւին կնոջ տունը մտնելով ցած եղանակաւ մը ձմեռը գիշեր ատեն կնիկը տնեն վռընտեց առանց ժամանակ թող տալու որ քիչ մը զգեստեղէն առնու։ Աս անգութ գործքն անանկ մեծ ազդեցութիւն ըրաւ խեղճ կնոջ վրայ, որ երկրորդ օրը խելքը կորսնցուց։ Ասոր վրայ Պոթուէլհաւ չէթէ միայն նոյն մարդուն վրայ ոխ կապեց, այլ նաեւ նոյն իսկ Մորրէ կոմսէն զարհուրելի եղանակաւ վրէժ առնելու երդում ըրաւ։ Երկայն ատեն սպասեց մինչեւ որ յարմար տեղ գտաւ աս գործքս կատարելու։ Երբոր Մորրէ Լինլիթկոյ քաղքէն պիտի անցնէր, փայտեղէն պատշգամի մէջ որն որ Մորրէ կոմսին անցնելու փողոցը կը նայէր՝ դարանի մտաւ, գետինն անկողին մը տարածեց, որպէսզի ոտնաձայն չելլէ, եւ ներսէն սեւ ասուէյով չորս կողմը պատեց որ լոյս չանցնի, ասոնք ընելէն ետեւ, Մորրէ կոմսին ելլելուն կը սպասէր որն ալ իր դարանի մտած տան ուրիշ մերձաւոր տան մը մէջ գիշերն անցուցած էր։ Մորրէ՝ ժողովրդեան բազմութեան

պատճառաւ կամաց քալելու ստիպուեցաւ, որով դարանամուտը ժամանակ ունեցաւ այնպէս աղէկ նշան առնելու որ հրացանին գնտակը Մորրէ կոմսին մէջքէն անցնելէն ետեւ, քովէն գացող ուրիշ ազնուականի մ'ալ ձին վիրաւորեց։ Մորրէ կոմսին քովինները նոյն տան վրայ յարձակեցան, բայց տան դուռը ետեւէն քարակուտով մը ամրացուած էր, եւ մինչեւ որ դուռը կոտրելով ներս մտան, Պոլթուելհաւ ժամանակ ունեցաւ տան ետեւի դրէն փոքր դրան առջեւ պատրաստ արագընթաց ձիու վրայ հեծնելու եւ փախչելու։ Նոյն օրը Մորրէ հոգին փչեց (23 Յունուար 1570)։

Մարեմայ կողմնակիցք աս արիւնալից գործքը մեծ յաղթութեան տեղ դրին. Պէզըլու եւ Ֆեռնիհերսթ ազնուականք իրենց ընկերներով միատեղ նոյն գիշերը թշնամութեամբ Անգղիա յարձակեցան իրենց ուրախութիւնը ցուցընելու համար։ Շաթելլըրոյ դուքսն, Արճէյլ, եւ Հունթլի կոմսերն իբրեւ Մարեմայ փախանորդ կառավարութեան գլուխ անցան։ Քիրքալտի Թագուհւոյն կողմն անցնելով զիրենք Էտինպուրկ ընդունեցաւ, նոյնպէս Աթըլ, Հերրիս եւ Մեթլէնտ կոմսերը յայտնապէս Թագուհւոյն կողմն անցնելով զօրաւոր յարաբերութիւն մը հանեցին, որուն մէջ իրենք զիրենք Թագուհւոյն իշխանութիւնը պաշտպանելու պատրաստ կը ցուցընէին։ Բայց ասոնց յաղթութիւնը շատ երկայն չտեւեց։ Որովհետեւ Եղիսաբեթ երկու զօրաւոր բանակ Սկովտիա խրկեց (17 Ապրիլ), մէկն արեւմտեան, իսկ մէկալն արեւելեան կողմը, որպէսզի Սկովտիայի նոյն սահմանաբնակ ցեղերէն, որոնք որ իր ապստամբաց ընդունելութիւն տուած եւ սահմանները բռնաբարած են, վրէժ առնու։ Աս առթով Ճոնսթընի, Քէրրի եւ Սէօրի կալուածներն Անգղիացւոյ բանակներուն բարբարոսութեան զոհ եղան։ Իսկ Մորթըն կոմսն որն որ Թագաւորին կողմնակցութեան գլխաւորներէն մէկն էր Եղիսաբեթին խրկած օգնական զօրքերով՝ Հեմիլթոնեանց, Լիվինկթընեանց եւ Սկովտիայի Թագուհւոյն ուրիշ կողմնակցաց սատացուած-

ներն անխնայ կ'ապականէր, եւ հազիւ Ռոս եպիսկոպոսին ջանքովն եւ Գաղղիայի դեսպանին միջնորդութեամբն անոր բարբարոսութենէն նոյն ստացուածներուն քիչ մը խնայուեցան։ Եղիսաբեթ իր ազդեցութեամբը Մորրէ կոմսին տեղը Լինոքս կոմսը թագաւորին հայր կառավար ընտրելէն ետեւ, զօրքն ետ կանչեց։

Մարեմայ Անգղիա գալն երկու տարիէն աւելի եղած էր, բայց դեռ բանտարկուած կը կենար, առանց իր վիճակին վրայ որոշում մ'ըլլալու։ Ամէն անկողմնակալ մարդ աս անիրաւ բանտարկութիւնը բռնաւորական գործք մը կը համարէր, որն որ ամենեւին չէր կրնար արդարանալ։ Սակայն նոյն ժամանակուան մոլեռանդն նորոգչաց կրօնասիրութիւնն այն գործքը արդարացընելու բաւական պատճառ կը գտնէր աս նկատմամբ որ Մարիամ Եղիսաբեթին մերձաւոր յաջորդն ըլլալով գահ որ ելլէ թէ իրենց եւ թէ նորոգեալ կրօնին կրնար վնասել։ Աս բաւական պատճառ կը համարէին զինքը բանտարկեալ պահելու եւ աշխարհքիս աչքէ մոռցընել տալու։

Սանկ հոգերէն ազատելու ամենէն կարճ եւ ապահով միջոց ան կ'ըլլար, եթէ անյապաղ չարեաց արմատին վրայ տապարը դնէին որով զՄարիամ սպաննելով թէ ներքին եւ թէ արտաքին կողմնակցաց գաղափարները մէկէն ի դերեւ կ'ելլէին։ Ասիկայ ընելու երկայն ատենէ վեր Անգղիայի պաշտօնեայք Եղիսաբեթին խորհուրդ կու տային եւ թէ որ Եղիսաբեթ աս խորհուրդը մերժած է՝ չեթէ մարդասիրութենէն շարժեալ, այլ պարզ իր համբաւոյն համար։ Եղիսաբեթ կը բաղձար որ Մարիամ մեռնի, բայց իր մերձաւոր ազգականին արեան մէջ ձեռքերը թաթաւել կ'ամըչնար։ Ասոր համար կ'ուզէր Մորրէ կոմսին ձեռքը մատնել ան պայմանաւ որ անիկայ եղանակաւ մը զՄարիամ մէջ տեղէն վերցընէ։

Ուրիշ կողմնակցութիւն մը որն որ աս աշխարհագոյժ եւ վերջի աստիճանի անիրաւ գործքը չէր յանդգներ ընել, Եղիսաբեթին խորհած կերպէն տարբեր միջոց մը մտածեց, այսինքն զԵղիսաբեթ

Գաղղիայի թագաւորական իշխանի մը հետ ամուսնացընել։ Սէօսէքս կոմսն աս խորհրդին ոգին էր։ Եթէ Եղիսաբեթ աս ամուսնութենէն յաջորդ ունենայ, ան ատեն Մարիամ մերձաւոր ժառանգ ըլլալէն կը դադրէր, իսկ եթէ անորդի մեռնելու ըլլայ, դարձեալ չկրնար Մարիամ Անգղիայի աթոռը ժառանգել, որովհետեւ Գաղղիան Անգղիայի տան հետ սաստիկ մերձաւոր խնամութիւն ունենալով՝ իր շահուն դէմ գործած կ'ըլլար թէ որ զՄարիամ Անգղիայի աթոռը նստեցընէր։

Իսկ երրորդ կողմնակցութիւն մը որուն գլխաւորներն էին Պրովլէյ, Մէյլտմէյ, Սատլէր եւ Սիտնի մէկալ կողմնակցութեանց վրայ ծիծաղելով՝ Եղիսաբեթին մինչեւ հիմայ բռնած ճամբուն հաւնելով, կը պնդէին որ եթէ ասկից վերջն ալ նոյն քաղաքականութիւնը շարունակելու ըլլայ, ինքը միշտ յաղթող կ'ելլէ։ Ուրիշ բան հարկաւոր չէ, կ'ըսէին, բայց եթէ ներքին դժգոհները խիստ օրէնքներով սանձել, իսկ արտաքինները զբաղեցընել այլ եւ այլ երկիրներուն մէջ ապստամբութեան հոգին վառ պահել տալով, աս կերպով, կ'ըսէին, իր հպատակաց ահարկու կ'ըլլայ, եւ դրացի տէրութեանց ալ դատաւոր եւ իրաւարար։ Աս առաջարկութեան՝ լռելեայն նոյն իսկ մէկալ երկու կողմնակցութիւնք ալ հաւանութիւն տուին, մինչեւ որ իրենց խորհածներն առթով մը կարող ըլլան յարդիւնս ածել։ Բայց փորձը ցըցուց որ իրենց գործքը՝ տկար, փոփոխամիտ եւ ինքնագործ կնոջ մը հետ էր, որն որ զանազան կրից տակ, յանկարծական ամբարտաւանութենէ, երկիւղէ, եւ անարգ ագահութենէ մը գրգռեալ, անոնց ամէն խորհուրդներն եւ տրամադրութիւններն ի դերեւ կը հանէր։

Ասանկ յուսահատական պարագայից մէջ Մարեմայ Անգղիայի մէջ եղող կողմնակիցք Գաղղիայի եւ Սպանիայի թագաւորաց դիմեցին որ իրենց ազդեցութեամբ ստիպեն զԵղիսաբեթ որ զՄարիամ ազատ թող տալու պայմաններ որոշէ։ Եղիսաբեթ տէրութեանց խնդրոյն առ երեսս ինքզինքը պատրաստ ցը-

ցուց տեսնելով որ Գաղղիայի կալուինականք ուղղափառաց հետ խաղաղութիւն ըրած լմնցուցած էին, ուստի կը վախնար որ չըլլայ թէ Կարոլոս Թ. Գաղղիայի թագաւորն իր խնամւոյն իրաւունքը պաշտպանելու ոտք ելլէ։ Այս համար Մարեմայ վրայ ըրած խստութիւնները քիչ մը նուազցուց եւ Սկովտիայի թագուհւոյն բանտարկուած տեղը՝ Սեսիլ եւ Զեսթուորթ ղրկեց, որպէսզի անոր հետ դրուելու պայմանաց վրայ խօսին։ Մարիամ այս բանակցութեան ատեն, որն որ 14 օր տեւեց իր խոհեմութեամբն եւ աչալրջութեամբ առանց խորհրդականնի եւ բարեկամի միայն եւ առանձին ան խաբեբայ եւ խորամանկ պաշտօնեաները շատ քրտընցուց։ Դրուած յաջորդ պայմանները, ինչպէս որ կրնար գուշակուիլ, միայն Եղիսաբեթին նպաստաւոր էին։ Մարիամ այն համբաւեալ եւ այնչափ ատեն Եղիսաբեթին նախանձոտութիւնը գրգռող Էտինպուրկեան դաշնադրութեան հարկադրեցաւ ստորագրել։ Եղիսաբեթին եւ անոր օրինաւոր յաջորդաց կենդանութեան ատեն, իր Անգղիայի աթոռոյն վրայ ունեցած ժառանգութեան իրաւունքը պիտի չպաշտպանէ. իրեն դէմ զէնք առնող հպատակաց թողութիւն պիտի շնորհէ եւ վերջապէս պիտի խոստանայ որ ոչ գործքով եւ ոչ ալ ուրիշ ինչ եւ իցէ դաշնադրութեամբ Եղիսաբեթին կառավարութեան վնաս չհասցընէ։ Եղիսաբեթ այս պայմանաց ապահովութեան փոխարէն կը պահանջէր որ Մարիամ իր որդին Անգղիա բերել տայ, Սկովտիայի ազնուականներէն քանի մը հոգի անոր քով պատանդ թողու եւ քանի մը բերդ ալ Անգղիացւոց ձեռքը յանձնէ։ Մարիամ ասոնք եւ ասոնց նման շատ պայմաններ ընդունեցաւ. անոնցմէ մէկ քանիններուն փախուստ տուաւ, իսկ մէկ քանին ալ որոնք իր մայրական եւ կրօնական զգացմանցը կը դպչէին թեթեւցընելու ջանաց, Եղիսաբեթին գթութեանը թող տալով։ Բայց Մարիամ ինչ պայմանաց ալ զիջանէր, Եղիսաբեթ նոյներն ընդունելիք չուներ, որովհետեւ այս ամէն գործողութիւններով ուրիշ վախճան չէր դիտէր, բայց եթէ ժամանակ

վտարկել եւ Մարեմայ դաշնակիցներուն առժամանակ մը դատարկ յուսով խաղաղցընել։ Եղիսաբեթ՝ Մարեմայ պէս անձեռ թագուհի մը որն որ իրեն ապաւինած էր, այնչափ ատեն անկցուր եւ բարբարոսական եղանակաւ բանտարկելէն ետեւ, չէր կրնար ազատ թողուլ առանց իր անձը վտանգի մէջ դնելու։ Մարիամ իր խիստ բանտարկութեան ատեն՝ Անգղիան դղրդեցուց, կ՚ըսէր Եղիսաբեթ մօրքէն, որչափ եւս պաշտել նոյնը կրնայ սպաննեցընել եթէ թագաւորական իշխանութիւնը նորէն ձեռք առնու։ Ներքուստ այսպէս կը մտածէր Եղիսաբեթ, թէպէտ եւ արտաքուստ եւ գործքով այլազգ կը ցուցընէր։ Որոշուած պայմանաց առ երեսս հաւանութիւն տալով, ուրիշ բան չէր մնացած, բայց եթէ Սկովտիայի մէջ Մարեմայ եւ թագաւորին կողմնակցաց հաստատութիւնը։ Մարեմայ եւ թագաւորական պատգամաւորները (1571 փետր. 11ին) Լոնտոն հասնելով, Մորթըն որն որ թագաւորին պատգամաւորաց գլուխն էր, Եղիսաբեթին առջեւ կալուինական սկզբամբք երկայն բարբակ ճառ մը խօսեցաւ (28 փետր.) Հաստատեց եւ իշխանաց մէջ եղած իրաւանց վրայ՝ քննելով թէ ազնուականք քիչուոր կամ շատուոր եղերեն կրնան իրենց անօրէն իշխանը վար առնուլ. եւ ի վերջոյ խօսքն անով կնքեց որ իրենք իրենց թագաւորին իշխանութիւնը նուազեցընող դաշնադրութիւն մ՚ընելու ոչ լիակատար իշխանութիւն ունին եւ ոչ ալ կրնան ունենալ (իրենց թագաւորը դեռ անչափահաս ըլլալուն համար)։ Եղիսաբեթ ճառին առջի մասին վտանգաւոր վարդապետութիւնը շատ տհաճութեամբ մտիկ ըրաւ. իսկ երկրորդին շատ հաճութիւն ցուցընելէն ետեւ այսպէս խօսեցաւ. որովհետեւ թագաւորին պատգամաւորները լիակատար իշխանութիւն չեն կրնար ունենալ, անոր համար բան մը չենք կրնար որոշել։ — Ասանկով խեղճ Սկովտիայի թագուհին տասը ամսի չափ դատարկ յոյսերով պարարելէն ետեւ, աւելի խիստ բանտարկութեան դատապարտեցին։

Հազիւ թէ պատգամաւորք իրարմէ բաժնուե-

ցան (2. Ապրիլ), Անգղիայի խորհրդանոցը բացուելով՝ պաշտօնեայք քիչ մը յառաջ հիւսիսային գաւառաց մէջ զսպուած ապստամբութենէն, քահանայապետական հրովարտակին հրատարակութենէն, եւ քանի մը անգղիացի ազնուականաց ինքնագլուխ Անգղիայէն ելլելէն առիթ առնելով զանազան օրէնքներ առաջարկեցին, որոնց գլխաւոր նպատակն էր Մարեմայ կողմնակիցները խոնարհեցընել եւ Անգղիայի ուղղափառները հռոմէական գահին հաղորդութենէն կտրել։ Աս օրէնքներէն մէկն որն որ երկու խորհրդանոցէն ալ ընդունելութիւն գտած էր եւ թագաւորական հաստատութիւն ալ առած, երկու մաս ունէր, մէկն էր "Ով որ Եղիսաբեթին կենդանութեան ատեն թագաւորութեան իրաւունք մը կը պահանջէ կամ կը պաշտպանէ ըսելով որ նոյն թագաւորութիւնն իրեն չիյնար, կամ կը յանդգնի զրուցելու թէ ինքը հերետիկոս, բռնաւոր, անհաւատ եւ աթոռոյն յափշտակողն է, կ'ուրանայ որ խորհրդանոցը իշխանութիւն չունի թագաւորութեան յաջորդութիւնն օրէնքով հաստատել, տէրութեան դէմ յանցանք գործած կ'ըլլայ եւ մահապարտ է։

Աս առթով Սեսիլ պաշտօնեան՝ Անգղիայի յաջորդութիւնն ապահովցընելու մտօք, ամենայն զօրութեամբ կը ջանար որ Եղիսաբեթ Անժու դքսին (Կարոլոս Թ. Գաղղիայի թագաւորին եղբօր) հետ ամուսնանայ, միանգամայն յուսալով որ ասով երկու հզօր դրացի տէրութեանց մէջ մշտնջենաւոր խաղաղութիւն մը կը հաստատուի։ Պաշտօնեայք աս ամուսնութիւնն եւ դաշնակցութիւնը կատարել տալու այնչափ եռեւէ կ'իյնային, որչափ որ համոզուած էին որ առանց անոր չէր կրնար Եղիսաբեթ հաստատուն կենալ մանաւանդ որ նորէն Անգղիայի մէջ Մարեմայ կողմն եղող ասդիէն անդիէն ձայներ կ'ելլէին, թէպէտեւ մինչեւ հիմայ զէնքն ազատելու ձեռք զարկած փորձերը չյաջողեցան եւ դժբախտ վերջ մ'ունեցած էին։ Բայց աս անգամ աս ջանքն աւելի ընդհանուր կ'երեւար, որովհետեւ ինչպէս Ռոս եպիսկոպոսը կ'ըսէ թէ, Ազգին մեծագոյն մասը կառավա-

րութեան բռնած ճամբուն բոլորովին դէմ էր։ Առջի թագուհւոյն (Մարիամ Սպանիացւոյն) ատեն ծառայութեան մէջ եղող ամէն պաշտօնեայք, տէրութեան մեծ պաշտօնեայէն սկսեալ մինչեւ գեղի մը դատաւորն՝ աս թագուհւոյն ատեն իրենց պատիւը, համարումը կորսնցուցած էին։ Եկամուտ ունեցող ամէն պաշտօններէն մերժուած, անարգ հալածմանց եւ նախատանաց ենթակայ, բնականապէս կը բաղձային որ կառավարութեան մէջ փոփոխութիւն մ՚ըլլայ կամ նոր իշխան մը յաջորդէ։ Աղքատութեան մէջ ինկած ազնուական գերդաստանաց երիտասարդները չուզելով իրենց ապրուստն աշխատութեամբ վաստըկիլ, եւ քաղաքական կամ զինուորական պաշտօնի մէջ մտնել չկրնալով, յեղափոխութիւնը խաղ մը կը համարէին, որուն մէջ բան մը կորսնցընելու չէին վախնար իսկ բան մը վաստըկելու միշտ յոյս ունէին։ Սկովտիայի թագուհւոյն բարեկամք՝ անոր դժբախտ վիճակին վրայ ցաւակցելով եւ անոր իրաւանց պաշտպան կենալով՝ այն պաշտօնեաներն՝ որոնք որ իսկզբանէ Մարեմայ մահուչափ թշնամի էին՝ վար առնելու կը ջանային։ Ուղղափառաց երեւելի գերդաստանք տեսնելով որ կրօնից անհանդուրժելի օրէնքներէն շատ կը տանջուէին լաւագոյն կը համարէին խղճի մտաց ազատութիւնը պաշտպանելու համար իրենց կեանքն եւ ինչքը վըհել քան եթէ զանոնք իրենց թագուհիէն յափըշտակուած տեսնել եւ իրենց օրերը բանտի մէջ անցընել։ Ասոնք ամէնն ալ առաջնորդի մը կը սպասէին։ Իրենց բոլոր յոյսը Նորֆոլք դքսին վրայ դարձուցած էին, որն որ դեռ բանտի մէջն էր. դըսի տէրութիւններէն ալ օգնութիւն խնդրեցին եւ գըխաւորաբար Սպանիայի դեսպանին դիմեցին որն որ Անգղիայի գործակալաց պէս ամէն տեղ ապստամբաց ոգիները կը գրգռէր։

Դժբախտութեամբ Պայլի անունով Մարեմայ ծառաներէն մէկը Տուր քաղքին մէջ բռնուեցաւ ասիկայ Պրիւսելէն կու գար եւ քովը նամակակապոց մ՚ունէր (1571. Ապր.)։ Աս նամակաց մէջ

Թուանշաններով գրուած քանի մը թղթեր. կային, բայց յառաջ քան ասոնք խորհրդականաց ժողովքին առջեւ հանելը, Ռոս եպիսկոպոսը ճարպկութեամբ մը զանոնք մէջ տեղէն վերցուց եւ անոնց տեղը աննշան թղթեր խոթեց: Պայլի տանջանարանին վրայ խոստովանեցաւ որ նոյն նամակները Ռուտոլֆի անուն Իտալացիէ մը ընդունած էր, որն որ առեւտրօք Լոնտոնի մէջ սեղանաւոր էր. նոյն նամակաց մէջ Ալպա դուքսն Անգղիայի վրայ յարձակում մ՚ընելու հաւանութիւն կու տար: Աս բանս բաւական եղաւ պաշտօնէից կասկածը գրգռել, բայց դեռ դաւաճանութեան թելը չէին գտած:

Օգոստոսի մէջ Պրաւն անունով մէկը մատնութիւն ընելով խորհրդականաց ժողովքին առջեւ քսակ մը ստակ բերաւ զորն որ Հիկֆորտ՝ Նորֆոլք դքսին քարտուղարին ձեռքէն ընդունած էր՝ որպէսզի Պաննիսթեր անունով նոյն դքսին սնտեսին ձեռքը յանձնէ: Նոյն քսակին մէջ նամակ մ՚ալ գտնուեցաւ, ուսկից իմացուեցաւ որ աս ստակը Հերիս կոմսին համար էր, որն որ Սկովտիայի թագուհւոյն գործակալն էր: Ասոր վրայ շատ անձինք բռնուելով բանտ դրուեցան: Ռոս եպիսկոպոսն ալ բռնուողներէն մէկն էր, որն որ տանջանարանի վրայ պաշտօնէից ուզածը խոստովանեցաւ:

Եղած քննութիւններէն երեւան ելաւ որ զՄարիամ ազատելու համար զանազան խորհուրդներ մտածուած էին. Մարիամ ամէն անգամ Նորֆոլք դքսին խորհուրդ կը հարցընէր եւ կ՚ընդունէր. բռնուած ստակը Գաղղիայի դեսպանէն էր, զորն որ նոյն դեսպանը Նորֆոլք դքսին յանձնած էր որ Մարեմայ տայ: Դքսին գլխաւոր յանցանքներէն մէկը սեպուեցաւ զՌուտոլֆին՝ Ալպա դքսին, Սպանիայի թագաւորին եւ Քահանայապետին խրկելը: Աս ստոյգ է որ նոյն տիրապետներն իրենց ծառայութիւնը շատոնց Մարեմայ մատուցած էին, բայց Մարիամ նոյն ատենն Եղիսաբեթին հետ բանակցութեան մէջ ըլլալով, սպասեց մինչեւ որ բան մը որոշուի, եւ երբոր տեսաւ թէ Եղիսաբեթին առ-

դարագնացութեան վրայ ամենեւին յոյս չկայ եւ քաղաքական խռովութեամբ վրդովուած Գաղղիայէն օգնութիւն մը չէկրնար ընդունիլ, Ռուտոլֆիին իբրեւ իր դեսպանին ձեռօք օտար տէրութեանց հետ կը խօսակցէր. Նորֆոլք ալ աս բանիս հաւանութիւն տուած եւ աւելի կարգի դրած էր:

Երբոր վերոյիշեալ դաւաճանութեան յայտնուելէն պատճառած երկիւղը փարատեցաւ, պաշտօնեայք որոշեցին որ դաւաճանաց դէմ օրինաց ամենայն խստութիւնն ի գործ դնեն: Պատժուողներուն մէջ առջինը Նորֆոլք դուքսն եղաւ: Դքսին՝ Մարեմայ հետ ամուսնանալու յարատեւութիւնն, Եղիսաբեթին նախանձոտութիւնն եւ կատաղութիւնը վերջի աստիճանի հասցուց. նոյն իսկ պաշտօնեայք ալ կը բաղձային որ մեռնի, որպէսզի Մարեմայ ուրիշ կողմնակիցք ալ խրատուին եւ զգուշանան: Եղիսաբեթ 26 ատենակալներէն մասնաւոր ժողովքի մը յանձնեց որ Նորֆոլքին դատաստանը քննեն (14 Յունուար 1572): Ասոնք Ուէսթմինսթէր ժողովելով դքսին վրայ հետեւեալ յանցանքները դրին, ըսելով որ իր թագուհւոյն կենաց դաւաճանութիւն նիւթած եւ Սկովտիայի թագուհւոյն հետ ամուսնանալ ուզած է, գիտնալով որ անիկայ Անգղիայի գահին իրաւունքները կը պահանջէ եւ Եղիսաբեթին ալ թշնամին է. Ռուտոլֆիին ձեռօք օտար տէրութիւնները գրգռած է Անգղիայի դէմ արշաւանք մ'ընելու. եւ Եղիսաբեթին դէմ ապստամբ Անգղիացւոց եւ Սկովտացւոց՝ որոնք անոր թշնամի են, ստըկով օգնութիւն ըրած է: Դուքսն աս երեք ամբաստանութեանց յաջորդ պատասխանը տուաւ. Նախ, ըսաւ, կ'ուզէի իմանալ որ արդեօք Մարեմայ հետ ամուսնանալն ի՞նչ քրէական յանցանք յառաջ կը բերէ. թէ որ յանցանք մը կայ, ան կրնայ ըլլալ որ այնպիսւոյ մը հետ ամուսնանալ կ'ուզեմ, որն որ ըստ ձեզ Անգղիայի թագուհւոյ անուն կը կրէ: Բայց աս ալ ստոյգ չէ, որովհետեւ քանի որ Մարիամ ինքնիշխան տիրել սկսած է, նոյն պատուանունը բնաւ վրան առած չէ, եւ անկից ալ բոլորովին հրաժարիլ

պատրաստ է, թէ որ անորդին Եղիսաբեթ զինքն իր յաջորդ ընդունի։ Երկրորդ, Ռուտոլֆին հետ միայն մէկ անգամ խօսեցայ, անոր առաքելութեան պատճառն ալ պարզ Մարեմայ Սկովտիացի հաւատարիմ հպատակաց օգնութիւն գտնելուն համար է։ Երրորդ, Անգղիայի ապստամբաց երբեք ստակ խրկած չեմ, եւ թէ որ իմ ծառաներէս մէկուն յանձնած եմ որ դրամոց գումար մը Հերրիս ատենակալին խրկէ, անկից ի՞նչ կը հետեւի։ Հերրիս Մարեմայ հաւատարիմ ծառաներէն մէկն է, եւ Մարիամ Եղիսաբեթին ծանօթ դաշնակից է։ Նորֆոլք ասոնք արձակ համարձակ եւ արիական հաստատութեամբ խօսեցաւ։

Այս դատաստանիս պատմութիւնը կը ցուցնէ որ որչափ դժուարին բան է եղեր նոյն ատեն Անգղիայի մէջ բանտարկեալ մարդու մը դատապարտութենէն պրծիլ, մանաւանդ երբոր նոյն իսկ կառավարութիւնն իրեն դատախազ կ'ըլլար։ Նորֆոլք դուքսը տասնեւութը շաբաթէ ի վեր Թաուէր խիստ բանտարկուած կը կենար ուր բարեկամաց հետ տեսնուելու ամենեւին հրաման չունէր։ Վրան ըլլալու քննութիւնն առջի իրիկունընէ իրեն իմացուցին, իսկ ամբաստանութիւնները՝ դատաստան կտրուելու օրը։ Քովը փաստաբան մը առնուլ թող չտուին, որուն խորհրդովը կրնար գէթ կառավարութեան փաստաբանաց սոփեստութենէն զգուշանալ։ Ասոնք պատրաստ թղթերով եւ յիշատակարաններով դիմացն ելան, իսկ ինքն առանց պատրաստուելու անոնց հարցմանց եւ քննութեանց՝ երեք տարուան մէջ եղած խօսակցութեանց եւ գործոց վրայ եւ ան ալ ամենայն ամենափոքր պարագաներով պատմուած բաներուն պէտք էր պատասխան տալ։ Իրեն դէմ բերուած ապացոյցները բռնուած նամակներն եւ տանջանարանի վրայ կեանքն ազատելու յուսով ուրիշներուն խոստովանութիւններն էին։ Երբոր դուքսն աս իրեն դէմ բերուածները մերժելով բողոք կ'ընէր, անոնք պատասխան կու տային որ իր պարզ ուրանալն անոնց երդմամբ հաստատածին չիկրնար հա-

ւասարիլ: Ասոր վրայ դուքսը պահանջեց որ Եդուարդ Զ.ին օրինաց համաձայն խոստովանողները դիմացը հանուին, բայց պաշտօնեայք աս պահանջման փախուստ տալով այսպէս ըսին. Նոյն օրէնքը խիստ եւ վնասակար ըլլալով վերցուած է: Դատաւորք ժամ մը խորհուրդ ընելէն ետեւ, դքսին իբրեւ պարտաւոր դատապարտեցին: Երբոր աս ըրին, դուքսը հաստատուն ձայնիւ եւ աներկիւղ դարձաւ դատաւորներուն եւ աս խօսքերս զրուցեց: "Տեարք իմ, ձեր կտրած դատաստանը մատնչի դատաստան մըն է, բայց ես իմ թագուհւոյս հաւատարիմ հպատակ կը մեռնիմ: Չեմ աղաչեր որ իմ կենացս համար բարեխօս ըլլաք. դուք զիս ձեր մէջէն մերժած էք, սակայն ես կը յուսամ որ շուտով զիս ուրիշ լաւագոյն ընկերութեան մը մէջ կը գտնեմ: Թագուհիէն միայն աս կը խնդրեմ որ իմ որբ տղոցս հոգ տանի եւ պարտքերս հատուցանել տայ: Աստուած գիտէ որ ինչ բարի դիտաւորութիւններ ունէի անոր եւ իմ հայրենեացս վրայ. այսու ամենայնիւ ասանկ բաներ վրաս յանցանք կը դրուին: Տեարք իմ ողջ լերուք:

Դուքսը բանտի մէջ խոստովանեցաւ որ իր թագուհւոյն պարտաւոր հնազանդութիւն չէ ըրած, բայց միանգամայն կը պնդէր որ անոր դէմ մատնութեան խորհուրդ երբեք ունեցած չէ: Եղիսաբեթ Փետրուար 10ին դատապարտութեան վճռոյն ստորագրեց, բայց երկրորդ օրը նորէն ետ առաւ: Անգութ Սեսիլ թագուհւոյն առջեւը դրաւ ան բազմահնար վտանգներն, որոնք դքսին ազատելէն կրնային հետեւիլ. քարոզիչք՝ յանուն Անգղիական ազգին կը պոռային որ վրէժ հանուի ան մարդէն, որն որ զինք գերի կ'ուզէր ընել եւ իրենց կրօնը կործանել կը ջանար: Եղիսաբեթ երկու ամսի չափ տատամսութեան մէջ կենալէն ետեւ Ապրիլի 9ին նորէն ստորագրեց, բայց խղճի անհանդարտութենէն քունը չտանելով, նոյն գիշերը ժամը երկուքին նորէն ետ առաւ:

Պաշտօնեայք կը բաղձային որ Նորֆոլքին մահը

ուրիշ աւելի պատուական զոհի մը պատրաստութիւն մը ըլլայ, անոր համար Եղիսաբեթին կ՚ըսէին որ տապարը չարութեան արմատին վրայ դնելու է, ուրովհետեւ քանի որ Սկովտիայի Թագուհին գերեզմանի մէջ չէ, ոչ իր կեանքն եւ ոչ ալ Անգղիան ապահով կրնայ ըլլալ: Եղիսաբեթ աս խօսքերս ամէն անգամուն տհաճութեամբ մտիկ ընելու երես կ՚ընէր, եւ կ՚ըսէր, ինչպէս կրնամ ան թշուառը մեռցընել որն որ ուրուրին մագիլներէն փախչելով իմ ոտքիս տակ պաշտպանութիւն խնդրած է:

Վերջապէս Սեսիլին չարութեամբը թէ վերին եւ թէ ստորին սենեակները Թագուհւոյն աղերսագիր մը տուին, որուն մէջ դքսին եւ Մարեմայ մահը կը խնդրէին, ըսելով թէ անոնց կեանքը Թագուհւոյն կենաց հետ չիկրնար միաբանիլ: Եղիսաբեթ անոնց տրտունջը դադրեցընելու համար աստ եւ այժմ իրենց խնդրոյն մէկ մասը կատարեց Նորֆոլք դուքսը պաշտօնէից կատարութեան զոհ ընելով: Երրորդ անգամ վճռոյն ստորագրեց եւ դուքսը Յունիսի 2ին դահճին ձեռօք հոգին հանեց հինգ ամիս կենաց եւ մահու, յուսոյ եւ երկիւղի մէջ տատանելէն ետեւ:

Դքսին մահուընէն ետեւ պաշտօնէից գլխաւոր ջանքն եղաւ Սկովտիայի Թագուհին ալ մեռցընել: Թէ վերին եւ թէ ստորին սենեկաց անդամները միաբանելու համար զանազան գրուածներ հրատարակուեցան որոնք աս վախճանիս կրնային ծառայել: Պուչանանին դսրովագիրը, ստայօդ նամակաց տպագրութիւնը, քանի մը աստուածաբանից աստուածաշունչ գրքէն հանած վկայութիւններով տետրակներն որոնց մէջ կը ցուցընէին որ Սկովտիայի Թագուհին մեռցընելը չէ թէ միայն պարտք եւ արդարութիւն է, այլ նաեւ Եղիսաբեթին պատիւն եւ ապահովութիւնն ազատելու միակ միջոց է: Երկու սենեակք պաշտօնէից գրգռելովը զՄարիամ դատապարտելու անաչառութիւն ըրին, այսինքն առանց անոր վրայ հարցափորձ եւ կատարեալ քննութիւն ընելու, միայն ապացոյցները բաւական պատճառ համարելով զինքը դատապարտել: Աս տեսակ դատապարտու-

թեան օրէնքը հազիւ բերած բարբարոս ազգի մը մէջ կը գտնուի։ Եղիսաբեթ աս օրինաց գործածութիւնն արգիլեց, բայց խորհրդանոցը չհնազանդեցաւ։ Եղիսաբեթ երկրորդ անգամ ալ արգելելէն ետեւ Սեսիլ ուրիշ բան մը մտածեց, զորն որ խորհրդանոցն ընդունեցաւ, այսինքն զՄարիամ՝ Անգղիայի աթոռը ժառանգելու անընդունակ հրատարակել։ Թագուհին բացարձակապէս արգելեց որ ես ոչ մէկ եղանակաւ մը ժառանգութեան խնդրոյն մէջ խառնուին, բայց երբոր տեսաւ թէ Սեսիլին գործունէութեամբ նոյն առաջարկութիւնն երկու սենեակներէն ալ ընդունելի եղաւ, խորհրդանոցին նիստերը դադրեցուց։ Եղիսաբեթ խորհրդանոցը փակելէն ետեւ քանի մը հոգի գործակալ ընտրեց որ Մարեմայ առջեւ տրտունջ ընեն՝ ըսելով որ նոյն դաւաճանութեան մէջ ինքն ալ մասնակից եղած է։ Մարիամ նոյն բանին նկատմամբ պատասխան տուաւ, որ Նորֆոլք դքսին հետ ամուսնանալուն համաձայնութիւն տալով, Եղիսաբեթին դէմ թշնամական դիտաւորութեան մը չունէր, իսկ Ռուտոլֆիին ձեռօք եղած թղթակցութեամբս ուրիշ վախճան չունէի, բայց եթէ դրամական կարիքներս հոգալ եւ օտար տէրութիւններէն օգնութիւն խնդրել թէ ինծի եւ թէ Սկովտիայի հաւատարիմ հպատակացս համար։

Մ՚որէ կոմսին մահուանէն Սկովտիայի մէջ խաղաղութիւնը չհաստատուեցաւ, եւ երկու կողմնակցութիւնք հաւասար անգթութեամբ իրար կը ջարդէին, մինչեւ որ Եղիսաբեթին միջնորդութեամբ քիչ մը ատենուան համար զինադադար եղաւ, որն որ երկու կողմանէն ալ ճիշդ չպահուեցաւ։ Իսկ երբ որ զինադադարը լմնցաւ Լինոքս խնամակալը կամ Սկովտիայի կառավարը Տէօնպարթըն բերդն առնուլ ուզեց, որն որ թագուհւոյն ամենէն զօրաւոր տեղն էր։ Այս բերդս ընդարձակ դաշտի մը մէջ եղող բարձր եւ գրեթէ անմատոյց ժայռի մը վրայ շինուած էր եւ նոյն ժամանակուան գաղափարին համաձայն անառիկ կը համարուէր։ Եւ որովհետեւ նոյն բերդը Քլէյտ գետին վրայ կը տիրէր, որուն վրայէն

զՄարիամ ազատելու համար օտար զօրք անցընելու շատ յարմար էր, անոր համար Լինզա նոյն բերդին վրայ աչքը դարձուցած էր։ Նոյն բերդին մէջ պահանորդ զինուորներէն մէկը անպիտան վարմունք ունենալուն համար նոյն տեղէն վռընտուեցաւ. ասիկայ ոխ պահելով խնամակալին առաջարկեց որ բերդն առնելու ճամբան կը սորվեցընէ եւ յարձակման ատեն առջի զինուորներէն մէկն ինքը կ՚ըլլայ։ Խնամակալն առանց ձայն հանելու անմիջապէս պատրաստութիւններ տեսնելու սկսաւ, եւ յարձակման ատեն վեր ելլելու հարկաւոր եղած սանդուղներ շինել տուաւ եւ դէպ ի բերդ տանող ամէն ճամբաներն ալ բռնեց որ չըլլայ թէ մէկը իր խորհուրդը մատնէ։ Իրիկուն մը Քրաուֆըրտ Կլէսկոյ քաղքէն ելաւ՝ փոքր բայց ընտիր գնդով մը կէս գիշերուան մօտ ժայռին ստորոտը հասաւ (2 փետ. 1573)։ Լուսինն աներեւոյթ էր, երկինքն ալ որ մինչեւ նոյն ատեն պաղպաջուն եւ ջինջ էր մէկէն թանձրամած ամպերով ծածկուեցաւ։ Պաշարողներն մանաւանդ ան կողմանէ վեր ելլել սկսան ուր որ ժայռը խիստ բարձր էր եւ ասոր համար ալ քիչ պահապան կար։ Հազիւ թէ առջի սանդուղը դնելով վեր ելլելու սկսած էին, մէկէն ի մէկ ծանրութենէն նոյն սանդուղը կոտրեցաւ ինկաւ, սակայն նոյն դժբախտութեամբ ոչ ոք վնասուեցաւ կամ շառաչիւնէն պահապաններն արթընցան։ Առաջնորդն եւ Քրաուֆըրտ ժայռին ամենաբարձր տեղն ելլելով սանդուղը ժայռերուն ճեղքերուն մէջէն բուսած արմատոց կապեցին։ Մեծաւ դժուարութեամբ ամէնն ալ նոյն տեղն եկան հասան, երկրորդ անգամ սանդուղները կապեցին եւ հաստատեցին եւ վեր ելլելու սկսան. բայց աս անգամ ալ իրենց առջեւ անակընկալ դիպուած մը ելաւ։ Վեր ելլելու ատեն զինուորներէն մէկը կաթուածէն զարնուելով սանդղին վրայ փաթթուեցաւ ու մնաց։ Անոր վրայէն անցնիլ անկարելի էր, զինքը վար նետել անգթութիւն էր եւ անտարակոյս այնչափ բարձր տեղէն իյնալու բոմբիւնը պահապանները կրնար արթնցընել։ Քրաուֆըրտ անմիջապէս հրաման տուաւ

որ մեռեալը սանդղին վրայ կապեն եւ անոր մարմնոյն վրայէն կոխեն վեր ելլեն։ Արդէն լուսնալու սկսած էր եւ իրենք դեռ կէս ճամբան չէին ըրած, բայց այնչափ դժուարութեանց յաղթելէն ետեւ ասոր ալ յաղթեցին։ Պահանորդներէն մէկը պատուարին վրայ ելլող մը տեսնելով՝ յառաջ քան գլուխը կտրուիլը ժամանակ ունեցաւ ձայն տալու բերդին մէջ եղողներուն, որոնք կիսամերկ եւ անզէն անկողնէն վեր ցատկելով՝ փոխանակ դէմ դնելու՝ փախչելու սկսան։ Յարձակողք պոռալով եւ գոչելով կատաղաբար անոնց վրայ վազեցին եւ բերդին թնդանօթները փախչողներուն վրայ շիտկեցին ու մեծ ջարդ ըրին։ Գլեմինկ կոմսը բերդին հրամանատարը միայնակ նաւակով մը փախաւ, իսկ Գլեմինկ տիկինը, Վերաք Գաղղիայի դեսպանը եւ Հեմիլթըն Ս. Անդրեայ արքեպիսկոպոսը գերի ինկան։ Խնամակալը բերդն առնելէն ետեւ, Ս. Անդրեայ արքեպիսկոպոսը կախելու դատապարտեց առանց անոր վրայ դատաստանական քննութիւն մ'ընելու։ Սկովտիայի պատմագիրները կը հաստատեն որ ասիկայ դահճի ձեռօք մեռնող առջի Եպիսկոպոսն է։

Տէօնպարթըն բերդին կորուստն եւ թագաւորականաց՝ անմեղ արքեպիսկոպոսին վրայ ըրած նախատական եւ անգութ գործքը, զՄարիամեանները վերջի աստիճանի կատաղութեան եւ վրէժխնդրական ոգւով լեցուց։ Նոյն իսկ տղաք փողոցաց մէջ քարերով, դանակներով եւ կամ գաւազաններով իրարու հետ կը կռուէին, ոմանք թագաւորին եւ ոմանք թագուհւոյն կողմը բռնելով։ Երկու անհաշտ կողմնակցութիւնք իրար տկարացընելու մտօք՝ թագուհւոյն կողմնակիցք Էտինպուրկ, իսկ թագաւորականք Սթիրլինկ քաղաքը խորհրդանոց ժողվեցին։ Քիրքալտի զինադադարի ատեն իր զօրքերը շատցընելով նոյն քաղաքային դժտութեանց վերջ մը տալու համար մտածեց որ Սթիրլինկ քաղաքը յարձակմամբ առնու եւ թագաւորին կողմը բոլորովին ցրուէ։ Այս խորհուրդը թէ որ ինքն անձամբ կատարէր, անտարակոյս կը յաջողէր եւ Սկովտիայի մէջ խաղաղու-

Թիւնը նորէն կը հաստատուէր, բայց իր քովինները զինքը համոզցուցին որ փուճ տեղ ինքզինքն վտանգի մէջ չդնէ, աւստի 400 հոգի պատրաստելով նոյն վտանգաւոր գործքը Փրանսիս Հէրսիթին, Քլօտ Հեմիլթընին եւ Արոլթ Պէզըլուին կոմսից յանձնեց: Ասոնք Էտինպուրկէն ելլելու առեն իրենց դիտաւորութիւնը չիմացընելու համար՝ դէպ ի հարաւ զարկին, սակայն վերջէն անմիջապէս աջ դարնելով եւ ստանաւոր զօրաց ալ ձի գտնելով՝ շիտակ դէպ ի Ստիրլինկ վազեցին: Առաւօտեան ժամը չորսին հոն հասան եւ պարըսպաց վրայ պահանորդ չգտնելով առանց դիմադարձութեան քաղաքը մտան եւ Թագաւորին գլխաւոր կողմնակիցները բռնեցին, միայն Մորթըն կոմսը սաստիկ քաջութեամբ իր տունը պաշտպանեց եւ երբոր տունը կրակ առաւ ստիպուեցաւ անձնատուր ըլլալ: Մար կոմսը Ստիրլինկ ամրոցին հրամանատարը, քաղքին մէջ եղած աղմուկն իմանալով իր քիչուոր զինուորներով միատեղ քաղաքն ինջաւ եւ յարձակողաց վրայ սաստիկ կրակ ընել տուաւ: Քիրքալտիին զօրաց մեծ մասը հասարակ կամ ռամիկ մարդիկներէ կազմուած ըլլալով, քաղքին մէջ ցրուած աւարառութիւն կ'ընէին, եւ քիչ մը կանոնաւոր զօրք եւ քանի մը պաշտօնակալք մնացած էին բռնուած Թագաւորականները պահելու համար: Թագուհւոյն կողմնակիցք երբոր տեսան որ Թագաւորականք զօրացան, Լինոքս կառավարը (որն որ բռնուածներուն մէջն էր) “Արքեպիսկոպոսը յիշէ„ ըսելով, առանց խնայելու զարկին մեռցուցին, իսկ մէկալ գերիներն ազատ թող տալու ստիպուելով ետ քաշուեցան եւ Էտինպուրկին մէջ փակուեցան:

Կարծես թէ բանտարկեալ Թագուհւոյն ցաւերն աւելի եւս սաստկացընելու համար Նորֆոլք դքսին եւ Սկովտիայի մէջ Ս. Անդրեայ արքեպիսկոպոսին մահուան վրայ նաեւ իր հաւատարիմ կողմնակցին Նորթէօմպերլէնտ կոմսին դատապարտութիւնն ալ աւելցաւ: Մորթըն իր աքսորանաց ժամանակ Անգղիայի մէջ նոյն կոմսէն աղէկ ընդունելութիւն եւ շատ բարիք գտած ըլլալով, Նորթէօմ-

պերըլէնտ կոմսուհին կը յուսար որ Մորթըն երախտագիտութենէ շարժեալ կ'ազատէ իր ամուսինը, անոր համար 2000 ֆունտ անոր ազատութեան գին ուզեց տալ եւ նոյն ատենը յանձնելու տեղը Անթվերփէն քաղաքն որոշուեցաւ։ Մորթըն որն որ նոյն ատեններս արդէն Եղիսաբեթին հետ աս նիւթիս վրայ կը խօսակցէր, եւ գուցէ ալ կոմսուհւոյն մատուցած ստակէն աւելի անկից ընդունած էր՝ Անգղիայի կառավարութեան զկամքը մատնեց։ Նորթէօմպերըլէնտ երկուք ու կէս տարի գերութենէն ետեւ Լոշլըվէն բանտէն հանուեցաւ ու նաւ մտաւ, որպէսզի, ինչպէս որ իրեն ըսած էին, Հոլլանտա անցնի, բայց մեծ զարմանքով ինքզինքը Պերրիքի նաւահանգիստը տեսաւ, ուսկից պատրիօք Եօրք տարուեցաւ, եւ խորհրդանոցի վճռով առանց դատաստանական քննութեան գլխատուեցաւ։ Կոմսը գլխատման մեքենայի վրայ բողոքական եկեղեցականին մատուցած մխիթարութիւնը մերժեց ըսելով որ իբրեւ ուղղափառ կ'ուզեմ մեռնիլ։ Իսկ իրեն դէմ բերած ամբաստանութեանց համար զրուցեց որ խորհրդականաց գրուած նամակին մէջ ըստ բաւականին պատասխանտուած եմ։

Մարիամ աս ամէն արիւնախառն պատրաստութիւնները տեսնելով իր գլխուն վրայ գալիքը կը գուշակէր. գիշեր ցորեկ մահուան երկիւղով տանջուելով ամէն վայրկեան կ'երեւակայէր որ վարձքով բռնուած մարդասպանի մը պաղ դաշոյնը իր սրտին տեղը կը փնտռէր եւ իրօք ալ աս դողը բոլորովին անհիմն չէր։ 1572ին օգոստոսին վերջերը Լոնտոնի մէջ լուր տարածուեցաւ որ նոյն ամսոյն 24ին Փարիզ եւ Գաղղիայի ուրիշ քաղաքաց մէջ ամէն կալուինականները ջարդուեր են։ Աս արիւնալից լուրը պատմողներուն երեւակայութեամբն եւ քաղաքագիտաց նենգամտութեամբը շատ աւելցած՝ Անգղիայի մէջ մեծ խռովում եւ զարհուրանք պատճառած էր։ Սեսիլ եւ մէկալ պաշտօնեայք ասկից առիթ առնելով զԹագուհին համոզցընել կը ջանային որ Գաղղիայի մէջ բողոքականաց կոտորածը, Անգղիայի

բողոքականները ջարդել տալու օրինակ մըն է, եւ ասոր համար այսպիսի զարհուրելի գործքի մ'առջեւ առնելու համար խորհուրդ կու տային իրեն որ կրօնին եւ ազգին սիրոյն համար թշնամեաց չարութիւնը՝ խայտառակէ զՄարիամ Ստուարթ եւ անոր կողմնակիցները ջարդել տալով։ Թագուհին աս խորհուրդը չմերժեց, սակայն իր մերձաւոր ազգականը Անգղիայի մէջ չսպաննելու համար՝ Քիլեկրիւ Սկովտիա խրկեց որ կառավարին եւ Մարեմայ կողմնակցաց մէջ խաղաղութիւնն հաստատելու պատրուակաւ, Սկովտիայի թագուհին Սկովտացւոց մատնելու համար խօսի, որպէսզի իրենք ինչպէս որ ուզեն անոր հետ վարուին, "որովհետեւ ձեր թագուհին, կ'ըսէր, դատապարտելու տեղը հոս չէ„ (1572, 10 Սեպտ.)։

Մար՝ Սկովտիայի նոր կառավարը (Լինոքսին մեռնելէն ետեւ թագաւորականք զինքը կառավար ընտրեցին՝ զիրենք Քիրքալտիին ձեռքէն ազատելուն համար) ան տեսակ մարդիկներէն չէր որ Եղիսաբեթին ձեռքը խաղալիք ըլլայ եւ անոր նախանձոտութեան կամ վրէժխնդրութեան գործիք. ասոր համար Քիլեկրիւին առաջարկութիւնը բոլորովին մերժեց։ Իր միտքն ան էր որ Սկովտիայի մէջ խաղաղութիւն նորէն հաստատէ քաղաքային պատերազմներէն պատճառած վէրքերը բուժէ, կողմնակցութիւնները միաբանելով՝ բոլոր Սկովտիացիները մատաղօրեայ Յակովբ թագաւորին տակ ժողուէ, գիտնալով որ եթէ Մարիամ ազատելու ըլլայ, մայր եւ որդին միաբանել տալ դիւրին բան է։ Աս համոզմամբ զՊրանտոլֆ Անգղիայի դեսպանը Սկովտիայէն հանեց վռնտեց, որովհետեւ նոյն մարդը կողմնակցութեանց մէջ աւելի եւս երկպառակութիւն կը սերմանէր։ Նոյնպէս թագուհւոյն բարեկամաց հետ ծածուկ կը խօսէր և Էտինպուրկ քաղաքին յանձնուելուն ծածուկ դաշնադրութիւններն ըրած լըմընցուցած էր, բայց այսպէս գործելու ատեն Մորթընէն հրաւիրուելով՝ եւ Տալքէյթ գնաց, հոն յանկարծակի հիւանդացաւ և շուտով Սթիրլինկ դառնալէն ետեւ քանի մ'օրէ մեռաւ (8. Հոկտեմբ.)։ Առ հասարակ համբաւ եղած է,

որ Մորթըն զէնքը կոչունքի առեն թունաւորած ըլլայ։

Անգղիացւոց ազդեցութեամբ Մար կոմսին տեղ Մորթըն Սկովտիայի յանձանձիչ ընտրուեցաւ, որն որ Մարեմայ մահու չափ թշնամին էր եւ Անգղիայի պաշտօնէից խիստ մտերիմ բարեկամ։ Մորթըն հազեւ թէ կառավարութեան սանձը ձեռքն առաւ, իր նախորդին կառավարութեան հակառակ եղանակը բռնեց։ Անմիջապէս Էտինպուրկի բերդն առանց դաշնագրութեան պահանջեց որ յանձնուի։ Սակայն Քիրքալտի, Եում, եւ Մեթլէնտ որոնք նոյն բերդին մէջն էին չուզեցին առանց պայմանի իրենց թշնամւոյն ձեռքը մատնուիլ։ Քիրքալտի Գաղղիայի թագաւորէն օգնական զօրք եւ ստակ խնդրեց, բայց թագաւորը զանազան պատճառաց համար օգնութիւնը զլացաւ։ Իսկ Եղիսաբեթ վախնալով որ չըլլայ թէ Գաղղիացիք մէջը մտնեն եւ Մարեմայ կողմնակիցք զօրանան, ժամ մը յառաջ Ուիլեէմ Տրուրի 5000 հոգւով եւ շատ թնդանօթներով Սկովտիա խրկեց, որոնք Մորթընին հետ միանալով (1573, 25 փետր.) զԷտինպուրկ պաշարեցին։ Քիրքալտի թէպէտ եւ Գաղղիայէն եկած դրամոց մեծ գումարը Պալֆուրին մատնութեամբը կորսնցընելով քիչ մը խռովեցաւ, ի վերայ այսր ամենայնի Սկովտացւոց եւ Անգղիացւոց յարձակման դէմ երեսուն օր դիմացաւ, որոնք իրարու հետ մրցելով կը պատերազմէին։ Հաշտութեան վրայ եւ ոչ խօսք մը լսել կ'ուզէր քանի որ բոլոր ամուր տեղերն իր ձեռքն էին, բայց անոնք ալ փլչելէն ետեւ իր քաջասրտութեամբ անպարտելի մնաց, աւելի յանձն առաւ վերջի պատնէշին տակ փառօք մեռնիլ քան եթէ երդուեալ թշնամւոյն ձեռքը մատնուիլ։ Քիրքալտիին զօրքը նոյն քաջասրտութեամբ վառուած չէին, անոր համար ապըստամբութիւն մը հանելով զինքը ստիպեցին որ բերդը յանձնէ։ Ասանկով ստիպուեցաւ Տրուրիին ձեռքը յանձնուիլ որն որ յանուն Եղիսաբեթին խօսք տուաւ որ հետը մարդասիրութեամբ պիտի վարուի։ Անոր հետ միատեղ անձնատուր եղաւ նաեւ իր եղբայրը

Ճէմս Քիրքքալտի, Եում, Մեթլէնտ, Ռօպէրթ Մելըվիլ, Էտինպուրկի քաղաքացիներէն ոմանք եւ 160 զինուոր:

Քիրքքալտի եւ իր դաշնակիցք Տրուրիին պաշտպանութեան տակ մնացին մինչեւ որ Եղիսաբեթ իրենց վիճակին որոշեց. Նոյն թագուհին ոչ Տրուրիին պատույն եւ ոչ իր տուած խոստմանը նայելով, ամէնն ալ Մորթընին մատնեց: Քիրքքալտի եւ իր եղբայրն Եղիսաբեթին հաւանութեամբ խաչի վրայ կախուեցան *): Թէպէտ Քիրքքալտիին ազգականներէն հարիւր հոգի զինքն ազատելու համար Մորթընին 20.000 Սկովտիայի ֆունտ եւ 300 մարք տարեկան մուտք, եւ իրեն ցկեանս ալ ծառայել խոստացան, սակայն ի զուր: Իսկ Մեթլէնտ կամբը քիչ մը յառաջ կամ ինքզինքը թունաւորեց որպէսզի իր թշնամեաց չարութենէն ազատի կամ նոյն իսկ Մորթընէն թունաւորուեցաւ, ինչպէս որ Մարիամ կը հաստատէ: Քիրքքալտի Սկովտիայի քաջ զօրավարներէն մէկն էր, իսկ Մեթլէնտ նոյն ժամանակուան քաջ քաղաքագէտներէն մէկը, բայց երկուքն ալ ժամանակին սովորութեան համաձայն առանց պատույ եւ հաւատարմութեան մէկ կողմնակցութենէ մէկալը կ'անցընէին: Մեթլէնտ իբրեւ յանցաւոր եւ Տարնլիին սպանութեան գործակից համարուած է:

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Մարեմայ կրած նեղութիւնները. Մորթընի կոմսին բռնաւորութիւնները. իրեն դէմ եղած դաւաճանութիւնք. Թագաւորէն իշխանութիւնը ձգելու կը ստիպուի, ի մահ կը դատապարտուի: Յակոբ ինք իշխան տիրել կսկսի. Ռութուէն կոմսին դաւաճանութիւնը: Մարեմայ վշտերը. զՄարիամ ազատելու Կիզ դքսին խորհուրդը. նոյն խորհուրդը կ'իմացուի. Եղիսաբեթին պաշտպանութեան համար դաշնակցութիւն անուանք ժողովք մը կը կազմուի:

Առանց Սկովտիայի թագուհւոյն վիճակին դիւրութիւն մը ըլլալու շատ տարիներ անցան, թեթեւութեան տեղ օր ըստ օրէ նորանոր վշտեր եւ նե-

*) Սկովտացւոց մէջ կախաղանէն աւելի խաչի վրայ կախել տալ ամենէն նախատական պատիժն էր:

զութիւններ կ'աւելնային անոր վրայ։ Մանաւանդ որ ապստամբութեան եւ զՄարիամ ազատելու համբաւները շարունակ աւելնալով՝ Եղիսաբեթ զինքն աւելի խիստ եւ նեղ բանտարկութեան մէջ կը պահէր։ Մարեմայ բնակած տեղէն քանի մը մղոն հեռու չորս դին անտառաց եւ ճախճախուտ տեղեաց մէջ պահապաններ դրուած էին, անոր ժուռ երթալու ատեն ճամբաներու վրայ ծպտեալ վարձկաններ կը պտըտէին որ չըլլայ թէ կասկածաւոր մարդ մը զինքն ազատելու համար դարանի մտած ըլլայ։ Եղիսաբեթ՝ Մարեմայ ծառաներէն շատերը հեռացուց, եւ խնայութեան պատճառաւ անոր սեղանին ծախքը քիչցուց։ Օտարականներէն մէկը չէր կրնար քովը երթալ առանց Եղիսաբեթին հրամանին. եւ շատ անգամ Գաղղիայի դեսպանին իսկ հրաման չէր տար որ անոր հետ տեսնուի։ Մարեմայ գրած նամակները կը բռնէին ու կը բանային։ Իսկ դրսի դէպքերուն վրայ իրեն ծանօթութիւն չտալով զինքը խոր ագիտութեան մէջ կը թողուին, որով անընդհատ կը տանջուէր։ Ֆենելոն՝ Գաղղիայի դեսպանը աս ամէն խստութիւնները տեսնելով՝ յանուն իր թագաւորին Սեսիլին գրեց որ Մարիամ Գաղղիայի տան հետ մերձաւոր խնամութիւն ունենալով հարկ է որ իրեն դիւրութիւն տրուի։ Բայց ասանկ գրուածներն ու սպառնալիքները միշտ առանց հետեւութեան կը մնային։ Մարիամ նոյն դեսպանին նամակ մը գրելով տրտունջ ըրաւ որ զինքը պահող պաշտօնակալաց մէկումը ձեռօք իրեն Լատիներէն լեզուաւ գիրք մը տրուեցաւ, աս բանս, կ'ըսէ, Մարիամ նոյն պաշտօնակալը չէր կրնար ընել, եթէ իր վերնագունէն ստիպուած չըլլար։ Աս գիրքս՝ Պուշանանին՝ Մորրէ կոմսին թելադրութեամբը շինած գիրքն էր Մարեմայ անունը աւրելու համար։ "Ես, կ'ըսէ, ուղղափառ քահանայ մը խնդրեցի, որպէսզի վրաս ապաշխարութեան խորհուրդը կատարեմ, եւ անոնք աս մխիթարութեան տեղ պաշտօնակալի մը ձեռօք ինծի գիրք մը խաւրեցին, որուն մէջ անիրաւութեամբ անունս կը վատահամբաւուի . . .": Մարիամ ալ վերջի

ծայրը հասաւ երբոր արգելուեցաւ իրեն առողջարար օդ շնչել եւ շարժում ընել, որով օր ըստ օրէ կը հիւծէր եւ վերջապէս անկողին ալ ինկաւ։ Իր աղաչանքներն եւ հիւանդութեան առեն Եղիսաբեթին գրած նամակներն, որոնց մէջ կը խնդրէր որ գէթ քիչ մը խստութիւնները թեթեւցընեն, բոլորովին առանց պատասխանի մնացին։

Եղիսաբեթ վերջապէս ամրչնալով որ Գաղղիայի եւ Սպանիայի առջեւ իբրեւ անխիղճ եւ խստասիրտ կնիկ մը եւ անգութ եւ առանց քաղաքականութեան թագուհի մը չհամարուի, նոյն տէրութեանց դեսպանաց միջնորդութեամբ զիջաւ որ Մարեմայ առ երեսս դիւրութիւն մը տրուի։ Շրիւսպէօրի կոմսին հրաման խրկեց որ զինքը գաղտնի Պուքսթոնի ջերմաջուրքը տանի, առանց մէկու մը իմացընելու, եւ ամէն զգուշութիւնն ընէ որ չըլլայ թէ փախչի կամ անոր քով մարդ մը մօտենայ։ Բայց ան հանքային ջրերը՝ առանց շարժման եւ մաքուր օդ շնչելու օգուտ մը չընելէն զատ վնաս ալ կու տան։ Հոս տեղս զՄարիամ ազատելու նորէն փոքր դաւաճանութիւն մը եղաւ, բայց շուտով զսպուեցաւ եւ բռնուողները Անգղիական բարբարոս օրինաց եւ պատժոց զոհ եղան։ Կրնայ ընթերցողին միտքէն անցնիլ որ Մարեմայ ամէն քայլափոխը կարծես թէ Անգղիա կը դղրդեցընէ. սակայն աս ալ պէտք է մտածել որ Մարիամ ազատ թագուհի էր եւ միայն իր ազգականին նախանձոտութիւնը զինքը բանտարկած էր առանց իրաւանց եւ օրինաց։ Ասոր համար ալ Մարիամ ամէն առեն առիթ մը գտնելուն պէս կը ջանար որ իր ազատութիւնը ստանայ եւ իր կապանքներն ալ խզէ, որոնք ոչ քաղաքական սկզբամբ եւ ոչ ալ իրաւամբ ազգաց կրնային արդարանալ։ Շրիւսպէօրի՝ Պուքսթոնէն դառնալէն ետեւ արքունիքը կանչուեցաւ, եւ Մարեմայ պահապան քիչ մ' ատենուան համար Ռալֆ եղաւ, սակայն Մարեմայ առջեւ ելլելով՝ զինքը վստահացուց որ կարելի եղածին եւ ձեռքէն եկածին չափ պիտի ջանայ որ իրեն հաճոյ ըլլայ։ Մարիամ անոր պատասխան տուաւ ըսելով.

"Ես Եղիսաբեթին ճանկին մէջն եմ, անոր համար ինչ որ անի կը հրամայէ պէտք է որ նոյնը կատարէք եւ կը յուսամ որ շատ խստութեամբ եւ առանց ակնածութեան հետս կը վարուիք։ Ռալֆ՝ Եղիսաբեթին արքունեաց բերանը բանեցընելով՝ այսպէս պատասխանեց. "Եղիսաբեթ բաւական պատճառ ունի՝ ալ աւելի խստութեամբ ձեզի հետ վարուելու,,։ Եւ անկից ետքը սկսաւ պատճառները մէկիկ մէկիկ զրուցել, եւ իր թագուհւոյն մեղմ վարմունքը գովել ըսելով. "քանի որ դուք Անգղիա ոտք կոխած էք, տէրութեան մէջ խռովութիւն հանելու դադրած չէք, եւ թէ որ Եղիսաբեթին տեղ ուրիշ իշխան մ'ըլլար, ոչ երբեք այսչափ մարդասիրութիւն կը ցուցընէր ձեզի,,։ Մարիամ խօսքը կտրեց ըսելով որ փուճ վիճաբանութիւն չընենք. ես Եղիսաբեթին բացայայտ հրաւերովը Անգղիա փախստական եկած եմ, որպէսզի բարի ազգականէս օգնութիւն խնդրեմ, բայց ան զիս բանտարկեց։ Ի՞նչ իրաւամբ կամ խղճիւ իմ ազատութիւնս զսպելու կը յանդգնի։ Ռալֆ ասոր վրայ պապանձեցաւ, ինչպէս նաեւ շատ անգամ Սեսիլ պաշտօնեան ալ ասանկ հարցմանց ատեն կը պապանձէր։ Եղիսաբեթին այսպիսի անօրէն եւ չար վարմունքն իրաւունք կու տար Մարեմայ որ իր ազատութիւնը գտնելու համար ամէն կարելի եւ օրինաւոր միջոցները բանեցընէ, եւ որովհետեւ Եղիսաբեթ զինքը թշնամւոյ տեղ կը դնէր, եւ անոր համաձայն կը վարուէր, անոր համար ալ Մարիամ իբրեւ Սկովտիայի անկախ թագուհի իրաւունք ունէր զԵղիսաբեթ թշնամւոյ տեղ դնելու եւ զինքը հալածելու։

1575ին փետրուարի մէջ անգամ մը երկրաշարժ ըլլալով՝ Մարեմայ սենեակն ինկաւ կործանեցաւ եւ ինքն ալ փլատակաց տակ մեռնելու վտանգի մէջ ինկաւ։ Ասանկ յուսահատական վիճակի մէջ՝ Մարիամ ուղղափառ կրօնի կրթութիւններ ընելով մխիթարութիւն կը գտնէր, որչափ ձեռքէն կու գար աղքատաց ողորմութիւն կը բաշխէր եւ ձեռագործի մը զբաղելով բանտարկութեան երկարատեւ օրերը

կ՚անցընէր։ Շատ անգամ իր ձեռագործներն Եղիսաբեթին պարգեւ կը խրկէր, զորոնք Եղիսաբեթ սիրով կ՚ընդունէր, անոնց վրայ կը զարմանար եւ առանց շնորհակալութիւն մ՚ընելու զանոնք կը գործածէր։

Թէպէտ Մարիամ այնչափ անչափ բաներ կը կրէր, սակայն անոր կրել տուողն ալ ներքին անձկութիւնէն ազատ չէր։ Եղիսաբեթ համոզուած էր որ Սկովտիայի թագուհւոյն ազատութիւնը կամ փախուստն իր ապահովութեան հետ չէր կրնար միաբանել։ Բոլոր ազնուականաց մէջ չկար մէկը որուն վրայ վստահանար, թէպէտ Շրիւսպէօրի կոմսին վրայ քիչ մը վստահութիւն ունէր, ի վերայ այսր ամենայնի անոր վրան ալ կասկածել սկսաւ, եւ զինքը կը զգուշացընէր որ չըլլայ թէ "Մարեմայ գեղեցիկ խօսքերէն հրապուրեալ խաբուի,,։ Նոյն կոմսը շատ անգամ Եղիսաբեթէն յանդիմանութիւն կ՚ընդունէր Մարեմայ հետ խիստ չվարուելուն համար, եւ իր սեպհական տան մէջ ստիպուած էր Եղիսաբեթին խրկած լրտեսներն ընդունիլ, որոնք զՄարիամ լրտեսելու պատրուակաւ զինքը կը դիտէին, անանկ որ իր նուն որդի մը ծնանելէն ետեւ՝ մկրտութեան համար տունը քահանայ մը չյանդգնեցաւ կանչել այլ տղան ինքն անձամբ մկրտեց, վախնալով որ տան մէջ օտար մարդ մը կանչելուն համար դարձեալ խիստ յանդիմանութիւն կ՚առնու կասկածաւոր Եղիսաբեթէն։ Բայց ասկից աւելի զարմանալին ան էր որ Եղիսաբեթ նոյն իսկ Սէսիլին վրան ալ կասկածելու սկսաւ որն որ Մարեմայ մահուչափ թշնամին էր, անոր դժբախտութեանց սկզբնապատճառն եւ մահուանն ալ ծարաւի։ Սէսիլ հիւանդութեան պատճառաւ երկու անգամ Պուքսթոն գացած էր։ Եղիսաբեթ կարծելով որ անոր համար գացեր է որպէսզի Մարեմայ հետ գաղտնի բանակցի, զինքը սաստիկ յանդիմանեց առանց անոր պատճառը մտիկ ընելու։

Քանի որ Մորթըն Սկովտիան կը կառավարէր, Եղիսաբեթ Մարեմայ Սկովտիայի կողմնակիցներէն վախ մը չունէր։ Բայց Մորթընին ագահութիւնն եւ

յափշտակութիւններն եւ Եղիսաբեթին առջեւ ցըցուցած անարգ հպատակութիւնն ազգին ամբարտաւան ոգին շատ գրգռեց։ Շահասիրութեան պատճառաւ դրամոց ներքին աժէքը նուազցուց, ստոյգ կամ անստոյգ յանցանքներ յառաջ բերելով առանձնականաց ինչքը կը գրաւէր, նոյնպէս եկեղեցականաց ինչքն ալ զանազան պատճառներով յափըշտակեց։ Անգամ մը սահմանագլխոց վրայ փոքր կռիւ մը պատահած ատեն Անգղիացիք քանի մը հոգի կորսնցընելով եւ գերի թող տալով յաղթուեցան։ Մորթըն Եղիսաբեթին հետ չարուելու համար ցած եղանակաւ մը անոր դեսպանէն թողութիւն խնդրեց թէպէտ եւ կռուոյն պատճառը նոյն իսկ Անգղիայի սահմանաբնակ ազնուականք էին։ Մինչեւ հիմայ Մորթընին բռնութեանց ծանրաբեռնութիւնը միայն միջակ քաղաքացիներն եւ եկեղեցականք կը բառնային, բայց կամաց կամաց ազնուականաց վրան ալ ծանրանալ սկսաւ։ Դիպուածով մը Աթըլ եւ Արճէյլ կոմսից մէջ փոքր պատերազմ մը բացուելով՝ Մորթըն իրենց մէջ մտաւ եւ զանոնք ստիպեց որ զէնքերը մէկդի ձգեն, անկից ետեւ իրենց վրայ տէրութեան սահմանադրութեան դէմ յանցանք գնելով զիրենք կործանել ջանաց։ Երկու կոմսք անոր դիտաւորութիւնն իմանալով՝ իրենց գժտութիւնը մոռցան եւ իրարու հետ հաշտուելով իրար պաշտպանելու դաշինք դրին։ Ասիկայ Մորթընին կործանման սկիզբ եղաւ։ Սկովտիայի ազնուականք՝ որոնք իշխանութեամբ գրեթէ թագաւորին հաւասար էին, եւ իրենց աստիճանին համեմատ վարուելու վարժած էին, Մորթընին բռնաւորական վարմանց վրայ դառն դժկամակութեամբ կը նայէին։ Ասոր համար ամէնն ալ իրենց աչքը երիտասարդ թագաւորին վրայ դարձուցած էին, որն որ նոյն ատեն տասնուերկու տարուան էր։ Մարիամ զինքը Մար կոմսին յանձնած էր եւ բոլոր քաղաքային խռովութեանց ատեն Սթերլինկ զօրաւոր բերդին մէջ կոմսին հզօր պաշտպանութեան տակ մեծցած էր։ Աղեքսանդր Էրոքին՝ Մար կոմսին եղբայրը մինչեւ թագաւորին վրայ վերակացութիւն

ընելով՝ զինքը Թագաւորի մը հարկաւոր բաներու մէջ այնպէս կրթած էր որ մանուկ Թագաւորն իր հասակին մէջ պահանջուածէն աւելի ըմբռնելու կարողութիւն եւ աշխուժութիւն կը ցուցընէր։ Աթըլ եւ Արճէյլ կոմսերը ծածուկ Թագաւորին առջեւ ելլելով, Մորթընին բռնական կառավարութեան վրայ երկայն խօսեցան եւ զինքը համոզեցուցին որ երկրին խեղճ վիճակը վերցընելու միակ միջոց՝ ազնուականաց ազատ ընտրութեամբ ժողովք մը ժողվել տալ է։ Յակոբ հաւանեցաւ, եւ նոյն երկու կոմսք շրջաբերական թուղթ մը շինելով անոնց միայն խաւրեցին որոնց վրայ վստահ էին որ Մորթընին հակառակ կողմը պիտի բռնեն։ Այսպէս որոշուած օրը ազնուականաց մեծ մասը Սթըրլինկ ժողվեցաւ եւ Մորթընին վրայ խիստ խօսեցան։ Մորթըն իմանալով որ Աթըլ եւ Արճէյլ կոմսք Թագաւորին հետ գաղտնի խօսակցեր եւ ժողովք մը ընել տուեր են, այնպէս ձեւացուց որ իշխանութիւնը ձգելու պատրաստ է, բայց կոմսք Թագաւորին համոզեցուցին որ անոր հրաժարման չսպասէ այլ զինքը բռնութեամբ իշխանութենէ վար ձգէ, եւ իրօք ալ 1578ին Մարտի 4ին Մորթըն կառավարութենէ վար առնուեցաւ։ Մորթընին իշխանութենէ վար առնուիլն երկայն չտեւեց, որովհետեւ ծածուկ բարեկամներ ժողվելով՝ երեք ամսէն ետեւ Սթըրլինկ քաղաքը մտաւ եւ Թագաւորը բռնելով նորէն կորսնցուցած իշխանութիւնը ձեռք ձգեց։ Ասոր վրայ երկու կողմնակցութիւնք իրարու զինուց ճաշակը ցուցընել ուզեցին, բայց Անգղիայի դեսպանին միջնորդութեամբը հաշտուեցան եւ Մորթըն իր իշխանութիւնը պահեց։ Աթըլ կոմսը՝ որն որ Մորթընին առջի անգամուն իյնալուն սկզբնապատճառ եղած էր, հաշտուելէն ետեւ Մորթընէն սեղանի հրաւիրուեցաւ եւ անկից թունաւորուելով քանի մ'օրէն ետքը մեռաւ։

Մորթըն ինքզինքն իշխանութեան մէջ հաստատելէն ետեւ, վերջի աստիճանի վրէժխնդրութեան եւ յափշտակութեան ձեռք զարկաւ։ Համիլթոնեանք հազիւ կրցան Անգղիա փախչիլ իրենց

տացուածները Մորթընին եւ անոր կողմնակցաց ձեռքը մատնուած տեսնելով (1579 Յունիս)։

Այս ժամանակներս Էմէ Ստուարթ Լինոքս կոմսին եղբօրորդին Գաղղիայէն գալով իր երիտասարդական վարմամբ Թագաւորին սիրտն իր կողմը շահեցաւ, որով Յակովբ զինքը Լինոքս կոմս ըրաւ եւ շատ պատիւներով մեծարեց։ Էմէ Թագաւորին հաւատացուց որ Մորթըն զինքը Անգղիային մատնելու միտք ունի, եւ թէ Գաղղիայէն եւ թէ Սկովտիայէն ապացոյցներ եւ վկաներ ժողովելով ջանաց ցուցընել որ Մորթըն Տարնլիին գլխաւոր սպանողն է։ Ասոր հակառակ Մորթըն համբաւ հանել տուաւ որ Լինոքս Կիշ դքսին գործակալն է եւ Գաղղիայէն դառնալուն գլխաւոր պատճառն ան էր որ Սկովտիայի կրօնը փոխել տայ, Յակովբ Թագաւորը օտար իշխանուհւոյ մը հետ ամուսնացընէ եւ Թագաւորական գաւազանը Թագաւորին մօրը՝ Մարեմայ յանձնէ։

Օր մը երբոր Մորթըն Սկովտիայի խորհրդականաց ժողովոյն մէջ կը նստէր, Ստուարթ Օչիլթրի (Թագաւորին երկրորդ մտերիմ բարեկամը) մէկէն ոտք ելաւ եւ բազմականաց սրահին մէջ տեղն երթալով ծնկի վրայ եկաւ եւ Թագաւորին առջեւ զՄորթըն ամբաստանեց ըսելով որ Տարնլիին գլխաւոր սպաննողն Մորթըն է։ Մորթըն ուրացաւ, բայց ի զուր, նախ իր տան մէջ եւ վերջէն Տէօնպարթըն բերդին մէջ բանտարկուեցաւ (1580 Դեկ. 31)։ Եղիսաբեթ ասիկայ իմանալուն պէս իր բարեկամին օգնութեան հասնելու համար զհամբաւաւոր Ռանտոլֆ Սկովտիա խրկեց որն որ Թագաւորին եւ խորհրդականաց աղաչեց որ Մորթընին կենաց խնայեն։ Եղիսաբեթ նոյնպէս իր պատգամաւորին նեցուկ ըլլալու համար Սկովտիայի սահմանները զօրք ժողովել տուաւ, եւ տժգոհ Սկովտիացիներն ալ ապստամբութեան գրգռեց, սակայն ամենայն ինչ պարապ եղաւ։ Յակովբ հաստատուն մնաց, ապստամբները զսպեց եւ Ստուարթ Օչիլթրի Արրան կոմս ըրաւ։ Իսկ Ռանտոլֆ՝ որն որ ասանկ դէպքերու մէջ երկու անգամ փախչելու ստիպուած էր, աս անգամ ալ հազիւ

փախաւ կախաղանի վրայ իբրեւ խռովարար չմեռնելու համար։ Եղիսաբեթ տեսնելով որ Սկովտիայի մէջ զօրաւոր կողմնակցութիւն մը չկրցաւ կազմել՝ չյանդգնեցաւ պարզ Մորթընին վրայ արդարութեան ընթացքը խափանելու համար պատերազմ բանալ, ուստի եւ զօրքերը ետ կանչեց։

Մորթընին վրայ դատաստանական քննութիւն ըլլալով թէ բերնով եւ թէ գրով յառաջ բերուած ապացոյցներէն ցուցուեցաւ որ Տարնլին սպաննելու Ուիթթինկեմին մէջ եղած խորհրդին ինքն ալ ներկայ էր, եւ թէ ինքն եւ թէ Արչիպալտ Տուկլաս եւ Պիննեինկ իր ծառան սպանութեան գործակից եղած են, եւ թէ Մարիամ Մորթընին երեսէն վեր զրուցած է եղեր որ իր ամուսնոյն սպանիչն ինքն է։ Ճեմս Պէլֆուր թուղթ մը ցըցուց որուն մէջ դաւաճան ատենակալք ստորագրութիւն կու տան զՊոթուել մարդասպանի մը պատժէն ազատելու։ Նոյնպէս Պոթուելին մահուան անկողնոյ մէջ ըրած խոստովանական յայտարարութիւնը յառաջ բերուեցաւ, որուն մէջ Պոթուել Մարեմայ անմեղութիւնը հաստատելէն ետեւ, դաւաճանութեան մասնակիցները մէկիկ մէկիկ կը պատմէ։ Դանիայի թագաւորը աս յայտարարութենէն օրինակ մը Եղիսաբեթին խրկած էր, բայց անիկայ նոյն թուղթը մէջ տեղէն վերցընելն օգտակար տեսած եւ վերցուցած է։ Քամտէն կ՚ըսէ որ Պոթուել միշտ կը զրուցէր եւ յաճախ ալ երդմամբ կը հաստատէր որ Մարիամ՝ եղած դաւաճանութեան վրայ բնաւ տեղեկութիւն չունէր *)։ “Մորթըն բանտի մէջ ամենայն ինչ խոստովանեցաւ, բայց խոստովանածներուն ստորագրութիւն տալ յանձն չառաւ, ըսելով որ երկու անգամ ալ երբ որ Պոթուել եւ Արչիպալտ Տուկլաս զինքն իրենց հետ միաբանելու հրաւիրած էին, ինքն անոնց պատասխան տուեր է որ մինչեւ թագուհիէն գրով հաւանութիւն չառնուի, ինքը նոյն ընկերութեան մէջ չմտներ, սակայն Պո-

---

*) «Et vivens et moriens reginam minime consciam fuisse, religiosa asseveratione saepánumero contestatus est».

թուել իրեն պատասխան տուած է եղեր թէ անհնկայ անկարելի է որովհետեւ նոյն գործքն առանց թագուհւոյն գիտութեանը պիտի կատարուէր։ Առենակալք զՄորթըն յանցաւոր գտնելէն ետեւ թագաւորը զինքը մատնութեան մահուան դատապարտեց, բայց վերջէն հասարակ գլխատութեան փոխեց։ Մորթըն գլխատութեան ատեն երեսի վրայ պառկեցաւ եւ լալով ու ողբալով եւ անդադար բանական շարժմամբք իր խղճին նեղութիւնն եւ անհանդարտութիւնը ցըցուց (1 Յունիս). Պինինինկ ալ երկրորդ օրը գլխատեցաւ, իսկ Արշիպալտ Տուկլաս Անգղիա փախչելով արժանաւոր պատժէն ազատեցաւ։

Մ՚որթընին դատապարտութենէն եւ Յակովբին գահէն ելլելէն ետեւ այնպէս կ՚երեւար որ Եղիսաբեթ Սկովտիայի թագուհին ալ երկայն ատեն պիտի չկըրնայ պահել։ Գիտէր որ ամէնը զերիտասարդ թագաւորը կը գրգռէին որ զմայրն ազատէ, իմացած էր որ Սպանիայի թագաւորն եւ սրբազան քահանայապետն իրեն սորկով նպաստամատոյց կ՚ըլլային եւ կը ջանային որ մայր եւ որդի Սկովտիան միաբանութեամբ կառավարեն։ Ասով Եղիսաբեթ փոխանակ մէկ թըշնամւոյ երկու թշնամի կը ստանար, եւ աս բանիս առջեւն առնելու համար զանազան խորհուրդներ կ՚ընէր։ Սեսիլին սատանայական քաղաքականութիւնն Եղիսաբեթին անմիջապէս օգնութեան հասաւ, եւ աս խորամանկը խորհուրդ տուաւ որ Սկովտիայի մէջ նոր յեղափոխութիւն հանուի, որուն յատակագիծը ինքը շինեց (23 Օգոստ. 1582)։

Այն ժամանակը Ռութուէն կոմսը զՅակովբ որսորդութեան եւ զբօսանաց պատճառաւ իր դաստակերտը հրաւիրեց. Թագաւորը կասկած մը չունենալով հրաւէրն ընդունեցաւ, բայց դաստակերտին մէջ ժողոված բազմաթիւ ազնուականք զինքը քիչ մը խռովեցուցին, որովհետեւ երթալով կը շատնային։ Երկրորդ օրը առտուանց կանուխ թագաւորն անտարբերութեամբ ձիարշաւ մ՚ընել ուզեց եւ աս առթով ազնուականաց ձեռքէն փախչիլ։ Բայց նոյն առտուն ազնուականք իր սենեակը մտնելով առջեւը

թուղթ մը դրին որուն մէջ իր երկու սիրելի պաշտօնէից, այսինքն Արրան եւ Լինոքս կոմսից վրայ ամբաստանութիւն կ՚ընէին թէ կրօնի եւ հայրենեաց թշնամի են։ Թագաւորն անոնց խնդրոյն զիջանելով հաւանեցաւ որ նոյն պաշտօնեայք իրենց պաշտօններէն վար ձգուին, եւ անկէց ետեւ առանց խռովութիւն մը ցուցընելու ձիարշաւը փութացընելով դուրս ելլել ուզեց. բայց Կլէմիս (Լինսի) ատենակալը որն որ դրան առջեւ կեցած էր կոպտութեամբ թող չտուաւ. Թագաւորն ասոր վրայ նեղանալով՝ յանդիմանելու եւ սպառնալու սկսաւ, եւ երբոր տեսաւ որ օգուտ չընէր, տղու պէս լալ սկսաւ։ "Աս ալ օգուտ չունի, պոռաց կատաղի ձայնիւ Կլեմիս ատենակալը, լաւագոյն է տղաց լալ քան թէ մօրուաւոր արանց,,։ Աս խօսքս Թագաւորին այնչափ ազդեցութիւն ըրաւ որ նոյնը միշտ միտքը պահեց եւ չկրցաւ մոռնալ։

Դաւաճանք զպաշտօնեաները Թագաւորին քովէն հեռացընելէն ետեւ, զՅակովբ ամենայն մեծարանօք կը պատուէին, սակայն զինքը մեծ զգուշութեամբ ալ կը պահէին, որպէսզի չըլլայ թէ կասկածաւոր մարդ մը քովը մօտենայ։ Ասանկով Սկովտիայի ազնուականք Անգղիայի պաշտօնէից գրգռելով՝ դարձեալ անկախ իշխելու սկսան. մէկալ կողմանէ բողոքական քարոզիչք ալ ժողովուրդը ամբիոններէն վար վրէժխնդրութեան կը գրգռէին անոնց դէմ որոնք անաստուածութիւնը (ուղղափառ կրօնք) նորէն կ՚ուզէին հաստատել եւ զանհաւատարիմ եւ զայրասպան Մարիամ նորէն գահը նստեցընելու կը փափաքէին։

Մարիամ քանի մը շաբաթ խստիւ եւ զգուշութեան կը պահուէր, որպէսզի իր յոյսերը պարապի հանող դէպքերը չիմանայ։ Բայց երբոր իր որդւոյն բանտարկութիւնն եւ անոր կրած նախատինքները լսեց, ցաւէն այնպէս ծանր հիւանդացաւ որ անգղիացի բժիշկներն իր կենաց վրայ յոյսը կտրելով՝ հրատարակեցին որ մեռնելու մօտ է։ Մարիամ իր որդւոյն վիճակն իր վիճակին հետ բաղ-

դատելով կը տեսնէր որ մի՛ եւ նոյն կողմնակցութիւն է որ զիրենք կը հալածէ: Իր չարչարանքներն եւ նախատինքները սաստիկ երեւակայութեամբ դիմացն ելլելով, պյրած տոչորած սրտով թէ իր եւ թէ որդւոյն խեղճ վիճակը դառն կ՚ողբար: Աս հիւանդութեան ատեն Եղիսաբեթին երկայն նամակ մը գրելով յանիրաւի կրած վշտերն եւ վրան բանեցուցած խստութիւնները սրտաշարժ խօսքերով անոր առջեւը դրաւ: Զեղիսաբեթ աղաչելէն ետեւ որ ինքզինքն իրեն հետ միատեղ ամենազօր Աստուծոյ աթոռին եւ իրենց հասարակաց դատաւորին առջեւ երեւակայէ, սկսաւ մէկիկ մէկիկ թուել ան ամէն անիրաւութիւնները զորոնք իրեն ըրած էր Սկովտիա եղած ատեն, Անգղիա փախչելէն ետեւ եւ Նօրֆի եւ Ուէսթմիսթերը բանակցութեանց ժամանակ, ուր իր անմեղութիւնը ցուցուեցաւ եւ հիմայ նոյներն իր որդւոյն ալ ընելու սկսած է: “Ես ինչ ըրած եմ արդեօք ձեզի որ զիս ասանկ խստութեամբ կը նեղէք: Թող զիս ամբաստանեն, եւ թէ որ զիս արդարացընել չեմ կրնար, արժանաւոր պատիժ ընդունելու պատրաստ եմ: Գիտեմ, որ իմ միակ եւ ճշմարիտ յանցանքս ան է որ ձեզի մերձաւոր ազգական եւ յաջորդ եմ: Բայց թշնամիքս չվախնան ինծմէ, վասնզի գերեզմանի դուռը հասած ըլլալովս ուրիշ թագաւորութեան չեմ բաղձար բայց եթէ երկնից արքայութեան: Այս վիճակիս մէջ որդիս ձեր պաշտպանութեան տակ կը դնեմ, եւ դառն արտասուօք կը խնդրեմ որ զիս բանտէն ազատէք, իսկ եթէ որոշուած է որ աս բանտիս մէջ մեռնիմ, գէթ կը խնդրեմ որ ինծի ուղղափառ քահանայ մը խրկէք եւ երկու ուրիշ աղախին հիւանդութեան ատեն ինծի ծառայելու համար,,: Թէ արդեօք աս նամակս Եղիսաբեթին վրայ ինչ ազդեցութիւն ըրած է, ան չենք գիտեր, բայց սակայն հետեւութիւնը ցըցուց որ Մարեմայ վիճակը չփոփոխուելէն զատ, աւելի եւս չարացած է եւ ամենեւին փոքր դիւրութիւն մը չշնորհուեցաւ իրեն, թէպէտ եւ այնպէս հիւանդ էր որ բնաւ շարժելու կարողութիւն չունէր:

Այնչափ էր Եղիսաբեթին խստասրտութիւնը որ իր մերձաւոր ազգականին թէ կենաց վայելմանց եւ թէ առողջութեան ամենէն հարկաւոր միջոցները զլանալու ամենեւին խիղճը չէր զարներ։

Եղիսաբեթ եւ Հենրիկոս Գաղղիայի թագաւորը երկայն ժամանակէ ի վեր փոփոխակի իրարմէ կը վախնային։ Եղիսաբեթ կը վախնար որ չըլլայ թէ Հենրիկոս բացարձակապէս Մարեմայ կողմը բռնէ, իսկ սոր հակառակ Հենրիկոս Եղիսաբեթին վիշտ մը տալէն սաստիկ կը զգուշանար, որ զինքը չզրգռէ իր Գաղղիայի ապստամբ բողոքականներուն օգնել։ Ասոր համար Հենրիկոս ինքզինքն անտարբեր կը ցուցնէր քանի որ Յակովբ զՍկովտիան Լինոքս եւ Արրան կոմսից խորհրդով կը կառավարէր. սակայն երբոր տեսաւ որ երիտասարդ թագաւորն ապստամբ եւ անգղիական կողմնակցութեան ձեռքը գերի ինկած է, Լա Մոթ Ֆենելոն եւ Մենըվիլ Սկովտիա խրկեց որպէսզի Յակովբայ ազատութեան գործակից ըլլան եւ հոգան որ որչափ որ կարելի է շուտով մայր եւ որդի միաբանին, եւ ազնուականաց եւ քաղաքացեաց ժողովք մը կանչուի (1593. 13 Յուն.)։ Իսկ Եղիսաբեթ զՊաւս եւ զՏեվիսըն Սկովտիա խրկեց Գաղղիայի դեսպանաց հակառակ գործելու համար։ Յակովբ իր հասակէն աւելի մեծ զօրութիւն եւ արիութիւն ցուցընելով, Ս. Անտրէաս ժողովք մը կանչեց, ազնուականաց հրաւէր մը խրկելով շատերն իր կողմը շահեցաւ, եւ Ռութուէնի դաւաճանութեան մասնակից եղողներուն անյիշաչարութիւն տալով, իր թշնամեաց կասկածը վրայէն վերցուց (27 Յունիս) եւ իշխանութիւնը նորէն ձեռք առաւ։ Արրան կոմսը նորէն քովը կանչեց եւ ամենայն ինչ անոր խորհրդով կ'ըլլէր։ Յակովբ թէպէտեւ Ռութուէնի դաւաճանութեան գործակցաց անյիշաչարութիւն շնորհած էր, բայց իր անձին բռնաբարութիւնն եւ կրած նախատինքները չէր կրնար մոռնալ, անոր համար Արրանայ խորհրդով հրովարտակ մը հանեց, որուն մէջ կը հրամայէր որ դաւաճանք իր առջեւը գան եւ խոնարհաբար իրենց յանցանքը խոստովա-

նելով թողութիւն խնդրեն։ Ամբաստանուած կոմսերէն եւ ոչ մէկն եկաւ երեւցաւ, այլ ոմանք իրենց դղեակները քաշուեցան եւ ոմանք ալ Սկովտիայէն ելան փախան։ Եղիսաբեթ՝ որն որ աս դաւաճանութեան սկզբէն մինչեւ վերջ անոնց օգնած էր, զիրենք աս վտանգէն ազատելու համար թագաւորին խիստ եւ անվայել ոճով նամակ մը գրեց եւ զինքն երդմնազանց եւ անխոհեմ կ'անուանէր՝ իր լաւ եւ ամենահնազանդ հպատակաց վրայ անլուր անգթութիւն եւ խստութիւն ընելուն համար։ Յակովբ աս անքաղաքավար նամակին իր թագաւորական անձին վայել պատասխան մը տուաւ. "Բռնութեամբ առնուած խոստումները, կ'ըսէ, եւ երկիւղով ստորագրուած պայմանները՝ այնչափ տեւեն կը զօրեն, որչափ նոյն բռնութիւնն եւ երկիւղը կը տեւէ։ Միայն իմ ձեռքս է պաշտօնեաներն ընտրել եւ տէրութեանս մէջ տրամադրութիւններ ընել. թէպէտ միտքս դրած էի որ Ռութուէնի դաւաճանաց դէմ ամենեւին խստութիւն չբանեցընեմ, ի վերայ այսր ամենայնի թագաւորական պատիւս հաստատելու եւ նորոգելու համար անանկ կոպիտ նախատինքն եւ անձինս վրայ եղած բռնաբարութիւնը չեմ կրնար մոռնալ,,։ Եղիսաբեթ ասանկ պզտիկ իյնալուն վրայ կատղելով ոխը խեղճ Մարեմայ վրայէն կը հանէր։

Սկովտիայի պարագայից երկրորդ անգամ ալ փոխուելուն վրայ Մարեմայ եւ անոր կողմնակցաց յոյսը նորէն զարթեաւ, բայց բախտը միշտ այնպէս կը բերէր որ Մարիամ անանկ պաշտպաններ կ'ունենար որոնք իրենց շահն անոր շահէն աւելի կը դիտէին։ Կիզ դուքսը, Կլէսկոյ քաղքին արքեպիսկոպոսը, Քասթելլի, Մորկան եւ շատ մը ուրիշ երեւելի մարդիկ՝ Փարիզ ժողովեցան որպէսզի Մարեմայ ազատութեան վրայ խորհին։ Ասոնք իրենց մէջ որոշեցին որ մէկ կողմանէ Կիզ դուքսը Անգղիայի հարաւային եզերքը զօրք հանելով, Յակովբ մէկալ կողմանէ իրեններով հիւսիսային Անգղիա յարձակելով հոն եղող Սթուարթեանց կողմնակիցները զէնքի հրաւիրեն։ Յակովբ աս յատակագծին հաւա-

նեցաւ, բայց Մարիամ գիտնալով որ իր պահապանները զինքը անմիջապէս սպաննելու հրաման ունէին թէ որ ազատութեան նոր փորձ մը փորձուի, լաւագոյն համարեցաւ. որ ազատութիւնը զիջմամբ եւ բանակցութեամբ ստանայ, ասոր համար Եղիսաբեթին գրեց որ իր ամէն իրաւունքներն որդւոյն վրայ դարձընելու պատրաստ է եւ միանգամայն կը բաղձայ որ Քասթելնոյին՝ Գաղղիայի դեսպանին միջնորդութեամբը Սկովտիայի եւ Անգղիայի մէջ մշտնջենաւոր դաշնակցութիւն մը դրուի։ Եղիսաբեթ ասոր հաւանելով եւ իր պաշտօնեայք ալ նոյնին ընդդիմութիւն չցուցընելով Մարիամ կը յուսար որ ամենայն ինչ յաջողութեամբ կրնայ լմըննալ։ Բայց ինչպէս որ վերը ըսինք դժբախտութեամբ Մարեմայ բախտը այնպիսի մարդիկներէ կախուած էր, որոնք միայն իրենց շահը կը դիտէին։ Հենրիկոս իր դեսպանին յանձնած էր որ Մարեմայ ազատութեան միջնորդ ըլլայ, բայց անոր ծածուկ յանձնած էր միանգամայն որ Սկովտիայի եւ Անգղիայի մէջ հաստատուն դաշինք մը դնելու արգելք դնէ որպէսզի չըլլայ թէ Եղիսաբեթ Սկովտիայի հոգերէն ազատելով՝ սկսի Գաղղիայի բողոքականաց միտ դնել եւ անոնց օգնել (10 Դեկ.)։

Թէ որ Հենրիկոս Գ.ին նոյն ժամանակուան վիճակն առանց կողմնակալութեան դիտելու ըլլանք, կը տեսնենք որ իր բռնած քաղաքականութիւնը քիչ մը կ'արդարանայ, որովհետեւ մէկ կողմանէ Գաղղիայի մէջ ուղղափառութիւնը պաշտպանելու կազմուած դաշնակցութիւնը բոլորովին Փիլիպպոս Սպանիայի թագաւորին կողմը կը բռնէր, իսկ մէկալ կողմանէ կալուինականք Անգղիայէն օգնութիւն յուսալով զինքը կը նեղէին։ Ցաւալին ան էր որ աս ձախորդութեանց վնասը խեղճ Մարիամ կը կրէր, որն որ աս անգամ ալ իր կապանաց վերջը կը սպասէր։

Եղիսաբեթ թէպէտ նոյն ատենները Կիզ դքսին մտածած յատակագիծն իմացաւ, բայց անոր դաշնակիցներն եւ իրենց զօրութիւնը չգիտնալով՝ սաստիկ կը տառապէր։ Չէ թէ միայն բանտարկեալ

թագուհիէն կը վախնար, այլ նաեւ իր ուղղափառ հպատակաց աժգոհութիւնը տեսնելով անոնց հաւատարմութենէն ալ կը կասկածէր։ Վերջի երկու տարիներն անոնց դէմ դրուած օրէնքները՝ չլսուած խստութեամբ ի գործ կը դրուէին, սպանչաց գործիքները քահանայից արեամբ կը գունաւորուէին եւ իբրեւ մատնիչ, այսինքն ուղղափառութեան պաշտպան ըլլալու համար կը սպաննուէին։ Ամէն կոմսութեանց բանտերը հին եւ ազնուական գերդաստանաց վերաբերեալ անձինքներով լեցուն էին. եկեղեցական յանցանաց համար դրուած ընչից նոր պատիժներն առանց ակնառութեան կը պահանջուէին։ Ասանկ պարագայից մէջ եթէ որ ուրիշ տէրութիւն մը Անգղիայի վրայ յարձակում ընէր, կրնա՞ր արդեօք Եղիսաբեթ անոնց հաւատարմութեան վրայ վստահիլ, որոնց ինչքն եւ ստացուածները յափշտակել տուած էր, զորոնք յուսահատութիւնը կը հալածէր եւ որոնց ամենէն պատուական բանը՝ աստուածային կրօնը անլուր տանջանքներով ջնջել կը ջանար։ Չէ՞ր կրնար մի արդեօք կարծուիլ որ իրենք ալ Սկովտիայի, Գաղղիայի եւ ստորին Նահանգաց օրինակին հետեւելով, որոնք իրենց ուղղափառ իշխանաց դէմ զէնք վերցուցած ապստամբած են, ոտք ելլեն եւ իրենք զիրենք հարստահարող իշխանութեան ձեռքէն ազատեն։ Ասոր համար Եղիսաբեթ այն ամէն բան արգելելու համար ամէն կողմ իր լրտեսները կը շատցընէր, աստին անդին առատաձեռնութեամբ ստակ կը բաշխէր, ամէն տեղ գործակալներ կը դնէր որ չըլլայ թէ ուղղափառք խռովութիւն եւ ապստամբութիւն յարուցանեն։ Իր ուղղափառաց միշտ որոգայթներ լարելու վրայ էր եւ որոգայթի մէջ ինկողներուն վրայ խիստ պատիժներ կը դնէր. եւ թէ որ բռնուողը մեծ եւ ազնուական տնէ էր, շատ անգամ մահուամբ կը պատժէր։ Ուոլսինկէմ Անգղիայի ատենադպիրն Եւրոպայի այն տեղերը ուր շատ մարդիկ կը յաճախէին, բանուկ նաւահանգստաց, իշխանաց, խորհրդականաց եւ եկեղեցական դպրոցաց մէջ ալ ծածուկ կերպով գոր-

ծակալներ դրած էր, որոնք Մարեմեայ բարեկամ ձեւանալով եւ շինծու նամակներ տարածելով անոնց պատասխանուոյն կը սպասէին. նաեւ ուրիշ բիւրաւոր հնարքներ կը բանեցընէին որպէսզի անզգոյշ մարդկան միտքերն իմանան եւ զիրենք հրապուրելով իբրեւ յանցաւոր ամբաստանեն։ Անոր համար ալ անթիւ անհամար սպանութիւններ կ'ըլլային այլ եւ այլ ամենադաժան տանջանքներով (1584) *)։ Քամուէն

---

*) Անգղիայի բանտերուն մէջ ամենէն աւելի գործածական տանջանքներն ասոնք էին։ Ա. Շքվընով, ասիկայ մեծ քառակուսի շրջանակ մըն էր․ Բանտարկեալը մէջը դնելէն եւ ոտքերը եւ ձեռքերը չուանով մը նոյն տանջանարանին վրայ հաստատուած անիւներուն վրայ կապելէն ետեւ անիւները այնչափ կը դարձընէին, մինչեւ որ բոլոր մարմինը կը ձգտուէր․ ասի ընելէն ետեւ տանջանարանի վրայ երողին հարցում կ'ընէին, եթէ ուզուած պատասխանը չէր տար, աւելի եւս կը ձգտէին, մինչեւ որ ոսկրները յօդուածներէն կը բաժնուէին։ — Բ. Բանտա-պետին փոսափրնըլուած գործիքն, որ երկու կտորէ շինուած երկաթէ օղ մըն էր։ Բանտարկեալը ծնկի վրայ պիտի գար եւ ծռէր որչափ որ կրնար, վերջէն գահիճը վրան ելլելով այնչափ զբանտարկեալը կը ճնշէր մինչեւ որ օղը ծնկին տակէն կռնակին վրայ կոճկէր։ Աս տանջանքը հասարակօրէն մէկ ու կէս ժամ կը տեւէր, որուն ժամանակը սաստիկ ճնշուելէն ատ հասարակ քթէն եւ բերնէն արիւն կը վազէր, եւ երբեմն ալ մատերէն ու ոտքերէն։ — Գ. Երկաթէ ձեռնոց, որն որ պտուտակով մը կրնար տարածուիլ եւ ամփոփուիլ։ Աս գործիքիս մէջ ձեռքը ոզմելէն եւ բարձր տեղէն կախելէն ետեւ ոտքին տակ դրուած երեք կտոր տախտակները մէկիկ մէկիկ կը վերցընէին։ Ժերար կ'ըսէ որ աս տանջանարանին վրայ ամենադաժան ցաւեր՝ կուրծքի, փորի, թեւերուն եւ ձեռաց վրայ կը զգայի։ Կը կարծէի որ բոլոր արիւնս թեւերուս մէջ ժողովելով մատերուս ծայրէն դուրս կ'ելլէր, թեւերս անանկ ուռած էին որ ձեռնոցներէ դուրս ցըցուած էին․ ասանկ ժամ մը կենալէս ետեւ մարեցայ․ երբոր արթընցայ դահիճք զիս նորէն վերցուցած կը բռնէին եւ ոտքերուս տակ փայտեր կը դնէին, եւ երբոր բոլորովին զօրացայ նորէն փայտերը վերցուցին։ Ասանկ հինգ ժամ կախուած մնացի 8—9 անգամ մարելով։ — Դ. Ցանջանարանաց չորրորդ տեսակ մըն էր փոքր սենեակ մը զոր որ փոքր հանգստարան կը կոչէին։ Աս սենեակը այնպէս շինուած էր որ մէջը մնողը ոչ կենալ, ոչ պառկիլ եւ ոչ նստիլ կրնար, ասանկով բանտարկեալը քանի մ'օր ծռած կամ կծկած պէտք էր կենալ։

կ՚ըսէ որ ամենահաւատարիմ եւ խիստ զգուշաւոր հպատակները տէրութեան կողմանէ լարուած որոգայթներէն հազիւ կրնային ազատիլ։

Եղիսաբեթ եւ իր պաշտօնեայք քանի որ վախցուած դաւաճանութեան մը առջեւ առնելու համար Անգղիայի մէջ անլուր խստութիւններ կ՚ընէին, միւս կողմանէն ալ ամենայն ճգամբ կը ջանային որ ուրիշ տեղեր իրական ապստամբութիւններ հանել տան։ Եղիսաբեթ եւ պաշտօնեայք իմանալով որ Յակովբ Թագաւորը Կիզ դքսին հետ միացեր է եւ իր մօրը վրայ շատ սէր կը ցուցընէ, իրենց միտքը դրին որ Սկովտիայի մէջ անգղիական կողմնակցութիւնը նորէն հաստատեն։ Ուըլսինկեմին նենգամտութիւնն եւ Եղիսաբեթին արծաթը Սկովտիայի քարոզիչները սաստիկ վառեց գրգռեց, որոնք պոռալով տժգոհները կը յորդորէին որ իրենց Թագաւորին դէմ զէնք առնուն եւ ճշմարիտ կրօնը (բողոքականութիւնը) պաշտպանեն։ Թագաւորը տեսնելով որ իր աթոռը վտանգի մէջ է, հրովարտակ մը հանելով հրամայեց որ Ռութուէնի դաւաճանութեան ամէն գործակիցներն անմիջապէս Սկովտիայէն հեռանան (1584. 2 Մարտ)։ Ռութուէն (Կորի) խոստացաւ որ կ՚ելլէ, բայց ետքը զանազան պատրուակներ բերելով հոն մնաց եւ իր դաւակցաց՝ Անկէօս եւ Մարր կոմսից հետ միացած ապստամբ գնդի մը գլուխ անցաւ։ Արիւնալից պատերազմէ մը ետեւ Կորի բռնուեցաւ, իսկ Անկէօս եւ Մարր Սթիրլինկ քաղաքը յարձակմամբ առնելով անոր մէջն ապաւինեցան, բայց անկից ալ փախան երբոր Թագաւորական բանակը մօտեցաւ (18 Ապրիլ)։ Եղիսաբեթ որոշած էր որ զօրքով իր բարեկամաց օգնութեան հասնի, սակայն Գաղղիայի դեսպանին ազդեցութեամբը զօրաց չուն ուշացուեցաւ, ետքն ալ բոլորովին արգելուեցաւ։

Մարեմայ գործողութիւններն ասկից աւելի յաջող երեւոյթ մը չունէին։ Սկովտիայի մէջ եղած անգղիական կողմնակցութիւնը զօրաւոր հարուածով մը ինկաւ կործանեցաւ. Յակովբ կ՚երեւար որ իր մօր կողմը բռնելու պատրաստ է, եւ Եղիսաբեթ ալ բաղձալով որ օր մը ան հոգէն որն որ զինքը շատ

տարիներէ ի վեր կը չարչարէր՝ ազատ, դաշնադրութիւն մը գնելով զՄարիամ ազատ թողուլ կ'ուզէր։ Անոր համար իր խնդրելովը (17 Հոկ.) Յակովբ Արքէյ կոմսն իր պաշտօնեան Լոնտոն խրկեց, որուն հետ Մարեմայ Նոյ քարտուղարն ալ ընկերացաւ։ Ամենեւին տարակոյս չկար որ երկու տէրութեանց պաշտօնեաները Գաղղիայի դեսպանին միջնորդութեամբն ի գլուխ կը հանէին այնչափ անգամ սկսուած եւ ընդհատուած բանակցութիւնը։ Բայց ամէն անգամ այնպիսի յանկարծական բաներ պատահեցան, որ դժբախտ թագուհւոյն ակնկալութիւններն ի դերեւ կը հանէին։

՝Բրէթըն յիսուսեանը եւ Ապտէյ աշխարհական քահանան Գաղղիայէն Սկովտիա անցնելու ատեն, Հոլլանտացի նաւերէն բռնուեցան եւ շղթայի զարնուած Անգղիա տարուեցան, թէպէտ եւ ասոր ամենեւին պատճառ մը չկար, ինչու որ Սկովտիան նոյն ժամանակը եւ ոչ մէկ տէրութեան մը հետ պատերազմի մէջ էր։ Քրէթըն տանջանարանի վրայ երկու տարի յառաջ Կիզ դքսին առաջնորդութեամբ Անգղիա յարձակում ընելուն այլ եւ այլ փոքր պարագաները խոստովանեցաւ. որոնք այնչափ ատեն զեղխսաբեր աշուղողի մէջ ձգած էին։ Սկովտիայի թագուհւոյն թշնամիք եւ ի մասնաւորի պաշտօնեայք ասիկայ առիթ առնելով նորանոր թէպէտ անհիմն երկիւղներով եւ հոգերով զեղխսաբեր լեցընել ջանացան եւ իրենց մէջը դաշնակցութիւն մը կազմելով երդմամբ չափ իրենք զիրենք պարտաւորեցին որ Անգղիայի թագուհւոյն կենաց դաւաճաններն ինչպէս նաեւ "զանի որուն համար աս դաւաճանութիւնը կ'ըլլայ„ մինչեւ ի մահ հալածեն։ Աս վերջի կտորը յայտնապէս Մարեմայ դէմ՝ էր։ Անգղիայի խորամիտ քաղաքագէտք չէին մտածեր որ իրենց սեպհական թագուհւոյն կեանքն ապահովցընել ուզելու ատեն, սուտ դաւաճանութեանց համբաւներէ խաբուելով կամ խաբուիլ ուզելով՝ ուրիշ անմեղ թագուհւոյ մը կենաց չէին խնայեր։ Աս կերպով Մարեմայ սպանութիւնը ջատագովելու համար ամէն վայրկեան կըրնային շինծու դաւաճանութիւն մը իբրեւ պատրուակ

ձեռքը առնուլ։ Մարիամ երբոր աս դաշնակցութեան ինչ ըլլալն իմացաւ, յայտնապէս ատոր մէջ իր դատապարտութեան վճիռը տեսաւ, այսու ամենայնիւ անխռով եւ առանց շփոթելու ուզեց որ նոյն դաշնակցութեան ինքն ալ ստորագրէ, բայց չընդունուեցաւ։ Նոյն դաշնակցութեան անոնք միայն ստորագրեցին, որոնք կամ Եղիսաբեթէն կը վախնային կամ անոր հաճոյ ըլլալ կը բաղձային։

Աշնան երբոր Անգղիայի խորհրդանոցը ժողվեցաւ, առջի գործքերէն մէկն եղաւ վերոյիշեալ դաշնակցութեան օրինական հաստատութիւն տալ։ Առաջարկուեցաւ որ եթէ Անգղիա յարձակում մը կամ թագուհւոյն դէմ ինչ եւ իցէ դաւաճանական խորհուրդ մը պատահի՝ թագուհւոյն հպատակներն իրաւունք ունենան զանի որուն համար որ ասոնք կ՚ըլլան մինչեւ ի մահ հալածել։ Եղիսաբեթ աս օրինաց աշխարհագոյժ անիրաւութիւնը չափաւորել ուզեց, եւ որոշուեցաւ որ ի մահ հալածուողը 24 հոգւոյ ժողովքովը յանցաւոր դատապարտուի։ Աս օրինաց զօրութեամբ Մարիամ եւ իր յաջորդներն Անգղիայի ժառանգութենէն զրկուած կը համարուէին՝ թէ որ Եղիսաբեթ բռնական մահուամբ մեռնելու ըլլար։

Աս նոր բայց պատիր ազատութեան յոյսը Մարեմայ սիրտը սաստիկ կոտրեց, սակայն երբոր իմացաւ նաեւ որ իր բնակութեան եւ պահապանաց մէջ մեծ փոփոխութիւն պիտ՚որ ըլլայ, բոլորովին յուսահատեցաւ։ Սատլէր կ՚ըսէ, քանի որ ես անոր (Մարեմայ) հետ ծանօթութիւն ըրած եմ, զինքը շատ փոփոխուած կը տեսնեմ, ազատութեան զպուռը՝ իր սրտին ցաւոց եւ տրտմութեան հետ խառնուելով թէ մարմնոյն եւ թէ հոգւոյն վրայ մեծ տպաւորութիւն ըրած է։ Հիմայ, կ՚ըսէ, չիկրնար ձախ ոտքը գետինը կոխել, եւ կը վախնայ որ առանց ջերմ բաղանեաց չիկրնար ոտքը բնական վիճակի մէջ մտնել։ Սատլէր 1585ին զՄարիամ Ուինկֆիէլտէն Թէօթպէօրի տանելու ստիպուեցաւ սղութեան պատճառաւ, եւ Յունուարի 14ին հոն հասաւ։ "Բայց ձմեռուան մէջ երբ որ հոն հասանք, կ՚ըսէ նոյն մարգը, պաղ եւ գէշ

կարգաւորուած տուն մը գտանք, ուր որ բնակութեան ամենահարկաւոր բաներն ալ կը պակսէին, ոչ վարագոյր, ոչ անկողին, ոչ սպիտակեղէն եւ ոչ ալ ուրիշ ինչ եւ իցէ կահ կարասիք կար։ Թագուհւոյն քովինները եղած կարօտութեան վրայ կը տրտնջէին, իսկ ես զիրենք հանդարտ պահելու եւ խաղաղցընելու կը ջանայի խօսք տալով որ ամենայն ինչ կարգի մէջ կը մտնէ, ի վերայ այսր ամենայնի առատ եւ շատ խօսքերն եւ խոստումները երկարատեւ ձմերուան ատեն զանոնք չկրցան ջերմացընել։ Վերջապէս կամաց կամաց տունը կարգի մէջ մտաւ, դրացի ազնուականներէն անկողին եւ ուրիշ կահ կարասիք փոխ առնելով կամ գնելով„։ — Այսչափ անարգ եւ կծծի է եղեր Եղիսաբեթ որ Մարեմայ փոխադրութիւնը ձմեռ ատեն որոշելէն ետեւ չուզեց միանգամայն իր գանձէն նոյն տունը յարդարել տալ, այլ սպասեց որ դրացի ազնուականք կամ նոյն իսկ Մարեմայ պահապանք զանոնք հոգան։

Մարիամ աս բանիս համար Գաղղիայի դեսպանին սրտունջ ըրաւ, նոյն դեսպանը անգղիական դահլիճին հետ շատ խստութեամբ խօսելու սկսաւ։ Եղիսաբեթ վախնալով որ Գաղղիացւոց առջեւ իր անարգ ագահութիւնը յայտնի չըլլայ հրաման տուաւ որ նոյն տունը տէրութեան գանձէն յարդարուի, բայց ծախքը 1500 փաւնտ սթերլինը չանցնի։ Սատլէր որն որ փորձով գիտէր թէ ասանկ ծիծաղական փոքր գումար մը չիբաւեր, Եղիսաբեթին գրեց որ ամենայն ինչ պատուով ընելու համար 3000 ալ քիչ է։ Խեղճ Մարիամ աս նոր բնակութեան մէջ որն որ այնչափ անամօթ գժտութենէն ետեւ քիչ մը կարգաւորուած էր չկրցաւ հանգիստ գտնել։ Պատերուն խոնաւութենէն կողի ցաւերը սաստկացան, անանկ որ շաբաթներով անկողին պառկած մնաց։ Մարիամ 1586ին Յունուարի մէջ քիչ մը վրայ եկած կ՚երեւար եւ կրնար քալել, թէպէտ միշտ կաղալով. բայց աս առողջանալուն երեւոյթն ալ երկայն չտեւեց։ Նոյն ամսոյն 26ին հանած յայտարարութեան մը համաձայն քունը սկսած էր նուազիլ եւ բնաւ ախորժակ չու-

ներ, յօդացաւութիւնը բոլոր մարմնոյն վրայ տարածուած էր, սրունքները կը ցաւէին այնպէս որ անկողնոյ մէջ չէր կրնար դառնալ։ Մարիամ իր անկողնոյն կարծրութեան եւ աղտոտութեան վրայ տրտնջելով, Սոմէր անունով աղնուական մը վրան խղճաց եւ իր փափուկ անկողինը խրկեց ըսելով որ "պատուէն եւ քրիստոնէական սէրէն շարժեալ աս ողորմութեան գործքը կ'ընեմ„։ Նոյն տարւոյն մէջ Փետրուարի 17ին կամթուած մը իջնալով կողը բոլորովին բռնուեցաւ։ Սկովտիայի ան թագուհին որն որ իր գեղեցկութեամբը կրթեալ Եւրոպային զարմանալիքն էր, իր նախանձոտ ազգականին չարակնութեամբը տասնութը տարւան բանտարկութենէն ետեւ ասանկ խեղճ վիճակի մէջ ինկաւ։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Յակովբ թագաւորին անհաւատարմութիւնը. Ամիաս Փաւլէթ՝ Մարեմայ պահապանին խստութիւնները. Պեպինկթընին դաւաճանութիւնը. Ուոլսինկէմ պաշտօնէին խարդախ վարմունքը. Ատենակալաց Մարեմայ վրայ ըրած խորհուրդը. Զինքը դաւաճանութեան մասնակից կ'ամբաստանեն. Մարեմայ պատասխանը. Մարիամ ինքզինքը ատենակալաց քննութեան տակ կը ձգէ։ Մարիամ ինքզինքը կը պաշտպանէ։ Մարիամ կը դատապարտուի, եւ խորհրդանոցը դատապարտութիւնը կը հաստատէ։

Կ'ուզէ Յակովբին տղայութեան ատեն եղած պարագաներէն որոնց մէջ ինք մեծցաւ, կամ անոր տրուած անկատար կրթութենէն է որ բնաւ ազնուական սիրտ եւ մեծանձնութիւն չունէր, որն որ հասարակօրէն երիտասարդաց վրայ չափազանցօրէն կը գտնուի։ Յակովբ տասնուվեց տարւան եղած ատեն՝ կեղծաւորութեան մէջ վարպետ էր եւ պարզ իր անձնական շահն եւ հանգստութիւնը կը փնտռէր։ Շատ ժամանակէ ի վեր Կիզ դքսին, Սպանիայի թագաւորին եւ Ս. Քահանայապետին հետ բանագնացութիւն կ'ընէր, եւ ուղղափառ կրօնի վրան ալ մեծ միտում կը ցուցընէր, եւ շատ անգամ իր բաղձանքն անոնց յայտնած էր որ կ'ուզէ նոյն իսկ իր սեպհական կենաց վտանգաւն ալ մայրը ազատել,

բայց մէկալ կողմանէ ալ շարունակ կը տրտնջար որ ստակի մեծ կարօտութիւն ունի, որով ոչ զինուոր վարձել եւ ոչ ալ գործակալներ պահել կրնայ։ Այս եղանակաւ վերոյիշեալ վեհապետներէն շատ ստակ ժողովեց, սակայն երբոր տեսան ասոնք որ Յակովբայ որդիական սէրը պարզ բառերու վրայ կեցած էր, դրամական օգնութիւնները դադրեցան. ասով Յակովբ որոշեց որ նոյն խաղն Եղիսաբեթին հետ ալ խաղայ։ Ուստի երբոր վերջի բանագնացութեան համար Կրէյ ատենակալն իբրեւ դեսպան Անգղիա խրկեց, իրեն ծածուկ ապսպրեց որ Մարեմայ Նոյ քարտուղարին հետ միաբան չգործէ, այլ ինքն առանձին գործէ։ Այս ատենակալը արտաքուստ ուղղափառ էր եւ խօսքերէն ալ որչափ կրնար մարդ դատել հոգւով եւ մարմնով Մարեմայ կողմը կ'երեւար, ասոր համար Եղիսաբեթէն պաղութեամբ ընդունելութիւն գտած էր, բայց երբոր անգղիական եկեղեցւոյ պաշտօնին ներկայ գտնուեցաւ եւ Նոյ քարտուղարին դէմ հակառակ գործքեր կը գործէր եւ զՄարիամ ազատելու եղած խորհուրդներն Եղիսաբեթին կը մատնէր, Եղիսաբեթին աչքը մտաւ եւ թագաւորին համար շատ ստակ առաւ։

Մարիամ ապագային երկիւղով տանջուած ատեն իր որդւոյն ցուրտ եւ ապերախտ վարմունքէն սիրտն աւելի եւս խոր վիրօք վիրաւորեցաւ։ Երբոր որդւոյն դեսպանին մատնութիւնը լսեց՝ Յակովբին նամակ մը գրելով ասոր վրայ տրտունջ ըրաւ, բայց Յակովբ շատ պաղութեամբ ընդունեցաւ մօրը աս նամակը, եւ անվայել եղանակաւ մը պատասխան տալէն ետեւ, նամակին վերջն աս ալ աւելցուց որ ինք պարզ անուամբ Սկովտիայի թագուհի է, եւ իր թագաւորութեան գործոց մէջ խառնուելու բնաւ իրաւունք չունի։ Այս երախտակորոյս որդւոյն նամակը դըժբախտ մօր յուսահատական վիճակը կենդանի գծներով նկարագրեց։ Տեսաւ որ նոյն իսկ իր սեպհական որդին, որուն սիրոյն վրայ ապաւինած ու իր յոյսն եւ ակնկալութիւնը դրած էր՝ զինքն ապախտաւորութեամբ թող տուած ու չարաչար խաբած է։ Այլա-

լուծեան առջի վարկեաններն ուզեց զինքն որդիութենէն մերժել, յաջորդութենէն զրկել եւ բոլոր իր իրաւունքները ուրիշ իշխանի մը ձեռք յանձնել, որն որ թէ կամք եւ թէ զօրութիւն ունենայ զանոնք պաշտպանելու։ Ասանկ մտածմանց մէջ այնպիսի դէպք մը պատահեցաւ որն որ վ՛նքը վերջի աստիճանի ահուդողի մէջ ձգեց։ Ուղղափառ երիտասարդ մը՝ որուն վրայ կասկած կար թէ քահանայ է՝ բռնուելով Թէօթպէօրի դաստակերտը Մարեմայ սենեկին քով բանտ դրուեցաւ։ Մարիամ ամէն օր կը տեսնէր թէ որպիսի բարբարոսական մոլեռանդութեամբ նոյն երիտասարդը քաշկռտելով մատուռը կը տանէին որ անգղիական պաշտօնի ներկայ գտնուի։ Վերջապէս նոյն երիտասարդը երեք շաբաթ շատ չարչարելէն ետեւ Մարեմայ պատուհանին դիմացը կախեցին (5 Ապրիլ)։ Աս զարհուրելի դէպքը Մարեմայ կասկածը հաստատեց թէ իր կենաց ետեւէն ինկողներն ալ կան, եւ աս համոզմամբ Եղիսաբեթին նամակ մը գրեց աղաչելով որ գէթ իր կենաց խնայեն։ .... "Կ'աղաչեմ զձեզ ձեռնամած՝ որ զիս աս երկարատեւ եւ ողորմելի բանտարկութենէն ազատէք։ Դուք դրէք ինծի պայմանները որ ընդունիմ, ինչ տեսակ որ ըլլան, միայն խղճիս չդպչին. թէ որ իմ մինչեւ հիմայ տուած վստահութիւններս բաւական չեն զձեզ գոհ ընելու եւ հանդարտեցընելու, ան ատեն վերցուցէք ինծմէ յաջորդութեան իրաւունքն, ես գոհ կ'ըլլամ։ Ձեր մտերմութեան եւ ճշմարտասիրութեան վրայ ամենեւին կասկած չունիմ, բայց թէ որ առանց ձեր գիտնալու զիս խղդեն, որո՞ւն հոգը պիտի ըլլայ։ Դուք կ'ըսէք որ ասանկ անարդար եւ անարժան գործք մը կատարել թող չէք տար։ Բայց ո՞վ ձեր հպատակներէն զիս դաւաճանօրէն սպաննելով անարժան գործք մը գործած կը համարի, երբոր ամէն մէկը իբրեւ դաշնակցութեան անդամ նոյնը գործելու երդում ըրած է . . .։ Ներեցէք ինծի, կ'աղաչեմ որ ուղղափառները խղճի մտաց պատճառաւ հալածելու նկատմամբ կարծիքս հոս դնեմ որն որ ձեզի շատ օգտակար կրնայ ըլլալ։ Երբոր մէկը ցյուսահատու-

թիւն կը հալածուի, նոյն յուսահատութեան հետեւութեանց ո՛վ երաշխաւոր կրնայ ըլլալ: Ըսած էիք իմ քարտուղարիս որ դուք եւ ոչ մէկը կրօնի համար հալածելու դիտաւորութիւն ունիք, եւ գահը նստելու ժամանակին առջի տարիները նոյն սկզբան հետեւելով՝ միշտ ապստամբութեանց արհաւիրներէ կը տանջուիք ....: Հիմակուան ժամանակս բոլոր քրիստոնէութեան մէջ ըստ բաւականին ցուցուած է որ մարդկային զօրութիւնը խղճին դէմ բան մը չիկրնար ընել ...: Իսկ հիմայ իմ վրաս գալով, եթէ իմ կրօնս՝ իմ ամէն թշնամեացս հարուածին նպատակն է, Աստուծոյ շնորհքով պատրաստ եմ դահճին սրոյն տակ վիզս ծռելու եւ բոլոր քրիստոնեայ ազգաց ցըցունելու որ ուղղափառ կրօնիս համար արիւնս կը թափեմ: Ինքզինքս երջանիկ կը համարիմ թէ որ առջի զոհն ես ըլլամ, ասիկայ դատարկ պարծենկոտութիւն մը չէ ...., արդէն գիտէք թէ որչափ վտանգներ կրած եմ ....:

Բայց Եղիսաբեթ Յակոբէն ա՛լ վախ չունենալով Մարեմայ խնդիրն եւ առաջարկութիւնները մտիկ չընելէն զատ, զինքը Ամիաս Փաւլէթին պահպանութեան տակ ձգեց, որուն մոլեռանդութենէն Մարիամ չէ թէ միայն խստութիւն այլ նաեւ ծածուկ մահ կը յուսար: Ասիկայ Մարեմայ հետ առջի անգամ տեսնուելուն իր խստութեան առջի փորձը տուաւ, ըսելով որ ասկից ետեւ անոր նամակներն իր ձեռքէն պիտի անցնին, Մարիամ այլազգ ընել կարող չըլլալով՝ զիջաւ սրտին մէջ մեծ ընդդիմութիւն կրելով: Փաւլէթ՝ Մարեմայ մեծ սենեկին մէջ եղած Սկովտիայի զինանշանը վերցընել տուաւ ըսելով որ Անգղիա միայն մէկ թագաւորական զինանշան կը ճանչնայ: Մարիամ իր սակաւաւոր մուտքէն մաս մը հանելով դղեակին քով եւ մօտաւոր գեղերուն աղքատաց ողորմութիւն տալու սովորութիւն ունէր, Փաւլէթ արգիլեց որ չընէ ատ մարդասիրութեան գործքն՝ որն որ իր նեղութեան եւ չարչարանաց մէջ մէկ հատիկ մխիթարութիւնն էր:

Եղիսաբեթ Յակոբին հետ 1586ին Յուլիսի

5ին դաշինք մը դրաւ որով երկուքն ալ ուղղափառ իշխանաց՝ բողոքական կրօնը ջնջելու ջանքին դէմ ուղղակի պիտի գործէին, եւ ի դիպուածի որ նոյն իշխանք Անգղիայի վրայ յարձակում ընելու ըլլան, Ցակովբ զօրքով օգնութիւն պիտի ընէր։ Աս դաշանց մէջ Մարեմայ վրայ բնաւ խօսք մը չեղաւ, որուն վշտերը լմըննալու վրայ էին։

Կրնայ զրուցուիլ որ Մարեմայ բարեկամք եւ կողմնակիցք իրենց անխոհեմ գործքերովը՝ կարծես թէ անոր թշնամեաց հետ միաբանած ըլլան զինքը իսպառ կործանելու։

Մ՝որկան եւ Փաճէթ Սկովտիայի թագուհւոյն՝ Գաղղիայի մէջ եղող պրիսուեթեան ստացուածոց վրայ տնտես էին։ Անգղիայի պաշտօնեայք իմանալով որ Մորկան Եղիսաբեթին դէմ դաւաճանութեան մը մէջ մտած էր, (թէպէտ եւ բաւական ապացոյց չունէին) խոստացած էին 10.000 փունտ սթերլին անոր որն որ Մորկանին գլուխը կը բերէ։ Ուստի երբոր Եղիսաբեթ Գաղղիայի թագաւորին ծնկի կապին նշանը խրկեց, խնդրեց իրմէ որ Մորկան իրեն յանձնուի։ Ցկար Հենրիկոս Գ. չյանդգնեցաւ չէ ըսել, եւ միջին ճամբայ բռնելով Մորկանը բռնեց եւ Պասթիյլ բանտը դրաւ եւ անոր թղթերը Լոնտոն խրկեց (1585, 9 Մարտ)։ Մորկան բանտի մէջ վրէժխնդրութեան զանազան խորհուրդներ մտածելով, Փաճէթին միջնորդութեամբ Մարեմայ հետ թղթակցութիւն ընել սկսաւ եւ Անգղիային չորս կողմը գործակալներ կը վարձէր։ Ուոլսինկէմ ատենադպիրը Մորկանին դաւակցութենէն քիչ մը տեղեկութիւն առնելով, անոր գործակալները կաշառեց, եւ թող տուաւ որ քիչ մը բան յաջողի, եւ ծածուկ՝ անոր կաշառած գործակալաց ձեռօք զինքն աւելի եւս կը գրգռէր։ Ուոլսինկեմին աս անօրէն վարմունքը բարձրագոյն վախճան մ՚ունէր։ Խորամանկ պաշտօնեայն կը մտածէր որ Մորկան՝ Մարեմայ Նոյ եւ Քէօթլ քարտուղարաց հետ թղթակցելով՝ Մարիամ անխոհեմ գործողութեան մը մէջ կրնայ մտնել եւ ասով խայտառակիլ, եւ ան ատեն դաշնակցութեան որո-

շածին համաձայն կընար մինչեւ ի մահ հալածուիլ։ Եւ կրնայ զրուցուիլ որ իր մտածածը ըստ մտքին յաջողեցաւ։ Մորկան իր Թղթերը Փուլէ անունով մէկու մը կը յանձնէր որն որ Ուոլսինկեմին դստերը քով ծառայութեան մէջ էր, եւ շատ անգամ Փարիզ երթալով գալով եւ ուղղափառ ձեւանալով Մարեմայ բարեկամաց գաղտնիքներն իմացած էր, եւ 1586ին Յուլիսի 20ին Մարեմայ համար նամակներն առած բերած էր։

Մորկանին ուրիշ գործակալներն էին Ճիֆֆըրտ եւ Կրէթլէյ, զորոնք պաշտօնեայք իրենց կաշառած էին։ Մորկան զիրենք Մարեմայ յանձնելով Մարիամ անոնց վրայ շատ վստահացաւ. աս երեք գլխաւորներն էին որոնցմէ Ուոլսինկէմ ամենայն ինչ իմացած էր։ Մորկան չորրորդ գլխաւոր գործակալ մ'ունէր, որն որ ինքզինք Գորթսիւ կ'անուանէր եւ ծպտեալ պաշտօնակալի զգեստով կը շրջէր. ասոր հետ Մոտ անունով մէկը որն որ անոր ամէն քայլափոխը կը քննէր՝ բարեկամացաւ, եւ իմացաւ որ աս օտարականը ուղղափառ քահանայ մըն էր Յով. Պալլար անունով եւ իրեն գործքն էր Անգղիայի մէջ միտքերը քննել եւ փախստականաց եւ Մարեմայ բարեկամաց օգնութիւն եւ դիւրութիւն գտնել։ Երբ որ Մենտոզ Սպանիայի դեսպանն որն որ նոյն ատեններն Փարիզ կենալու ստիպուած էր, իր Թագաւորին կողմանէ անոնց օգնելու միայն անորոշ խոստումներ տուաւ, Մորկան եւ Փաճէթ զՊալլար Անգղիա խրկեցին որպէսզի Սաւաժին եւ Պեպինկթընին հետ խօսակցին։ Սաւաժ՝ Բեղգիայի պատերազմաց մէջ պաշտօնակալ մըն էր եւ անհամբոյր բնութիւն մ'ունենալով յանձն առաւ զԵղիսաբեթ սպաննել, իսկ Պեպինկթըն Տերպի կոմսութենէն ազնուական մըն էր եւ Սկովտիայի Թագուհւոյն խիստ կողմնակիցներէն մէկն էր։

Երբոր Պեպինկթըն Պալլարէն իմացաւ որ Սաւաժ յանձն առեր է զԵղիսաբեթ մեռցընել, խորհուրդ տուաւ անոր որ ասանկ վտանգաւոր գործք մը պարզ մէկու մը յանձնելը աղէկ չէ, եւ ասոր

համար ինքն առաջարկեց որ ուրիշ վեց հոգի ազնուականներէն ընտրուին աս գործքը կատարելու համար, որպէսզի ասի ըլլալու ատեն մէկալները Սկովտիայի թագուհին ազատելու պատրաստ կենան, եւ ինքն յանձն առաւ որ իր մօտերիմ բարեկամաց աս խորհուրդը յայտնէ, որոնք ստուգիւ աս առթով թէ Սկովտիայի թագուհին բանտարկութենէն եւ թէ իրենց եղբարքը դառն հալածանքներէն ազատելու յանձն կ՚առնուն։ Ուոլսինկէմ՝ Մոտէն եւ Փուլէէն աս դաւակցութեան ամենափոքր պարագաներն իմացած ըլլալով թող տուաւ որ աւելի եւս դաւակցութիւնը կերպաւորուի որպէսզի իր գլխաւոր զոհը չփախցընէ։ Ուստի իր հրամանաւ Ճիֆֆըրտ՝ Չերթսէյի մօտերը գնաց ուր որ նոյն ատենս Մարիամ օդափոխութեան պատճառաւ կը կենար, եւ նոյն թերդը գարեջուր տանող մարդ մը կաշառելով անոր ձեռօք Մարեմայ Նօյ եւ Քէօսըլ քարտուղարաց հետ թղթակցիլ սկսաւ։ Քանի մը օրէն ետեւ Պեպինկթըն անծանօթ մարդու մը ձեռօք Ճիֆֆըրտէն նամակ մ՚ընդունեցաւ (Մարեմայ գործածած թուանշաններով (8 Յուլ.)։ Աս նամակիս մէջ տրտունջ կ՚ընէր Մարիամ Պեպինկթընին վրայ որ իրեն մատուցած ծառայութիւնն ինչո՞ւ ընդհատեր է, եւ խնդրեց իրմէ որ Գաղղիայի դեսպանէն գալու կապոցը իրեն խրկէ։ Պեպինկթըն մատնութեան կասկած մը չունենալով, մանաւանդ թէ ուրախանալով որ Մարեմայ ծառայելու առիթ մը եկեր է, կապոցն եւ իր ձեռօք գրած նամակ մը Ճիֆֆըրտին տուաւ որ Մարեմայ յանձնէ։ Բայց աս մատնիչը զանոնք անմիջապէս Ուոլսինկեմին տարաւ. Թովմաս Ֆիլիփս նամակները կարդաց, եւ օրինակելէն ետեւ կամ օրինակը կամ օրինակուածը նորէն Ճիֆֆըրտին տուաւ որ Չերթսէյ տանի։ Քիչ մ՚ետքը մատնիչը Մարեմայ պատասխանագիրն ընդունելով նոյնպէս Ուոլսինկեմին ցուցուց եւ օրինակ մը առնելէն ետեւ Պեպինկթընին ձեռքը յանձնեց։ Աս բնագրոց մէջ ինչ գրուած ըլլալը չիգիտցուիր, բայց օրինակուածներէն՝ զորոնք որ յետոյ երեւան հանեցին՝ Ուոլսինկէմ անոնցմէ բաւական

պատճառ գտած համարեցաւ զՄարիամ դաւակցու-թեան մասնակից ցուցընելու եւ մահուան դատա-պարտելու *)։

Դաւակցութիւնն եթէ աս անուամբ կոչել կ'ուզենք դեռ մանկութեան մէջ էր։ Զանազան խոր-հուրդներ ընելէն ետեւ դեռ բան մը որոշած չէին։ Պեպինկթընին կարծիքը մէկալ կողմնակցաց հետ միա-բան չէր, եւ իրենց շինելու շէնքն Անգղիայի վրայ ըլլալու արշաւանաց վրայ հիմնեալ էր, որն որ օտար իշխանաց կամքէն կախուած էր եւ որոնցմէ դեռ որոշակի չէին խնդրած։

Ուոլսինկէմ մինչեւ հիմայ աս գաղտնիքն Եղի-սաբեթէն ծածուկ կը պահէր, բայց անկից վերջն ալ հարկ համարեցաւ անոր յայտնելու։ Եղիսաբեթ անոր մեծ խորամանկութիւնը գովեց, բայց անոր չափէ դուրս մեծ անձնապաստանութիւնն անարգեց ըսելով որ պյնչափ ատեն ուշացընելը զԱստուած փորձել, եւ իր կեանքը վտանգի մէջ դնել էր։ Անմիջապէս հրա-ման տուաւ որ ամէն դաւակիցք բռնուին, բայց աս հրամանը մատնութեամբ իմացուելով յանցաւորք փախչելով իրենց կեանքն ազատել ջանացին, բայց ամէնն ալ բռնուեցան բաց ի Եդուարդ Ռինասորէ։

Աս երիտասարդաց բախտն եթէ աղէկ մը դի-տելու ըլլանք մեր արգահատութեան արժանի են։ Ասոնք ան սինլքոր դասէն չէին որմէ որ հասարա-կօրէն ապստամբք կ'ելլեն, այլ ազնուական եւ հա-րուստ ընտանեաց որդիք էին ամէն տեսակ բախտի բարիքներով լեցուն։ Եթէ որ Մորկանին անխոհեմ վրէժխնդրութիւնն եւ Ուոլսինկեմին խարդախու-թիւնն՝ որուն հոգը չէր թէ որուն եւ քանիներուն

---

*) Ինչպէս որ ըսինք Թոմ. Փիլիփս նամակները կարդաց, իսկ Արթուր Կրէկորէյ կնիքները համաձայնեցուց։ Բայց Ուոլսինկեմին անձնական գրագիրը Հարրիսոն շատ ժամա-նակ անցնելէն ետեւ երբոր Ուոլսինկեմէն վախ չունէր իր տէրը զՓիլիփս եւ զՄոտ կ'ամբաստանէ որ նոյն իսկ ի-րենք աս դաւակցութիւնը շինած, գրգռած եւ ի գլուխ հանած են, որպէսզի զՄարիամ դատապարտելու առիթ ունենան. Cotton MSS. Cal. c. IV. 458. Chalmers I, 427։

արիւնը կը մտնէ՝ միայն թէ Մարեմայ արիւնը թափէ, չըլլար, ոչ ոք անոնցմէ ասանկ դաւակցութեան մէջ կը մտնէր։ Ամէնն ալ հաւասարապէս յանցաւոր չհամարուեցան, Պեպինկթըն իբրեւ մարդասպան դատապարտուեցաւ, որովհետեւ Սաւաժին եւ Պալլարին խորհրդին հաւանութիւն տուած էր, մէկալները թէպէտեւ իրենց թագուհւոյն արեան մէջ ձեռք թաթխել ուզելնին ուրացան, բայց խոստովանեցան թէ զՄարիամ ազատելու միաբանած էին, իսկ ասկից զատ ուրիշ երկու հոգի ամենայն ինչ ուրացան ըսելով որ իրենց յանցանքը պարզ լուռ կենալուն վրայ կեցած է, ինչու որ չէին յանդգներ իրենց բարեկամները մատնել։ "Իմ խիստ բախտէս է ըսաւ Ճօնս (անոնցմէ մէկը) որ ոչ իմ բարեկամներս մատնել ուզեցի, զորոնք անձինս պէս կը սիրեմ, եւ ոչ ալ հպատակի մը պարտաւորութիւններն ոտքի տակ առնել ուզեցի, որով թէ ինծի եւ թէ իմիններուս վնասակար կ'ըլլար, եւ հիմայ իբրեւ մատնիչ կը դատապարտուիմ. Սալսպէօրէյի սիրոյն համար ինքզինքս ատեցի ...։", Ամէնն ալ մատնութեան մահուան դատապարտուեցան *)։ Աս բարբարոսական հանդէսն երկու օրուան մէջ պիտի ըլլար, բայց երբոր տեսնուեցաւ որ առջի օրուան մէջ սպաննուածներուն վրայ ժողովուրդը նոյն բարբարոսական մահուան վրայ տրտնջալ սկսաւ, երկրորդ դատապարտուածները նախ կախեցին եւ ետքը դահճի սրոյն մատնեցին։

Աս ժամանակներս Մարեմայ վրայ խիստ հսկողութիւն կ'ըլլար որ չըլլայ թէ յայտնուած դաւաճանութիւնն ականջը հասնի։ Վերջապէս Թովմ. Կորճ

*) Աս պատիժն իրօք զարհուրելի էր եւ ամենաբարբարոս ժողովրդեան մը քով գտնուելու արժանի։ Դահիճը դատաւորին ձեռքէն զյանցաւորն ընդունելէն ետեւ ձեռքը կարճ բայց լայն սուր մը առնելով յանցաւորին կուրծքը կը խոթէր կը բանար, բայց զգուշանալով որ գլխաւոր երակին չդպչի, եւ կուրծքին մէջ ձեռքը խոթելով դատապարտելոյն սիրտը կը փրցընէր. աս գործքս այնպիսի արագութեամբ պէտք էր ընել որ յանցաւորը դեռ հոգին չաւանդած՝ իր սիրտը տեսնելու ժամանակ ունենար։

արքունիքէն խրկուեցաւ որպէսզի թէ՛ գաւաճանութիւնն եւ թէ Մարեմայ մասնակցութիւնն իրեն յայտնէ։ Պատգամաբերն ալ անախորժ լուրն ան ատեն բերաւ երբոր Մարիամ Ամիաս Փաուլեթին հետ միատեղ ձիով ժուռ երթալու կը պատրաստուէր։ Մարիամ զարհուրեցաւ, եւ կ՚ուզէր իր սենեակը քաշուիլ, բայց գաժան Փաուլէթ զինքը Թիքսալ տարաւ եւ խիստ բանտարկեց եւ անոր սենեակը մտնելով բոլոր թղթերը, գրիչն եւ թանաքն առաւ վերցուց։ Մարիամ երեք շաբաթ առանձին բանտի մէջ կենալէն ետեւ նորէն Չերթսէյ տարուեցաւ, եւ իր սեպհական սենեակը մտնելով տեսաւ որ բոլոր դուները բռնութեամբ բացուած թղթերն եւ կնիքներն եւ տակը վերցուած էր։ Քանի մը րոպէ լռելէն ետեւ, դարձաւ իր պահապանին եւ մեծանձնութեամբ մը զրուցեց, Տէր, դեռ երկու բան մնաց առնելու զորն որ չէք կրնար առնուլ, այսինքն նախ թագաւորական արիւնս եւ երկրորդ՝ իմ հարցս կրօնի վրայ ունեցած համոզումս։

Մարեմայ վճիռն որոշելու համար Եղիսաբեթ իր փորձառու խորհրդականները խորհրդի կանչեց. ասոնցմէ ոմանք որոնք որ անոր կենաց խնայել կ՚ուզէին յառաջ բերին Մարեմայ ծերութիւնն, հիւանդոտ վիճակն եւ մերձաւոր ստուգութիւնն որ երկարատեւ եւ խիստ բանտարկութենէն ետեւ շատ չիկրնար դիմանալ։ Բայց ատենին մեծագոյն մասը կը պնդէր որ բողոքական կրօնը հաստատուն պահելու համար անհրաժեշտ հարկաւոր է որ Մարիամ մեռնի, եւ ասոնց մէջ ոմանք Լէսթըր կոմսին առաջարկութեան կողմը կը բռնէին, որն որ խորհուրդ կու տար, հանդարտ եւ ապահով ճամբով զՄարիամ աշխարհքէս վերցընել ‘‘թունաւորելով,,։ Եւ ոմանք Ուոլսինկեմին խորհուրդը կը պաշտպանէին որ Մարիմայ վրայ հրապարակական եւ դատաստական քննութիւն ըլլայ, եւ անանկով սպաննուի։ Ուոլսինկեմին խորհուրդն ընդունելի ըլլալով որոշուեցաւ որ ատենակալներէն, գաղտնի խորհրդականներէն եւ դատաւորներէն 47 հոգի ընտրուին Մարեմայ դատաստանը տեսնելու համար։

Իրաւագէտք մեծ դժուարութիւն հանեցին թէ ինչ տիտղոս տան Մարեմայ դատաստանի ատեն, եւ շատ վիճաբանելէն ետեւ որոշեցին որ զինքն անուանեն ‘‘Մարիամ դուստր եւ ժառանգ Յակովբ Եին Սկովտիայի վերջին թագաւորին երբեմն թագուհի Սկովտացւոց եւ Գաղղիայի այրի թագուհի„: Աս փուճ խնդիրն ան ատեն կ՚ըլլար երբոր արդարութեան ամենայն սկզբունքներն ոտքի տակ առնելով օտար թագուհի մը սպաննելու ամենեւին խիղճ չէին ըներ:

Հոկտեմբերի 11ին Եղիսաբեթէն ընտրուած ատենակալներէն 36 հոգի Ֆոթերինկէյ գացին ուր որ Մարիամ մեծագոյն զգուշութեան համար տարուած էր: Երկրորդ օրը Սկովտիայի թագուհւոյն առջեւ ներկայանալով Եղիսաբեթին գրած թուղթն իրեն տուին: Աս թղթիս մէջ Եղիսաբեթ զինքը յանդիմանելէն եւ վրան զանազան ամբաստանութիւններ դնելէն ետեւ, ծանուց իրեն որ հրապարակական քննութեան մը մէջ Մարիամ ինքզինքն արդարացընէ եւ որովհետեւ կ՚ըսէր, այնչափ ատեն Անգղիայի օրէնքները եւ պաշտպանութիւնը վայելած է, հարկ է որ իրմէ դրուած դատաւորներէ քննուի:

Մարիամ աս լրոյն վրայ քիչ մը խռովեցաւ, բայց աս խռովութիւնն այնչափ մեծ չէր որ մոռցընել տար իրեն թէ ինքն անկախ թագուհի մըն է: Իրեն դէմ բերած ամբաստանութեանց դէմ սաստիկ բողոք ընելով՝ պաշտպանեց զինքն որ Եղիսաբեթին կենաց դէմ դաւաճանութեան մը մէջ երբեք մտած չէ: Դատաւորաց իրաւաբանութիւնը բացարձակապէս մերժեց՝ ըսելով որ ‘‘Ես իբրեւ անկախ թագուհի մը հոս եկած եմ ձեր թագուհիէն օգնութիւն եւ պաշտպանութիւն խնդրելու, եւ ոչ եթէ անոր իշխանութեան տակ զիս ձգելու...: Ոչ այնչափ երկար վշտերէն հոգիս ընկճած է, եւ ոչ ալ ներկայ սպառնացող վտանգէն կը զարհուրիմ, որ անանկ բան մը ընդունիմ որն որ թէ իմ պսակեալ գլխոյս եւ թագաւորական արեանը, ուսկից որ յառաջ եկած եմ, եւ թէ որդւոյս անուան՝ որուն որ իմ թագաւորութիւնս կը թողում, անվայել եւ վնասակար ըլլայ:

Եթէ որ վրաս դատաստան ընել ուզուի, իշխաններ եւ թագաւորներ միայն իմ ատենակալքս կրնան ըլլալ։ Անգղիայի Թագուհւոյն հպատակք որչափ որ ծնընդեամբ երեւելի եւ նշանաւոր ըլլան, ինծի հաւասար չեն կրնար սեպուիլ,,։ Վերջը նամակին ան կտորին վրայ խօսքը դարձընելով՝ որ կ'ըսէ թէ “Անգղիայի մէջ կ'ապրիք՝ անոր օրինաց պաշտպանութեան տակ,,, Պրոմլէյին աղաչեց որ ան կտորը իրեն մեկնէ։ Մարեմայ ըրած խնդիրը եւ տրուելու պատասխանը շատ փափուկ եւ հետաքրքրական էր, բայց Պրոմլէյ փոխանակ ուղղակի պատասխան տալու փախուստ տուաւ եւ ըսաւ որ նոյն խօսքերն արդէն յայտնի են. եւ հպատակի մը չիվայլեր որ իր իշխանին նամակները մեկնէ, եւ թէ իրենք ասոր համար հոս տեղս եկած չեն։ Դարձաւ Մարիամ եւ զարմանալի աներկիւղութեամբ, “Տեարք իմ, ըսաւ, Անգղիա ոտք կոխելէս ետեւ իբրեւ բանտարկեալ պահուեցայ. երկրին օրինաց եւ պաշտպանութեան վայելմունքն ա՞ս է, ոչ երբեք Անգղիայի օրէնքներն ինծի նպաստաւոր եւ պաշտպան եղած են, ուրեմն, Տեարք իմ, հիմայ ալ մի ծեքէք զանոնք իմ կեանքս ինծմէ յափշտակելու համար,,։

Եղիսաբեթին պատգամաւորները ամէն միջոցն ի գործ դրին որ Մարեմայ հաստատութիւնը խախտեն, կ'աղաչէին, կը սպառնային որ ըստ օրինաց կը վարուին՝ եթէ որ ինքզինքը քննութեան տակ ձգելու կը յամառի, եւ ան ատեն առանց իրեն հարցընելու զինքը կը դատապարտեն։ Մարիամ երկու ամբողջ օր հաստատուն մնալով պատգամաւորք շփոթած իրարմէ բաժնուեցան։ Բայց Հաթթըն՝ Եղիսաբեթին սենեկապետին փոխանորդը զօրաւոր պատճառով կրցաւ համոզցընել զՄարիամ որ աս քննութիւնն ընդունի. առջեւը դրաւ որ աս դատաստանական քննութիւնը մերժելը ուրիշ բան չէ բայց եթէ յանցանքը ճանչնալը եւ խայտառակութենէն ազատիլ ուզելն է։ Աս տրամաբանութիւնը Մարեմայ վրայ սաստիկ մեծ տպաւորութիւն ըրաւ, գիշերուան միայնութիւնը եւ հանդարտութիւնը վրայ գալով Հաթթընին խօսքերը

աղէկ մը կշռելէն ետեւ, ինքզինքն աս ամբաստանութենէն սրբելու համար՝ երկրորդ օրը հաւանեցաւ դատաստանական քննութեան տակ մտնելու ան պայմանաւ՝ որ դատաւորաց իրաւաբանութեան դէմ ըրած բողոքը արձանագրին մէջ դրուի:

Կուցէ Մարեմայ աս զիջումը շատերուն անխոհեմութիւն երեւայ. բայց պէտք ենք մտածել որ ինք անանկ պարագայից մէջ էր՝ որ իր անմեղութիւնը կրնար պաշտպանել, բայց ցուցընելու համար ամենեւին կարելիութիւն չունէր: Միայն միայնակ, առանց բարեկամի կնիկ մը, օրինաց եւ դատաստանական ընթացից բոլորովին անտեղեակ, առանց թղթերու, վկայի եւ փաստաբանի, վերջի պատահած դէպքերէն այնչափ տեղեկութիւն ունէր՝ որչափ որ իր չորս պատերէն կրնար մտնել, եւ հակառակորդաց բերած ապացոյցները միայն մակաբերելով կ'իմանար, կառավարութեան փաստաբանաց եւ օրէնսգիտաց սոփեստական հարցմանց ոչ պատասխան կրնար տալ եւ ոչ անոնց խորամանկութիւններն երեւան հանել: Թէպէտեւ դատաւորաց մէջ մէկ կամ երկու կամ երեք բարեկամ կը նշմարէր, ի վերայ այսր ամենայնի անոնք անանկ մարդիկ էին, որոնց հաւատարմութեան վրայ Եղիսաբեթ կը կասկածէր, եւ որոնց կեանքն եւ ինչքը Մարիամ դատապարտելէն կամ չդատապարտելէն կախում ունէր: Իսկ մէկալներուն մէջ խիստ եւ ամենադաժան թշնամիներ կը տեսնէր, որոնք տարիներէ վեր գաղտնի խորհրդեան մէջ անոր մահուան ետեւէ էին, եւ խորհրդանոցի մէջ աղաղակաւ անոր մահը կը խնդրէին: Ի վերայ այսր ամենայնի թէպէտ Մարիամ ասանկ դժբախտ վիճակի մէջ էր, յաջողութեամբ եւ քաջասրտութեամբ իր արիւնարբու հալածչաց ձեռքէն ինքզինքը պաշտպանեց:

Մարիամ սրահը մտած ատեն՝ ուր որ դատաւորք ժողոված զինքը մեծ հանդիսութեամբ ընդունեցան, անմիջապէս բողոք ըրաւ եւ հրատարակեց որ հիմայ իրեն դէմ բերուած ամբաստանութեանց պատասխան տալու զիջումը ուրիշ բանի համար չէ բայց եթէ ինքզինքն արդարացընելու համար: Ասոր

վրայ Եղիսաբեթին փաստաբանն իրեն դէմ բերուած ամբաստանութիւնները կարդաց ամենափոքր պարագաներով՝ բոլոր յանցանքը երկու գլխաւոր կէտերուն վրայ ամփոփելով. Նախ որ Անգղիայի վրայ արշաւանք մը եւ երկրորդ թագուհւոյն (Եղիսաբեթին) կենաց դէմ դաւաճանութիւն մը նիւթած է: Մարիամ ասոնք հանդարտութեամբ մտիկ ըրաւ, եւ երբոր փաստաբանը իր ճառաբանութիւնը լմնցուց, Մարիամ ոտք ելաւ մէկէն եւ զարմանալի վեհութեամբ առանց խռովութեան ինքզինքը պաշտպանել սկսաւ: Ողբաց իր բաղդն որ քսանամեայ խիստ եւ անլուր բանտարկութենէն ետեւ վրան այնպիսի յանցանք մը ստութեամբ կը դրուի, որով չէ թէ միայն թագաժառանգութիւնն, այլ նաեւ իր կեանքն ալ յափշտակել կ'ուզեն, եւ առանց իր պսակեալ գլխուն իրաւանց միտ դնելու այնպիսի օրինաց տակ զինքը կը ձգեն, որոնք միայն առանձնականաց համար շինուած են: Օծեալ թագուհի մը՝ օտար հպատակներէ կազմուած դատաստանի մը առջեւ կը կոչուի, եւ իբրեւ չարագործ յանցաւոր մը՝ իր համբաւը փաստաբանաց անսանձ լեզուին կը մատնեն, որոնք իր խօսքերը ծեքելու եւ իր գործքերին ի չարն մեկնելու վարժած են: Եւ անանկ դժուարին եւ վտանգաւոր պարագայից մէջ, հասարակ յանցաւորի մը չզլացուած սովորական շնորհքն, այսինքն փաստաբան մը ընտրելը թող չեն տար, որով ստիպուած է առանց բարեկամի եւ խորհրդականի ինքզինքը պաշտպանել, որոնց խորհրդով կրնար զօրանալ...: Ասոնք ըսելէն ետեւ ի մասնաւորի առջի ամբաստանութեան նկատմամբ ոչ խոստովանեցաւ եւ ոչ ալ ուրացաւ, այլ փոքր բանի մը տեղ դնելով, ըսաւ որ "Շատ անգամ ասանկ փորձեր ըրի ան դիտաւորութեամբ որ ազատութիւնս գտնեմ, որն որ ամէն մարդու բնական է. եւ որովհետեւ այնչափ տարուան երկարատեւ փորձերով սորվեցայ որ Եղիսաբեթէն զանի չեմ կրնար նորէն առնուլ, անոր համար շատ անգամ օտար իշխաններ օգնութեան կանչեցի, բոլոր բարեկամներս գրգռեցի որ ամենայն զօրութեամբ ջանան

զիս ազատել։ Եւ Անգղիայի օրինաց տակ չեմ. Եղիսաբեթ իմ հաւատարս է, եւ ոչ եթէ իմ վերին իշխանս, եւ իշխանաց մէջ ուրիշ օրէնք չկայ բայց եթէ բնական օրէնք, որն որ թոյլ կու տայ ինձի որ զիս անիրաւ բանտարկութենէն ազատել տամ։ Իսկըզբան թէութիւններ գրած էի, զորոնք նոյն իսկ Եղիսաբեթ ընդունած էր, եւ հրատարակած էի որ եթէ նոյն թէութիւնները չընդունուելու ըլլան, ան ատեն ես ուրիշ միջոցներու ձեռք կը զարնեմ, բայց իմ աղաչանքներս, առաջարկութիւններս եւ սպառնալիքներս չլսուեցան, եւ հիմայ ո՞վ կրնայ զիս ստգտանել ասանկ պարագայից մէջ բարեկամներէս օգնութիւն խնդրելուս,,։ Նոյնպէս ջանացած եմ Անգղիոյի ուղղափառաց դիւրութիւն մը հոգալ, որոնք այնչափ ընկճուած են, եւ եթէ գիտնայի որ իմ մահուամբս զիրենք անարգ հալածանքներէն կ'ազատեմ, պատրաստ եմ գլուխս դահճին սրոյն տակ խոնարհեցընելու....։ Աւելի Եսթերայ քան թէ Յուդիթայ օրինակին հետեւեցայ, եւ աւելի լաւ կը համարէի ժողովրդեան մը համար խոնարհական հայցուածներ ընել քան թէ ինք զինքս ազատելու համար ամենէն ստորին մարդու մը արիւնը թափել։ Շատ անգամ իմ կողմնակցացս բուռն կիրքերը սանձահարեցի, երբոր անոնք հալածանքներէն յուսահատութեան հասնելով, եւ իմ անձիս վրայ եղած անլուր նախատինքները տեսնելով՝ ապստամբական գործքերու ձեռք կը զարնէին։ Նոյնպէս Եղիսաբեթին ազդեցութիւն ըրած եմ թէ որչափ վնասներ կրնան յառաջ գալ ուղղափառները անխոհեմ խստութեամբ չարչարելէն,,։

Իսկ ամբաստանութեան երկրորդ մասը զարհուրանօք եւ արտասուօք բոլորովին ուրացաւ, ըսելով թէ "Հիմայ որ մարմինս այնչափ մեծ հոգերէն եւ նեղութիւններէն տետեւ տկարացած եւ հիւանդագին եղած է, անցական թագ մը այնչափ աչքերս չէկրնար շլացընել մինչեւ զանիկայ ստանալու համար յաւիտենական արքայութիւնը կորսնցընեմ։ Մարդկային զգածմունքս դեռ վրաս տիրած է եւ կրօնի պարտքերը կը ճանչնամ, մարդասպանութեան զարհու-

ընելի յանցանքէն կը խորշիմ, որն որ թէ կրօնի եւ թէ մարդկային զգածմանց ընդդէմ է…„: Իրաւագէտք զինքը յաղթահարելու համար Պեպինկթընին (առ Մարիամ գրած) նամակը կարդացին, որուն մէջ Պեպինկթըն կը ծանուցանէ իրեն որ իր մտերիմ բարեկամներէն վեց հոգի համոզցուցած է զեղիսաբեթ սպաննել: Նոյնպէս Մարեմայ առ Պեպինկթըն ուղղած նամակը կարդացին, որուն մէջ Մարիամ զրուցած ըլլայ. “Եթէ դրսի եւ ներսի բարեկամք աղէկ պատրաստուած են, ան ատեն ժամանակ է որ ան վեց ազնուականք իրենց միտքը դրածը կատարեն, եւ աղէկ պատրաստուին որ նոյն գործքը կատարելէն ետեւ՝ իսկոյն զինքն ազատեն„: Եթէ աս նամակները վաւեր են, ան ատեն պէտք ենք խոստովանիլ որ Մարիամ զեղիսաբեթ սպաննելու հաւանութիւն տուած է: Բայց պէտք ենք մտածել որ նոյն դատաստանի մէջ բերուած բոլոր թղթերը բուն օրինակ չէին այլ օրինակուած: Բնաւ խնդիր չէր ըլլար թէ բուն օրինակները ինչ եղած են, եւ կամ թէ ուսկի՞ց եւ ինչպէս օրինակուած են: Ցէրութեան օրէնսգէտք աս պարագան առեղծանման՝ շատ մեծ կասկածի զարնող լռութեամբ զանց առած են: Կը համարէին որ բաւական է ցուցընել թէ երբեմն բուն օրինակները եղած են, որոնց հետ օրինակուածները միաբան էին, եւ ասանկ ապացոյցներն անկախ թագուհի մը սպաննելու բաւական պատճառ կը համարէին:

Սկովտիայի թագուհին պատասխանեց՝ որ ոչ Պեպինկթընէն նամակ մ'ընդունած է եւ ոչ ալ ասանկ պատասխան մը տուած է. “Եթէ որ իմ հակառակորդներս ճշմարտութիւնն երեւան հանելու դիտաւորութիւն ունենային, ան ատեն զինքը (զՊեպինկթըն) այնչափ շուտով չէին սպաններ, այլ դիմացս կը հանէին. անոր խոստովանութիւնն, եթէ որ իրօք խոստովանած է, ծանրակշիռ բան մը չիկրնար ըլլալ, որովհետեւ տանջանարանի երկիւղն ու ազատութեան խոստումը իրմէ ասանկ զրպարտող խոստովանութիւն մը փրցուցած կրնան ըլլալ: Իսկ Նոյ եւ Քէօրլ քարտուղարացս խոստովածներէն բան մը չեմ

գիտեր. Նոյ երկչոտ եւ պարզամիտ մարդ մըն է, իսկ Քէօրըլ անոր հետեւողն է. գուցէ իրենց կեանքը ազատելու համար գիտութեամբ սուտ վկայութիւն տուած են, առանց իմ կեանքս վտանգի մէջ դնել ուզելու: Իսկ իմ տուած պատասխանիս գալով՝ մինչեւ աս օրս ասանկ բանի մը տեղեկութիւն չունէի. գուցէ Նոյ իմ անուամբս գրած ըլլայ՝ "առանց իմ գիտնալուս„, ինչպէս որ ուրիշ անգամ ըրած էր, եւ գուցէ ալ բոլոր շէնքը Ուոլսինկէմ ատենադպրին գլխուն տակէն ելած բան մ'ըլլայ, ինչպէս որ աղէկ տեղեկացած եմ, որն որ թէ իմ եւ թէ որդւոյս կենաց դէմ դաւակցութիւն մը երբեմն կազմած էր„: Աս խօսքերուս վրայ Ուոլսինկէմ ոտք ելաւ եւ զԱստուած վկայ կոչելով զրուցեց որ ինք բան մը ըրած չէ՝ որն որ պատուաւոր մարդու մը եւ այնպիսի պաշտօնի մը՝ զորն որ ինքը կը կրէ, անարժան գործ մ'ըլլայ: — Թէպէտեւ աս պատասխանը աւելի փախուստ մըն էր քան թէ ուրանալ, ի վերայ այսր ամենայնի Մարիամ աղաչեց զինքը որ չառնուի, որովհետեւ ինքը համարձակութեամբ ան ամէն բան զրուցած է, ինչ որ ուրիշներէ լսած էր, եւ կը յուսամ որ, ըսաւ, դուք ալ զիս ամբաստանողաց զրպարտութեանց պատրաստական ականջ չէք կախեր: Ասոր վրայ Մարիամ պահանջեց որ իր քարտուղարք՝ որոնք դեռ չէին սպաննուած դիմացը հանուելով, կամ խորհրդանոցին կամ Եղիսաբեթին առջեւ նորէն քննուին: Բայց խորհրդականաց մեծ մասը աս առաջարկութեան դէմ դնելով ոտք ելան, եւ ժողովքը քիչ մը ժամանակուան համար ուշացուցին առանց բան մը որոշելու (Հոկտ. 15—25):

Մարիամ աս քննութեան ատեն երկու օր ներկայ էր եւ իր բովանդակ վարմանց մէջ թագուհւոյ մը մեծանձնութիւն, կնոջ մը պարկեշտութիւն եւ անմեղութեան գիտակցութիւն կը փայլէր, բոլոր ժամանակը փոքր խռովութիւն մը կամ այլայլութիւն վրան չտեսնուեցաւ, անանկ որ փաստաբանաց եւ խորամանկ դատաւորաց բերանները պապանձեցուց, որոնք իրենց փաստաբանական ձեւերովը եւ դա-

տաստանական արարողութիւններովը զինքը իսպառ
վհատեցընելու եւ անպատասխան ընելու կը յուսային,
բայց շատ խաբուեցան եւ առանց բան մ'որոշելու
քննութիւնը առ ժամանակ մը ուշացընելով իրենց
տեղը երթալու ստիպուեցան։

Այնչափ դիւրին չէ որոշել թէ արդեօք այս
դատաստանական քննութեան մէջ եղած անձնական
բռնաբարութիւնը՝ դատաստանին օրինաց եւ սովո-
րութեանցը զանցառութենէն մե՞ծ էր։ Ի՞նչ իրա-
ւունք ունէր Եղիսաբեթ անկախ օտար թագուհւոյ
մը վրայ։ Պարտաւորութիւն ունէ՞ր մի Մարիամ
օտար երկրին օրինաց հնազանդիլ։ Ի՞նչպէս կրնային
օտար իշխանի մը հպատակները անոր դատաւոր
նստիլ։ Եւ կամ թէ որ թագաւորական անձի մը
ասանկ նախատինք մ'ընել ուզուէր, ինչո՞ւ համար
արդարութեան հասարակ օրէնքներն եւ սովորու-
թիւնները չպահուեցան։ Եթէ որ Պեպինկթընին եւ
անոր ընկերաց խոստովանութիւնն անհակառակելի
էր, ինչո՞ւ Եղիսաբեթ զիրենք գէթ քանի մը շա-
բաթ աւելի չպահեց, որպէսզի Մարեմայ առջեւ բե-
րուելով զինքն անհակառակելի ապացոյցներով պա-
պանձեցընէին։ Նոյ եւ Քէօրլ դեռ կենդանի էին,
ինչո՞ւ համար Ֆոթերինկէ չբերուեցան քննուելու
համար, ինչո՞ւ համար Սթար Չամպըր բռնած դա-
տաստանարանը կոչուեցան, ուր խեղճ Մարիամ ներ-
կայ չէր կրնար ըլլալ, եւ չէր կրնար լսել թէ ա-
նոնք ինչ խոստովանած են։ Կասկածաւոր վկայութիւն
մը բաւակա՞ն էր մի անկախ թագուհի մը դատա-
պարտելու։ Ամենէն ցած եւ ողորմելի չարագործ մը
ասանկ տկար եւ անկատար ապացոյցներով կրնա՞ր
մի դատապարտուիլ։

Ի վերայ այսր ամենայնի Մարեմայ դատաստա-
նական քննութեան ատեն բերուած վկայութիւնները
զուրկ էին բոլորովին ան հիմնական արդարութենէն՝
որով իշխանուհի մը կրնար դատապարտուիլ։ Պէտք
ենք զրուցել որ այս դատաստանական գործողու-
թիւնք Եղիսաբեթին եւ անոր խորհրդականաց բռ-
նաւորական վարմունքը բարեքելու պատրուակի

տեղ ծառայեց։ Անգղիացիք Մարեմայ նկատմամբ իրենց վրէժխնդրական զգածմամբ, եւ իրենց Թագուհւոյն կեանքը սպառնացող վտանգէն ազատելու մտօք, այնչափ կուրցած էին որ դատաստանական ընթացից մէջ պատահած օրինազանցութիւնները չկրցան տեսնել, ապացոյցներուն անբաւականութեան չկրցան միտ դնել, այլ կասկած մը եւ հաւանականութիւն մը իբրեւ բաւական եւ անհակառակելի ապացոյց ագահաբար իրենց ձեռքն առին եւ անով անմեղ անձ մը դատապարտել ջանացան։

Հոկտեմբերին 25ին Եղիսաբեթին բացայայտ հրամանաւ դատաւորք նորէն Ուեսթմիսթեր ժողովեցան։ Նոյն օրը Նոյ եւ Քէօրլ դարձեալ դատաստանի կանչուեցան առանձինն։ Տպագրութեամբ ընծայուած պաշտօնէից յայտարարութեանց համաձայն կ'ըսուի որ երկուքն ալ երդմամբ հաստատած ըլլան ան ամէն բան՝ ինչ որ Մարեմայ դէմ խոստովանած էին *)։ Դատաւորք մէյ մ'ալ իրենց դատաստանական ընթացքը քննելէն ետեւ միաբերան դատապարտութեան վճիռն տուին՝ որ “Մարիամ Պեպինկթընին դաւաճանութեան մասնակից եղած է, զանազան բաներ նիւթած է, որոնք ամէնն ալ Եղիսաբեթին վընասը, մահը եւ կործանումը կը դիտէին, եւ ասոնք ամէնն ալ ան օրինաց բոլորովին հակառակ են՝ որն որ Եղիսաբեթին կեանքը պահելու համար դրուած էր,,։ Բայց աս ալ աւելցուցին դատաւորք որ դատապարտութիւնը՝ Ցակովբ՝ Սկովտիայի Թագաւորին իրաւանց եւ պատուոյ վնաս մը չիբերեր, եւ նոյն իշխանը բոլոր իրաւունքները պիտի պահէ առաջուան պէս։

Ասկից վերջը Մարեմայ կեանքը Եղիսաբեթին ձեռքը մատնուած էր։ Մարիամ օտար տէրութիւններէն զօրաւոր օգնութիւն մը գտնելու բնաւ յոյս չունէր։ Սպանիայի Թագաւորն ապստամբ Ստորին

---

*) Բայց Նոյ՝ Ցակովբ Թագաւորին գրած ջատագովութեան թղթին մէջ կը հաստատէ որ Մարեմայ դէմ բերուած ամէն ամբաստանութիւնները մերժած են եւ ինք բան մը խոստովանած չէ։

նահանգաց հետ պատերազմելու ստիպուած էր, նոյնպէս Գաղղիայի թագաւորը՝ քաղաքական եւ կրօնական պատերազմներով զբաղեալ միայն աղաչողի երես կրնար առնուլ, բայց զօրաւոր միջնորդներով զԵղիսաբեթ վախցընելու կարողութիւն չունէր։ Իսկ իր որդիէն՝ Սկովտիայի թագաւորէն բնաւ յոյս չունէր, գիտնալով որ անոր խորհրդականքն Անգղիայի կաշառքով վաստըկուած թող չէին տար որ որդին մօրը համար սուր քաշէ։ —

Բայց Մարեմայ նախանձորդին՝ Եղիսաբեթին գլխաւոր նկարագիրն՝ անորոշութիւնն էր։ Քանի որ Եղիսաբեթ իր միտքը դրած նպատակը հեռուէն կը դիտէր, անհամբերութեամբ անոր ետեւէն հանելու կը ջանար. բայց երբոր անոր կը հասնէր, ամէն անգամ նոյնը ձեռքն առնելու կը զանգիտէր։ Իր նախանձորդին՝ Մարեմայ դատապարտութեան վճռոյն ստորագրելու համար պատրաստ էր, բայց սակայն կենդանի գոյներով իր երեւակայութեան մէջ կը նկարուէին այն ամէն վտանգները, որոնք Մարեմայ բարեկամաց յուսահատութենէն ու Յակոբ թագաւորին եւ ուրիշ ուղղափառ իշխանաց իրաւացի բարկութենէն կրնային յառաջ գալ։ Մտածելով կը զարհուրէր այն նախատինքներէն՝ որոնք զինքը մշտընջենաւոր ամօթով կը խարէին, եթէ որ իր մերձաւոր ազգականին եւ իշխանուհւոյ մը արիւնը թափէր։ Ինչպէս որ միշտ սովորութիւն ունէր՝ աս անգամ ալ որոշումը ուշացուց, յուսալով որ հինգ մինչեւ ութը շաբաթ դատավճիռն ուշացընելով աշխարհքս կը խաբէ, թէ զՄարիամ դատապարտել չուզէր։ Կը յուսար որ գուցէ Մարիամ նոյն միջոցին մէջ բնական մահուամբ, եւ կամ թէ մէկ բռնական մահուամբ, թունով կամ ինչ եւ իցէ եղանակաւ մեռնելով՝ ինքը կը պրծի աս վտանգէն, եւ կամ պարագաներն այնպէս կը բերեն որ անոր դատապարտութիւնն առանց իր կամաց եւ գիտութեան ի գործ կը դրուի, եւ կամ ժողովրդէն կը ստիպուի դատավճռոյն ստորագրութիւն տալու։

Սկովտիայի թագուհւոյն վրայ եղած դատավը-

Ճուէն քանի մ՚օր ետեւ՝ խորհրդարանը ժողովեցաւ։ Ասանկ ժողովոյն մէջ աւելի չափաւորութիւն, զգուշական քննութիւն եւ դատաստան կը պահանջուէր, բայց սակայն թէ վերին եւ թէ ստորին սենեակք հաւասարապէս ռամկական երկիւղներով, նախապաշարումներով եւ կիրք լեցուած էին, եւ անոնց վարմունքէն յայտնի տեսնուեցաւ թէ որչափ չափազանց եռանդով եւ փուճ կասկածներով նախապաշարուած էին։ Անհամբերութեամբ, վեր ի վերոյ քննութեամբ մը դաւաճանութեան պարագաները եւ վտանգն՝ որն որ Եղիսաբեթին կենաց եւ տէրութեան խաղաղութեան կը սպառնար, եւ Ֆօթերինկէի գործածած ամէն թղթերը աչքէ անցընելէն եւ Մարեմայ վրայ նախատական եւ անվայելուչ խօսքերով խօսելէն ետեւ միաբերան՝ դատաւորաց վճռոյն հաւանութիւն տուին։ Բայց ասով գոհ չեղան, այլ Եղիսաբեթին աղերսագիր մը ուղղելով՝ իրմէ կը խնդրէին որ իր սեպհական կենաց՝ բողոքական կրօնի հաստատութեան եւ տէրութեան երջանկութեան ու ժողովրդեան ջանքը կատարելու համար, դատավճիռը հրատարակել տայ եւ առանց յապաղութեան իր անհաշտ եւ վտանգաւոր նախանձորդը պատժէ։ Պատգամաւորք իրենց աղերսագիրն՝ որուն մէջ որ տղայական երկիւղ մը յայտնի կը տեսնուէր, անհիմն եւ անվայել պատճառներով աւելի եւս զօրացընել ջանացին։ Սկովտիայի թագուհւոյն մահը չէ թէ անոր համար կ՚ուզէին որ արդարութիւն է, այլ որովհետեւ Անգղիայի ազգին օգտակար է։ Ամենէն խիստ բանտարկութիւնն ալ, կ՚ըսէին, բաւական չէ Մարեմայ՝ խռովութիւն հանող խիստ ոգին զսպել։ Իր յաջողակութիւնն եւ հրապուրելու արուեստն ամենէն հաւատարիմ պահապաններն ալ մոլորեցուցած են։ Իր բարեկամաց փոյթն ու եռանդը ամենախիստ պատժոց սպառնալիքներն ալ չեն կարող սանձահարել, որովհետեւ գլուխը սուրի տեղ դնելով վտանգներէն չեն զանգիտեր. շատ օտար իշխանք պատրաստ են իրենց (Մարեմայ բարեկամաց) օգնելու, եւ պատեհ առիթի մը կը սպասեն Անգղիայի

վրայ յարձակելու եւ Սկովտիայի Թագուհւոյն իրաւունքները պաշտպանելու։ Ա՛ս պատճառները յառաջ բերելով ցուցընել կ'ուզէին որ Մարեմայ կեանքն Եղիսաբեթին կենաց հետ չիկրնար համաձայնիլ, եւ թէ որ Եղիսաբեթ ապաժամեան բարերարութեամբ անոր կենաց խնայէր՝ ան ատեն Թագուհւոյն կեանքը, հայրենեաց կրօնը եւ ազատութիւնը յարատեւ վտանգի մէջ կը յողդողդի։ Ասոր համար, կ'ըսէին, հարկը կը պահանջէ՝ որ Մարիամ սպաննուի, եւ ցուցընելու համար որ աս զոհը չէ թէ միայն արդար է այլ նաեւ հարկաւոր ալ է, սուրբ գրքէն զանազան վկայութիւններ՝ ծամածռելով եւ ստութեամբ մեկնելով յառաջ կը բերէին։ Փեքերինկ (խորհրդանոցին մէջ խօսողը) զԵղիսաբեթ համոզելու համար երկու զարմանալի տրամաբանութիւն ըրաւ. Ա. "Անոնք, ըսաւ, որոնք որ դաշնակցութեան մէջ մտած են, երդմամբ չափ իրենք զիրենք պարտաւորած են Սկովտիայի Թագուհին սպաննելու։ Եթէ որ ասի առանց հրամանի ընեն, ան ատեն Եղիսաբեթի առջեւ յանցաւոր կ'ըլլան, իսկ եթէ բնաւ չընելու ըլլան՝ երդմնազանց կը համարուին, եւ Աստուծոյ բարկութիւնն իրենց վրայ կը շարժեն,,։ — Բ. "Չէ թէ միայն Եղիսաբեթին կեանքն՝ այլ նաեւ անոր հոգւոյ փրկութիւնն ալ վտանգի մէջ է. զԱստուած կը բարկացընէ թէ որ աս անաստուած կնկան՝ զորն որ Աստուած իր ձեռքը մատնած է՝ խնայելու ըլլայ։ Եղիսաբեթ պէտք է զգուշանալ, ըսաւ, որ Սաւուղայ եւ Ագաաբին օրինակին չհետեւի՝ որոնք իրենց թշնամեաց խնայեցին,,։ Ճեմս Քրոֆթ՝ որն որ կրօնական մոլեռանդութեան մէջ զամէնը կը գերազանցէր, առաջարկեց որ խորհրդանոցին մէջ ամէն օր մասնաւոր աղօթք ըլլայ, որպէսզի Աստուած Եղիսաբեթին սիրտը շարժէ եւ Մարեմայ դատավճռոյն ստորագրութիւն տայ։

Ա՛ս եղանակաւ գրուած աղերսագիրներն Եղիսաբեթին այնչափ հաճելի եղան, որչափ որ կը տեսնէր որ անով ան դժուարին վիճակէն եւ շփոթութենէն կ'ելլէ, եւ իր նախանձորդը մահուան կրնայ դատապարտել, առանց վախ մ'ունենալու որ աս ան-

իրաւ գործողութիւնն իրեն կը համարուի: Ի վերայ այսր ամենայնի նոյն աղերսագրոց՝ իր սովորական կեղծաւոր, եւ մարդասիրութեան ու մտերմութեան քօղոյն տակ ծածկուած երկլեզու պատասխանը տուաւ, ըսելով որ զինքը ազատեն թագուհի մը եւ իր մերձաւոր ազգականը դատապարտելու ամօթէն եւ նախատինքներէն, եւ խորհին որ հասարակաց խաղաղութիւնը պահելու արդեօք իր ազգականին արեան մէջ ձեռքը թաթխելէն ուրիշ միջոց մը չկա՞յ: Եղիսաբեթին տուած պատասխանին իմաստն իմանալ շատ դժուարին չէր: Թէ վերին եւ թէ ստորին սենեակք իրենց խնդիրը այնպիսի անամօթութեամբ մը երկրորդեցին որ եթէ ուրիշ իշխան մ'ըլլար ստուգիւ կը նեղանար: Բայց Եղիսաբեթ տեսնելով որ իր ներքուստ ուզածը խորհրդանոցին հաստատելովը օրինաց կերպարանք մ'առաւ, այնպէս մը ձեւացուց իբրեւ թէ ժողովրդեան բուռն պաղատանքներէն յաղթահարեալ՝ ակամայ կամօք այնպիսի բանի մը ստորագրութիւն կու տայ, որուն այլազգ իր մարդասէր վարմունքը չէր զիջաներ: Խորհրդանոցին ատենադպիրը եւ խօսողը սենեկաց կամքը նորէն իմացուցին, բայց Եղիսաբեթ անոնց սանկ երկլեզու պատասխան տուաւ. "Եթէ որ ըսած եմ որ ես ձեր խնդիրն ընդունելիք չունիմ, ան ատեն գուցէ մտացս մէջ ունեցածէն աւելի զրուցած ըլլամ: Իսկ թէ որ զրուցած եմ որ ես ձեր խնդիրն ընդունելու միտք ունիմ, ան ատեն աւելի զրուցած եմ քան որչափ որ ձեզի գիտնալ կ'իյնայ: Ան ատեն այնպիսի պատասխան մը տալու եմ ձեզի՝ որ պատասխան չըլլայ": Սանկ անորոշ պատասխան տալով եւ տեսնելով որ իր ուզածն եղաւ, խորհրդանոցին նիստերն ուշացուց եւ իր նախանձորդին դատավճռոյն որոշումը իրեն վերապահեց:

# ԳԼՈՒԽ ԻԴ.

Օտար տէրութիւնք մանաւանդ Գաղղիայի թագաւորն առ դատավճիռն արգելուլ կը ջանան: Յակոբ իր մօրը պաշտպանութեան կը շարժի: Մարեմայ դատավճիռը հրապարակաւ կը հրատարակուի: Մարեմայ վերջին պաշտպանութիւնք. Եղիսաբեթ զՄարիամ թագաւորական պատիւներէ կը զրկէ. Եղիսաբեթին անորոշութիւնը. Դատավճռոյն ստորագրութիւն կուտայ: Եղիսաբեթ զՄարիամ ծածուկ կերպով մեռցնելու փորձ կ'ընէ զՓաւլէթ կաշառելով: Սեսիլին խարդախ վարմունքը դատավճռոյն նկատմամբ: Դատավճիռը Մարեմայ կը ծանուցանեն: Մարիամ մահուան կը պատրաստուի. Մարեմայ հրաժարականն ու մահը: Եղիսաբեթ Գաղղիայի եւ Սկովտիայի թագաւորները կը խաղաղցնէ:

Անգղիացւոց աս արտաքոյ կարգի վարմունքը՝ դրացի տէրութեանց մտադրութիւնն ու զարմանքը գրգռեց: Բոլոր թագաւորք Մարեմայ կողմը կը բռնէին, մանաւանդ Գաղղիայի եւ Սկովտիայի թագաւորք, որոնք իբրեւ ազգական իրեն աւելի մերձաւոր ըլլալով շատ եռեւէ կ'իյնային՝ որ զինքը գէթ մահուընէ ազատեն:

Հենրիկոս Գ. թէպէտեւ Գիզ գերդաստանը մահուչափ կ'ատէր, ի վերայ այսր ամենայնի չէր կրնար անտարբեր ըլլալ եւ տեսնել որ ան իշխանուհւոյն գլուխը՝ որն որ երբեմն Գաղղիայի թագը կրած էր, դահճին ձեռօք կտրուի: Բայց սակայն իր տկարութեան եւ Գաղղիայի յողդողդ վիճակին պատճառաւ իր միջամտութիւնն ազդեցութիւն չէր կրնար ընել, ինչու որ ինչ որ Անգղիայի պաշտօնեայք բացասական կերպով զլանալ չէին յանդգներ, նոյնք խաբէութեամբ եւ խարդախութեամբ չէին կատարեր: Հենրիկոս զՊելլիէվրը Անգղիա խրկեց որպէսզի զօրաւոր եւ ազդու եղանակաւ Եղիսաբեթին ըրածներուն դէմ բողոքէ: Բայց աս դեսպանը մինչեւ որ Եղիսաբեթին առջեւ ելաւ՝ շատ ընդդիմութիւններ կրեց: Պաշտօնեայք նոյն դեսպանը թագուհւոյն առջեւ հանելու տալ չուզելով անոր վրան զանազան յանցանքներ դրին, իբր թէ իր մարդիկներուն մէջ քանի մը սրիկաներ խառնուած ըլլան, որոնք զԵղիսաբեթ սպաննելու երդում ըրած են, եւ իր տան մէջ քննութիւն

ընել տուեր, պատրուակ բերելով որ իր բնակած տան մէջ ժամանամոլ եղած է։ Դեսպանն ալ նախարարները կրելէն ետեւ Թագուհւոյն առջեւ ելաւ, որն որ իր պալատականներէն չորս կողմը առնուած բարձր գահի մը վրայ նստած էր եւ անհամբերութեամբ մը Պելիէվրին խօսքերը մտիկ կ'ընէր, եւ երբոր դեսպանը խօսքը լմնցուց եւ ի մանաւորի զրուցեց՝ որ իր Թագաւորը Մարեմայ սպանութեան վրայ շատ պիտի նեղանայ, հարցուց Եղիսաբեթ որ "Ասանկ լեզու բանեցընելու ձեր Թագաւորէն մասնաւոր իշխանութիւն ունի՞ք, առած էք„։ "Այո, պատասխանեց դեսպանը, մանաւոր ինծի ապսպրեց որ այսպէս խօսիմ„։ "Ձեր հրամանին անձամբ ստորագրութիւն տուած է„, "Այո", պատասխանեց դեսպանը։ "Ան ատեն կ'աղաչեմ որ ձեր ձեռնագրով ասոր վկայութիւն տաք„։ Դեսպանն անմիջապէս ստորագրեց։ Եղիսաբեթ վերջէն երկայն բարակ արուեստակեալ ճառով մը պատասխան տուաւ. բայց իր դառն խօսքերը եւ երեսին կարմրութիւնը կը մատնէին թէ ի ներքուստ շատ խռոված էր։ Չափազանցօրէն Մարեմայ յանցանքը ստարագրեց եւ իր գթութիւնը մինչեւ երկինք բարձրացուց։ Ստոյգ է, ըսաւ, այսպիսի մերձաւոր ազգականիս արիւնը թափել կը զարհուրիմ, բայց սակայն չեմ գիտեր թէ ինչպէս ալ աւելի ժողովրդեանս արդար աղաչանացը դէմ դնեմ։ Մէկ երկու օր սպասեցէք, եւ ան ատեն իմ վերջին որոշումս կու տամ։ Պելիէվրը ամսի մը չափ սպասելէն եւ նորէն բողոք ընելէն ետեւ պատասխան առաւ թէ Թագուհին առանձին դեսպանով մը Գաղղիոյ Թագաւորին պատասխան կու տայ։

Պելիէվրին երթալէն ետեւ Լ'Օպըսփին տեղական դեսպանը խօսակցութիւնները յառաջ տանիլ ուզեց, բայց Անգղիայի պաշտօնեայք ցած եւ անարժան խարդախութեամբ անոր բերանը գոցեցին։ Խառնաշփոթ համբաւ մը տարածել սկսան իբրեւ թէ Եղիսաբեթին կենաց դէմ նոր դաւաճանութիւն մը յայտնուած ըլլայ, եւ պաշտօնեայք ծանուցին իրեն որ աս դաւաճանութեան սկզբնապատճառ ինքն ըլլայ։

Թէպէտեւ ըսին իրեն՝ որ աս ամբաստանութեան բնաւ չեն ուզեր հաւատալ, ի վերայ այսր ամենայնի անոր ատենադպիրը բռնել եւ բանտ դնել տուին եւ անոր ամէն թղթերը գրաւեցին։ Հենրիկոս աս դէպքիս վրայ շատ նեղանալով դեսպանաց միջնորդութեամբ պաշտօնական հաղորդութիւնը կտրեց։ Ամէն բան լմըննալէն եւ Մարեմայ գլուխը կտրելէն ետեւ պաշտօնեայք Լ'Օպըսփինէն թողութիւն խնդրեցին, ըսելով որ եղած ամբաստանութիւնները սուտ եւ անհիմն համբաւներէ յառաջ եկած էին։

Մ՚ինչեւ հիմայ Սկովտիայի Յակովբ թագաւորը՝ մօրը դժբախտ վիճակին վրայ անտարբեր աչօք կը նայէր. բայց Գաղղիայի թագաւորին ազդեցութիւնն եւ իր քանի մը ազնուականաց ազդու միջոցները ստեպեցին զինքն որ աս անզգայութեան վիճակէն արթըննայ եւ իր որդիական սէրը եւ իշխանի մը վայելուչ քաջասրտութիւնը ցուցընելով իր մօրը մահը արգելէ կամ վրէժ առնու։ Խօկզըան թագաւորը չէր կրնար հաւատալ որ Եղիսաբեթ ասանկ անլսուր գործք մը ընէ, այսինքն օծեալ իշխանի մը վրայ ժողովրդեան ունեցած յարգանքը նուազեցընելու առիթ տայ։ Բայց երբոր Եղիսաբեթին ճշմարիտ դիտաւորութիւնն իմացաւ, Ուիլեէմ Քէյթ Լոնտոն խրկեց որ հոն կեցող իր դեսպանին՝ Ցուկլասին հետ Եղիսաբեթին ամէն ըրածներուն դէմ բողոք ընէ։ Եւ երբոր Եղիսաբեթ ասոնց ըրած բողոքին պատասխան մը չտուաւ, Յակովբ անձամբ նամակ մը գրեց եւ Եղիսաբեթին վարմանց վրայ խիստ բացատրութիւններով դժգոհանալէն ետեւ, ի վերջոյ սպառնաց որ, թէ իր պատիւն եւ թէ որդիական սէրը կը ստիպեն զինքը իրեն թշնամանալու եւ այնպիսի դիրք մը բռնելու որն որ իր մօրն եղած նախատանաց վրէժը հանելու՝ իրաւամբ վշտացեալ որդւոյ մը կը վայելէ։ Յակովբ՝ Եղիսաբեթին ասանկ սպառնալիք ընելէն ետեւ իր մեծերը խորհրդի կանչեց եւ անոնցմէ խոստում առաւ որ իրեն հաւատարմութեամբ օգնեն։ Գաղղիայի, Սպանիայի եւ Դանիայի թագաւորաց դեսպան խրկեց որ իրեն զօրավիգն ըլլան. եւ իր սպառնալիքներուն ազդու-

ընելու համար պատերազմի պատրաստութիւն կը
տեսնէր։ Թագաւորին գրած թուղթը Եղիսաբեթ
այնպէս կատղեցուց մինչեւ առանց պատասխան մը
տալու՝ անոր դեսպանները ետ խրկել ուզեց, բայց
պաշտօնեայք Ցակոբին պատերազմի պատրաստու-
թիւնն եւ անոր Նիզակակցաց զօրութիւնը տեսնելով
զԵղիսաբեթ քիչ մը հանդարտեցուցին, նոյն դես-
պանաց խոստում տուին որ մինչեւ Սկովտիայէն նոր
դեսպաններ գան Մարեմայ դատավճռոյն կատարումը
կ'ուշացընեն։ Ցակոբ առանց ժամանակ կորսնցընե-
լու նոր դեսպաններ՝ Գրէյ եւ Ռոպ. Մելուիլ խրկեց,
որոնք զԵղիսաբեթ հանդարտեցընելէն ետեւ՝ իրենց
թագաւորին միտքը յայտնեցին, որն որ իր մօրը հա-
մար կ'ուզէ երաշխաւոր ըլլալ որ ասկից վերջը ոչ
իր կենաց եւ ոչ ալ տէրութեան խաղաղութեան դէմ
դաւաճանութիւն պիտի ընէ, եւ աս երաշխաւորու-
թեան համար պատրաստ էր թագաւորը Սկովտիայի
քանի մը ազնուական՝ Անգղիայի մէջ պատանդ թո-
ղուլ։ Իսկ եթէ որ աս ալ բաւական չըլլար՝ առաջար-
կեցին որ Մարիամ իր իրաւունքները Ցակոբին վրայ
անցընէ, ուսկից ոչ բողոքական կրօնին եւ ոչ Եղի-
սաբեթին ապահովութեան վտանգ մը կայ։ Եղիսա-
բեթ առջի առաջարկութիւնը մերժեց ըսելով որ ա-
պահով չէ, եւ երկրորդին համար զրուցեց որ Մա-
րիամ դատապարտուած ըլլալով իր իրաւունքներն
ուրիշին անցընելու իշխանութիւն չիկրնար ունենալ։
Դեսպանք իրենց հրամանին համաձայն սպառնալիք
ըրին, եւ Մելուիլ կոմսն իր ձեռքէն եկածին չափ իր
պաշտօնը հաւատարմութեամբ կատարեց, բայց Գրէյ
եւ Տուկլաս դրսանց ամէն միջոցը ձեռք առին որ
զՄարիամ ազատեն, սակայն գիտնալով որ եթէ Մա-
րիամ ազատէր, իրենց կեանքը վտանգի մէջ պիտի
իյնար, ասոր համար ծածուկ՝ բոլորովին հակառակ
կը գործէին։ Գրէյ Եղիսաբեթին ականջէն վար
զրուցեց թէ "Մեռեալը չիկրնար խածնել„, եւ խօսք
տուաւ որ ինչ որ ըլլալու ըլլայ ինքը թագաւորին
բարկութիւնը կը մեղմացընէ եւ անոր վրէժխնդրու-
թեան առջեւը կ'առնու։

Ասկից վերջը Եղիսաբեթ Լոնտոնի փողոցներուն մէջ Մարեմայ դատապարտութիւնը փողերու ձայներով հրատարակել տուաւ (10 Դեկ.)։ Քանուչորս ժամ զանգակներ զարնուեցան, եւ փողոցաց մէջ ուրախութեան համար հրախաղեր եղան. ժողովուրդն ուրախութենէն խենթեցած կ'երեւար։

Եղիսաբեթ նոյն ժամանակն ալ Պէօքէօրսթին, Պիլին եւ Փաւլեթին ձեռօք դատաւորաց վճիռը Մարեմայ ծանուցանել տուաւ։ Պէօքէօրսթ Մարեմայ զրուցեց որ շնորհքի յոյս չունենայ, որովհետեւ իր ուղղափառ կրօնի վրայ ունեցած համոզումը բողոքական կրօնի ապահովութեան հետ չիկրնար միանալ, եւ առաջարկեց իրեն որ եթէ կ'ուզէ, անգղիական եպիսկոպոս կամ քահանայ զինքը մահուան պատրաստելու կու գայ։ Մարիամ աս պատգամաւորութիւնն ընդունելու ատեն չէ թէ միայն երկիւղի նշմարանք մը չցուցուց, այլ նաեւ իբրեւ յաղթանակ կանգնելով պատասխան տուաւ՝ թէ "Զարմանալու բան չէ որ Անգղիացիք հիմայ օտար իշխանուհւոյ մը արեան ծարաւի են, որովհետեւ արդէն իրենց թագաւորաց վրայ շատ անգամ բռնաբարութիւն ըրած են։ Բայց ինծի համար այնչափ վշտերէն ետեւ մահը բարերար ազատիչ մըն է։ Շատ ուրախ եմ, լսելով որ իմ կեանքս ուղղափառ կրօնի համար զոհել կ'ուզեն, եւ պատրաստ եմ սիրով անոր համար արիւնս մինչեւ վերջին կաթիլը թափել,,։ Ասոնք ըսելէն ետեւ նորէն բողոք ըրաւ դատաւորաց վճռոյն եւ անոնց իրաւաբանութեան դէմ ըսելով՝ որ "Դատաւորաց դատաստանի տակ ինքզինքս երբեք ձգած չեմ, եւ ոչ երբեք ասանկ անարգական բան մը ընդունիլ կրնայի առանց իմ ժողովրդեանս, որդւոյս, եւ ուրիշ թագաւորաց անուան մշտնջենաւոր բիծ մը դնելու։ Ձեր օրինաց համաձայն որոշուած է որ ամբաստանեալ մը իր հաւասարակիցներէ միայն կրնայ դատուիլ։ — Ո՞վ է իմ հաւասարս ժողովրդեան մէջ՝ միայն թագաւորք ինձի ատենակալ կրնան ըլլալ։ Հէթընին անարգ խարդախութենէն խաբուեցայ, եւ յանձն առի՝ պարզ իմ պատիւս պաշտպանելու միօք

ու իմ անմեղութեանս յաղթահարիչ ապացոյցներուն վրայ վստահանալով՝ ան ամբաստանութեանց ականջ կախել եւ զանոնք ցրել։ Ասիկայ ընդունեցայ չէ թէ նոյն յարգոյ դատաւորաց իրաւաբանութիւնը ճանչնալով, այլ պարզ անոնց քննութիւնը վրաս տարածելով,,։ — Պէօքէօրսթ պատասխանեց եւ ըսաւ. թէ ընդուներ էք կամ չէք ընդուներ, ասիկայ պարզ դատարկ ձեւ մըն է, որն որ դատաստանի ընթացքը չիկրնար խափանել։ Անգղիայի օդը կը շնչէք, անոր օրինաց պաշտպանութիւնը եւ բարերարութիւնը այնչափ ատենէ վեր կը վայելէք, ուրեմն Եղիսաբեթին հպատակ էք։ — "Արդարեւ, պատասխանեց Մարիամ, Անգղիայի օդն Անգղիայի բանտերու մէջ կը շնչեմ. ասի՞ է ձեր այնչափ գոված Անգղիայի օրինաց բարերարութեան վայելմունքը . . .։ Նոյն օրէնքները պահելու երդում կամ խոստում տուած եմ. ոչ, ոչ երբեք. Անգղիայի քաղաքացւոյ իրաւունք չունիմ, անկախ թագուհի եմ . . .։ Պատասխանատուութենէ չեմ փախչիր, բայց ան դատաւորաց դատաստանն եւ անոնց իշխանութիւնը կը մերժեմ։ Կ՚ըսէք որ Եղիսաբեթ իր տէրութեան մէջ ամենէն ընտիրներն ընտրած է ինծի դատաւոր ըլլալու, որոնք ոչ կողմնակալութենէ մը եւ ոչ անձնական շահէ մը կը մղուին. աղէկ է, բայց ես զանոնք այնպէս չեմ տեսներ ինչպէս որ դուք զանոնք ինծի կը ստորագրէք. կը տեսնեմ զիրենք որ Անգղիայի պատմութեան մէջ զանազան խաղեր խաղացած են, կը տեսնեմ որ նոյն մեծարոյ ազնուականութիւնը, տէրութեան գաղտնի ժողովքը՝ որն որ իր ծանրութեամբը զիս ընկճել կ՚ուզէ, գերեաց պէս Հենրիկոս Ը.ին կը ծառայէին, զինքը կը շողոքորթէին. կը տեսնեմ ան վերին ազնուական սենեակը որ անարգ՝ վաճառաշահ պատգամաւորաց պէս օրէնքներ կը հանէր, եւ յետս կը կոչէր, ամուսնութիւնները կը կապէր, կը լուծէր, ինչպէս որ բռնաւորը կը հրամայէր, Անգղիայի նշանաւոր գերդաստանաց դուստրներն այսօր կը բարձրացընէր գահը կը նստեցընէր, եւ վաղը վար կառնուր եւ վատահամբաւ կ՚ընէր. կը տեսնեմ որ ան յար-

գեղի ատեննակալը յանկարծական համոզմամբ մը չորս կառավարութեանց ատեն չորս անգամ իրենց կրօնը փոխած են: Տեարքը իմ, ասոնք են իմ դատաւորքս... Ձեր նկատմամբ արդարութիւն ընել կը բաղձամ, բայց դուք ալ իմ վրաս նախ նոյնը կատարեցէք. Կ՚ըսուի որ տէրութեան եւ ձեր թագուհւոյն շահն ամէն բանէն աւելի կը փնտռէք, չէք կաշառուիր, արթուն եւ անխոնջ էք... կը հաւատամ, բայց սակայն որովհետեւ պարզ անձնական շահուն, տէրութեան եւ ձեր թագուհւոյն օգտին կը ծառայէք, վախցէք, մի վստահիք ձեզի եւ մի կարծէք որ ամէն՝ տէրութեան եւ ձեր թագուհւոյն օգտակար եւ շահաւոր երեւցածն՝ արդարութեան հետ կը միաբանի: — Չեմ տարակուսիր որ ան դատաւորաց մէջ կան ոմանք, որոնք իրենց ազնուականութիւնը պահած են, բայց անոնք ամէնն ալ մոլեռանդ բողոքական են, Անգղիայի փառաց շահախնդիր, եւ չեն կրնար վրաս ուղիղ դատաստան ընել, վասնզի ուղղափառ եմ,,:

Վիճաբանելու եկած չենք հոս տեղս, պատասխանեց ատեննակալը, խնդիրը ալ խօսքի տակ չկայնար, որոշուած է որ անցեալ տարւոյն կազմուած դաշնակցութեան դէմ գործեր էք, եւ ցուցուած է որ Պեպինկթընին եւ անոր ընկերաց հետ դաւակից եղած էք: — "Ո՞ւր են ան դաւակցութեան ապացոյցները, պատասխանեց Մարիամ, սուտ թղթեր են, զորոնք ոչ գրած եմ եւ ոչ ալ գրել տուած. իմ ծառայիցս սուտ վկայութիւնները՝ զորոնք դառն տանջանքներով խոստովանել տուած են, զիս յաղթահարելու ապացոյց իրենց ձեռքն առած են: — Ինչո՞ւ համար Պեպինկթըն իմ առջեւս չհանուեցաւ, ինչո՞ւ համար այնչափ շուտով զինքն անդիի աշխարհք խրկեցին, առանց ինծի հետ ճակատ առ ճակատ խօսել տալու: Դեռ իմ երկու քարտուղարքս ողջ են, ինչո՞ւ համար գէթ անոնք առջեւս չեն բերեր, որպէս զի առջեւս ալ նոյն ամբաստանութիւններն երդմամբ հաստատեն, ինչո՞ւ համար աս շնորհքը, իրաւունքն, արդարութիւնն ինծի կը զլացուի՝ որն որ եւ ոչ մէկ գերւոյ մը երբեք զլացուած է: Աղէկ

տեղեկացած եմ որ ձեր օրինաց մէջ կայ, թէ դատախազն ամբաստանելոյն առջեւ բերուի, (եւ փաւլեթին դառնալով հարցուց,) այնպէս չէ՞ մի։ — Արդ, Տէարք իմ, երբոր զիս ըստ ձեր անգղիական օրինաց այնպէս խստութեամբ դատել կ'ուզէք, ինչո՞ւ համար ան օրէնքը զանց կ'առնուք՝ որն որ ինծի նպաստաւոր կրնայ ըլլալ. ինչո՞ւ Պեպինկթըն դիմացս չհանուեցաւ, ինչպէս որ ձեր օրէնքը կը հրամայէ, ինչո՞ւ համար իմ երկու քարտուղարքս առջեւս չեն հանուիր՝ որոնք դեռ կենդանի են,,։ — Ասիկայ միայն չէ որ զձեզ կը դատապարտէ, պատասխանեց ատենակալը. ցուցուած է որ միանգամայն Մէնտոզային՝ Սպանիայի դեսպանին հետ բանագնացութիւն ըրած էք ի վնաս Անգղիայի, երկրին կրօնը եւ ազատութիւնը կործանելու համար. Եւրոպայի բոլոր թագաւորները գրգռուած շարժած էք՝ որ Անգղիայի վրայ յարձակում ընեն։ — "Փախուստ մի տաք, Տէարք իմ, զըուցեց Մարիամ քիչ մը նեղանալով, պարզ Պեպինկթընին դաւակցութիւնն է՝ որուն համար զիս կը դատապարտէք։ Բայց դնենք թէ օտար տէրութիւնները գրգռած ըլլամ Անգղիայի դէմ, հոս ի՞նչ անիրաւ բան կայ։ Ընդդէմ ազգաց իրաւանց բանտարկեալ կը պահուիմ հոս, ձեռքս սրով աս տեղս եկած չեմ, այլ իբրեւ աղաչաւոր՝ հիւրընկալութեան անբռնաբարելի իրաւանց վրայ վստահանալով՝ ինքզինքս իմ մերձաւոր ազգականիս բազկաց մէջ նետեցի, եւ փոխանակ պաշտպանութիւն գտնելու՝ բռնութիւն եւ շղթաներ գտայ։ Արդ ըսէք, ի՞նչ կապ կամ պարտաւորութիւններ զիս կը կապեն՝ որ աս կապանքներէս ազատելու համար՝ բռնութիւն բռնութեան դէմ չգործածեմ, աշխարհքիս տէրութիւնները չգրգռեմ եւ զիրենք օգնութեան չկանչեմ։ Ինչ որ իրաւացի պատերազմի մէջ ընել արժան է, ներկայ վիճակիս ալ իրաւունք կու տայ ինծի որ ընեմ, միայն մարդասպանութիւն՝ ան ցած եւ անարժան գործքը խիղճս եւ ամբարտաւանութիւնս չիներեր՝ որ ընեմ։ Մարդասպանութիւնը զիս անպատիւ եւ նշաւակ կ'ընէր, բայց ոչ եթէ զիս կը դատապարտէր . . . ։ —

Ես տկար եւ անզօր եմ, բայց անիկայ (Եղիսաբեթ) զօրաւոր է, թող իր զօրութիւնն եւ կարողութիւնը գործածէ, զիս սպաննէ, իր անձին ապահովութեան համար զոհ ընէ, բայց խոստովանի ալ որ կարողութիւնը գործածած է եւ ոչ եթէ արդարութիւնը։ Արդարութեննէն եւ օրէնքէն երբեք սուր փոխ չիկրնար առնուլ իր ատելի նախանձորդէն ազատելու համար. բռնաւորական եւ մարդասպանական գործքը չպքողէ արդարութեան քողով, ասանկ խարդախ խաղով մը աշխարհքս երկայն ատեն չիկրնար խաբել, դարձեալ կ՚ըսեմ, զիս սպաննել կրնայ, բայց դատել ոչ երբեք...„։ Մարիամ ասոնք զըուցելէն ետեւ բողոքական քահանային կամ եպիսկոպոսին օգնութիւնը մերժեց, եւ Քրիստոսի սիրոյն համար խնդրեց որ գէթ քիչ մը ժամանակուան համար իր ողորմութեանց վերակացուն քովը թողուն, որն որ թեպէտեւ նոյն բերդին մէջն էր, ի վերայ այսր ամենայնի քովն երթալ թող չէին տար։ Աս խնդիրը քիչ մը ժամանակուան համար կատարեցին, եւ Մարիամ անոր ձեռօք երկու գլխաւոր նամակ գրեց, մէկը Ալեսկոյ եպիսկոպոսին եւ մէկալը Ս. Քահանայապետին, զորոնք որ իր ծառաները զգուշութեամբ պահեցին եւ անոր մահուընէ ետեւ իրենց տեղերը հասցուցին։

Մարեմայ դատավճռոյն հրատարակութենէն ետեւ Եղիսաբեթ զՄարիամ թագաւորական պատիւներէ եւ մեծարանքներէ զրկեց։ Փաւլէթ Մարեմայ սենեկին ամպ հովանին վերցընել տուաւ, եւ քովը առանց սովորական քաղաքավարութեան մտնելով, գլուխը գոցեց ու նստաւ. գնդախաղի սեղանը եւ ուրիշ ասոր նման բաները վերցընել տուաւ ըսելով՝ որ ասանկ վիճակի մէջ կնիկ մը զբօսանաց կարօտութիւն չունի։ Աս կոպտութիւնները կ՚երեւայ թէ Մարեմայ վրայ շատ տպաւորութիւն ըրին. գիտնալով որ դաշնակցութեան համաձայն ամենայն ոք իրաւունք կ՚ունենար զինքը սպաննել, շատ վախնալ սկսաւ որ չըլլայ թէ իր կեանքը վարձկան սպանչի մը ձեռօք վերցուի, մանաւանդ որ իմացած էր թէ Փերսի

Նորթէօմպէրլէնտ կոմսը նոյն ժամանակները բանտի մէջ դժբախտ վախճան մ՚ունեցաւ: Աս կոմսը ուղղափառութեան կողմը բռնելուն համար Եղիսաբեթին եւ պաշտօնէից երեսէն ինկաւ, եւ վրան առանց հիմնական կասկած մ՚ունենալու բանտ դրին, հոս տեղս կոմսը գրեթէ ամբողջ տարի մը մոռցուած մնաց առանց վրան քննութիւն ըլլալու: 1585ին Յունիսի 20ին կոմսին բանտապետը փոխուեցաւ. եւ նոյն իրիկունը կոմսը սրտին կողմը հրացանի երեք գնդակէ զարնուած բանտի մէջ մեռած գտնուեցաւ:

Մարիամ շատ աղաչելէն ետեւ Եղիսաբեթէն ընդունեցաւ որ նախ իր մարմինը Գաղղիա տարուի եւ իր մօրը քով դրուի. երկրորդ իր որդւոյն պարգեւ մը օրհնութիւնն եւ վերջին ողջոյնը խրկելու, երրորդ իր ծառայից փոքր պարգեւներ բաշխելու կարող ըլլայ, եւ չորրորդ ի մասնաւորի աղաչեց որ զինքը գաղտնի չսպաննեն, որ չըլլայ թէ իր թշնամիքը ձայն հանեն թէ յուսահատութենէն ինքզինքը մեռցուցած է, ինչպէս որ ուրիշներուն համար ըրած են: Աս նամակիս մէջ Մարիամ բոլորովին զգուշացաւ այնպիսի բացատրութիւններէն՝ որոնք իր կենաց շընորհք խնդրելու, եւ երկիւղի նշմարանք մը ունենան: Շնորհակալ եղաւ Աստուծոյ որ իրեն բաւական ուժ եւ զօրութիւն տուած է իրեն ամէն դժբախտութիւններն եւ անիրաւութիւններն առանց տրտունջի կրելու: Եւ աս խօսքերով նամակը վերջացուց, "կը յուսամ, ըսաւ, որ իմ վերջին խօսքերէս՝ զորոնք աշխարհքէս ելլելու վայրկենի մէջ ձեզի յիշեցընել կ՚ուզեմ, չէք առնուիր. պիտի գայ օր մը որուն մէջ անաչառ դատաւորի մը առջեւ ձեր գործոց համար պատասխանատու պիտի ըլլաք,,: Աս սրտաշարժ նամակը*) խստասիրտ Եղիսաբեթին աչքէն

*) "Սկովտիայի թագուհիէն եկած նամակ մը թագուհւոյն աչքերէն արցունք հանեց. բայց ինչպէս որ կը յուսամ աւելի ազդեցութիւն մը պիտի չընէ, այսու ամենայնիւ ուշացընելը շատ վտանգաւոր է,,: Լէսթըր առ Ուոլսինկէմ:

քանի մը կաթիլ արցունք վազցուց, բայց ուղղակի պատասխան մը տալու չկրցաւ շարժել։

Եղիսաբեթ Մարեմայ դատավճիռը հրատարակել տալէն ետեւ երկու ամիսի չափ արտաքոյ կարգի խռովութեան եւ անորոշութեան մէջ էր։ Ընկերութենէն կը փախչէր, եւ շատ անգամ տխուր տրտում խորին մտածութեանց մէջ թաղուած կ'երեւար. յաճախ անգամ կը հառաչէր եւ հետեւեալ առածը կը զրուցէր. "Կամ համբերէ կամ սպաննէ. սպաննէ որ չսպաննուիս,,։ Կրնանք զրուցել որ Եղիսաբեթին աս աներեւոյթ խռովութիւնը պարզ կեղծաւորութենէն յառաջ եկած ըլլայ. բայց սակայն մէկալ կողմանէ պէտք ենք մտածել՝ որ իրեն պէս յառաջատես իշխանուհի մը չէր կրնար առանց յառաջուընէ աղէկ քննելու այնպիսի գործքի մը ձեռք զարնել՝ որն որ իր անունը վատահամբաւ կրնար ընել, եւ թէ իրեն եւ թէ թագաւորութեան բիւր թշնամիներ յարուցանել։ Եղիսաբեթ՝ ժողովուրդը զանազան երկիւղներով նախապաշարուած տեսնելով՝ ալ յարմար ժամանակ եկած համարեցաւ իր նախանձորդին վերջին հարուածը տալ։ Տեվիզընին՝ տէրութեան ատենադպրին հրամայեց որ դժբախտ դատավճիռը ստորագրելու համար առջեւը բերէ, եւ շուտով մը ստորագրելէն ետեւ պաշտօնէին հրամայեց որ տէրութեան մեծ կնիքը վրան կոխէ։ — Նոյն վայրկենի մէջ երբոր կնիկ մը, թագուհի մը եւ մանաւանդ մերձաւոր եւ անմեղ ազգական մը դահճին սրոյն տակ մեռնելու՝ ամօթալից մահուան կը դատապարտէր՝ Եղիսաբեթ կատակ ընելու սիրտ ունեցաւ։ Ծիծաղելով մը Տեվիզընին զրուցեց, "Ուոլսինկէմին գացէք, ինքը կարծեմ թէ հիւանդ պառկած է, անտարակոյս ըրածս տեսնելու որ ըլլայ տրտմութենէն կը մեռնի,,։ — Վերջէն շատ անգամ հառաչանօք զրուցած խօսքերը նորէն կրկնեց թէ այնչափ հազարաւոր հպատակացս մէջ մէկը չգտնուիր որ զիս իմ մերձաւոր ազգականիս արեան մէջ ձեռքս թաթխելէն ազատէ։ Եւ կարծես թէ միտքը նոր բան մը եկածի պէս յանկարծ զրուցեց որ գուցէ Փաւլէթ եւ

Տրուրի (Փաւլեթին օգնականը) զիս այս անտանելի ծանրաբեռնութենէն կ'ազատեն: Դուք եւ Ուոլսինկէմ անոնց երակը նայեցէք: Արդէն պաշտօնեայք Եղիսաբեթին կամքը կատարելու համար Փաւլեթին եւ Տրուրիին գրած էին (2 փետ. 1587) որ Թագուհին իրենց ծառայութեան վրայ տժգոհ է, ըսելով որ “Եթէ իրենց պարծածին չափ անձնանուէր ըլլային՝ շատոնցուընէ իր բանտարկելոյն կեանքը կարճեցընելու միջոց կը գտնէին: Դաշնակցութեան մէջ մտնելով երդում ըրած չե՞ն մի զինքը մինչեւ ի մահ հալածել, եւ դատապարտութեան վճռէն ետեւ զանիկայ ծածուկ աշխարհքէ վերցընելով ոչ իրենց խիղճը կ'արատաւորեն եւ ոչ ալ մարդկան առջեւ իրենց համարումը կը կորսնցընեն„:

Բայց Փաւլէթ թէպէտ եւ խիստ անխիղճ մոլեռանդ մարդ մըն էր եւ զՄարիամ ուղղափառ ըլլալուն համար կ'ատէր եւ անոր մահուան ցանկացող էր, համոզուելով որ անիկայ իր կրօնին թշնամի է, բայց միանգամայն իր պատուոյն տէր եւ նախանձախնդիր էր, եւ բաւական խոհեմութիւն ունեցաւ այնպիսի գործք մը յանձն չառնելու՝ որն որ իր խիղճը եւ կեանքը վտանգի մէջ դրած կ'ըլլար: Անմիջապէս Տեվիզընին նոյն օրը գրելով իմացուց որ իր կեանքն եւ ինչքը Թագուհւոյն համար զոհելու պատրաստ է, եւ եթէ Թագուհին կը հաճի, վաղը երկուքն ալ կը զոհէ, բայց ոչ երբեք այնպիսի գործք մը գործելու յանձն կ'առնու՝ որն որ իր խիղճը կ'արատէ եւ իր զաւակացը նախատինք կ'ըլլայ, այսինքն առանց բացայայտ եւ գրով հրամանի մէկու մը արիւնը չիկրնար թափել:

Տեվիզըն մտքէն չէր կրնար անցընել որ ինքն Եղիսաբեթին կեղծաւորութեան եւ անարգութեան զոհ ըլլալու դատապարտուած էր: Երկրորդ օրն երթար Եղիսաբեթին քով գնաց եւ զրուցեց որ մեծ կնիքն արդէն կոխուած է, Թագուհին շատ զարմանք ցըցուց եւ գլուխ շարժելով՝ ըսաւ թէ այնչափ աճապարելու ինչ հարկ կար: Ուրիշ խօսակցութենէն ետեւ Եղիսաբեթ Մարեմայ մահուան վրայ տեսած

երազն եւ անկից քաշած երկիւղը պատմեց։ Ցեվիզըն կարծելով որ Թագուհին իր որոշման մէջ յողդողդէր է, հարցուց որ արդեօք միտքը փոխած է։ Եղիսաբեթ պատասխանեց որ չէ, միտքս փոխած չեմ, բայց կը կարծեմ եւ կը յուսամ որ Սկովտիայի Թագուհին սպաննելու աւելի լաւագոյն միջոց մը կը գտնուի։ Երրորդ օրը Եղիսաբեթ նոյն խօսքը նորէն կրկնեց եւ հարցուց որ Փաւլեթէն ինչ պատասխան առած է, եւ երբ որ Ցեվիզըն անկից առած նամակը կարդաց, Եղիսաբեթ իր Թագուհի ըլլալը մոռնալով ցած կնոջ մը պէս կատաղութիւնը բռնել չկրնալով հայհոյել եւ անարժան խօսքեր խօսել սկսաւ։ Ալ անկից վերջը Փաւլէթ "իր սիրելի եւ հաւատարիմ ծառան չէր, այլ յամառ եւ անպիտան շրջմոլիկ մըն էր, որն որ շատ կը խոստանայ եւ քիչ կը կատարէ"։ Եւ աւելի եւս նեղանալով ըսաւ, եթէ որ ինքը յանձն չառնուր աս գործքը կատարել, ուրիշները թէ կամք եւ թէ քաջասրտութիւն ունին զինքն ան ծանրաբեռնութենէն ազատելու. ասոնք ըսելէն ետեւ Եղիսաբեթ բարկացած իր սենեակները քաշուեցաւ։

Տեվիզըն՝ Եղիսաբեթին անակընկալ վարմանց վրայ շփոթելով ընելիքը չէր գիտեր. Թագուհւոյն երկլեզու պատասխանին վրայ՝ դատավճիռն ոչ պահել եւ ոչ ալ գործադրել տալ կրնար։ Աս շփոթութենէն ելլելու համար դատապարտութեան թուղթը Սէսիլին յանձնեց ուսկից որ ստորագրուած ընդունած էր, եւ Թագուհւոյն եւ իր մէջը պատահածները պատմեց։ Սէսիլ ասոր վրայ խորհրդականները ժողովքի կանչեց, որոնք ամէնն ալ միաբերան որոշեցին թէ Թագուհին՝ ինչ որ օրէնքը իրմէ կը պահանջէր ըրած է, եւ ասկից վերջը զինքն ալ աւելի թախանձել աւելորդ եւ վտանգաւոր է, եւ թէ անոր փափուկ զգածմանց դպչող է. եւ ասկից ելլելու ամէն հետեւանքներուն պատասխանատուութիւնն իրենց վրայ առնելով՝ Պէալ ժողովոյն քարտուղարին յանձնեցին որ առանց ուշացընելու դատավճիռը կատարել տայ։

Մարեմայ սպասաւորք զարմանքով կը տեսնէին

որ երկու երեք օրուան միջոցին մէջ Փոթերինկէ դաստակերտին մէջ շատ ստորակայանք կը ժողվէին։ Փետրուարի 7ին Մարսէյլ լուր տրուեցաւ որ Շրեւսպէօրի կոմսը եկած է։ Մարիամ ասոր գալստեան պատճառն անոր պաշտօնէն իմանալով շուտով անկողնէն ելաւ հագուեցաւ եւ փոքր սեղանի մը առջեւ նստելով իր այր եւ կին սպասաւորներն երկու կողմը շարեց։ Կոմսը բաց գլխով ներս մտաւ, իրեն հետ միասին եկած էին Քէնթ կոմսը, եւ ուրիշ շատ ազնուականք։ Քանի մը յառաջաբանական խօսակցութիւններէն ետեւ, Պէալ բարձր ձայնիւ դատապարտութեան վճիռը կարդաց։ Մարիամ առանց երեսին գոյնը փոխելու մտիկ ըրաւ, եւ երեսը խաչ հանելով անոնց գալուստը դիմաւորելէն ետեւ, հաստատուն ձայնիւ եւ աներկիւղութեամբ զրուցեց. "Չէի կարծեր որ իմ քոյրս դատապարտութեան հաւանութիւն տալով, մէկ անկախ եւ պսակեալ թագուհի մը սպաննելու առջի օրինակ տուած ըլլայ. բայց որովհետեւ եղած լմնցած է, անոր համար Աստուծոյ Նախախնամութեան վճռոյն գլուխս սիրով կը ծռեմ։ Անձ մը՝ որն որ երկնաւոր ուրախութեանց ցանկացող է իր գլուխը դահճին հարուածէն չփախցըներ։ Վերջապէս եկաւ հասաւ այն օրն՝ որուն այնչափ ատեն արտորնօք կը սպասէի․ գրեթէ քսան տարի բանտի մէջ կը լլկուիմ, որով ուրիշէն օգուտ մը չըլլալէն զատ ինծի ալ մեծ ծանրաբեռնութիւն եղաւ, եւ սաստիկ անընդհատ վշտերով կեանք մը անցընելէն ետեւ չեմ կրնար աւելի երջանիկ եւ պատուաւոր մահ մը ինծի երեւակայել ինչպէս աս մահը՝ արիւնս հաւատքի համար թափելով,,։ Ասոնք զրուցելէն ետեւ իր մինչեւ հիմայ կրած վշտերն եւ ազատութիւն գտնելու համար ըրած առաջարկութիւնները, թշնամեաց նենգամիտ խարդախութիւններն եւ խաբէութիւնները մէկիկ մէկիկ համրեց, եւ ձեռքը՝ սեղանի վրայ կեցող աւետարանի վրայ դնելով երդում ըրաւ աս խօսքերով՝ "Աստուած վկայ է ինծի որ ձեր թագուհւոյն կենաց ոչ դաւաճանութեան մը հաւանութիւն տուած եմ եւ ոչ սաստիկ դաւաճանու-

թիւն ներեթած եմ„։ “Այս գիրքը, ըսաւ Քէնթ կոմսը, պապական Աստուածաշունչ մըն է, եւ ըստ հետեւորդի ձեր երդումը անվաւեր է„։ “Այո, պատասխանեց Թագուհին, ուղղափառաց Աստուածաշունչ մըն է, եւ անոր համար անիկայ ինծի աւելի մեծարգոյ է, եւ դուք ալ ձեր համոզման համաձայն անոր վրայ երդում ընելովս, երդումս այնչափ աւելի հաւատարիմ պէտք էք համարիլ„։ Քէնթ կոմսը յորդորեց զՄարիամ որ պապական նախապաշարումները թողու եւ հոգւոյն փրկութիւնը գտնելու համար ճշմարիտ հաւատքին գայ եւ Եղիսաբեթէն ընտրուած փեթերպորոյի բողոքական եկեղեցականին հոգեւոր կրթութիւնները ընդունի։ Մարիամ անարգելով մերժեց աս առաջարկութիւնն եւ ըսաւ. “գուցէ ձեր կարծածէն աւելի վարդապետական խնդիրներուն մէջ մտած եղած եմ, շատ բան կարդացի եւ շատ անգամ ձեր երեւելի քարոզիչները մտիկ ըրի, բայց հարցս հաւատքն ուրանալու համար մինչեւ հիմայ փաստ մը չկրցաւ զիս համոզցընել„։ Մարիամ փոխանակ բողոքական քահանայի, խնդրեց անոնցմէ որ իր սուրբ եկեղեցւոյն ուղղափառ քահանայ մը քովը թող տրուի գէթ քիչ մը ժամանակ. “աս շնորհքը, ըսաւ, իբրեւ վերջին շնորհք ձեզմէ կը խնդրեմ„։ Մարիամ աս խնդրոյն դէմ մոլեռանդութենէ յառաջ եկած խիստ պատասխան մը առաւ, թէ Աստուածային եւ երկրին օրինաց հակառակ է ասանկ խնդիր մը կատարել, եւ թէ՝ անով իրենց հոգին եւ մարմինը վտանգի մէջ կը դնեն։ Քէնթ կոմսը կրօնական մոլեռանդութեամբ լեցուած մէկէն պոռաց. ձեր կեանքը մեր կրօնին մահ է եւ ձեր մահը մեր կրօնին կեանք է։ Մարիամ ասոնց խստասրտութիւնը տեսնելով խօսքն ուրիշ բաներու վրայ դարձուց եւ հարցուց թէ իր որդին մայրը վերջի նեղութեան մէջ մոռցա՞ծ է, եւ թէ ա՞րդեօք օտար իշխանք իրեն համար միջնորդ եղած չե՞ն, եւ վերջապէս հարցուց թէ երբ պիտի մեռնի։ Շրեւսպէօրի կոմսը մեծ սրտի ցաւով պատասխանեց թէ “վաղը առտու ժամը ութին„։

Կոմսը ամբ ելնելէն ետեւ, հարցուց Մարիամ որ իր երկու քարտուղարք ինչ եղած են, եւ անոնց տուած պատասխանով գոհ չըլլալով՝ նորէն հարցուց թէ Նոյ դեռ ողջ է: Ցրուրի պատասխան տուաւ որ դեռ ողջ եւ բանտի մէջ է. «Ինչ, ըսաւ Մարիամ, ես կը գատապարտուիմ եւ Նոյ ողջ կը մնայ. Աստուծոյ առջեւ երդում կ'ընեմ» եւ նորէն ձեռքը աստուածաշունչի վրայ դնելով ըսաւ. Նոյ իմ մահուանս միակ պատճառն է, իր կեանքն ազատելու համար զիս կախաղան հանել կու տայ, նոյն տեղ ես կը մեռնիմ, բայց ճշմարտութիւնը շուտով երեւան պիտի ելլէ»:

Մ՚արիամ իր մահուան լուրը այնպիսի վեհանձնութեամբ եւ աներկիւղութեամբ մտիկ ըրաւ՝ որ ամէն տեսնողներն ապշեցուց եւ ի գութ շարժեց: Կոմսերէն երթալէն ետեւ իր սպասաւորք լալ եւ ողբալ սկսան. բայց ինքը զիրենք հանդարտեցուց ըսելով. «Ի՞նչ կու լաք կ'ողբաք, մանաւանդ ուրախանալու էք որ իմ չարչարանացս վերջը վերջապէս հասաւ, կապանքներս կը լուծուին, բանտս կը բացուի եւ հոգիս հրեշտականման թեւերով յաւիտենական երանութիւնը բարձրաթռիչ կ'ըլլայ: Ան ժամանակն երբոր իմ ամբարտաւան թշնամեաց ձեռքը մատնուեցայ, եւ ուսկից որ ես անկախ թագուհի ըլլալովս՝ չլսուած նեղութիւններ կրեցի, ան ատեն պէտք էիք լալ եւ ինծի հետ ցաւակից ըլլալ, հիմայ մահը ինծի մեծ բարերար է: Թշնամիքս զրուցեն ինչ որ ուզեն, քէնթ կոմսն իմ մահուանըս գաղտնիքը մատնեց, որ է իմ ուղղափառ կրօնս: Մխիթարուեցէք, հանդարտ կեցէք եւ թող տուէք զիս որ աղօթքներս ընեմ»:

Երկայն եւ ջերմեռանդն աղօթքէն ետեւ ընթրեաց գնաց, եւ ըստ սովորութեան քիչ բան մը կերաւ, սեղանին վերջերն իր սպասաւորաց առողջութեան համար գինի խմեց, որոնք շնորհակալ ըլլալով եւ ծնկի վրայ գալով իրենց ծառայութեան մէջ ըրած պակասութեանց համար թողութիւն խնդրեցին. Մարիամ անոնց թողութիւն շնորհելէն ետեւ ինքն ալ իր կողմանէ անոնցմէ թողութիւն խնդրեց եթէ որ անոնց տհաճութեան առիթ մը տուած է, եւ ամէն

մէկուն յարմար խրատներ եւ անոնց ապագային խորհուրդ տալէն ետեւ՝ դարձեալ կրկնեց որ Նոյ իր մահուան պատճառ եղած է, եւ Պուրկոէն իր բժշկին դառնալով զուարթութեամբ զրուցեց որ "Ճշմարտութեան զօրութիւնը որչափ մեծ է. անոնք (իր թշնամիք) փ՚ըսեն՝ թէ ես անոր համար կը դատապարտուիմ ուրովհետեւ Եղիսաբեթին կենաց դէմ դաւաճանութիւն նիւթած ըլլամ, բայց Քէնթ կոմսը յայտնեց ինծի որ իմ մահուանս ուրիշ պատճառ չկայ բայց եթէ իմ ուղղափառ կրօնս . . . :

Մարիամ իր կենաց վերջի գիշերը երեք մաս բաժնեց: Առջի մասին մէջ՝ որն որ ամենէն երկայն տեւեց, իր տան գործքերը կարգի դրաւ, կտակը շինեց եւ իր խոստովանահօր, Կիզ դքսին եւ Գաղղիայի թագաւորին նամակ գրեց: Խոստովանահօր գրած թղթին մէջ իր թշնամեաց անգթութեան վրայ տրտունջ ըրաւ որ իր եկեղեցւոյն քահանային օգնութիւնն իրեն կը զլանան, եւ աղաչեց զինքն որ վերջի գիշերին իրեն հետ աղօթք ընէ: Իսկ Գաղղիայի թագաւորին գրածին մէջ կ՚ըսէր որ անմեղութեամբ կը մեռնի, առանց Եղիսաբեթին նկատմամբ յանցաւոր գտնուելու: Գիշերուան երկրորդ մասն աղօթքով եւ ջերմեռանդութեամբ անցուց. իր երկու՝ Քէնըրտի եւ Քիւըլ անուն տիկնոջներով սենեակը քաշուեցաւ եւ փոփոխակի աղօթք ընելով, եւ Քրիստոսի չարչարանաց պատմութիւնն եւ զղջացեալ աւազակին վրայ շինուած քարոզը կարդալով մխիթարութիւն եւ քաջալերութիւն կը փնտռէր: Գրեթէ ժամը չորսին անկողին մտաւ, բայց քնանալ չկրցաւ եւ շրթունքներուն շարժելէն կ՚իմացուէր՝ որ խորունկ աղօթք կ՚ընէր:

Երկրորդ օրը լուսըննալուն պէս բոլոր սպասաւորք քովը ժողովեցան. Մարիամ իրենց առջեւ կտակը կարդալէն ետեւ ունեցած ստակն եւ զգեստեղէններն անոնց բաժնեց ըսելով, Ինչ որ աղքատութեանս մէջ ունիմ ձեզի կը պարգեւեմ, եւ կը յուսամ որ առ վերջի կամքս կը յարգէք: "Ձեզի, ըսաւ, սիրելի Ալիքս, Կերթրուտ եւ Ռոզամունտ, մարգարիտներս եւ

զգեստեղէններս կը պարգեւեմ, դուն Մարգարիտա ամէնէն աւելի իմ մեծանձնութեանս վրայ իրաւունք ունիս, եւ որպէս զի չզրուցուի որ քու ամուսնոյդ (Նոյ) վրէժ հանել կ՚ուզեմ, իմ վերջին կամքս կտակիս մէջ՝ բացայայտ դրած եմ։ Իսկ զքեզ հաւատարիմ Աննա (Քէննըտի) ոչ ոսկւոյն եւ ոչ ականց փայլփլունութիւնը հրապուրելուն համար, քեզի ամէնէն մեծ բանը իմ յիշատակս պիտի ըլլայ, առ աս Թաշկինակը, ես զանիկայ ձեռօքս քեզի համար տրտմութեան օրերը արցունքներով բանեցայ. կ՚ուզեմ որ աս Թաշկինակով աչուըներս կապես. աս վերջին ծառայութիւնը քեզմէ կը խնդրեմ,,։ Եւ ամենուն դառնալով ըսաւ, իմ Թագաւորական եղբօրս Գաղղիայի Թագաւորին զձեզ յանձնեցի, ինքը ձեզի համար ասկից վերջը հոգ կը տանի, եւ եթէ իմ վերջին աղաչանքս կ՚ուզէք կատարել, կ՚աղաչէի զձեզ որ Անգղիայի մէջ չկենաք, որ չըլլայ թէ ամբարտաւան Բրիտանացին ձեր դժբախտութեան վրայ ծիծաղի եւ անարգէ զանոնք՝ որոնք որ երբեմն ինծի ծառայած են։ Եկէք ընդունեցէք իմ վերջնական ողջոյնս, մնաս բարով, Մարգարիտա, Ալիքս մնաս բարով, Պուրկոէն շնորհակալ եմ ձեր ծառայութեան համար, մնաս բարով Պերթա, դուն մասն բարի ընտրեցիր, երկնից սուրբ հարս ըլլալ կ՚ուզես, նայէ որ ուխտդ կատարես, երկրիս մեծութիւնները խաբեբայ են, քու Թագուհւոյդ վրայ փորձով տեսար, ալ բաւական է, մնաք բարով. եւ աս ըսելով տիկինները համբուրեց, իսկ այր սպասաւորաց ձեռքը համբուրելու համար երկընցընելով աղօթարան գնաց։ Լալով եւ հեծեծելով իրեն հետ ընկերացան եւ անոր չորս կողմը ծունկ խոնարհեցընելով իրենց աղօթքը առ Աստուած կը մատուցանէին։ Հոս Մարիամ հառաչելով եւ արտասուելով Աստուծմէ կը խնդրէր որ վերջի վայրկենի մէջ իր աստուածային շնորհքը եւ ողորմութիւնն իրմէ չհեռացընէ։ Առտուանց ութէն առաջ Թագուհւոյն պատգամաւոր մ՚եկաւ, որուն Մարիամ պատասխան տուաւ թէ կէս ժամէն ետեւ պատրաստ կ՚ըլլայ։ Ժամը ութին Շէրիֆն եկաւ եւ վրուցեց Թագուհւոյն

որ իր "մոլար կենաց վերջի տեսարանը երեւնալու ժամանակն եկած է,,։ Մարիամ մէկէն ոտք ելաւ եւ խորանին վրայէն խաչելութիւնն աջ ձեռքն եւ ձախ ձեռքն աղօթագիրքն առնելով՝ թագուհւոյ մը վայել վեհութեամբ սկսաւ յառաջ երթալ։ Սպասաւորք հետը գալ ուզեցին, բայց դահիճք թող չտուին, սակայն անոնք լալով ողբալով կը պաղատէին որ իրեն ընկերանան։ Մարիամ մէկէն հրամայեց որ հանդարտ կենան եւ զիրենք օրհնեց, ոմանք ձեռքն եւ ոմանք վերարկուն պագնելով իրմէ բաժնուեցան։ Դրան առջեւ երկու կոմսք եւ Մարեմայ բանտապետք զինքն ընդունեցան եւ իրեն հետ միատեղ գացին։ Սանդուխներուն ստորոտը Մարեմայ տան հազարապետը Մելուիլ կոմսը դիմացն ելաւ։ Անիկայ իր սիրելի թագուհիէն բաժնուելու ստիպուած էր, եւ զՄարիամ տեսածին պէս ոտքն ինկաւ եւ ողբալով գոչեց. "Ո՜հ դշխոյ իմ, ես պիտոր ըլլամ եղեր ան դժբախտն որ ձեր մահուան գոյժը Սկովտիա տանիմ,, հոս ցաւն եւ արցունքները զինքը արգելեցին ալ աւելի խօսելու։ Թագուհին ինքզինքը քիչ մը ժողովելով՝ "Մի ողբար, ըսաւ, ազնիւ Մելուիլ, մանաւանդ ուրախանալու ես՝ տեսնելով որ Մարիամ Ստուարթին չարչարանաց վերջն եկած է. գիտցած ըլլաս որ աս աշխարհքս ընդունայնութիւն է, եւ մեծ տրտմութեանց ներքոյ անկեալ է, եւ արցունքներու ծով մը թափելով չենք կրնար անցընել։ Կ'աղաչեմ, պատմէ իմիններուս որ ուղղափառ կրօնիս մէջ կը մեռնիմ, Սկովտիայի եւ Գաղղիայի հաւատարիմ մնալով։ Աստուած ողորմի անոնց որոնք իմ արեանս ծարաւի են ինչպէս որ եղջերու ջրոյ ծարաւի է։ Ո՜վ Աստուած իմ, աղբիւր ճշմարտութեան, գիտես իմ ներքին խորհուրդներս, գիտես թէ որչափ Սկովտիայի եւ Անգղիայի միաբանութեան ցանկացող էի։
— Ողջունէ իմ կողմանէս որդիս եւ զրուցէ իրեն որ անոր թագաւորութեան անկախութեան եւ փառաց դէմ, եւ մեր հասարակաց թշնամւոյն անծանօթութեամբ պահանջուած վերջին իշխանութեան նպաստաւոր բան մը գործած չեմ,,։ Ասոր վրայ ալ ինքզինքը

չկրնալով բռնել լալ սկսաւ եւ հեծեծելով գոչեց. “բարի Մելուիլ մնաս բարով,,. եւ հրաժարական համբոյրը տալով ըսաւ, “Նորէն մնաս բարով, եւ քու Թագուհւոյդ համար աղօթք ըրէ,,։

Մարիամ արցունքները սրբելով կոմսերուն դարձաւ եւ աղաչեց զիրենք՝ որ իրեն սպասաւորաց հրաման տան իր գլխատութեան ներկայ գտնուելու։ Քէնթ կոմսն առանց Թագուհւոյն Թագաւորական յորդորջանքը տալու պատասխանեց որ անոնք իրենց ողբոց ձայներով շփոթութիւն կը հանեն, եւ գուցէ ձեր արեան մէջ իրենց Թաշկինակները Թաթխելով աւելորդապաշտութիւն կընեն։ “Տեարք իմ, պատասխանեց Մարիամ, անոնց համար երաշխաւոր կ'ըլլամ որ յանդիմանութեան արժանի բան մը չեն ըներ։ Անտարակոյս՝ ձեր Թագուհին կոյս Թագուհի ըլլալով, կանանց ամօթխածութեան պատճառաւ կը ներէ որ իմ վերջի վայրկեանիս մէջ տիկիններէս քանի մը հոգի քովս գտնուին,,։ Եւ երբոր Նորէն պատասխան տուող չեղաւ, գոչեց որ “Կը կարծեմ թէ հետս աւելի քաղաքավարութեամբ կը վարուէիք եթէ որ Սկովտիայի Թագուհի չըլլայի,,։ Եւ դարձեալ երբոր ասոր վրայ ալ լռութիւն կը տիրէր նեղանալով մը հարցուց. “Ձեր Թագուհւոյն մերձաւոր ազգական չե՞մ մի, Հենրիկոս Է.ին Թագաւորական արիւնէն յառաջ եկած չե՞մ մի, Գաղղիայի այրի Թագուհի եւ Սկովտիայի պսակեալ Թագուհի չե՞մ մի,,։ Աս խօսքերուն վրայ Քէնթ կոմսին մոլեռանդութիւնը մեղմանալ սկսաւ, եւ երկու կոմսք իրենց մէջ որոշեցին որ Մարեմայ սպասաւորներէն վեց հոգի ներկայ գտնուին։ Մարիամ անոնցմէ իր տան հազարապետը, բժիշկը, վիրաբուժը, դեղագործը եւ տիկիններէն Քէնըտի եւ Քիւրլ ընտրեց։

Ասի ըլլալէն ետեւ սկսան յառաջ երթալ. չուին գլուխը դահճապետն իր օգնականներով եւ սպասաւորներով անցաւ, ետքը Փաւլէթ, Տրուրի, Շրեւսպէօրի եւ Քէնթ կոմսերը, իսկ անոնց ետեւէն Սկովտիայի Թագուհին եւ Մելուիլ կոմսն, որն որ Թագուհւոյն զգեստը ետեւէն կը բռնէր։ Մարիամ իր

պիրութեան ամենէն փառաւոր զգեստը հագած էր։ Քալուածքը հաստատուն էր, երեսը պայծառ եւ զուարթ, առանց աչքերը վար առնելու կամ փոքր շփոթութիւն մը ցուցընելու, հանդիսատեսաց սեւեռեալ նայուածքին, դահճին տապարին ու գլխատութեան գործիքին ահաւոր տեսքին դիմացաւ, եւ սրահէն անցնելու ատեն այնպիսի վեհութիւն ցըցուց, ինչպէս որ իր երջանիկ օրերը՝ հարց պալատին մէջ ընելու վարժած էր։ Երբոր գլխատութեան կազմածքին վրայ ելլել կ'ուզէր, Փաուլէթ իր բազուկն երկընցուց որ օգնէ, "Շնորհակալ եմ, ըսաւ Մարիամ, ասի վերջին աշխատութիւն է որ ձեզի կը պատճառեմ, եւ ձեր ամենէն լաւ ծառայութիւնն է որ ինծի կ'ընէք,,։ Թագուհին՝ պատրաստ կեցած աթոռի մը վրայ նստեցաւ, իր աջ կողմը կեցան երկու կոմսքը, ձախ կողմը Շէրիֆը եւ Պէալ քարտուղարը; իսկ առջեւը Թաւէր բանտին դահճապետն իր օգնականներովը, որոնք ամէնն ալ սեւ հագուած էին։ Պէալ դատապարտութեան վճիռը նորէն կարդալէն ետեւ, Մարիամ հաստատուն ձայնիւ ներկայ եղողներուն առջեւ բողոք ըրաւ ըսելով, "Պէտք էիք յիշել որ ես անկախ թագուհի եմ եւ ոչ եթէ Անգղիայի խորհրդանոցին հպատակ իշխանուհի մըն եմ, եւ հոս տեղս ապօրինաւոր իշխանութենէ մը կը սպաննուիմ։ Բայց Աստուծոյ շնորհակալ եմ որ ինծի աս առթով շնորհք տուած է իմ հաւատքս հրապարակաւ խոստովանելու, եւ յայտնելու որ՝ ինչպէս որ շատ անգամ ըսած էի՝ թէ Անգղիայի թագուհւոյն դէմ դաւաճանութեան ոչ հաւանութիւն տուած եմ, ոչ ալ նիւթած եմ, եւ ոչ՝ ալ ինչ եւ իցէ եղանակաւ անոր անձնական վնաս մ'ընելու ջանք մ'ըրած ունիմ։ Շատ բան՝ որ հիմայ մթութեան մէջ է՝ իմ մահուընէս ետեւ երեւան կ'ելլէ, բայց ես թողութիւն կը շնորհեմ իմ ամէն թշնամեացս, չեմ ուզեր անոնց վնաս մը հասցընելու. մտօք խօսք մը բերնէս հանել . . .,,։ Հոս տեղս Փեթերպօրոյի եկեղեցականը զինքն ընդհատեց։ Ասիկայ Մարեմայ դէմ յանդիման կենալէն ետեւ, կեղծաւորեալ եռանդեամբ, եւ գուցէ

Մարեմայ արդէն վշտացեալ սիրտն աւելի եւս դառնացընելու մօրը իր անհամ քարոզութիւնն սկսաւ։ "Իմ Թագուհիս, ըսաւ, Թէպէտ եւ ձեր մարմնոյն վրայ արդարութիւն ընելու ստիպուած է, ի վերայ այսր ամենայնի ձեր հոգւոյն փրկութեան հոգ տանելով զիս հոս խրկած է, որպէսզի զձեզ ան եկեղեցւոյ գոգէն՝ որուն մէջ յամառութեամբ կեցեր էք եւ ձեր հոգին պիտի կորսնցընէք, Քրիստոսի ճշմարիտ հօտը տանիմ։ Աստուծմէ շնորհք գտնելու դեռ ժամանակ ունիք՝ եթէ որ ձեր չարութեանց վրայ զղջաք, պատժոյն արդարութիւնը ճանչնաք, եւ Եղիսաբեթէն ընդունած շնորհաց երախտագէտ ըլլաք...": Մարիամ աղաչեց զինքն ըսելով "թէ զիս եւ թէ զձեզ դատարկ խօսքերով մի աշխատցընէք"։ բայց երբոր եկեղեցականը չդադրեցաւ, Մարիամ միւս կողմը դարձաւ։ Մոլեռանդ բողոքականը գլխաւորութեան կազմածին մէկալ կողմը անցնելով նորէն խօսել սկսաւ ձայնը բարձրացընելով։ Շրեւսպէօրի-կոմսն ի գուլթ շարժելով՝ աս պարմանալի աւետարանին վախճան տուաւ եկեղեցականին հրամայելով որ իր աղօթքներն ընէ։ Բայց եկեղեցականին աղօթքը տուած քարոզին արձագանգն էր։ Մարիամ զինքը մտիկ չընելով խորին ջերմեռանդութեամբ եւ բարձր ձայնիւ լատիններէն քանի մը սաղմոս զրուցելէն ետեւ անգղիերէն լեզուաւ քանի մ'աղօթք ըրաւ ուղղափառ եկեղեցւոյ, իր որդւոյն եւ Եղիսաբեթին համար եւ ի վերջոյ ձեռքի խաչը վեր վերցընելով զրուցեց. "Ինչպէս որ դուն, Աստուած իմ, խաչին վրայ ձեռքերդ տարածեցիր, այդպէս ալ քու ողորմութեան բազկացդ մէջ զիս ընդունէ եւ մեղացս թողութիւն շնորհէ"։ Տիկին, ըսաւ մոլեռանդն Քէնթ կոմսը, լաւագոյն կ'ընէիք թէ որ աս պապական աւելորդապաշտութիւնները թողուիք, եւ զինքը (զՔրիստոս) ձեր սրտին մէջ կրէիք։ Թագուհին պատասխան տուաւ որ "Քրիստոսի չարչարանաց օրինակը ձեռքս չեմ կրնար տանիլ առանց յառաջուընէ զինքը սրտիս մէջ ունենալու":

Երբոր Տիկնայք զՄարիամ հանուեցընելու

սկսան, դաՀիճք վախնալով որ սովորութեան Համաձայն իրենց իյնալու՝ դատապարտելոյն զգեստները կը կորսնցընեն, թող չտուին եւ իրենք սկսան Հանուեցընել: Մարիամ քիչ մը ընդդիմութիւն ցըցուց, եւ կոմսերուն դառնալով, ժպտելով ըսաւ որ այնչափ բազմութեան առջեւ ոչ Հանուելու եւ ոչ ալ ասանկ սպասաւորներէն ծառայութիւն ընդունելու սովորութիւն ունեցած է: Մարեմայ մարդիկը իրենց թագուՀւոյն ասանկ խեղճ եւ ողբոց արժանի վիճակը տեսնելով իրենք զիրենք չկրցան բռնել, եւ բարձրագոչ լալ եւ Հեծել սկսան: Մարիամ ցուցամատը շրթունքներուն մօտիկցընելով Հրամայեց որ լուռ կենան, եւ զիրենք նորէն օրՀնելէն ետեւ աղաչեց որ իրեն Համար աղօթք ընեն: Վերջէն աթոռին վրայ նստաւ, ու Քէննըտի իր թաշկինակովը Մարեմայ աչքերը կապելէն ետեւ դաՀիճները զինքը թեւէն բռնեցին եւ գլխատութեան կոճղը տարին: Մարիամ ծնկի վրայ գալով եւ գլուխը կոճղին վրայ դնելով քանի մը անգամ Հաստատուն ձայնիւ "Ի ձեռս քո աւանդեմ զՀոգի իմ,, ըսաւ: Ներկայ եղողներուն լացքն եւ Հեծեծանքը դաՀիճն անանկ շփոթցուցին որ ձեռքերը դողալով առջի Հարուածին միայն Մարեմայ գլխուն վրայ խոր վէրք մը բացաւ: Մարիամ անշարժ մնաց եւ բնաւ տեղէն չսաՀեցաւ: Երրորդ Հարուածով գլուխը մարմնէն բաժնուեցաւ: Երբոր դաՀիճն ըստ սովորութեան արիւնլուայ գլուխն՝ որուն ջղերն այնպէս քաշուած էին որ մէկը չկրցաւ ճանչնալ որ Մարիամ Ստուարթին գլուխն է, ըստ սովորութեան վեր վերցուց եւ "Աստուած մեր Եղիսաբեթ թագուՀւոյն կենդանութիւն տայ,, պոռաց, բազմութեան մէջէն մէկը չգտնուեցաւ որ "Ամէն,, գոչէ, միայն Փեթըրպորոյի եկեղեցականը պատասխանեց թէ մեր թագուՀւոյն թշնամիքն ասանկ կորսուին, եւ Քէնթ կոմսը ստանայական ուրախութեամբ պատասխանեց, "Աւետարանին թշնամիքը այսպէս իյնան,, բայց "Ամէն,, ըսող չգտնուեցաւ: Կողմնակալութիւնն եւ թշնամութեան ոգին փարատելով ցաւակցութիւնն ամենուն սիրտը պատեց եւ գաւն արցունքներ թափելով

հետզհետէ քաշուեցան աս ահաւոր տեսարանէն, համոզուելով որ անմեղ կնիկ մը եւ ազատ թագուհի մը իր հաւատքի մէջ հաստատուն մնալուն համար ուրիշ թագուհւոյ մը նախանձորդութեան զոհ եղաւ։

Այսանկ դժբախտ վախճան ունեցաւ (1587․ փետր․8) Մարիամ Ստուարթ Սկովտիայի թագուհին եւ Եւրոպայի զարմանալիքն իր կենաց քառասունուհինգերորդ տարւոյն մէջ։ Գեղեցկութեամբ, տաղանդներով եւ գիտութեամբ նշանաւոր էր․ իր սրտին բարութիւնն ու այրական քաջասրտութիւնն իր բոլոր կենաց ընթացից մէջ կը փայլէր․ սակայն ամենայն եղանակաւ առեալ՝ աշխարհքիս մէջ ամենէն դժբախտ իշխանուհի մըն էր, ան դժբախտ եւ վտանգալից վայրկեանէն սկսեալ՝ որուն մէջ ծնած էր մինչեւ ան վայրկեանը՝ որուն մէջ իր տխուր գրեթէ քսանամեայ բանտարկութեանը բռնական եւ անիրաւ սպանութիւն մը վախճան տուաւ։

Մարեմայ գլխատութենէն ետեւ՝ անոր տիկնանց քովը մնալ թող չտուին․ իր դիակը նոյն սրահին մէջ՝ ուր գլխատութիւնն եղած էր, անպիտան եւ հին ասուէյով քանի մը օր ծածկուած մնաց։ Կոճղը, գլխատութեան կազմածքը, դահճաց սփածանելիքները, եւ ամենայն ինչ որն որ անոր արեամբ ներկուած էր՝ այրեցին մոխիր դարձուցին։

Գլխատութենէն շատ ժամանակ չանցաւ Եղիսաբեթ հրամայեց որ Մարեմայ մարմինը թագաւորական փառաւորութեամբ Փեթըրպորոյի մայր եկեղեցին դրուի։ Բայց աս ռամկական խաբէութիւնը շատ օգուտ չըրաւ, յուղարկաւորութեան շքեղ հանդէսը, ի ցոյց հանուած փառաւորութիւնները չկրցան մոռցընել տալ գործուած անիրաւութեան անջինջ յիշատակը որով զՄարիամ յանիրաւի գերեզման յուղարկեցին։ Յակոբը՝ Անգղիական աթոռը ելլելէն քիչ մ'ետքը Մարեմայ դիակը Ուեսթմինսթերի աբբայարանը դնել տուաւ, ուր Անգղիական թագաւորաց շիրիմներն էին։



Ինչպէս որ վերը ըսինք՝ Եղիսաբեթ երկիւղի եւ վրէժխնդրութեան մէջ տատանելէն ետեւ Մարեմայ դատապարտութեան թղթին ստորագրութիւն տուաւ, բայց հիմայ երբոր վրէժխնդրութեան բաժակը մինչեւ յատակը ըմպեց, եւ իր նախանձորդին մահաբեր հարուածը տուաւ, ամօթ եւ խայտառակութիւն ահաւոր կերպարանքով դիմացն ելան։ Չէր կրնար չտեսնել առ անիրաւ գործքին հետեւութիւնները, մերձակայ թագաւորաց բարկութիւնը եւ իր համբաւէին կորուստը։ — Եղիսաբեթ այսպիսի խորհուրդներով տանջուելով առ չփութութենէն աղատելու հնարք մը կը մտածէր։ Եղածը չեղած ընել չէր կրնար, եւ նախանձով լարուած նետին թափիչը չէր կրնար դարձընել, բայց իր նախանձորդին մահը անանկ կրնար երեւցընել եւ հաւատցընել որ առանց իր կամաց եւ գիտութեան եղած է։ Առանկ անամօթ խաբէութիւն մ'ընելու մտօք՝ Մարեմայ մահուան լուրն առածին պէս արտաքոյ կարգի տրտմութեան եւ սխրութեան երես մ'առաւ. իր ցաւոց մեծութիւնն եւ ճշմարտութիւնը ցուցընելու համար՝ սգոյ, ողբոց եւ արտասուաց չխնայեց։

Ինչպէս որ Եղիսաբեթ նախանձով եւ երկիւղէ պաշարուած Սկովտիայի թագուհւոյն կեանքը յափըշտակեց իր համբաւոյն փառաւորը, այնպէս ալ հիմայ իր պաշտօնէից համբաւն եւ բախտը զոհելու ընաւ խիղճ չէր ըներ, որպէսզի իր անիրաւ գործքը քիչ մը սքողէ։ Բոլոր յանցանքը պաշտօնէից վրայ կը դնէր, որոնք իր իշխանութիւնն ի չարն գործածելով իր բարի քոյրը՝ Սկովտիայի թագուհին սպաննած են։ Տեվիզըն՝ որն որ Եղիսաբեթին դիտաւորութեանը չէր թափանցած եւ ոչ ալ իր վտանգին կրնար յառաջատես ըլլալ, Եղիսաբեթին ձեռքը գործիք եղաւ առ խաբէական գործքը յառաջ տանելու համար։ Ընթերցողը կը յիշէ որ Տեվիզըն՝ Եղիսաբեթին ստորագրութեամբ դատավճիռն անմիջապէս գործադրելու չխըրկեց, այլ քովը մինչեւ երկրորդ օր պահեց, եւ Եղիսաբեթին իմացուցած էր. բայց խարդախ Եղիսաբեթ հրամանը կրկնելու զգուշացաւ, եւ անկից վերջը վեց

որ անցնելէն ետեւ ասոր վրայ բնաւ խնդիր մը չըրաւ։ Բայց երբոր Մարեմայ մահն իմացաւ, շատ զարմանք ձեւացուց, երդում ըրաւ ըսելով որ դատակնիքը դեռ Տեվֆիզընին ձեռքն է։ Անոր վրայ յանցանք ձգեց որ ինքնագլուխ գործած, իր բացայայտ հրամանին դէմ դատապարտութեան վճիռն ուրիշներուն ցուցուցած եւ խորհրդականաց ժողովքը տուած է։ Տեվֆիզըն իր անմեղութեան վրայ վստահանալով Թագուհւոյն առջեւ ինքզինքն արդարացուց ըսելով որ առանկ հրաման ոչ առած է, եւ ոչ ալ կը յիշէ որ Թագուհին ասոր նման բան մ'իրեն զրուցած ըլլայ։ Եղիսաբեթ իր խարդախ վարմունքն յառաջ տանելով չէ թէ միայն խեղճ Տեվֆիզընին այլ նաեւ մէկալ պաշտօնէից վրայ իր վրէժը եւ բարկութիւնը թափել սպառնաց, որոնք "իր իշխանութեամբը զեղծանելով առանց իր հրամանին եւ գիտութեան իր բարի քոյրը, Սկովտիայի Թագուհին սպաննած են„։ Բոլոր պաշտօնեաները պաշտօնէն մերժելէն ետեւ հրամայեց որ Աստղ ըսուած դատաստանարանը գան ժողովքին, որպէս զի իրենց ըրածներուն պատասխան տան։ Պաշտօնեայք իրենց կենաց վրայ դողալով խոնարհութեամբ իրենց ըրած յանցանքը խոստովանեցան ըսելով որ իրենց դիտաւորութիւնը բարի էր, եւ իրենք զիրենք Թագուհւոյն շնորհաց յանձնեցին եւ Թագուհւոյն հետ հաշտուեցան, միայն Տեվֆիզըն աս շնորհքէն զրկուեցաւ, որովհետեւ դատաստանական քննութեան ատեն մէկալներուն պէս խոնարհական բերան չբանեցուց, այլ իր տուած ջատագովութեան մէջ անուղղակի Եղիսաբեթին ստախօսութիւնը երեւան հանեց, եւ առ փաւլէթ մթին խօսքերով գրածները իմացուց։ Շարունակ կը զրուցէր որ ես առանց յանցանաց զիս յանցաւոր սեպելով իմ համբաւիս վնաս կը հասցընեմ. իբրեւ հպատակ՝ Թագուհւոյս հետ կռիւ ընել չեմ ուզեր միայն ան կը վկայեմ՝ ինչ որ խիղճս կ'ազդէ, այսինքն թէ Թագուհւոյս հրամանը կատարեցի. ասկից աւելի ըսելու բան մը չունիմ, եւ ինքզինքս Թագուհւոյն շնորհաց կը յանձնեմ։

Ն,սիկայ արդէն իսկզբանէ զՄարիամ հալածելու

համար իր պաշտօնակցաց հետ միաբան չէր եւ դաշնակցութեան թղթին ստորագրութիւն տուած չէր, թէպէտեւ Եղիսաբեթ շատ անգամ իրմէ նոյնը պահանջած էր։ Աս ամէն բաները բաւական պատճառ էին իր վրայ Եղիսաբեթին կասկածը եւ անոր վրէժխնդրութեան ոգին գրգռելու։

Տեմփըլնին վրայ դատաստան ըրին եւ զինքը 10.000 փունտ յաքքունիս վճարելու եւ անորոշ ժամանակ բանտ կենալու, դատապարտեցին, այսինքն այնչափ ատեն բանտի մէջ կենալու՝ որչափ որ թագուհին կ'ուզէ։ Եղիսաբեթ թէպէտեւ անկից ետեւ տասնըեօթը տարի թագաւորեց, սակայն չուզեց զՏեմփըլն ազատել։ Գուցէ Եղիսաբեթ աս անգութ խստութեամբ իր անկեղծութեան ցոյց մ'ընել եւ ասանկով հասարակութիւնն առ ժամանակ մը խաբել ուզած ըլլայ։ Բայց ինչ որ ըրաւ, քիչ մ'ատեննուան համար իր վախճանին հասաւ, Տեմփըլնին բերանը գոցեց չորս պատի մէջ խիստ բանտարկելով, որն որ այլազգ Եղիսաբեթէն վրէժ հանելու, եւ ճշմարտութիւնը յայտնելու դիտաւորութեամբ անոր չարախորհուրդ միտքը, բանեցուցած ցած խարդախութիւններն եւ իսկզբանէ հետէ Մարեմայ դէմ եղած ծածուկ դիտաւորութեանց պատմութիւնը կրնար երեւան հանել։

Եղիսաբեթ աս ծաղրածու խաղը (ասկից զատ պատմագիրներէն շատերը ուրիշ անուն չեն տար) լմընցընելու համար, հարկ էր Սկովտիայի եւ Գաղղիայի թագաւորաց բարկութիւնն ալ իջեցընել։ — Յակովբ գրեթէ ամսէ մը ետքը իր մօրը մահուան լուրն առաւ։ Աս լուրը զինքը տրտմութեամբ եւ վրէժխնդրութեան ոգւով լեցուց. անոր հպատակներն Եղիսաբեթին ըրած նախատինքով իրենց ազգն անարգուած տեսնելով վրէժէն եւ պատերազմէն զատ ուրիշ բան չէին պոռար, եւ աս ոգւով լեցուած իրենց կեանքն եւ ինչքն ազգային պատերազմի մէջ զոհելու կը պատրաստուէին։ Եղիսաբեթ թէ թագաւորին եւ թէ ազգին բարկութենէն վախնալով, երկու կողմն ալ հանդարտեցընելու համար Սկովտիա պատգամաւոր մը խրկեց թղթով մը։ Աս թղթիս

մէջ Եղիսաբեթ եղած բանին վրայ ցաւակցութիւն ցուցընելէն ետեւ ամենայն կերպով ջանաց ցուցընել որ առանց իր կամաց եւ գիտութեան եղած է, եւ բոլոր յանցանքը պաշտօնէից մանաւանդ Տեվիզընին վրայ կը դնէր. զԹագաւորը մխիթարելէն ետեւ, խոստացաւ որ ասկից վերջը ինքն անոր մօրը տեղը կ'ուզէ անցնիլ, եւ յայտնեց որ մօրը դատապարտութիւնն անոր իրաւանց բնաւ հարգելք մը չեն դներ։ Ասկից զատ Լէսթըր եւ Ուոլսինկէմ Թագաւորին եւ ազնուականաց նամակ մը գրելով իրենց առջեւն անխուսափելի վնասներ դրին, որոնք իրենց զօրութենէն վեր զօրաւոր տէրութեան մը վրայ ըրած յարձակումէն կրնային յառաջ գալ։ Եւ ի մասնաւորի զԹագաւորը համոզցընել ջանացին որ ինքը հիմայ միայն Անգղիայի յաջորդութեան վրայ իրաւունք ունի. եւ աս իրաւունքն անխոհեմական գործքով մը, այսինքն զէշխանուհի մը բարկացընելով, որուն ձեռքն էր՝ աս իրաւունքը հաստատել կամ մերժել, կորսնցընելու վտանգի մէջ չդնէ։ Նոյնպէս կը յորդորէին զինքն որ դրացի տէրութեանց խոստացած օգնութեան վրայ չվստահի, որովհետեւ անոնց վախճանը, կ'ըսէին, ուրիշ բան չէ բայց եթէ իրենց անձնական շահը։ Թագաւորն՝ աս պատճառներն, ինչպէս նաեւ իր տկարութիւնն, ազնուականաց ապստամբ բնութիւնը, անոնց յողդողդ հաւատարմութիւնն, եւ զօրաւոր կողմնակցութեան մը ազդեցութիւնը, որն որ Եղիսաբեթին կամակից էր, տեսնելով՝ արդար պատերազմէ մը ետ կենալու ստիպուեցաւ։ Կամաց կամաց իր բարկութիւնն ինջաւ, եւ խոհեմութիւնը վրէժխնդրութեան աղաղակը խղթեց։

Նոյնպէս Հենրիկոս Գ.ին սպառնացած վրէժը հետեւութիւն մը չունեցաւ։ Հենրիկոս թէ իրեն եւ թէ Գաղղիայի պատուոյն նախատինք կը համարէր որ Սկովտիայի Թագուհին եւ Գաղղիայի այրի Թագուհին Անգղիայի մէջ դահճի ձեռօք բռնական մահուամբ սպաննուի։ Բայց քաղաքային պատերազմներն՝ որոնք զինքը կը զբաղեցընէին՝ չէին թողուր որ իր սպառնալիքները ի գործ դնել տայ։ Ուստի եւ Մարեմեայ դա-

տապարտութենէն ետեւ աս երկու տէրութիւնները յառաջուան բարեկամական յարաբերութեանց մէջ մտնել ջանացին։ Հաշտութեան առաջին քայլն ընելու համար Եղիսաբեթ Լ'Օպըփին դեսպանին վրայ եղած ամբաստանութիւններն ետ առնել տուաւ, ըսելով որ ինք ասանկ համբաւի բնաւ հաւատք ընծայեցուցած չէ, եւ զինքը միշտ իբրեւ պատուաւոր մարդ համարած է։ Եւ նոյն դեսպանին հրապարակական ընդունելութիւն տալէն ետեւ, անոր թեւէն բռնեց եւ անկիւն մը տանելով ըսաւ որ ձեզի հետ տեսնուելէն ետեւ, շատ մեծ դժբախտութիւն մը գլուխս եկաւ, այսինքն Սկովտիայի թագուհւոյն մահը. եւ մեծ ցաւ ցուցընելով եւ իր անմեղութիւնը յայտնելով զրուցեց՝ որ„ միտքս դրած էի դատապարտութեան վճիռը բնաւ հրատարակել չտալ, ի բաց առեալ երկու դէպքը Ա. երբոր օտար իշխան մը Անգղիայի վրայ յարձակում մը փորձէր. ու Բ. երբ որ գաւառաց մէջ ապստամբութիւն մ'ելլէր։ Իմ պաշտօնեաներէս չորսը հետս խաղ մը խաղացին, զորն որ միտքէս պիտի չհանեմ, եւ թէ որ ծառայութեանս մէջ ծերացած եւ ինծի հաւատարմութեամբ ծառայած չըլլային՝ շատոնց իրենց յանցանքը գլխապարտութեամբ քաւած կ'ըլլային...„։ Ասանկ եւ ուրիշ ասոր նման խօսքերով Գաղղիայի թագաւորն ալ խաղաղցընել ջանաց, եւ իրօք ալ յաջողեցաւ։ Գաղղիայի թագաւորը թէպէտեւ Եղիսաբեթին նենգամտութիւնն աղէկ գիտէր, եւ ուրիշ կողմանէ Մարեմայ սպանման պատմութիւնն իմացած էր, ի վերայ այսր ամենայնի Անգղիայի հետ յայտնի պատերազմ բանալու համար բաւական զօրութիւն չունէր, եւ ոչ ալ իր երկրին պարագաները կը թողուին որ Գաղղիայի պսակեալ այրի թագուհւոյն սպանման վրէժը հանէ։



տապարտութենէն ետեւ աս երկու տէրութիւնները յառաջուան բարեկամական յարաբերութեանց մէջ մտնել ջանացին : Հաշտութեան առաջին քայլն ընելու համար Եղիսաբեթ Լ'Օպըսփին դեսպանին վրայ եղած ամբաստանութիւններն ետ առնել տուաւ, ըսելով որ ինք ասանկ համբաւի բնաւ հաւատք ընծայեցուցած չէ, եւ զինքը միշտ իբրեւ պատուաւոր մարդ համարած է : Եւ նոյն դեսպանին հրապարակական ընդունելութիւն տալէն ետեւ, անոր թեւէն բռնեց եւ անկիւն մը տանելով ըսաւ որ ձեզի հետ տեսնուելէն ետեւ, շատ մեծ դժբախտութիւն մը գլուխս եկաւ, այսինքն Սկովտիայի թագուհւոյն մահը. եւ մեծ ցաւ ցուցընելով եւ իր անմեղութիւնը յայտնելով զրուցեց՝ որ,, միտքս դրած էի դատապարտութեան վճիռը բնաւ հրատարակել չտալ, ի բաց առեալ երկու դէպքը Ա. երբոր օտար իշխան մը Անգղիայի վրայ յարձակում մը փորձէր. ու Բ. երբ որ գաւառաց մէջ ապստամբութիւն մ'ելլէր : Իմ պաշտօնեաներէս չորսը հետս խաղ մը խաղացին, զորն որ միտքէս պիտի չհանեմ, եւ թէ որ ծառայութեանս մէջ ծերացած եւ ինծի հաւատարմութեամբ ծառայած չըլլային՝ շատոնց իրենց յանցանքը գլխապարտութեամբ քաւած կ'ըլլային. . .,, : Ասանկ եւ ուրիշ ասոր նման խօսքերով Գաղղիայի թագաւորն ալ խաղաղցընել ջանաց, եւ իրօք ալ յաջողեցաւ : Գաղղիայի թագաւորը թէպէտեւ Եղիսաբեթին նենգամտութիւնն աղէկ գիտէր, եւ ուրիշ կողմանէ Մարեմայ սպանման պատմութիւնն իմացած էր, ի վերայ այսր ամենայնի Անգղիայի հետ յայտնի պատերազմ բանալու համար բաւական զօրութիւն չունէր, եւ ոչ ալ իր երկրին պարագաները կը թողուին որ Գաղղիայի պսակեալ այրի թագուհւոյն սպանման վրէժը հանէ :

